# ՊՂՈՒՏԱՐՔԵԱՅ

## ՔԵՐՈՎՆԱՑՒՈՅ

## ԶՈՒԳԱԿՇԻՌՔ



### ՀԱՏՈՐ Գ.

# ՊԼՈՒՏԱՐՔԵԱՅ

## ՔԵՐՈՎՆԱՑՒՈՅ

# ԶՈՒԳԱԿՇԻՌՔ

ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Ի ԲՆԱԳՐԷՆ
Հ. ԵՂԻԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԹՈՄԱՃԱՆ
Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ

ԱՐԴԵԱՄԲՔ ՔԱՋԱՓԱՅԼ ԱՄՊԵՏԻ
ՊԱՐՈՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՌԱՖԱՅԷԼԻ
ՂԱՐԱՄԵԱՆ



Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՌՄՁԲ

# ՊԼՈՒՏԱՐՔԵԱՑ

## ԶՈՒԳԱԿՇԻՌՔ

## ԱՐԻՍՏԻԴԵԱՑ

ԵՒ

## ՄԱՐԿՈՍԻ ԿԱՏՈՎՆԻ

# ԱՐԻՍՏԻԴԷՍ

ԱՐԻՍՏԻԴԷՍ Լիսիմաքեան էր յԱնտիոքեան ցեղէն, և յԱլոպեկեան ժողովրդենէ : Իսկ յաղագս գոյից և ընչից նորա տարբերեալ են բանք : Կէսք ասեն՝ եթէ 'ի վերջին աղքատութեան եկեաց այրն. և յետ մահուան դստերք նորա երկու՝ այնպէս հարուստ մի ժամանակ մնացին անընչք : Այլ ընդդէմ կայ Փաղերէոս Դեմետրիոս 'ի Սոկրատէսն, և ասէ՝ ծանեաւ իւր 'ի Փաղերոն դաստակերտ յանուն Արիստիդեայ, ուր և թաղեցաւ իսկ. իսկ զբազմահարուստ լինել տան նորա ցուցանէ առաջին՝ զի եկաց նա իշխանապետ յորմէ անուանեալ կոչէին զտարին. և յայն իշխանութիւն վիճակաւ ընտրեցաւ նա յարս աւագս քաղաքին, որոց անուն կարդային Փէնդաքօսիօմէդիմնի : Եւ երկրորդ-անգամ՝ զի խեցեկոյս վճռով վտարեցաւ

նա. իսկ խեցեկոյտ վճիռ ոչ տան վասն աղքատի, այլ որոց քաջազգիք իցեն և ականաւորք : Իսկ և երրորդ անգամ, զի կան նորա եռոտանիք հանդիսածուք կախեալք 'ի ձօն 'ի մեհենին Դիոնիսեայ վասն յաղթութեանն. և ցուցանեն զայն մինչև ցայսօր ժամանակի վերտառութք այսպիսի.

"Անտիոքեան ցեղն յաղթեաց.
Արիստիդէս հանդէս էած.
Արքեստրատոս վարժեաց" :

Այլ հաւաստիք այսոքիկ՝ թէպէտև 'ի վերին երեսս անգործելիք՝ չեն ինչ հաստատունք : Քանզի և Եպամինոնդաս ինքնին, որ քաջ իսկ մնաց և եկաց 'ի մեծի աղքատութեան, դարձեալ և Պղատոն իմաստասէր, հատուցին և դոքա զհանդիսին ծախսն ըստ արժանեաց. առաջինն հատոյց սրնգահար որերոյն, և վերջինն՝ մանկանց դասուն : Սակայն վասն Պղատոնին հատոյց Դիոն Սիրակուսացի. և վասն Եպամինոնդեայ՝ Պեղոպիդէս : Եւ քանզի և ոչ միշտ առք լաւք հրաժարեն յընծայից բարեկամացն. այլ զոր օրինակ անարգ և գժպատեհ համարին զպարգևսն ընչաքաղցս և զաշաքարս, սոյնպէս և ոչինչ խորշին նոքա առնուլ ինչ՝ յորմէ պարկեշտաբար հանդերձին պտուղք :

Բայց և Պանետիոս յայս առնէ՝ եթէ վասն եռոտանւոյն սխալէ Դեմետրիոս 'ի

մարեցաւ բարձին այնմիկ, զոր վիճակաւ վասն ընչաւէտութեանն առնուին այլք։ Սակայն յայտնի դա ինքն Դեմետրիոս՝ ոչ զԱրիստիդէս միայն, այլ և զՍոկրատէս ինքնին ձգնի ազատ յաղքատութենէ առնել՝ իբրև 'ի մեծէ չարէ. քանզի պատմէ ունել Սոկրատայ ոչ տուն միայն, այլ և եօթանասուն մնաս՝ 'ի վարձու տուեալ Կրիտոնին։

Այլ Արիստիդէս ընկեր Կղիսթենեայ՝ որ քաղաքականութիւն հաստատեաց յետ բռնաւորացն, գեղեցիկ նախանձաւոր առաւել քան զամենայն քաղաքագէտս՝ Լիւկուրգոսի Լակեդեմոնացւոյ, թէկն ածէր աւագապետականին. և սատան իւր ունէր զԹեմիստոկղէս Նէոկղեան Թիկնածու ռամկին։ Իսկ կէսք ասեն՝ անդստին 'ի տղայ տիոց երկոցուն զոյգ սննդակցաց՝ յամենայն 'ի գործ և 'ի բան անմիաբան եղեալ եթէ 'ի լուրջս, և եթէ յուսմնդէտս։ Եւ ապա 'ի հակառակութենէ աստի յայտ մանէ 'ի վեր երևէր բնոյ բարուց երկոցուն նոցա։ Թեմիստոկղէս՝ ժիր և յանդուգն և նենգաժէտ, և հեշտին և արագ ձգէր յամենայնն։ Իսկ Արիստիդէս՝ հաստատուն և անդրդուելի 'ի բարս, անդուլ հակամիտեալ յարդարութիւն. երբէք ստու չառէր՝ Թէպէտ և ընդ կատակս. և խաբանս չնիւթէր՝ Թէպէտ և 'ի խաղս։ Այլ Արիստոն Քիացի ասէ, եթէ նոցա հակառակութեան սկիզբն կալեալ անդստին 'ի պատճառս սիրոյ, և առաջ ըստ նմանէն ա-

րեալ զմեծապէս աներկեւանութիւն նորա 'ի գործել և 'ի խօսել միայն զբարին և զարդարն :

Այլ քանզի Թեմիստոկղէս շատ ինչ իրս յանդուգն շարժէր և յուզէր, և ցանդ-հակառակ նմա ամբառնայր 'ի գործս քա-ղաքին և կարճէր զնա, ապա այնուհետև և Արիստիդէս հարկաւորեցաւ դիմադարձ լինել ամենայն գործոցն Թեմիստոկղեայ՝ 'ի պաշտպանել անձին և 'ի խափանել առ-կանել զօրութեան նորա, որ 'ի Թիկունս ռամկին գնալով գնայր յառաջադէմ. լաւ ևս համարեցաւ եղծանել զնորա ինչ ինչ ձեռնարկութիւնս զպիտանիս անգամ քաղաքին, քան Թոյլ տալ զօրանալ նմա յամենայնի և յաղԹել: Եւ ապա էր զի առ-ռաջի արկեալ Թեմիստոկղեայ իր մի 'ի վայելչականաց անտի, ընդդէմ դարձեալ Արիստիդեայ և յաղԹեալ, չհանդուրժեալ աւէր յելանել իւրում արտաքս յեկեղեց-ւոյն. եԹէ՝ փրկուԹիւն չիք վասն ԱԹե-նացւոցն գործոց, մինչև զԹեմիստոկղէս՝ 'ի նոյն և զինքն ոչ խարդաւանեսցեն 'ի վիհ անդր: Դարձեալ և յայլում նուագի ա-ռաջի արկեալ խուժանին զկարծիս իւր, և ամենայն դիմամարտուԹեանցն յաղԹեալ, այն ինչ բարձերեց ժողովոյն հարցանէր վասն այնորիկ զժողովուրդն, նա 'ի բանից անտի նոցա խելամուտ եղեալ վնասուն հանդերձելոյ՝ ինքնակամ յետս կայր 'ի վճռոյն:.Էր և բազում անգամ զի զխոր-հուրդս իւր առաջի առնէր յայլոցն բերա-

յորդք անկանէր դատաւորացն առ խօսել և յանցաւորին, և զիրաւունսն օրինացն շնորհել նմա: Սոյնպէս և դատաւոր երբեմն նստեալ Արիստիդէս 'ի հակառակութեան երկուց ոմանց, երբև մի ոմն 'ի նոցանէն ասէր վասն ընկերին՝ եթէ և Արիստիդեայ նա վնասս բազում հասուցեալ է, ետ պատասխանի. "Ասա՛ մանաւանդ ո՛վ քաջդ, եթէ քեզ ինքնին չար ինչ հասուցեալ իցէ դորա. քանզի վասն քո աւադիկ նստիմ դատաւոր և ոչ վասն իմ":

Իսկ յետ այնորիկ կարգեալ Արիստիդէս խնամակալ 'ի վերայ մտիցն հասարակաց, եցոյց եթէ ոչ որք միանգամ առնուան կային 'ի պաշտամանն յայնմիկ, այլ և որք 'ի նախնումն, շատ ինչ խորեցին 'ի դրամոցն. և յաւէտ Թեմիստոկղէս՝ որ Թէպէտև այր հանճարեղ՝ չէր ձեռւին բարուամ իշխան: Ուստի և Թեմիստոկղէս միաբան ընդ բազմաց ամբաստան զնմանէ կացեալ՝ 'ի տալ զհամար պաշտամանն, հնարս հնարեցաւ երբև գող դատապարտել զԱրիստիդէս. ըստ որում գրեաց Իդոմենեւս: Յայնժամ յոյժ 'ի խոր խոցեալ և բողոք կալեալ առաջ և լաւ որեար քաղաքին վասն այնորիկ, դէպ եղև՝ զի ոչ միայն յամենայն պատուհասէն ազատեցաւ Արիստիդէս, այլ և կրկին առաջացաւ նա 'ի նոյն պաշտօն: Իսկ Արիստիդէս 'ի ժամանակին կեղծաւորեալ՝ երբու առընչացեալ ընդ առաջին գնացսն, և հեշտընկալ ցուցեալ զանձն և ամոք՝ հաճոյ գոտանէր առ.

հասարակաց ամենեցուն նոցա՝ որ խորհէին 'ի հասարակաց ընչիցն, ոչ քննէր և ոչ ճըշգրիտ սահմանէր համար. որպէս զի և ընտելացեալ նոքա այնու հետև 'ի հասարակաց գողիցն, մեծապէս 'ի գովութիւն առնուին զԱրիստիդէս. զարմացեալ և վասն նորա նախանձ առաջի արկանէին ժողովրդեան՝ փութով սիրողութեամբ միաբանեալ զնա հաստատել իշխան։ Այն ինչ նոքա հանդերձեալ էին տալ նմա զքուէարկութիւն, կայր նա և կշտամբէր զԱթենացիսն այսպէս. « Մինչ ես ինքնին հաւատարիմ և զեղջիկս վարեցայ 'ի գործ իշխանութեան, խստամբ զատայ. իսկ յորժամ յանձնողս կացի՝ խորհել շատ ինչ 'ի հասարակաց ընչիցն, քան զի համարիմ ձեզ քաղաքացի զարմանալի։ Այլ իմ զարդիս առաւել զամօթի համարեալ է ընդ առաջիկայ պատիւք, քան ընդ առաջինն դատապարտութիւնն. և ցաւ է ինձ վասն ձեր՝ առ որս փառք են առաւել՝ թիկունս տալ չարաց, քան պահել զհասարակացն »։ Զայս ասաց, և զգողութիւնսն նշանակեալ՝ խցանէր զբերանս գովչացն, և գովութիւն ճշմարիտ և արդար ձգէր յայնժամ յանձն զլաւաց տուանցն։

Իսկ յետ այնորիկ Դատիս առաքեալ 'ի Դարեհէ՝ 'ի վերին երեսս իբրև վրէժխնդիր լինել Աթենացւոցն վասն հրկիզութեանն Սարդիոյ, այլ 'ի ներքոյ նուաճել ունել առհասարակ զՀելլենացիս, եկն եհաս նա 'ի Մարաթոնն հանդերձ ամենայն նաւաքն՝ յաւարի առնել առհասարակ ըզ-

գաւառն: Յայնժամ 'ի զօրավարսն Աթենացւոց այրընտիր վասն մարտին՝ աւագութեամբ վեհագոյն էր Միլտիադէս. իսկ երկրորդ 'ի շուք համբաւոյն և 'ի զօրութեան էր Արիստիդէս. որ և համաշունչ Միլտիադեայ դիմադրաւ խաղալ ընդդէմ Թշնամւոյն՝ մեծապէս զօրավիգն էր կողմանն Միլտիադեայ: Այլ իբրև օր ըստ օրէ այր այր 'ի զօրավարացն զանձամբ առնոյր զառաջնորդութիւն բանակին, կարգ հասեալ Արիստիդեայ՝ նա կամակար տայր զայն 'ի ձեռս Միլտիադեայ. և այնպէս ուսուցանէր իշխանակցացն եթէ հնազանդ իմաստնագունիցն կալ արանց՝ դժպատեհ չէ, նա փառաւոր է և մեծապէս շահ. ուստի և ամոքեալ զնոցա նախանձաւորութիւնն, միադիւրագոյնս կալ ընդ քաջախոհիցն առաջնորդութեամբ՝ զօրացուցանէր զկողմն Միլտիադեայ, և հաստատուն ևս զնորա գործէր հրամանատարութիւնն. և այր այր այնուհետև զաւուրն զկարգ իւրաքանչիւր տայր միադիւր հլութեամբ 'ի ձեռս նորա:

Բայց 'ի մարտին յայնմիկ վատթարեալ Աթենացւոցն, և առաւել ևս՝ 'ի միջոցին, և հարուստ մի անդանօր բարբարոսացն 'ի դիմի հարեալ Լեոնեան և Անտիոքեան ցեղիցն, Միլտիադէս[1] Լեոնեան և Արիստիդէս Անտիոքեան կացին կարգեցան առընթեր միմեանց՝ մարտ եդեալ կռուէին քաջապէս զօրութեամբ: Ապա վանեալ զբարբարոսսն մինչև 'ի ներքս անդ նաւաց նոցա, տեսեալ՝ զի ոչ դէպ ուղիղ նաւէին

բառնայր վաղվաղակի յառաջութիւն մեծ՝ յորմէ զարդարին յորջորջեն. Թէպէտ և Փաղերեւս Դեմետրիոս ասէ՝ ունել նմա զաւագութիւնն զայն սակաւ մի յառաջ քան զմահ վախճանին յետ Պղատեան մարտին։ Սակայն յԱրձանագրութեն յետ Քսանթիպիդեայ՝ առ որով պարտեցաւ Մարադոնիոս 'ի Պղատէա, 'ի բազումսն որ ըստ նմանէն՝ չէք գտանել զանունդ Արիստիդեա. իսկ անդէն յետ Փանիպպոսի առ յաղթութեամբն Մարաթոնայ՝ է գտանել իշխանաց իշխան զԱրիստիդէս։

Բայց յայլ ամենայն առաքինութիւնս նորա՝ առհասարակ զհամբաւի հարեալ է արդարութիւն առն. զի և յաճախ են պէտք առաքինութեանդ և յընթանուրս ծառայեալ. ուստի և նա թէպէտև աղքատ և 'ի սոսկականաց, ժառանգեաց անձին զմեծարքայականն զայն և զաստուածային յորջորջումն Δίκαιος. զորոյ և թէկն չէած ոք ոչ 'ի թագաւորաց և ոչ 'ի բռնաւորաց, մեծապէս հեշտացեալ նոքա յանուանակոչութիւնսն՝ Πολιορκηταί, այն է՝ Քաղաքամարտ. և Κεραυνοί, այն է՝ Շանթք. և Νικάτορες, այն է՝ Յաղթողք. և կէսք դարձեալ՝ Ἀετοί և Ἱέρακες. և սիրեցին նոքա առաւել զփառս զբռնութեանն և զզօրութեանն, քան զառաքինութեանն։ Եւ այն զի յերից անտի՝ յորս թուի թէ ինքնին աստուածութիւնն (որում տենչացան նոքա նմանութեանն և ընտանութեանն) առաւել փայլէ, յանապակա-

նութիւնն առեալ և 'ի զօրութիւնն և յա-
ռաքինութիւնն, որպէս և պատուական է
առաքինութիւնն և աստուածայնագոյն:
Քանզի անապականութեան հաղորդք են
և Դաստառակին, զառաձեալ և Տարերքը. իսկ
զօրութիւն մեծ ունին և գեղանաշարժքն և
շանթք կայծակաց և հողմոց մրրիկք և
զայլրացեալոց գետոց հոսանք. սակայն ար-
դարութեան և ուղղութեան հաղորդ լի-
նել չեն հնար առանց հանճարեղ և աս-
տուածային խորհրդոյ: Եւ քանզի մարդիկ
երրեակի զգածեալք առ աստուածութին,
վասն երանութեանն, վասն երկիւղին, և
վասն պատուոյն. թուի թէ` հիացեալք ե-
րանեն զնա 'ի պատճառս անապականու-
թեանն և յաւիտենականութեանն. իսկ
երկնչին զողան` 'ի պատճառս ինքնակալ
զօրութեանն. իսկ սիրեն և պատուեն
և պաշտեն` 'ի պատճառս արդարութեանն:
Այլ թէպէտ և օրինակ զայս զգածեալք
իցեն, ոչ այլ իմիք անենչան նորա` բայց
անմահութեան, զոր բնութիւնս մեր չըն-
դունի 2. նոյն և զօրութեանն` այն որ ա-
ռաւելագոյն մասամբքն կախի զբախտէն.
և անփոյթ լինին զառաքինութենէն` այն
որ միայն յաստուածային բարեացն 'ի մեզ
յինքեանս է, սխալեալք 'ի խորհուրդս իւ-
րեանց. զի և որք 'ի զօրութեան վայելեն
և 'ի յաջողութեան և 'ի տէրութեանն,
զայնպիսեացն զկեանս արդարութիւնն ինք-
նին գործէ աստուածային, իսկ անիրաւու-
թիւնն` գազանական:

Եւ արդ 'ի մանկանութենէ այսր զԱրիստիդէս՝ զառաջինն սիրեցին, և առաւ խառնտացան ընդ նմա. առաւել ևս՝ յորժամ անզուսպ Թեմիստոկղէս ձայն համբաւէր՝ եթէ Արիստիդէս 'ի բաց զատեանս խորհրդոյ բարձեալ՝ առ 'ի դատել և տանել բերել զամենայնն, դատաւորաբար միապետութիւն անձին զրաւեալ իցէ անպաշտապան և անզէն: Առ այս՝ և ժողովուրդն ինքնին փքացեալ 'ի յաղթութենէն զոր տարան՝ և ամբարտաւանեալ խեռայր ընդ ականաւոր որ երևելին և ընդ փառաւորս: Վասն որոյ և 'ի կողմանց կողմանց մարդիկ 'ի մի վայր եկեալ 'ի քաղաքն, խեցեկոյտ վճռով վտարանդի առնէին զԱրիստիդէս. 'ի վերին երեսս առ ահի բռնաւորութեանն, իսկ 'ի ներքոյ առ նախանձուն փառացնարս: Քանզի խեցեկոյտ վճիռ ոչ պատուհաս ինչ էր չարութեան, այլ նազելի կոչմամբ անուն կարգալին նմա՝ խոնարհութիւն և սանձակոծել պերճութեան և զօրութեան. և էր այն սփոփանս իմն և դիւր նախանձուն կրից ընդդէմ փառաւորացն. ոչ պատուհաս վերջին 'ի վերայ ածեալ նոցա, այլ տասնամեայ տարաշխարհիկ առնելով զնոսա: Բայց յորժամ օրինակ զնոյն վտարանդութեան առին և արք անաւագք և անզգամք՝ և 'ի վերջէ ուրեմն և Իպերբողոս, ապա յետ այնորիկ կասեցան Աթենացիք 'ի բանէն յայնմանէ: Իսկ Իպերբողոսին իրք այսպիսի են: Ալկիբիադէս և Նիկիաս յայնժամ մեծապէս ճոխացեալք

միթէ Արիստիդէսդ այդ չար ինչ երբէք գործեա՞լ իցէ նմա. Եւ պատասխանի այրն և ասէ. « Ո՛չինչ. այլ և ո՛չ ճանաչեմ իսկ զայրն. սակայն տաղտկացեալ եմ՝ զի ամենայն ուրեք արդար լսեմ զնա »: Զայն լուեալ Արիստիդէս, լուռ եղև ամենևին. և զիւրական անուանն առեալ գրէր 'ի խեցին և տայր առն: Իսկ օրինակ զայս վտարանդի գնաց Արիստիդէս, յելանել իւրում 'ի քաղաքէն խնդրուածս առնէր ներհակաբար Աքիլլեայ. 'ի վեր զձեռս ամբարձեալ աղօթէր, մի՛ երբէք պատահել ժամու՝ յորում ստիպեսցին Աթենացիք յիշատակ ածել զԱրիստիդեայ:

Յետ այսորիկ յամին երրորդի չու արարեալ Քսերքսես տագնապաւ ընդ Թեսաղիա և ընդ Բիովտիա յԱտտիկէ կոյս, Աթենացիք զիւրեանց օրէնսն եղծեալ՝ վճիռ տային դարձի ամենայն վտարելոցն. խիթացեալք առաւել ևս յԱրիստիդեայ, զուցէ միաբանեալ ընդ թշնամիսն և զբազումս 'ի քաղաքացեացն յանկուցէ նա 'ի բարբարոսն. ո՛չինչ ուղղապէս դատաստան վասն այնպիսւոյ առն դատելով, այն՝ որ և մինչև եղեալ դարձի վճռոյն՝ համապազօրդեալ իսկ էր 'ի քաջալեր Հելլենացւոցն և թելադրէր 'ի պաշտպանութիւն ազատութեանն: Նա և յետ վճռոյն՝ զօրավար ինքնակալ կացեալ Թեմիստոկլէս, առ այս Արիստիդէս գործակից և խորհրդակից էր նմա յամենայնի. և այնպէս վասն հասարակաց փրկութեան շքեղ յարգարէր

նաս զիւր ոխերիմ թշնամին: Քանզի յորժամ Եւրիբիադէս խնդրէր լքանել զՍաղամինա, և գիշերի յառաջ խաղացեալ եռամթիւք բարբարոսացն շուրջանակի պատեալ կալեալ զանձուկս և զնեղուցն փակեցին, մինչդեռ խռովեալ էր դեռ բանիւն՝ ինքնին Արիստիդէս գիշերայն անցեալ քաջութեամբ ընդ մէջ նաւուց թշնամեացն, եկն եհաս յԵգինեայ առ Թեմիստոկլէս, և կոչեալ զնա միայնակ արտաքս 'ի վրանէն, ասէր այսպէս.

"Մեք ինքնին, ով Թեմիստոկլէս, եթէ իմաստունք իցեմք, 'ի բաց դարձցուք զմեր եդեալ զանձնասիրին զայն զժտութիւն և զմանկականն, բարւոյն հարցուք առաւել մրցել ընդ միմեանս զեղեցիկ և ողջախոհ պատուասիրութեամբ 'ի փրկութիւն Եղլադայ, դու իբրև հրամանատար բանակին, և ես գործակից քեզ գոլով և խորհրդակից: Եւ քանզի որպէս իմացեալ լեալ է իմ, դու միայն քաջախորհուրդ առաւել յորդոր 'ի նաւըքս եղեալ՝ անդէն յանձուկս յարձակեալ նաւամարտ ընդ թշնամիսն լինել. այլ քեզ չամենայն նպաստակակիցք. Թող թէ և թշնամիք ինքնին դիտմամբ գործակից ձգնին 'ի բանինդ յաղթել. քանզի և ծովդ ահա ողջոյն շուրջանակի ծածկեալ կայ 'ի նաւուց թշնամեացն. որպէս զի և որք ոչն անկամայ կամեցեալն, 'ի հարկէ ուրեմն մարթ եղեալ կռուեսցին այժմ քաջութեամբ, զի և ուղղի փախստեան չմնաց": Եւ պատասխանի Թեմիստոկլէս և ասէ. "Եւ ինձ

եւ չէին կամք ոմ Արիստիդէս, զի 'ի մրցանս յայս յաղթեսցես դու ինձ. վասն որոյ և ես և ելս զքեւ արարից 'ի գեղեցիկ սկզբանդ՝ զսեն գործեալ յաղթել արդեանքս “ : Եւ պատմեալ նմա միանգամայն զհնարիմաց խորհուրդն խար 'ի պատարել զպատրաստութիւն, յորդորեաց զնա զնայ հաւանեցուցանել զԵւրիբիադէս, և խելամուտ առնել եթէ չիք փրկութիւն՝ բայց նաւամարտիւ լինելով. քանզի և Արիստիդեայ մեծապէս հաւատայր Եւրիբիադէս։ Վասն որոյ և 'ի ժողովն անդ խորհրդոյ զօրավարացն, երբև Կղէոկրիտոս Կորնթացի ասէր առ Թեմիստոկղէս՝ եթէ ընդ խորհուրդ նորա յաղագս մարտի՝ և ոչ Արիստիդէս հաւանեալ է՝ զի աստ մերձ է և լուռ կայ, եւ պատասխանի Արիստիդէս՝ եթէ անշուշտ լինէր չլռէր, եթէ Թեմիստոկղէս քաջին խօսեցեալ չէր. սակայն և լուռ կայ՝ ոչ շնորհս առնելով նմա, այլ լռութեամբն հաստատէ զխորհուրդ նորա։ Զայս ինչ յայնժամ. գործէին նաւապետս իշխանք Հելլենացւոց։

Բայց Արիստիդէս տեսեալ զՊսիւտտալիա կղզի ոչինչ մեծ՝ յանցան 'ի հանդիպոյ Սաղամինոյ՝ ողջոյն զլցեալ 'ի թշնամեաց, առեալ 'ի քաղաքացեաց զնահատակսն և զքաջամարտիկսն, մուծանէր 'ի մակոյկսն և խաղայր գնայր 'ի կղզին անդր. մարտ եդեալ կռուէր ընդ Բարբարոսսն և առհասարակ 'ի սուր մաշէր, բայց 'ի փառաւորաց անտի որ կենդանեայն ձերբակալ եղեն. յորս էին և որդիք երեք քեռ Թա_

կէս նորքինն 'ի գերույն. հրաման տայր նմա տալ արքային զաղտաբար, եթէ՝ յանդորր Թեմիստոկլէս զարքայն կամելով հանել՝ արգել Հելլենացւոցն նաւել 'ի կամուրջն կոյս, ուր նոքա բուռն դէմ ե-դեալ խաղային առհասարակ: 'Ի լուր բա-նին զահի հարեալ Քսերքսէս՝ 'ի խուճապ տագնապի չու առնէր 'ի Հելլեսպոնտոս. սակայն և մնայր անդէն Մարդոնիոս հան-դերձ բանակաւ երեսուն բիւրուց քաջա-մարտիկ զօրականաց:

Այս Մարդոնիոս այր ահաւոր և մե-ծապէս յօրացեալ 'ի բանակ ցամաքին, ամենհար եղեալ ապառնալիս 'ի վերայ ա-ծէր Հելլենացւոց, գրեալ առ նոսա օրի-նակ զայս. "Յաղթեցէք դուք ծովական լաստափայտիւք ցամաքային մարդկանդ՝ անգէտք 'ի թիավարել. այլ արդ ասպիկ կայ մեր առաջի լայնատարր սահման Թե-տաղացւոց, և գեղեցիկ դաշտավայրին Բէով-տիոյ՝ 'ի կռիւ մարտի քաջաց այրուձիոյ և հետևակաց": Իսկ առ Աթենացիսն տայր նամականի մասնաւոր, և տայր և կոչէր խոստումն յանուն արքային՝ նորոգել շի-նել զքաղաքն նոցա և տալ նոցա մթերս ամբաւ դրամոց, և տէր առնել զնոսա 'ի վերայ ամենայն Հելլենացւոց, եթէ միայն նոքա 'ի բաց կացցեն 'ի մարտէն:

Իրազեկ Լակեդեմոնացիք եղեալք, զան-գիտեալ՝ եթէ երբէք հաւանեսցին Աթե-նացիք, հրեշտակս արձակեցին յԱթէնս աղաչել զնոսա առաքել 'ի Սպարտիա ըզ-

մանկութեան խրատեանց և զինեալս, և առնուլ 'ի նոցանէ զամենայն զպէտս կերակրոյ վասն ծերութեանցն, զի չքաւորեալ էին ժողովուրդք և միաբանութեանն 'ի կալուածոցն և 'ի քաղաքէն վերացեալ էին նոքա: Իսկ Աթենացիք լուեալ զայս 'ի հրեշտակացն՝ պատասխանի տային ձեռնադրութեամբն Արիստիդեայ պատնէշելի. եթէ՝ ողորմեալք ներելեն նոքա թշնամեացն բարբարոսաց, եթէ զինոց համարեսցին առնուլ զամենայնսն արծաթովք և դրամովք՝ քան զոր լաւագոյն ունէին ճանաչէին նոքա. սակայն սրտնեալք ցասմունս ընդ Լակեդեմոնացիսն՝ որք միայն յաղքատութիւն և 'ի չքաւորութիւն Աթենացւոցն դիտաւին կալեալ, իսկ զառաքինութիւն նոցա 'ի մոռացօնս դարձուցեալ և զնոցա պատուասիրել՝ խրախոյս կարողաւն նոցա մարտ դնել կռուել 'ի վերայ Ելլադայ 'ի շնորհս ցորեանոյն՝ զոր ջամբէին նոցա: Զայս ինչ պատասխանի տուեալ Արիստիդէս, և մուծեալ առաջ զհրեշտակսն յեկեղեցին՝ հրաման տայր նոցա երթալ առնել Լակեդեմոնացւոց, եթէ՝ մթերք չէք ոսկւոյ այնչափ ոչ 'ի վերայ հողոյս և ոչ 'ի ներքոյ, զոր երբէք առցեն Աթենացիքն՝ իբրև նախապատիւ քան զՀելլենացւոց ազատութիւնն: Ապա և առ հրեշտակս Մարդոնիոսին՝ մատնանիշ զարեգակն ցուցեալ՝ ասէր այսպէս. “ Ցորչափ դա զդոյն բոլորէ շրջան, ցանդ և Աթենացիք մարտ եդեալ կռուեսցին ընդ Պարսից. զի քանդեցին զորա զգա-

տուն նոցա, և պղծեալ հրկէզ արարին և զմեհեանսն“։ Առ այս և վճիռ գրեալ, նզովս քահանայից կարդալ 'ի վերայ Մարդոյ՝ որ առաքեսցէ խօսել խաղաղութիւն ընդ Մարս, կամ որ 'ի բաց օձանեսցի 'ի նիզակակցութենէ Հելլենացւոց։

Ապա հորդան տուեալ թշնամութեանն Մարդոնիոս յԱտտիկէ այս երկիցս անգամ, յայնժամ միւսանգամ անցին Աթենացիք 'ի Սաղամինէ։ Բայց Արիստիդէս առաքեալ 'ի Լակեդեմոնիա բողոք բառնայր վասն դանդաղկոտ յուլութեանն Սպարտացւոց, զի այնպէս միւսանգամ 'ի բարբարոսին ձեռս լքանէին զԱթէնս, և աղաչէր ձեռն տալ մասին Ելլադայ՝ որ ցայն վայր յանդորրու կայր։ Լուեալ զայն Պարետացն, աղդ արարին՝ եթէ զցերեկ հասանէ նոցա պարապել 'ի սփոփութիւնս տօնախմբութեանն, քանզի և էին իսկ նոցա յայնժամ աւուրք Յակինթեան։ Զայս ասացին, և զցայգն այրընտիր զէնընտիր առաքեալ հինգ հազար 'ի Սպարտացւոց, որոց մէն մի 'ի նոցանէն առ ընդ իւր ոգիս եօթն յԻղոտաց անուն, առեալ արձակեցին զնոսա արտաքս զանխուլ յԱթենացւոց․ որոց առաջ յանդիման եկեալ Արիստիդէս և զնոյն բողոք բարձեալ, նոքա 'ի ծաղր հարեալ պատասխանի տանէին, եթէ ցնորեալ ուրեմն բանդագուշէ նա և 'ի քուն կայ․ զի առաջիկ բանակ նոցա հասեալ կայ յՈրէստեոն, և խաղայ ընդառաջ եկեալ, (զի եկք կոչէին նոքա ըզ-

Պարսից)։ Վասն որոյ և Արիստիդէս պա-
տասխանին առնէր, տարաժամ ուրեմն կա-
տարել զայդ՝ խաբէ գործելով փոխանակ
թշնամեաց՝ ընդ բարեկամն։ Զայսուիկ
դրէ մեզ Իդոմենեսս. այլ 'ի հրովարտա-
կին Արիստիդեայ չէ նա 'ի կարգ հրեշտա-
կացն, այլ Կիմոն և Քսանթիպպոս և Մի-
րոնիդէս։ Այլոյ կարգեալ նորա զօրավար
ինքնակալ 'ի մարտին, խաղաց գնաց 'ի
Պղատէա ունելով հազար հետևակս Աթե-
նացւոց։ Իսկ Պաւսանիաս առաջնորդ ող-
ջոյն բանակին Հելլենացւոց՝ անցեալ ընդ
իւր զՍպարտացիսն եկն յարեցաւ ընդ Ա-
րիստիդեայ. անթագական և բազմութիւն եւ
այլոց Հելլենացւոց գային խռնէին կուռ ըն-
հետս միմեանց։ Այլ անհուն բարբարոսաց
զօրուն բանակն հարեալ առ Ասոպայ գետովն՝
պատնեշապատ չէր զեղէն առ ամրութեանն.
տակային կարասանէք և գոյք նոցա պատու-
կանէք յապահովն եղան 'ի պատուար մի
չորեքկուսի, մեծն մի 'ի կողմանցն տասն աս-
պարիզաց։

Յայնժամ գուշակ 'ի մէջ արձանացեալ
Տիսամենոս Եղէոս՝ նախապատուեալ յաղ-
թութեանն լինէր Պաւսանեայ և առհա-
սարակ Հելլենացւոցն, եթէ միայն պաշտ-
պանեալ անձանց, և զինմազդուս ոչ շահա-
տակեսցեն ընդդիմամբ թշնամւոյն։ Բայց Ա-
րիստիդէս առաքեալ 'ի Դելփիս, պատ-
գամ առնոյր յաստուածոյն՝ յաղթական
լինել Աթենացւոց, եթէ ուխտիւք խըն-
դրեալ յԱրամազդայ և 'ի Կիթերոնեան

Հերայ, և 'ի Գանեայ, և 'ի Յաւերժահարսանցն Սփրագիտեանց, և զոհս յաղեսցեն դիւցազանցն Անդրոկրատեայ, Լեւկոնեայ, Պիսանդրեայ, Դամոկրատեայ, Իպսիոնի, Ակտէոնեայ, և Պողիւդեայ. և մարտ մղեսցեն յերկրին իւրեանց, 'ի դաշտին Դեմետրի Եղեւսինեան և Պերսեփոնեայ։

Այլ 'ի պատգամէն վարանեցաւ յոյժ յայնժամ Արիստիդէս։ Քանզի դիւցազունքն՝ որոց զոհ հրամայէր, էին Նահապետք Պղատացւոցն. և քարանձաւ Յաւերժահարսանցն Սփրագիտեանց էր 'ի բլուր մի Կիթերոնեայ՝ 'ի կողս ամառայնոյ մտից արեւու. և էր 'ի քարանձաւին՝ որպէս ասեն՝ 'ի նախնումն պատգամախօս, յորմէ և կոկոզանային բազումք 'ի գաւառականաց անտի, և անուն կարդային նոցա ՆԻՄՓՈԼԷՊՏԻ, այս է՝ Յաւերժահարսնամոլք։ Առ այս և ըստ պայմանի յաղթութեանն, այն՝ եթէ յերկրի իւրեանց մարտ մղեսցեն Աթենացիք և 'ի դաշտին Դեմետրի Եղեւսինեան, պարտ էր անդրէն ըզմարտն առնուլ տանել յԱտտիկէ։ Մինչդեռ յայս վարանս կային, Արիմնեստոս զօրավար Պղատացւոց 'ի քունել իւրում՝ թուէր նմա հարցանել 'ի նմանէ Արամազդայ Փրկողի վասն խորհրդոյ մտացն Հելլենացւոց, և նմա պատասխանի տալ, եթէ "Առ վաղիւն ով տէր, առեալ ածցուք մեզ զզօրն յԵղեւսինէ, և անդ ըստ պատգամին Պիւթեան մարտ եդեալ կռուեսցուք ընդ բարբարոսաց". բայց Ա-

զի և 'ի հոլովել ամաց բազմաց, Աղեքսանդր մեծ կալեալ զԱսիա և եկեալ պատուար ածեալ զՊղատեաւ, 'ի ձայն քարոզի յՈղոմպիականսն հռչակեր՝ զքաղաքն զայն տալ Պղատացւոց՝ շնորհ եդեալ առաջինն մեծանձնութեան նոցա, զի մանաւանդ իւր ետուն նոքա Հելլենաց զգետինն իւրեանց 'ի մարտին Մարաց։

Բայց յայնժամ 'ի զատաւորել զքաջականին՝ հակառակութիւն յուզեր ընդ Աթենացիս և ընդ Տեգէացիս վասն աջւոյն. զի Լակեդեմոնացիք կալեալ անդամոր զաջոյ թեւն, խնդրէին և Տեգէացիք ըստ սովորութեանն զձախոյն՝ պանծացեալք ընդ նախնիսն իւրեանց։ 'Ի սրտմտութիւն բորբդեցան Աթենացիք ընդ խնդիրն և ընդ պարծանսն. յառաջ եկաց Արիստիդէս խօսեցաւ և ասէ. "Ժամանակդ՝ որ առաջի կայ՝ ոչինչ ներէ 'ի պայքար ընդ Տեգաացւոց մտանել վասն ազնուականութե և քաջութեան։ Այլ առ ձեզ ով Սպարտացիք են բանք մեր և առ ամենեսեան. զքաջութիւն ոչ տեղին բառնայ և ոչ տայ։ Որ զինչ և տեղի հրամայեսջիք մեզ 'ի դաստուղ՝ մեք զնոյն կալեալ և շքեղ յարդարեալ, դուն գործեսցուք ստուերաբածս 'ի վերայ առաջնոցն մերոց չածել նախահատակութեանց։ Քանզի հասեալ կամք ոչ զժտել ինչ ընդ նիզակակիցս, այլ մարտ դնել կռուել ընդ Թշնամիս. ոչ պարծել յորանալ ընդ նախնիս, այլ զմեզ ինքեանս յանդիմանել առջոյն Եղլադայ իրքն աստ

և 'ի սոցանէն երկուք ոմանք՝ Եպքինէս Լամպրէաս և Ագեսիաս Աքարնեան՝ որոց մեծ էր դատաստան ճռասուն՝ փախստեամբ մտզապուր լինէին ∙ բայց և զայլսն ինքնին Արիստիդէս արձակեաց յազատութիւն ∙ քաջալերէր և ապաշաւանաց ժամանակ տուեալ այսուիկ մարդկանն՝ որ յաներևոյթս 'ի ժամուն կարծէին զանձինս ∙ սակայն և զայն տայր գիտել նոցա՝ զի առեան մեծ աւագին արդարութեան կայցեն նոքա անձանց զմարտն զայն՝ 'ի դերևս զամբաստանութիւնն հանել, ողջախոհ մտածութե̃ նախհաստակեալ խրատապէս 'ի վերայ հայրենեացն ։

Այսոցիկ այսպէս եղելոց, ձեռնամուխ այնուհետև 'ի կռուն լինէր Մարդոնիոս, հորդան տուեալ ամբաւ այրուձիոյն ընդդէմ Հելլենացւոցն՝ որ բանակեալ կային առ ստորոտովն Կիթերոնի յամուր վայրս և յառապարս, բայց 'ի Մեգարացւոցն երից հազարաց որ բանակ 'ի դիւրին հարեալ էին ∙ վասն որոյ և տագնապեցան յերեսաց այրուձիոյն, որ 'ի կողմանց դիմեալք պատեցին զնոսա ։ Արդ հրեշտակ մի փութապէս արձակէին Մեգարացիք առ Պաւսանիաս ձեռն տալ նոցա, զի չէին իսկ բաւական միայնակ զդէմ ունել այնչափ բազմութեան զնդին բարբարոսաց ։ Զայն լուեալ Պաւսանիաս և տեսեալ ևս զՄեգարացիսն 'ի տեղատարափն ծածկեալ նետից և 'ի տագնապի, ո՛չ կարացեալ 'ի ժամուն ձեռն տալ սպարտացի ապառա-

անդէն զմեռեալն՝ խուճապեալ 'ի փա-
խուստ դառնային ։

Բայց զմեծութիւն նահատակութեանն զխոացին Հելլենացիք ոչ 'ի դուզնաքէից անտի տապաստ անկելոցն, այլ 'ի կոծոյն և յաշխարհէ բարբարոսացն․ քանզի 'ի պատճառս մահուն Մասիստիոսին հատին կտրեցին նոքա զվարսս իւրեանց և զերիվարացն և զջորւոցն, և յողբ և 'ի լալիւն լցին առ հասարակ զդաշտագետինն․ իբրու որք զերկս միացին յառնէն, որ քաջութեամբ արութեամբ և տէրութեամբ՝ ընտանեացն էր վեհագոյն յետ Մարդոնիոսին ։ Այլ զկնի հեծելամարտին այնորիկ՝ բանակք երկոքին դադարեցան 'ի կռուոյն հարուստ ժամանակ․ քանզի և իղձք և երդահմայք 'ի սպանդից անտի՝ յաղթութիւն հմայէին և Պարսից և Հելլենացւոց՝ եթէ 'ի պաշտպանութեան միայն կացցեն․ դարձեալ պարտութիւն՝ եթէ առաջին գրգռեսցեն նոքա 'ի մարտ ։

Բայց քանզի նպարակ և պայրենիք մի ևս պակասէր Մարդոնիոսի, իսկ անդուստ Հելլենացւոցն դունդ երթալով երթայր և ստուարանայր 'ի նորեկ զօրականէն, չհանդուրժեալ Մարդոնիոս՝ եդ 'ի մտի անդէն 'ի ծագել առաւօտն խաղալ անցանել ընդ Ասոպայ և յանակնկալ ժամու անկանել 'ի վերայ Հելլենացւոց․ և ընդ երեկոյնն կանխեալ ազդ առնէր զօրագլխացն ։ Այլ 'ի մէջ գիշերոյն ձիաւոր ոմն այր մերձեցեալ անշշունջ 'ի զօրն Հելլենացւոց մօտ առ

Յայնժամ կոչեալ զզօրավարութիւնն՝ հրաման տային 'ի կարգի զզօրն ունել, իբրու որ արագ արագ խառնեսցին 'ի մարտ։ Բայց 'ի նմին պահու՝ ըստ որում Հերոդոտոսն պատմէ՝ հարցանէր Պաւսանիաս զկամսն Արիստիդեայ, անցանե՞լ արդեօք նմա յաջոյ թեւն հանդերձ իւրովքն Աթենացւովք և ճակատել ընդդէմ Պարսից, զի լաւ ևս մարտ մղեսցեն ընդ նոսա՝ զփորձ փորձեալ զնոցա և արիացեալք յառաջին յաղթութենէն. իսկ ինքեանն տալ զձախոյն՝ 'ի դիմի հարկանել Հելլենացւոցն՝ որ 'ի կողմն անցեալ էին Մարաց։ Լուեալ զայս զօրագլուխք Աթենացւոց, այր անխորհուրդ ասէին զՊաւսանիաս և դժուարամբերելի, զի առհասարակ զայլսն անփոփոխ 'ի կայան պահեալ՝ միայն նա զԱթենացիսն 'ի վեր և 'ի վայր առեալ շրջշրջէ՝ զխմագրաւ զնոսա առնելով իբրև զգերիս Իղոտաց ընդդէմ այլընտիր զօրուն թշնամեաց։ Բայց Արիստիդէս 'ի մէջ եկեալ խելամտեցուցանէր զնոսա, զի որք վայրեկ մի յառաջ 'ի պայքար մտեալ ընդ Տեգէացւոց վասն ձախոյ թեւոյն և ճոխացան 'ի պատուին, իսկ յորժամ Լակեդեմոնացիք մատադիւր տեղի տան նոցա վասն աջոյն՝ իբրու զառաջնորդութիւնն տուեալ նոցա, դժկամակս բերեն զշուքն. և ոչ մեծ համարէին մարտ դնել կռուել՝ ոչ ընդ ցեղակիցսն և ընդ ազգակիցսն, այլ ընդ խժդժիցն և բնակաւոր թշնամեացն։

'Ի բանից աստի նոքա 'ի գեղեցիկ կա-

փոփոխութեանն Պարսից, անդրէն փոխեցաւ յաջոյ Թեմս. զնոյն առնէր և Մարդոնիոս՝ կրկին անցեալ ՚ի Հախոյն ընդդէմ Լակեդեմոնացւոց. և այսպէս առաջ անցեալ կործանէր զօրն առանց ինչ գործոյ պատերազմի:

Բայց յետ այնորիկ Հելլենացիք խորհուրդ ՚ի մէջ առեալ՝ համատարածեալն խաղալ և ՚ի բացեայ բանակ հարկանել ՚ի վերայ մի բարեջուր, զի աղբիւրք՝ որ անդանօր՝ խանգարեցան յայրուձիոյ բարբարոսացն: Իբրև գիշեր ՚ի վերայ հասանէր նոցա, և զօրագլուխքն ածէին ՚ի տեղի բանակ հաստատեանն, զօրականք ոչ էին այնպէս մտադիւր և միախումբ զհետ խաղացեալ, բազմութիւն ՚ի նոցանէն յառաջին պատնիշացն ՚ի գաւիս ելեալ միանգամ՝ գէմ եդեալ գնային ՚ի քաղաքն Պղատէացւոց. ուստի և աղմուկ շփոթից յուզէր ՚ի նոսա՝ մինչդեռ յայսկոյս յայնկոյս օթեւանք՝ անկարգաբար հարկանէին վրանս: Իսկ Լակեդեմոնացիք յակամայ կամս մնացին անդ վերջոյանեալք: Քանզի Ամոմփարետոս այր վայրագ և գիւմագրաւ ՚ի վտանգս, անդրաոտին գոռ պատերազմասէր, չհանդուրժեալ ընդ բազում գեղգերանս մարտին, և յայնժամ զայն չու զօրուն՝ փախուստ անշուշտ կոչէր, և ասէր՝ իւրով իսկ գնդաւն անդրէն զտեղին կալեալ անշարժ՝ ընդդէմ ունել Մարդոնիոսի: Իսկ յառնել առ նա Պաւսանեայ վասն չուոյն այնորիկ՝ իբրև ՚ի վէճս անկեալ Հելլենացւոց և ՚ի

ձեռն տալ օգնականութեան, մինչդեռ անդ խառնեալ խակ էր գոռ պատերազմին։

Արդ իբրեւ յայնժամ 'ի զոհէին իւրում պարապեալ կայր Պաւսանիաս եւ բարեգուշակք չէին զոհքն, հրաման տայր Լակեդեմոնացւոցն 'ի բաց զվահանսն դնել առ ոտս իւրեանց, եւ զտեղի կալեալ անկառոյցք առ ինքն՝ չընկրկել զթշնամիսն. եւ ինքն դարձաւ 'ի զոհել։ Այլ անդուստ այրուձի թշնամեացն յանդուգն խիզախեալ միջամուխ մօտ նետաձիգ լինէին, զի եւ 'ի սպարտացւոց անոմն ոմն այր խոցեալ, անդանօր եւ Կալլիկրատէս այր՝ որպէս ասեն՝ յոյժ գեղաւոր քան զամենայն Հելլենացիս եւ հասակաւ բարձր քան զորս 'ի բանակին՝ աղեղնահար եղեալ, մինչդեռ յոգւոցն պարզել սկսաւ՝ ասէր ոչ զմահն ողբալ որ աղագաւ հասեալ կայ 'ի փրկութիւն Ելլադայ, այլ զի անգործ 'ի նահատակութենէն մեռանի։ Եւ թէպէտ եւ այնպէս բուռն էր տագնապ աղետից նոցա, սակայն եւ յոյժ սքանչելի էր համբերատար ժուժկալութիւն Սպարտացւոցն 'ի ժամուն, զի չընկրկեցին զթշնամիսն որ 'ի վերայ խուժէին. այլ կացին մնացին այնպէս ակնկալեալք գեղեցիկ ժամուն յայտնութեան նոցա առ 'ի յաստուծոյ եւ 'ի զօրավարէն, քաջութեամբ բերեալք անդանօր նետահար տապաստ անկանել անշարժք յիւրաքանչիւր կարգին։

Եւ պատմեն բազումք՝ եթէ 'ի զոհել անդ Պաւսանիասայ եւ կալ յաղօթս վայր

շնչքն և մարմնոյն առ հասարակ դիզացեալ՝ խռովեալ կազմ զամենայն ույժն Ճգնեցու-ցի Թափել 'ի ժամուն։

Իսկ լամուռ անդուստ լինէին բարբառոյք՝ եթէ ընդ մարդկան այնուհետև 'ի մէջ-դալ հասանէ նոցա, որ զկեանս 'ի բունին կալեալ՝ մահուչափ մարտ սաստիկ եղեալ կռուեսցին։ Յայնժամ 'ի հանդիպոյ ընդ-դարսկական վահանաց խիտ առ խիտ կալեալ՝ այնպէս նետաձիգ 'ի Սպարտացւոցն լինէին։ Իսկ որք առաջ առ առաջ կռուէ և հոծ՝ այնպէս յառաջադէմ խաղային շարժէին, և դիմեալք 'ի վերայ՝ զպարսիկ վահանսն հարեալ ընդոստնէին, և աշտէիւն խոցեալք 'ի դէմս և 'ի լանջս նոցա՝ Թաւալգլոր առ-կանէին զբազումս 'ի նոցանէ. Նոքա Թէ-պէտ և տապաստ անկեալք, արութիւն նա-հատակութեան ցուցեալ՝ մերկ ձեռօք բուռն զաշտէիցն հարեալ՝ ջարդէին. և ստուերամերկք եւս եղեալ ոչինչ վայրա-պար, միանգամայն և զկորոզս խորեանց 'ի գործ առեալ և զզաշնակամ՝ և զատապարան վանեալք և 'ի վերջ եկեալք այնպէս հա-րուստ ժամս կռուեալք 'ի դիմի հարման։

Բայց անդուստ Աթենացիք դէտ անդ կալեալք Սպարտացւոցն, իբրև ձայն մար-տի ահագին աղաղակին հասանէր առ նո-սա, միանգամայն և հրեշտակ մի եւս՝ որ-պէս ասեն՝ պատգամաւորեալ զօրքը առ նոսա 'ի կողմանէն Պաւսանեայ վասն ան-ցիցն անցելոց, փութապէս առաջ առաջ շարժեցան խաղացին նոքա դալ Թիկունս

'ի ձեռն առն Լիւդացւոյ՝ զոր Մարդոնիոս ինքնին արձակեաց առ նա, ըստ որում և առ Տրոփոնեանն՝ զայր ոմն Կարիացի։ Կարիացւոյն պատասխանի տայր հարցուկն 'ի բարբառ Կարիացի. իսկ Լիւդացւոյն՝ մինչդեռ 'ի քուն կայր 'ի գաւթին Ամփիարեայ, թուէր իմն այնպէս մտանել առ նա պաշտօնէի ուրումն աստուածոյն, և հրամայել նմա գնալ 'ի բաց. իսկ 'ի կալն նորա անդէն տակաւին՝ վէմ մի մեծ 'ի գլուխն արձակել նորա, և կարծել դիտապաստ 'ի հարուածոյն լինել։ Օրինակ զայս պատմեն պատահել բանին։

Իսկ փախստեայքն հալածեալ վանեցան մինչև 'ի ներքս 'ի չերտափակն իւրեանց։ Այլ յետ սակաւուց և Աթենացիք Թիկնադարձոյց առնէին զԹեբայեցիս, տապաստ արկեալ 'ի դաշտին ոգիս երեքհարիւր յաւագաց անտի նոցա և 'ի փառաւորացն։ Ապա զհետ մտեալ փախըստէիցն և լուր առեալ զբարբարոսացն՝ պաշարել 'ի պատնշին, թողեալ զփախստեայսն Հելլենացւոց՝ դիմեցին նիզակակիցք ընդդէմ պատնշացն. և հասեալք առ Լակեդեմոնացիսն որք բնաւ իսկ վերջացեալն պատնըշամարտ լինել, սոքա հասին կալան ըզբանակետղն և հարուածս անհնարինս ածէին 'ի վերայ. քանզի և ասեն իսկ՝ յերեսուն բիւրուց անտի բարբարոսաց՝ քառասուն հազարաց միայն ապրել փախստեանք ընդ Արտաբազայ։

Բայց որք յայնժամ 'ի վերայ Ելլադայ

մարտ եղեալ կռուեցան, հազար երեք հարիւր և վաթսուն ոգիք տապաստ անկան 'ի նոցանէ. յորոց յիսուն և երկու էին Աթենացիք՝ առհասարակ յԱնտիոքեան ցեղէ մեծապէս արութեամբ նահատակեալք՝ որպէս Կղիդեմոս ասէ. և վասն այնորիկ Անտիոքեանք զոհ զոհէին Սփրագիտեան Յաւերժահարսանցն 'ի Պիւթեան պատգամէ վասն յաղթութեանն 'ի հասարակաց գանձէն : Իսկ 'ի Ղակեդեմոնացւոց անկան իննսուն և մի, և 'ի Տեգէացւոց անտի՝ վեշտասան : Այլ զարմանալի է Հերոդոտոս. եթէ զի՞րդ սոցա միայն ասէ կռուել ընդ բարբարոսացն, և ոչ այլոց Հելլենացւոց. քանզի բազմակոյտ դիականցն անդանօր և նոցուն շիրիմք՝ առհասարակ Հելլենացւոց վկայեն զյաղթութիւնն. և եթէ արդարև այլք առհասարակ հանդիսատեսք կացին անդանօր և միայն քաղաքք երեք նահատակեցան, ոչ արդեօք 'ի վերայ սեղանոյն արձանագրեալ էին, եթէ " Զայս երբեմն Հելլենացիք՝ յաղթական զօրութեամբ 'ի գործ Արեսի զՊարսս վանեալք, ազատն Ելլադայ՝ զհասարակաց կանգնեցին Արամազդայ սեղան ազատողին " : Այլ զմարտ զայս մարտեան՝ ըստ Աթենացւոցն՝ 'ի չորրորդի աւուր Պոեդրոմիոնին. և ըստ Բիովտացւոց՝ 'ի քսաներորդի եօթներորդի Պանեմոնի, յորում աւուր և մինչև ցայսօր 'ի Պղատեա կատարի աշխարհաժողովն Հելլենացւոց, և քաղաքացիքն զոհ յաղեն Արամազդայ

փրկողի վասն յաղթութեանն ։ Իսկ յաղագս տարբերելոյ աւուրն չեն զարմանք. զի և առ մեզ՝ ուր ճշգրտագոյն ևս են այժմիկ իրք աստեղաբաշխութեանն, աւուրք նոյն՝ առ ոմանս յառաջս ամսոյն են, և առ այլս՝ 'ի սկզբանն ։

Յետ այսորիկ իբրև Աթենացիք չետուն տեղի Սպարտացւոց 'ի փառս քաջութեան՝ և թոյլ չտային նոցա կանգնել սեպհական նշան յաղթութեան, արագ արագ յանժամ խանգարեալ տապալէին արդեօք իրք Հելլենացւոց՝ գրգռեալք և օժտեալք 'ի միմեանց և 'ի զէն ընթացեալք ; եթէ 'ի մէջ եկեալ Արիստիդէս չէր մեծապէս ամոքեալ զզօրագլուխսն՝ առաւել ևս զԼէօվկրատէս և զՄիրոնիդէս, զպայքարն զայն 'ի դատաստան ապսպարել Հելլենացւոց ։ 'Ի խորհուրդ ապա մատեալ Հելլենացւոց վասն բանին, յարեաւ եկաց Թէոգիտոն Մեգարացի և ասէր՝ զփառս յաղթութեան ոչ Աթենայ ընծայել և ոչ Սպարտիոյ՝ այլ այլոց ումեմն 'ի քաղաքաց, եթէ մարտ ընտանի յուզել չկամեցին ։ Յետ նորա յարեաւ Կղէոկրիտոս Կորնթացի. և մինչդեռ այր այր ապասեալ մնայր՝ խնդրել նմա զփառսն զայն վասն իւրոցն հայրենեաց, (քանզի և յետ Սպարտիոյ և Աթենայ՝ քաղաք համբաւաւոր էր ինքնին Կորնթոս), բարբառեցաւ նա հեշտալուր ամենեցուն և զարմանալի. քանզի թէև ածեալ Պղատացւոց, խորհուրդ ետ վասճան առնել գժտութեան, և զնոյն փառսն

տեալ, ապաստէզս հատանելով հազար 'ի միում աւուր: Ողջոյն տուեալ քաղաքացեացն՝ եւ զկրակն, և ինքն անդէն տապաստ անկանէր. և վայր մի այնպէս կացեալ՝ փչէր զոգին: Զնա Պղատացիք առեալ թաղեցին 'ի մեհենին Եւկղեայ Արտեմիդեայ, և արձանագրեցին զայս քառաչափ. «Չոքաւ Եւքիդաս 'ի Դեղփիս, և դարձաւ 'ի նմին աւուր»: Այլ բազումք այն են՝ որ Եւկղեա կոչեն և իմանան զԱրտեմիս. իսկ կէսք՝ եթէ էր նա դուստր Հերակլեայ և Միւրտեայ՝ դստեր Մենետիոսի և քեռ Պատրոկղեայ. և զի կոյս մեռաւ՝ շուք մեծապէս ընկալաւ առ Բիովտացիս և առ Լոկրացիս. զի և յամենայն հրապարակս նոցա կանգնեալ կայ բագին և դրօշեալ նորա, ուր փեսայք և հարսունք զոհ զոհեն՝ մինչչև ածեալ հարսանեացն:

Իսկ յետ այնորիկ եկեղեցի աշխարհօրէն խմբեալ 'ի Հելլենացւոց, վճիռ զայս արձանագրեաց Արիստիդէս. զի ողջոյն յԵլլադայ ամի ամի խմբեսցին 'ի Պղատէա արք աւագք խորհրդականք և պատուիրակք, զի անդ յամենայն հինգ տարւոջ մրցեսցին խաղք Ազատականաց. և առհասարակ յԵլլադայ զօրաժողով լիցին 'ի մարտ ընդդէմ բարբարոսաց, ասպարաւորք բիւր մի, և այրուձի հազար, և նաւք հարիւր. և զի՝ և Պղատացիք յազատութիւն գրեալք՝ համարեսցին նոքա իբրև որեար անկապուտ և նուիրական աստուծոյ, և գործ նոցա լիցի զոհ զոհել վասն Ելլա-

զայս ։ Իբրև հաճեալ հաւանեցան առհա-
տարակ, մնացաբիւր և Պղատացիք յանձին
կալան առնել ամի ամի յուղարկաւորութիւն կա-
տարել Հելլենացւոցն՝ որ անդ թաղեցան.
զոր և տօնեն նոքա մինչև ցայսօր ժամանա-
կի օրինակ զայս ։

'Ի վեշտասաներորդի աւուր Մեմակտե-
րիոնի՝ զոր Բիովտացիք կոչեն Ալալկոմե-
նիոն, յուղղի անկեալ ածեն հանդիսաւոր
Թափօր ընդ այգանալ աւուրն. յառաջըն
փողահարն հարկանէ զնշան պատերազմի. ա-
ծեալ զան զկնի կառք լի մրտենեօք և բո-
լորիւք պսակաց, և ցուլ մի սեաւ ։ Զհետ
զան սափորք ձօնից նուիրաց գինւոյ և
կաթին, և սրուակք իւղոյ և օծանելեաց՝
բարձեալք յազատ պատանեաց. (զի և օ-
րէն չէ ումեք 'ի ծառայից մատնել 'ի հան-
դէսն յիշատակի մեռելոց 'ի վերայ ազա-
տութեան) ։ Յետ ամենեցուն անցեալ
գայ իշխանաւագեա Պղատացւոց. սա երբեք
իշխան չէ մերձենալ յերկաթ, և հանդերձ
այլ չարկանէ բայց սպիտակ. այլ յայն-
ժամ պատմուճան արկեալ ծիրանի, բար-
ձեալ 'ի ձեռին կուժ մի 'ի դիւանէն, սու-
սերաւոր անցեալ ընդ քաղաքն գայ 'ի
գերեզմանսն ։ Ապա ջուր առեալ յաղբե-
րէն՝ ինքնին լուանայ զսիւնսն և օծանէ իւ-
ղովն, և փողոտեալ զցուլն 'ի վերայ խա-
րուկին, և յաղօթս կացեալ առ Արամազդ
և առ Հերմէս երկրայինն՝ հրաւէր կարդայ
քաջորերոյն այնմիկ որ մեռան 'ի վերայ
Եղլադայ՝ 'ի ճաշ և 'ի ճաշակ յարենէ

անտի: Ապա լցեալ բաժակ մի գինի և հեղեալ զայն, ասէ զայս. «Ես ինքնին մատռուակեմ քաջորերոյն այնմիկ, որ տապաստ անկան 'ի վերայ ազատութեան Հելլենացւոց»: Արդ Պղատացիք զնոյն կարգ պաշտաման պահեն մինչև ցայսօր ժամանակի:

Եւ կատարեալ զայսոսիկ՝ իբրև դարձ յԱթէնս արարին Աթենացիք, տեսեալ Արիստիդէս՝ զի ռամկապետութիւն խընդրեն նոքա. և զմտաւ եւս ածեալ զարժանիս ռամկին 'ի պատճառս արութեան քաջութեան նոցա. և զի՝ և հեշտին չէր 'ի ժամուն բռնանալ 'ի վերայ նոցա, զի զէն 'ի ձեռին ձոխացեալք էին, և պերճացեալք 'ի վերայ յաղթութեանցն զոր տարան, գրեաց վճիռ՝ զի վարչութիւն քաղաքին հասարակ կացցէ ամենեցուն, և իշխանապետք ընտրեսցին առհասարակ յամենայն Աթենացւոց: Եւ յասել երբեմն Թեմիստոկղեայ առ ժողովուրդն, եթէ խորհուրդ անկաւ 'ի միտս իւր 'ի գաղտնեաց կարգել՝ սակայն օգտակար քաղաքին և փրկաւէտ, ասաց նմա ժողովուրդն՝ պատմել զխորհուրդն յունկն Արիստիդեայ միայն, զի նա 'ի քննին առցէ: Իբրև 'ի վեր Արիստիդեայ հանէր Թեմիստոկղէս զխորհուրդն՝ եթէ հրկէզ զնաւահանգիսն պա՛րտ է առնել զՀելլենացւոց, զի այնպէս 'ի բարձրութիւն մեծ ելցեն Աթենացիք և առհասարակ տիրասցեն, եկն եկաց յայնժամ Արիստիդէս յանդիմանս ժողովրդեանն և

տանէր. Գործ՝ զոր Թեմիստոկլեան խորհէր, չէ՛ր ինչ քան զայն առաւել օգտակար, և չէ՛ր ինչ քան զայն առաւել անիրաւ։ Իբրև զայն լուան ժողովուրդք, պատուիրեցին Թեմիստոկլեայ՝ մի՛ ևս այլ անձնէն ժտել վասն բանին այնորիկ։ Այնչափ իմն արդարասէր էին ժողովուրդք, և այնչափ վստահացեալք յԱրիստիդէս։

Յետ այսորիկ առաքեալ Արիստիդէս 'ի զօրավարութիւն 'ի միասին ընդ Կիմոնի, դէտ ակն կալեալ տեսանէր՝ զի Պաւսանիաս և այլ ևս զօրագլուխք Սպարտացւոց ձիխաբար գնային ընդ նիզակակիցսն. այլ ինքն հեզաբար ցուցանէր բարս, և զԿիմոն ինքնին հեշտ յարդարէր և հաւասարակորդ 'ի զինուորութիւնսն. և այնպէս սա այս Արիստիդէս ո՛չ զէնս շարժեալ, ո՛չ նաւս խաղացուցեալ և ո՛չ այրուձի, քաղցր և հեշտալուր քաղաքավարութեամբն զգօնացաւ հանել առնուլ 'ի Ղակեդեմոնացւոցն զնախաթոռ առաջնութիւնն, և նոքա չիմացան։ Քանզի և անդստին Աթենացիք փարելիք գտեալ այլոցն հելլենացւոց 'ի պատճառս արդարութեանն Արիստիդեայ և մարդասիրութեանն Կիմոնի, իսկ յայնժամ առաւել ևս՝ 'ի պատճառս ընչաքաղցութեանն Պաւսանեայ և վայրենութեանն, այն՝ որ ցանգ սրտմտութեամբ և յայլատագոյնս գնայր ընդ զօրագլուխս նիզակակցաց, և պատուհաս 'ի վերայ կացէր զօրականին 'ի գանս հարուածոց, կամ Թէ խարիսխ երկաթի արկանելով զան-

ձամբ նոցա՝ այնպէս յոտին տայր նոցա կալ զօրն ողջոյն. և նախ քան զՍպարտացիսն ումեք այլ չտայր թոյլ առնուլ խըշտիս, և ոչ խոտ, և ոչ գնալ ջուր առնուլ յաղբերաց. այլ անդանօր ոստիկանս կացուցանէր վարոցաւորս 'ի բաց վանել զմերձեցեալսն: Վասն այսորիկ տալս իբրև յաւուր միում բողոք բարձեալ Արիստիդէս՝ խնդրէր խրատ 'ի ներքս բերել նմա, նա խեթիւ հայեցեալ ասէր՝ չունել ժամանակ միտ դնելոյ բանիցն. և ոչ լուաւ նմա:

Ապա յետ այնորիկ խմբեալ առ Արիստիդէս նաւապետք և զօրավարք Հելլենացւոց, մանաւանդ Քիացիք և Սամոսացիք և Լեսբացիք, ածեալ հաւանեցուցանէին զնա առնուլ զանձամբ զբարձերէց աւագութիւնն և ժողովել զնիզակակիցսն, որք 'ի վաղնջուց իսկ խնդրէին լծընկէց 'ի Սպարտացւոցն լինել՝ հնազանդեալք Աթենացւոց: Իբրև պատասխանի առնէր նոցա Արիստիդէս՝ հարկ և արդարութիւն նկատել նմա 'ի բանս նոցա, սակայն և արդեանց պէտք էցեն 'ի ժամուն ցուցանել՝ 'ի վստահութիւն, և 'ի լինել այնմ՝ ոչինչ թոյլ տացէ և ինքն խուժանին փոխել միւանգամ 'ի կարծեացն. յայնժամ երդձնակուռք դաշնաւորք լինէին Սամոսացին Ուլիադէս և Քիացին Անտագորաս, և մօտ 'ի Բիւզանդիոն դիմեալք յարձակեցան 'ի վերայ եռաթիոյն Պաւսանեայ որ յառաջոյ խաղայր այլոցն, և զնա 'ի մէջ փակեցին: Ցայն տեսիլ Պաւսանիաս 'ի վեր վա-

զեալ՝ 'ի մեծ բարեկութիւն պատմութեան ապատանաւորեալ 'ի վերայ կայակր, մայրիկ մի եա և ցուցանել նոցա՝ եթէ մեզ նոքա յարձակմանցն մեզան ընդդէմ խաբեաց հայրենեացն, և ոչ եւաւթիոյն նորա: Այլ նոքա հրամանան 'ի վերայ ամենին նորա երթալ չուէլ 'ի բաց, և զոհ եղեալ 'ի ժամուն՝ երթալ շնորհս ունել զեղեցիկ բախտին խաղոյ 'ի Պղատեան մարտին, որ ապազաւ միայն շուք նմա եղեալ Հելլենացիք՝ չածին նմա զարժանահաւան պատուհաս: Եւ այսպէս առաջ ընդվզեալք անցին նոքա առ Աթենացիս:

Այլ յայնժամ ինքնեղլապէս երևէր մեծ անձնութիւն Սպարտոյ և հանճար. քանզի լուր առեալ զխուոց զօրավարացն վատթարութեան 'ի պատճառս մեծի աւագութեանն, անդէն ինքնակամ հրաժեշտ տայր նա 'ի նախաթոռ զօրավարութենէն՝ ոչ եւս արձակեալ զօրավարս 'ի մարտ. լաւ համարեցաւ քաղաքացիս ունել պարկեշտս և հայրենեաց աւանդապահս, քան հրամանատար ողջոյն լինել Եղլադայ: Արդ Հելլենացիք անդուստ 'ի վերուստ առ զօրավարութեամբն Լակեդեմոնացւոց հարկս հարկանէին 'ի պէտս մարտից. իսկ իբրև կամեցան զնոյն հարկ բաշխել 'ի մէն մի քաղաքացն արդարապէս չափամանք, խնդրեցին զԱրիստիդէս յԱթենացւոց և 'ի նա յանձն առնէին յառնել զնալ և քննել զննել զզետինն և ըղհաստ, և այնպէս առաջ սահմանել խաբա-

քանչիւր զհարկսն ըստ չափու գոյին և բաւականութեանն ։ Ապա Արիստիդէս զմեծ զայն աւագութիւն առեալ յանձն, և Ելլադա յայնժամ խրրու եթէ զիւրն զամենայն 'ի մին յայն Արիստիդէս աւանդեալ, ել նա 'ի քաղաքէն աղքատ, և անդրէն դարձաւ առաւել աղքատ ․ 'ի նոյն գործ դրամահաշուին քաղաքավարեալ ոչ միայն անարատ սրբութ̃բ և արդարութ̃բ, այլ և մարդասէր բարոյիւք և ամենեցուն փարելի։

Որ աղագաւ՝ զո՛րօրինակ անդ ուրեմն ծերունիք մեծապէս 'ի գովութի առնուին զժամանակ կենացն Կոռնոսեան, սոյնպէս և յայնժամ նիզակակիցք Աթենացւոց զբաժ հարկին Արիստիդեայ, և անուն կարդային՝ Երանութիւն Ելլադայ ․ մանաւանդ՝ և յորժամ յետ սակաւուց կրկնեալ անսին զայն, և ապա՝ երեքկնեալ ևս ։ Քանզի բաժին Արիստիդեան էր չորեքհարիւր և վաթսուն քանքարաց ․ և ապա Պերիկլէս աճեցուցանէր իբրու երրորդ մասամբ ․ որպէս Թուկիդիդէս պատմէ՝ 'ի սկիզբն մարտին տալ նիզակակցաց Աթենացւոցն քանքարս վեցհարիւր ․ իսկ յետ մահուն Պերիկղեայ՝ վարիչք ժողովրդեան սակաւ յաւելեալ հասուցին 'ի չափ քանքարաց հազարաց և երից հարիւրոց ․ ոչ զի այնչափ ինչ բազմահանդերձ էր մարտն յերկարաձգութ̃բն և բազմադէմ պատահարօքն, այլ զի սովորեցուցին նոքա զժողովուրդն 'ի բաշխս դրամոց ․ առ այս՝ և 'ի պէտս Տեսարանացն, և 'ի կանգնել դրօշելոցն և մեհենիցն ։

Արդ հասեալ ժամանակաւ զգանձէին Արիստիդէս 'ի բաժ անդր հարկացն, ասեն՝ եթէ Թեմիստոկլէս ամենչս ասէր. իբրու եթէ՝ քան մարդոյ՝ ոսկեպահ արկեղացն առաւել 'ի դէպ գալ գովութեանն : Եւ զժպատեհս Թեմիստոկլէս վրէժ խնդրելոց բանիւն զազդողաբանութեանն՝ զոր երբեմն Արիստիդէս նմա 'ի դէմս ե՛հար : Քանզի էր զի՝ լուեալ Արիստիդեայ ասել Թեմիստոկլեայ, եթէ առաքինութիւն մեծագոյն զօրավարի՝ որպէս ինքն համարի՝ է ճանաչել և թշնամւոյն նախատեսել խորհրդոցն լինել. կրկնեաց Արիստիդէս և ասէ. “Դա՛ այդ ո՛վ Թեմիստոկլէ՛ս քաջ 'ի կարևորաց է. իսկ որ գեղեցիկ եւս է և արդարև արժանի զօրավարի՝ է ժուժկալութիւն ձեռաց“ :

Իսկ յետ այսորիկ տայր Արիստիդէս Հելլենացւոցն երդմնի լինել 'ի նիզակակցութեանն : Կոչէր և ինքն երդումն յանուն Աթենացւոցն. և անէծս եւս կարդացեալ՝ արկանել հրաշէկս երկաթոյ ամայր 'ի ծով : Այլ ապա հարկաւորեալ Աթենացւոց՝ որպէս թուի՝ յիրաց անտի տիրագոյն եւս իշխանութիւն 'ի ներքս բերել, յորդորեաց Արիստիդէս՝ 'ի գլուխ իւր առնուլ կուտել զերդմնահարութիւնն, եթէ այնպէս օգտակար իցէ՝ զայնօրինակ վարել յիշխանութեանն : Այլ Թէոփրաստոս համառօտ խօսելով վասն առնս, ասէ եթէ թէպէտ և բնաւ յատենինսն և առ քաղաքացիս արդարութեամբ զգանձէին էր

Արիստիդէս, սակայն 'ի հասարակացն՝ շատ ինչ գործէր նա ըստ պիտոյից հայրենեացն, որպէս զի ստէպ հարկաւորել յինչ մի անարդար: Քանզի և պատմէ, եթէ 'ի խորհել խորհուրդ յաղագս փոխադրութեան գանձուն 'ի Դեղոսէ յԱթէնս ընդդէմ դաշանցն կռուելոց, և 'ի թելադիր լինել Սամոսացւոցն, ասէր Արիստիդէս՝ եթէ արդար չէ բանդ, սակայն օգտակար:

Արդ՝ թէպէտ և այնչափ վերացեալ բարձրացեալ քաղաքն՝ հրամանատար 'ի վերայ բազմաց ժողովրդոց, նա եկաց մնաց յիւրում աղքատութեանն. և յամենայն 'ի կեանս յաւերժացեալ սիրել զփառս զաղքատութեն՝ ոչինչ պակաս քան զյաղթանակացն. որ և յարդեանցն վկայեցաւ: Քանզի Կալլիաս ջահընկալ ազգական էր Արիստիդեայ, իսկ թշնամիք Կալլիասայ ամբաստան կացեալ յատենի զնմանէ յաղագս գլխապարտ մնասուց, իբրև չափով առաջի եդին զամբաստանութիւնն, ապա 'ի բուն ամբաստանութեանն զարտուղեալ, սկսան խօսել առ դատաւորսն զայս ինչ և ասել. "Դուք ինքնին ճանաչէք քաջ զԱրիստիդէս Լիսիմաքեան, այր սքանչելի առ ամենայն Հելլենացիս: Արդ զիա՞րդ համարեցիք կալ դմա 'ի տան իւրում, տեսեալ զդա 'ի հրապարակիդ արկեալ գրդլեակ: Թերևս ո՞չ՝ որ 'ի հրապարակիդ պաղեալ տեսանի 'ի ցրտոյ, յիւրում տան նքթեալ կայցէ՝ կարօտեալ կարևորացն: Ցայսր ամենայնի վերայ՝ Կալլիաս այդ քեռորդի

միայն զԱրիստիդէս զայս՝ ասէ արժանափառ և մեծարոյ։ Քանզի Թեմիստոկլէս և Կիմոն և Պերիկլէս սրահիւք իմն լցին զեղին զքաղաքն և ընչեղութեամբք և այլ ևս բազմազգեմ ունայնութիւք. իսկ Արիստիդէս յառաջնորդութեան քաղաքին՝ զառաքինութիւնն ցանկ կալաւ կէտ նպատակի։ Եւ արդեօք հաստատիք մեծամեծք հեզութեան նորա՝ 'ի ներքս ընծային մեզ 'ի քաղաքավարութենէ անտի նորա առ Թեմիստոկլէս։ Քանզի թշնամի անդուլ ունելով զնա իւր յամենայն 'ի գործս քաղաքին, և 'ի սադրելոյ ևս նորա վտարանդի եղեալ, համայն և այնպէս յորժամ և զնոյն անցս անցուցանել ձեռնհաս իսկ էր Արիստիդէս ընդ Թեմիստոկլէս ամբաստանեալ իբրև մասնակից ընդդէմ հայրենեաց, երբէք նա ոչ յուշ ած զանիրաւութիւնն՝ զոր կրեաց. այլ մինչ անդանօր Ալկմէոնն և Կիմոն և շատք ևս ամբաստան կային զնմանէ, միայն Արիստիդէս ինչ մի 'ի տուգանս առն ոչ գործեաց և ոչ ասաց. երբէք և ոչ խնդաց տեսեալ զթշնամին յաղէտս ամբաւս, որպէս և ոչ խանդացաւ յառաջն տեսեալ զնա 'ի փառս։

Իսկ յաղագս մահու վախճանին Արիստիդեայ՝ կէսք ասեն պատահեալ 'ի Պոնտոս, ուր չոքաւ նա 'ի պէտս ինչ հասարակաց. և կէսք՝ յԱթէնս 'ի ծերացեալ հասակէն, մինչդեռ 'ի շուք պատուոյն կայր և սքանչացեալ իսկ էր առ քաղաքացիսն։ Այլ Կրատերոս Մակեդոնացի յաղագս

պխնեաց աստի աւանդեն նոքա և բողոք ևս բառնան, դարձեալ և յաղագս Արիստիդեայ ասեն զխեցեկոյս վճիռ վտարանդութեանն, սակայն յիշատակ չառնեն նոքա դատապարտութեանդ այդմիկ։

Արդ զգերեզմանն նորա ցուցանեն 'ի Փաղերոն, և ասեն զայն պատրաստեալ նմա 'ի դրամոց քաղաքին. զի և ոչ 'ի թաղումն բաւական ինչ եթող նա։ Եւ պատմեն եթէ զդստերս նորա հարսնացոյց Պրիտանիոն 3, և քաղաքն ինքնին երաշխաւոր լինէր վասն հարսանեացն, և առ մէն մի հարսանցն տայր օժիտ երից հազարաց դրամակշռոց։ Իսկ Լիւսիմաքեայ որդւոյն Արիստիդեայ ետուն ժողովուրդք հարիւր մնաս արծաթոյ, և նոյնչափ օրավար ծառատունկ գետնոյ. առ այս՝ և դրամակշիռս ևս չորս աւուր աւուր կարգեաց նմա և զվճիռն գրեաց Աղկիբիադէս։ Հանդերձ այսու՝ և դուստր մի ևս թողեալ Լիսիմաքեայ՝ անուն Պոլիւկրիտէ, տալ ետուն վճիռ ժողովուրդք՝ որպէս Կալլիսթենէս պատմէ՝ կարգել և դստերն զհաւասար պարէնս զյաղթականացն Ողիմպիականաց։

Իսկ Դեմետրիոս Փաղերեւս և Հերոնիմոս Ռոդացի, և Արիստոքսենէս երաժիշտ, և ինքնին Արիստոտէլ (սակայն եթէ որ յաղագս Ազնուականութեանն գիրք՝ իցէ 'ի հարազատացն Արիստոտելի), աւանդեն եթէ զՄիւրտոնէ թոռնուհի դստերն Արիստիդեայ բնակակից իւր արար Սոկրատէս իմաստուն. զի թէպէտ և կին այլ

ունէր Սոկրատէս, ժողովեալ և զնա զսպ-րխացեալն ’ի պատճառս տնանկութեանն և ’ի կարևորան կարօտութեանն: Սակայն Պանետիոս շատ իսկ ընդդէմ դատնայ սոցա՝ ’ի բանսն յաղագս Սոկրատայ: Սա այս Փաղերեոս յիւրում Սոկրատին ասէ ինքնին տեսեալ և զԼիսիմաքոս զորդն Թոռն դստերն Արիստիդեայ, յոյժ աղքատ. զի և զպարէն զաւուրն պատրաստէր անձին յերազահան իմն ախտէ՝ որով մեկնէր նա զերազս՝ նստեալ մօտ ’ի վայրն՝ անուն Եակքիոն. և Թէ՝ ինքնին Փաղերեաս Թախանձ արկեալ ժողովրդեան վասն մօր սորա և մօրաքերան՝ կարգէ նոցա յաւուրն ’ի պարգև նպաքարակխոս երիս: Եւ ապա սա ինքն Դեմետրիոս օրինադիր եղեալ՝ եա վճիռ՝ կարգել միում միում ’ի նոցանէ դրամակշեռս մի:

Եւ արդեօք չէ ինչ զարմանալ ընդ մեծապէս խնամս Աթենացւոց ’ի տնանկս քաղաքին. ուր նոքա լուր առեալ և վասն Թոռնուհւոյն դստերն Արիստոգիտոնին՝ հեքաքար վարեալ կեանս ’ի Լեմնոս ամուրի ’ի պատճառս աղքատութեանն, առաքեալ կոչեցին զնա յԱթէնս. և առեալ հարսնացուցին քաջազգի առն, տուեալ նմա ’ի պաշտպանական կալուած մի ’ի Պօտամոն: Իսկ զմարդասիրութեանն և զառատութեանն բարոյ և մինչև ցայսօր ’ի ներքս ընծայէ մեզ այս քաղաք օրինակս շատ, ոյր աղագաւ և իրաւապէս սքանչելի է և նախանձելի:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Յայժմեան Քախուլանդրեան բնագրին Յն. է՝ Թեմիստոկլէս: Բայց յայտնի է վրիպակն:

2. Բնութիւն մարդոյ չընդունի զանմահութիւն՝ անհաղորդապէս երբէք զԱստուած, այլ ընդունի հաղորդաբար 'ի բուն աղբերէ անմահութեանն Աստուծոյ, ըստ որում հոգիս մեր անմահ:

3. Պղատոնիոն: Տեղի յԱթէնս՝ ուր բուծանէին 'ի հասարակաց գանձէ որբս արդիւնաշատ քաղաքին:

ձին նոքա ականաւորք լինէին, տեսանի և զայս անուն կարդացեալ և Կատոնէի, ասէր ինքնին Կատոնն՝ եթէ թէպէտ և նոր է ըստ աւագութեանցն և ըստ փառացն, սակայն ըստ արութեանց քաջութեանց և առաքինութեան նախնեացն՝ վաղնջուց յոյժ է:

Բայց կոչէր նա յառաջին երրորդ անուամբ՝ ոչ Կատոնն, այլ Պրիսքոս 1, և ապա մականուն զուշիմութեանն ընկալանա՝ զԿատոն: Քանզի Հռովմայեցիք զայր փորձ և զհմուտ անուանեն Կատոս: Եւ էր նա 'ի դէմս կերպարանացն շառագոյն և խաժակն. ըստ որում զայս յայտ առնէ այրն, որ թշնամութեամբ քերթեաց նմա զվերտառուխին զայն, ասելով, եթէ « Զշառագոյնն զայն, զխածանողն, զխաժակնն, և ոչ 'ի մահուն արդեօք, զՊրիսքոսն՝ 'ի Դժոխս ներքինս Պերսեփոնէ առեալ ժողովեսցէ »: Առ այս և զքոյս մարմնոյն՝ աշխատութեամբն և ժուժկալութեամբն և անդաստանին յառաջին տիոց մննդականց զինուորութեան կարգօքն՝ յոյժ առողջ յաղարեաց նա և կորովի և քաջառողջ: Այլ զճարտարախօսութիւն համարեալ իբրու երկրորդ մարմին և գործարան գեղեցիկ և կարևոր այնմ՝ որ ոչն կեանս հանդերձեալ իցէ վարել անաւագ և անգործ, մարզէր զանձն 'ի նմա՝ փաստաբան եղեալ մերթ ընդ մերթ 'ի գիւղս գաւառին և յաւանսն՝ որոց միանգամ պէտք ինչ էին. և այնպէս նախ իբրև պայքարող քաջ համբաւեցաւ

զինուորականէն՝ ինքնին գործակից նմա
պատրաստէր զկերսն բազմագոյն մասամբ։
'Ի բանակին՝ միայն ջրմպու էր. իսկ 'ի
սաստիկ ծարաւոյն տանջել, խնդրէր քա-
ցախ. կամ թէ 'ի վատել յուժոյն՝ առ-
նոյր սակաւիկ մի և գինի։

Մօտ անդ յագարակս նորա էր ամա-
րանոց Մարկիոսի Կուրիոսի, այն՝ որ յաղ-
թանակ կանգնեաց երիցս։ Անդանօր ձեմ
առեալ ստէպ գնայր Կատոն, և դիտակն
կալեալ հայէր 'ի փոքրկութիւն կալուա-
ծոյն և 'ի տուն նորա այնպէս անպաճոյճ,
յորմէ և խելամուտ լինէր քաջալանու-
թեան առն. որ Հռոմայեցւոցն ընաւից
մեծագոյն և ընդ լծով ազգս նուաճեալ
քաջամարտիկս և զՊիւռոս ինքնին վանեալ
յիտալիոյ, եկեալ սա ինքնին իւրովք
ձեռօքն մշակէր զկալուած իւր փոքրիկ. և
յետ գյաղթանակսն տանելոյ՝ յայն տաղա-
ւար օթագայէր. և 'ի նմին դարձեալ դես-
պանք Սամնիտացւոց գտանէին զնա նստեալ
մերձ վառարանին և եփել շողգամս. և 'ի
մատուցանել նմա ոսկի շատ, նա չառնոյր
յանձն. և ասէր եւ՝ ոսկւոյ պէտս ամենևին
չունել մարդոյ՝ որում այն ճաշ շատ իցէ.
և թէ՝ նա գեղեցիկ եւս համարի՝ քան զառ-
նուլ ոսկւոյ՝ յաղթել ստացողացն նորա։
Յայսոսիկ մտախոհ՝ Կատոն դառնայր
գայր. և զիւր տունն յակն արկեալ և զկա-
լուածսն և զծառայսն և զօրինակ կենացն,
առաւել եւս ջանէր 'ի վաստակս, և զբազ-
մահանդերձ զծախսն նուազեցուցանէր։

Իսկ 'ի ժամանակին՝ յորում Փաբիոս Մաքսիմոս առ մինոյր զՏարանտացւոց քաղաքն, Կատոնին պատանեակ՝ 'ի զինուորութեան կայր նորա. անդանօր հիւր եղեալ նորա Նէարքոսի ուրումն Պիւթագորեանն՝ ուսանելն զնէր բանից նորա. և լուեալ 'ի նմանէ խոհեմասիրել զնոյն բանսն, զոր և Պղատոն ասէր, կոչեալ զհեշտութիւնն՝ հրապոյրս սատանի 'ի չար անդր, և կոչէր ևս զմարմինն՝ առաջին աղէտս հոգւոյն, յորմէ մաքրեալ ազատանայ հոգին խորհրդովք՝ որք անջատիչքն իցեն 'ի կրից մարմնոյ. յայնժամ Կատոնի սաստիկ ևս հաւանեալ 'ի սէր զեղջիկ անառատութեան և ժուժկալութեանն: Սակայն ասեն՝ անյագաւն ուրեմն պարապել Կատոնի 'ի դպրութիւնս Հելլենացիս. և անցեալ ևս էր զաւուրբք՝ յորժամ բուռն եհար նա 'ի մատեանս նոցա, և շահ մեծապէս առթեաց անձին 'ի Ճարտարաբանութենէն Թուկիդիդեայ, և առաւել ևս 'ի Դեմոսթենեայ: Եւ արդեօք մատենագրութիւնք նորա լի և զեղուն են վկայիւք և պատմութեամբք Հելլենացւոց. և յառակաց նորա և յառածից բազում այն են՝ որ թարգմանեալ իսկ են ըստ բառին:

Ջայնու ժամանակաւ էր այր ոմն քաջատոհմիկ յոյժ 'ի Հռոմայեցիս և առամեծար: Սա այր կորովամիտ՝ խելամուտ էր դեռաբուսիկ առաքինութեանն և քաջամոյն բարոյիցն բուծանէր զայն, և 'ի փառս ևս յառաջադէմ առնոյր ածէր:

Եւ էր սա Վաղերիոս Փղակկոս ։ Էին սորա արարք սահմանակիցք Կատոնին. լուեալ սա յընտանեկացն զվաստակ ձեռին նորա և զքաղաքավարութիւն կենացն՝ զարմանայր, զխո՛րդ նա վաղ քաջ ընդառաւօտն յարուցեալ երթայր 'ի հրապարակ անդր ձեռն տալ կարօտելոցն. և ապա դարձեալ յագարակն՝ վաստակէր 'ի միասին ընդ ընտանեացն՝ կողոբ արկեալ զանձամբ ձմերանի, իսկ մերկ՝ ամարայնի. և 'ի միասին ընդ նոսա նստել և ուտել զնոյն հաց և ըմպել զնոյն գինի. և լուեալ ևս էր 'ի նոցանէ զնորա մարդասիրութենէն և զչափաւորութենէն, և ինչ ինչ ևս 'ի համճարեղ զրուցացն. ապա հրաւիրէ Վաղերիոս զԿատոնն յընթրիս ։ Անդանօր կենակից գոլով նմա, և քաջիկ ևս 'ի վերայ կացեալ հեզ և մարդասէր բարոյից նորա, իբրև տունկ գոլով նա նորատունկ՝ որում մշակութեան պէտք իցեն և քաջաբեր գետնոյ, յորդոր 'ի ներքս տայր նմա յառաջ գնալ 'ի Հռոմ քաղաք և ձեռնամուխ 'ի գործս լինել ։

Իբրև չոգաւ նա 'ի Հռոմ, անդէն 'ի ձեռն գործակցացն գտանէր իւր թիկնածուս և բարեկամս. և 'ի Վաղերիոսէ դարձեալ շուք յաւելեալ նմա և աւագութիւն, առաջին կարգեալ ընտրեցաւ հազարապետ զօրականին, ապա գանձաւոր, ապա ականաւոր ևս եղեալ՝ 'ի միասին ընդ Վաղերիոսի մեծաց հասանէր աւագութեանց, և ընդ նմա լինէր հիւպատոս, և ապա հա-

մարտակալ։ Այլ 'ի մէջ ծերունեացն քաղաքին 'ի փառաւորս Մաքսիմոս նա գլխովին հակառակամիտեալ` այր մեծափառ և աւագ առաւել, և զնա եդեալ իւր կէտ նպատակի` հանդուգնատեսիլ նորայն լինէր վարուցն և կենացն` իբրև օրինակ ամենագեղեցիկ օրինակաց։ Եւ վասն այսորիկ ներհակաբար լեալ լինէր նա մեծին Սկիպիոնի, որ յայնժամ երիտասարդ` թուէր իմն 'ի նախանձաւոր երիցն ընդ հակառակս ելանել առաջնութեանն Փաբիոսի։ Այս առաքեալ Կատոնի ընդ Սկիպիոնի գանձաւոր 'ի մարտն Լիբիոյ, և տեսեալ զնորա զանխընայաբար բաշխս դրամոց զօրականին, եկաց և ազատապէս խօսէր. եթէ ոչ վասն առաւելադանց ծախուցն փոյթ այնչափ իցէ նմա, որչափ զի դովին աւաղիկ վատթարեալ եղծանի հայրենաւանդ չափաւորութիւն կենաց զօրականին, որ յաւելորդդոյիցն 'ի դրգանս փափկութեան անկեղտասցի։ Պատասխանի տանէր Սկիպիոն, եթէ այնպէս կարի ճշգրիտ գանձաւորի չէ ինձ պէտք` որ առագաստալից խաղամ 'ի մարտ պատերազմին, համար տալ քաղաքին ոչ զդրամոցն` այլ զգործոց նահատակութեանն։ Իբրև նա զայս ասաց, Կատոնն դարձ 'ի Սիկիլիոյ արարեալ 'ի Հռոմ` բողոք կալաւ 'ի Սինկղիտոսին 'ի միասին ընդ Փաբիոսի. եթէ դրամս անբաւ վատնէ Սկիպիոն, և մանկաբար դեգերի յըմբշարանս և 'ի թատերս. իբրու որ անդր երթեալ 'ի զօրավարութիւն, այլ 'ի հանդէս իցէ ոչ

դէսս տօնից։ Այսպէս արձակեցան 'ի Սիկիլիա
ժողովրդապետութք առնուլ ածել զնա 'ի
Հռոմ, եթէ ճշմարիտ գտցեն զամբաստա-
նութիւնն ։ Ա. Մ. Սկիպիոն յայտ արա-
րեալ, զի յաղթութիւնն զգլխովին 'ի մե-
ծաց հանդերձանաց կատարեսցի մարտին ․
և զի՝ նա ընդ բարեկամացն թէպէտ և զբօս-
նուցու ես պարապեալ, ոչինչ պղերգացեալ
կայ առատաձեռնութեամբն 'ի գործսն
կարեւորս և 'ի մեծամեծսն․ խօսեցաւ՝ և
ամբարձեալ 'ի նաւ խաղայր 'ի մարտ պա-
տերազմին ։

Բայց Կատոնին երթալով երթայր և բամ-
բասանէր 'ի պատճառս ճարտարաբանու-
թեանն, զի և բազումք անուն նմա կար-
դային՝ Դեմոսթենէս Հռոմայեցի։ Իսկ որ
առաւել համբաւէր զայրն՝ օրինակ քաղա-
քավարութեան կենաց նորա։ Քանզի ճար-
տարախօսութեան ըղձացեալ պատանիք
առհասարակ 'ի ժամանակին, մի զմիով
ելև ելս առնէին․ այլ դուն ուրեք ոք յանձն
առնոյր մշակել ինքնին զիւր անդն ըստ
հայրենի սովորութեանն, և ընթրիս առ-
նուլ դուզնաքեայ, և ճաշ ոչ եռացեալ
'ի հուր, և հանդերձ արկանել անպաճոյճ,
և տուն ունել դռեհիկ, և քան զաւելոր-
դացութիւնն մեծ ես համարել զհրա-
ժեշտն յայնմանէ։ Քանզի 'ի բարգաւա-
ճել յայնժամ քաղաքին՝ խորթեցաւ և
'ի բնականոր սրբութենէն․ նա՝ 'ի ձգել
տարածել տէրութեանն 'ի բազում իրս
և 'ի վերայ ազգաց ազգաց, խառնեցաւ

լաւ համարէր վաճառել զնոսա և ոչ բու-ծանել զանպէտսն: Եւ ասէր ես՝ զխուրագնի և ոչ զմի ինչ յաւելորդացն համարել. այլ ծանրագնի՝ թէպէտ և միոյ դրամոյ իցէ այն. և թէ՝ լաւ ես է գնելին առնուլ սեր-մանական և արօտական, քան վայրս ջրա-ւէտս և պաղպաջունս: Այլ կէսք ճղճիմ բարոյից առն տան զայսոսիկ. և կէսք դար-ձեալ՝ եթէ առ 'ի չափու պահել զայլս՝ այնպէս ինքն ճշդելով գնայր:

Իսկ յաղագս ծառայերցուցանելոյ զծա-ռայսն՝ իբրու գրաստս ոմանս և պաճարս, և 'ի բաց հանելոյ և 'ի վաճառ հանելոյ 'ի ծերանալ նոցա, ինձ թուի յոյժ վատ-թար սովորութիւնք և անաւագ. և գործ առն՝ որ 'ի պէտս կարեաց միայն կարծեցէ մարդոյ ընդ մարդոյ հաղորդ լինել: Այլ եւ՝ քան զարդարութեանն ընդարձակ եւս տապարէզ գիտեմ զմարդասիրութեանն. քանզի զօրէնս և զիրաւունս միայն առ մար-դիկ վարեմք, այլ է զի և 'ի վերայ անբա-նից պաճարաց տարածեմք մեք բարիս և շնորհս բղխեալ 'ի հեզութեանէս մերմէ՝ իբրև 'ի բազմահարուստ աղբերէ: Եւ արդարեւ քաջ 'ի դէպ է առն բարւոյ դար-մանել զերիվարսն վաստակեալս յաշխատու-թիւնս, և զշանց դարձեալ ոչ զկորիւնս միայն՝ այլ և զծերացեալսն: Իսկ ժողովուրդ Աթենացւոց 'ի շինել զՀեկատոմպեդոն, ազատ արձակեաց յարօտ առաւա զջորիսն վաստակաբեկս. իսկ մին 'ի ջորեաց անտի՝ ասեն՝ վազեալ ինքնին յաշխատութիւն

ընթանայր 'ի միասին ընդ այլոց ընծայիւք
Ջորեացն՝ որ ձգէին զսայլսն 'ի գերեակ անդր,
և յառաջոյ կարապետեալ նոցա, իբրու
խրախոյս կարդայր նոցա․ ուստի և Աթե-
նացիք վճիռ տային՝ բուծանել զայն ջորի
ցմահ 'ի հասարակաց դրամոց։ Առ այս՝ և
մերձ շիրմին Կիմոնի են և գերեզմանք մա-
տակ երիվարաց նորա, որովք յաղթական
գտաւ նա յՈղիմպիականսն։ Եւ յայտնի՝
բազումք ևս թաղումն ետուն իւրեանց
շանց բուծելոց և ընդելացելոց․ և առ այ-
սոսիկ՝ նախնին այն Քսանթիպպոս, որ առ-
նաւուն 'ի լողալ անկեալ շանն մինչև 'ի Սա-
ղամինէ՝ 'ի լքանել Աթենացւոց զքա-
ղաքն, եդ նմա թաղումն ընդ հողով 'ի
հրուանդանին, որում և ցայսօր անուն
կարդան՝ Շ, ԻԷԵՏ Շան։

Քանզի և արժան չէ՛ արդեօք զշնչաւորսն
վարել ըստ օրինակի կօշկաց ումանց և
սպասուց անօթոց, զոր 'ի բաց ձգեմք 'ի
խորտակելն և 'ի հնանալն և 'ի մաշելն․ այլ
թէպէտ և ո՛չ յայլ ինչ՝ գոնեա 'ի կրթանս
մարդասիրութեան՝ հեզ և համբոյր սովո-
րել արժան է և առ այդ պաշտարս։
Բայց ես առանձինն՝ և ո՛չ զմի յանդէոցս
վաստակաւորաց 'ի վաճառ հանեմ 'ի շա-
հուն սակս, թող թէ զմի 'ի ծառայիցն ծե-
րացելոց յագարակս որ անտի դուզնաքեայ
շահուն, տարադէմ զնա արձակելով իբրև
'ի հայրենեացն՝ 'ի բնակատունդ յարկէն
և 'ի բնակակցաց քաղաքավարութենէն․ նա
զի և անօգտական արդեօք իցէ նա ստացողին,

ըստ որում և վաճառողին ։ Այլ Կատոնի իւրու պանծալով ասէր, եթէ ելեք եթող նա յիւրերիս և զերիվարն՝ զոր վարեաց 'ի զինուորութեան հիւպատոս գոլով, զի մի քաղաքին ծանրասցի նաւավարձն նորա։ Արդ թէ մեծանձնութեան արդեօք այդո-քիւ իցեն կամ ճղճիմ բարոյից, այր այր ինքնին խելամուտ լինիցի ։

Սակայն 'ի բաց թողեալ զայս՝ յոյժ սքանչելի էր նա 'ի տեւողութեան իւրում. չառնոյր 'ի զօրավարութեանն վասն իւր և վասն իւրոցն աւելի քան զերիս դրիւս Ատտիկեցիս զցորենոյ՝ ամսոյ յամիս, և առնոյր պակաս քան զմի և կէս զգարւոյ յաւուրն վասն գրաստուցն ։ Իսկ իբրև զՍարդինեայ զեպարքոսութիւնն զանձամբ առնոյր, յորում իւրն նախորդ զօրավարք վճանս կալան 'ի հասարակաց դրամոց, և ժահիճս անկողնոց և պատմուճանս, և սպասաւորութիւն մեծ, և բազմութիւն ըղ-բարեկամաց, և ծանրանալ 'ի ծախս մեծա-հաց ընթրեացն և 'ի հանդերձանսն. սա այս Կատոնի տարբերութիւն անսպասում գործեաց սակաւապէտ չափաւորութեամբն. զի և ոչ վասն ինչ իրաց պէտք եղեն նմա հասարակաց ընչից. և 'ի գնալն 'ի քաղաքս՝ ոչ 'ի կառս այլ հետի ընթանայր. զհետ իւր տանեալ զմի յարքունի պաշտօնէիցն՝ բերել զհանդերձ նորա, և անօթ մի 'ի ձօն նուիրագործութեան ։

Եւ այսպէս ապա հեշտ և բաղձալի և անպաճոյճ ընծայէր յայսոսիկ հնազան-

պէս . " Դժնդակ է արդեօք ով քաղաքա-
ցիք խօսել առ որովայնն՝ որոյ չի՛ք ականջք":
Իսկ և յայլում նուագի կշտամբեալ զծայ-
րայեղ զծախսն, ասէր . գործ դժուարին
է պահել զքաղաքն՝ յորում առաւել
ծանրագնի վաճառի ձուկն մի՛ քան եզն մի։
Ասաց դարձեալ. Հռոմայեցիք նմանօրինակ
խաշին են . քանզի զոր օրինակ առանձինն
չի՛ք ածել զնա, այլ տաւաղեալք հօտգամն
տան նոքա զհետ առաջնորդին, " Սա-
պէս՝ ասէր՝ և դուք ինքնին միախումբ ա-
ծեալ բերիք 'ի խորհրդականացդ . որոց
ոչինչ արդեօք անսայիք խորհրդոյն՝ առան-
ձինն": Իսկ երբեմն 'ի պայքար մտեալ նա
վասն իշխանութեանն՝ զորոյ թեկն ածէին
կանայք, ասէր." Այք առ հասարակ իշխեն
կանանց, մեք ամենայն արանց, և կանայք
մեզ զլխովին: " Այլ է դա յառածիցն
Թեմիստոկղեայ, որ 'ի տալ նմա որդւոյն
առնել շատ ինչ միջնորդաւ մօրն, " Ո՞վ
կին դու, ասէր, Աթենացիք աւադիկ իշ-
խեն Հելլենացւոց . ես ինքն Աթենացւոց.
դու՝ ինձ զլխովին . և քեզ որդին . այլ դա
վերջացեալ իցէ յիշխանութենէն, որով
անխորհրդաբար տարապայման տիրանայ
Հելլենացւոց":

Եւ ասէր դարձեալ Կատոն . եթէ
ժողովուրդ Հռոմայեցւոց ո՛չ միայն ծիրա-
նեաց զին հատեալ յարդէ, այլ և վարժիցն
ուսմանց:" Քանզի զոր օրինակ՝ ասէր՝ ներ-
կարարք զառաւել հեշտալին ներկանեն,
սա՛պէս և պատանիք ուսանին՝ զմիմեամբք

ելեալ յաւատել գովանեաւն առ ձեզ ":
Այս յորդորակ 'ի նորին տայր Հռովմայե-
ցւոց, զի թէ առաքինութեամբ և ժուժկա-
լութեամբ այնպիսի բարձրացան նոքա, մի
այս վատթարեացեալք ըերցին 'ի յոռե-
գոյնս. այս եթէ անժուժկալութեամբ
և մոլութեամբ եղծան, փոփոխեսցին 'ի
լաւագոյնսն. քանզի և շատ իսկ նոքօք
մինչև ցայնժամ բարդաւաճեցան նոքա:
Իսկ վասն որոց առէպ թեևկն ածէին զհիւ-
պատոսական բարձին, ասէր. եթէ են իսկ
դոքա նման որերոյն, որ ճանապարհին ան-
տեղեակք գոլով խնդրեսցեն միշտ յառա-
ջոյ զառաջնորդսն՝ զի մի յանկարծ մո-
լորեսցին: Բայց կշտամբելով և զքաղաքա-
ցիսն, զի յաճախ զառաջութիւնն զայն
զմեծ 'ի ձեռս տայցին նոցուն արանցն,
ասէր. " Թուի թէ կամ շատ ինչ ար-
ժանաւոր չհամարիք զխարձ զայդ, կամ
թէ կարծէք չլինել շատից արժանաւորաց
բարձիդ այդմիկ": Իսկ խօսելով նա երբեմն
և վասն միոյ ուրուք 'ի թշնամեացն, որ ա-
նարգաբար վարէր կեանս, ասէր. " Մայր
դորա անէծս արդեօք համարի և ոչ օրհ-
նութիւն, թողուլ զդա յետ մահուան 'ի
վերայ երկրի ": Ա.յլ և երբեմն մառանա-
նիւ ցուցեալ զայլ ոք` որ վաճառեաց զանդ-
իւր առ ծովեզերբն` ժառանգութիւն հայրե-
նի, հիացեալ ընդ այրն` իբրու որ զօրաւո-
րագոյն ևս իցէ քան զծով, ասէր. ,, Քանզի
զոր ծովդ ինքնին դժուարաւ կարէր ողո-
ղել, դա աւադիկ հեշտիւն եկուլ ծախեաց":

Իսկ յորժամ Եւմենէս արքայ եկեալ 'ի Հռոմ քաղաք հիւրընկալութիւն մեծապէս գտանէր 'ի Սենկղիտոսէն, և այր զարմանք ուղի հորդէին նմա ճոխք քաղաքին, անդուստ Կատոն ընդ ակամբ հայէր և խորշէր. իբրև ասացին, "Այլ դա թագաւոր բարի է և Հռոմէասէր," "Եւ պատասխանի. "Այդպէս իցէ արդեօք. սակայն այր թագաւոր գազան շաղղակեր է. և չիք ոք արդեօք յերջանկաւէտ արքայից՝ որ զուգակշիռ Եպամինոնդեայ իցէ, և Պերիկղեայ, և Թեմիստոկղեայ, կամ Մարկոսի Կուրիոսի, կամ Ամիլկեայ՝ մականուանեալն Բարկայ,,: Եւ ասէր նա՝ նախանձել ընդ նա թշնամեաց իւրոց, զի զամենայն գիշերն յառնէր նա 'ի հասարակաց գործն՝ անփոյթ զառանձնականօքն առարեալ. և զի՝ կամէր մանաւանդ 'ի բարեգործել իւրում ոչ ունել նմա շնորհս, քան 'ի չարագործելն՝ անպատուհաս արձակել. և զի՝ ներէր յանցանաց առհասարակ ամենեցուն՝ բայց յիւրոյնոցն: Իսկ իբրև երբեմն դեսպանս երիս ընտրեցին Հռոմայեցիք առաքել 'ի Բիւթինիա, յորոց մին ոտնացաւութեամբ տանջէր, և միւսն 'ի ծակելոյ և 'ի հատածէն՝ խոռ ունէր ըզգլուխն, իսկ երրորդն 'ի մորոսաց ոմն երևէր, Կատոն 'ի ժամուն ծիծաղեալ ասէր. Հռովմայեցիք առաքեն հրեշտակութիւն մի առաքեն, որում ոչ ոտք են և ոչ գլուխ և ոչ սիրտ:

Իսկ յորժամ Սկիպիոն 'ի շնորհս Պո-

սաստիկ ևս խորդացէ 'ի քուն, քան որ գոռացի 'ի գուլին ։ Էր երբեմն՝ և այպանեալ զայր ոմն յոյր յոյժ, ասէր. „ Ցի՞նչ իբրս օգտակար քաղաքին եղիցի մարմին այդպիսի, յորում ողջոյն որ ընդ որկորն և որ ընդ երանան՝ գրաւեալ կայ յորովայնէն “ ։ Իսկ այր ոմն հեշտասէր կամեցեալ ընտանի լինել նմա, նա օտարանայր ասելով. Ձէ մարթ բնակել նմա ընդ մարդոյ՝ որոյ քիմք ազդողագոյն իցեն քան զսիրտն։ Եւ ասէր նա դարձեալ. Հոգի սիրողին կեայ 'ի մարմին օտարին. և թէ՝ Զամենայն աւուրս կենաց իւրոց ապաշաւեալ է վասն երից ինչ միայն. մի՝ զի զծածուկս գաղտնեաց հաւատաց կնոջն. և միւս ևս՝ զի նաւագնաց եղև, յորժամ մարթէր ընդ ցամաք գնալ. և երրորդ՝ զի օր մի անցոյց անգործ ։

Իսկ ծերոյ ումեմն՝ որ վատթար կեայր, ասէ “. Ա՛յր դու, ծերութիւնն ինքնին շատ ինչ աւագիկ ունի 'ի յոռեաց. մի՛ դու և ևս յաւելցուցես զդա չարութեամբ “ ։ Դարձեալ և առ ժողովրդապետ մի՝ զորմէ կասկածէին դեղատուութիւն գործեալ, և որ փութոյ պնդութեամբ օրէնս չարաչար առաջի առնէր, ասէր. Ո՞վ պատանեակ դու, չգիտեմ՝ ո՞ր այն վատթար ևս իցէ. ըմպել՝ զոր խառնես, եթէ վաւերական գործել՝ զոր գրես “ ։ Եւ յիշոցս առեալ երբեմն 'ի մարդոյ՝ որ խառնակեցիկ վարէր կեանս, ասէր. “ Անհաւասար է որ ընդ մեզ պատերազմ. զի դու հեշտալին

լսես նախատինս , և մոռացիր ասես նա-
խատինս. իսկ ես ոչ ասել ախորժեմ, և ոչ
լսել սովորեմ»: Արդ այսպիսի ինչ են հան-
դէպք բանից Կատոնի՝ զոր պատմեն:

Իսկ յետ այնորիկ կարգեալ նա հիւ-
պատոս 'ի միասին ընդ Վալերիոսի Փղակ-
կոսի իւրում մտերմի, առնոյր զկուսակա-
լութիւն գաւառին՝ որում անուն կար-
դան Հռոմայեցիք՝ Ցոյնկոյս Սպանիա: Ան-
դանօր 'ի նուաճել իւրում զինուք ժողո-
վուրդս բազումս, և շատ ևս՝ ճարտարաբա-
նութեամբ, բանեալ մի 'ի բարբարոսացն 'ի
վերայ դիմեալ՝ տագնապեցաւ նա յետս ըն-
կրկել: Առաքեաց կոչեաց 'ի թիկունս
զմերձակայ Կեղտիբերացիսն. իբրև նոքա 'ի
վարձ խնդրեցին տաղանդս երկերիւր, առ-
հասարակ իրս իմն դժուարիմերկելի Հռո-
մայեցւոց համարէին՝ տալ վարձս բարբա-
րոսաց վասն օգնականութեան: Այլ Կա-
տոնն ոչինչ դժնդակ ասէր զիրսն. զի թէ
յաղթեսցեն՝ ասէ, հատուսցեն ոչ յիւ-
րեանց գոյից, այլ 'ի թշնամեացն. ապա
եթէ յաղթեսցին, այնուհետև չիք՝ ոչ հա-
տուցանող ոք և ոչ պահանջող: Այլ
զատաւ նա յաղթական 'ի մարտին, և այլն
ամենայն գեղեցիկ յաջողեցան նմա: Բայց
Պողիւբիոս ասէ՝ 'ի հրամանէ նորա քան-
դել 'ի միում աւուր պատուարաց քաղա-
քացն՝ որ յայս կոյս գետոյն Բետեայ,
քաղաքաց բազմաց յոյժ և լցեալ մարտիկ
որերով: Իսկ Կատոնն ինքնին ասէ, եթէ
բազմամթիւ ևս էին քաղաքքն՝ զոր կա-

լաւ , քան զաւուրսն՝ զոր դեգերեցաւ նա յիբերիա . և չեն պարծանք բանքն . քանզի թուով չորեքհարիւր էին քաղաքքն ։ Եւ թէպէտ և 'ի զինուորութեան յայնմիկ մեծապէս շահեցան զօրականք, 'ի վերայ այսր և լիտր մի արծաթոյ ևս առեալ բաշխէր միում միում 'ի նոցանէ . և ասէր՝ լաւ ևս է բազմաց Հռոմայեցւոց դառնալ արծաթով, քան սակաւուց ոմանց՝ ոսկւով ։ Իսկ վասն անձին վկայէ իսկ ինքն , եթէ ողջոյն յաւարէն կալաւ նա և ոչինչ , բայց զոր եկեր յայնժամ և էարբ ։ “ Իսկ ես ինքնին՝ ասէ՝ ոչինչ մեղադիր լինիմ որոց յայսպիսեաց աստի խնդրեն շահավաճառ լինել . այլ կամիմ ես մանաւանդ ել և ելս առնել յառաքինութեան ընդ առաքինեացն, քան յընչասէրութեան՝ ընդ ընչեղիցն , և յարծաթասիրութեան՝ ընդ արծաթասիրացն ” ։ Եւ այսպէս ապա ոչ զանձն միայն , այլ և զիւրսն չեթող մեծանալ յաւարէ անտի ։ Եւ էին նորա 'ի բանակին ծառայք հինգ . մին 'ի նոցանէ Պակկոս անուն գնեալ պատանիս երիս 'ի գերւոյն , գիտաց՝ եթէ իրազեկ եղև Կատոնն , մինչչև յանդիման ելեալ նորա՝ խեղդ առնոյր անձամբ . ապա Կատոնն վաճառեալ զպատանիսն , զգինսն առեալ կուտէր 'ի գանձն արքունի ։

Այլ մինչդեռ տակաւին դեգերէր նա 'ի կողմանսն Իբերիոյ , անդուստ Սկիպիոն մեծ՝ սաստանգեղեցիկ նախատակութեանց նորա փոխանորդել զնա 'ի մրցանսն Իբերիայ , հետամուտ եղեալ ընտրեցաւ 'ի

յաջորդ նորա • ուսանի և 'ի շնորհ տաղնա-ւոր փութացաւ խաղալ գնալ առնուլ զիշ-խանութիւնն 'ի Կատոնէ : Բայց Կատոն առեալ ընդ իւր զունդս հինգ զինուորաց և այրուձի հինգհարիւր 'ի կարապետս, վա-նեալ նուաճէր զԼակեդոնացիսն , և 'ի ձեռս բերեալ զգաստակս զօրականն զվեց-հարիւրսն , առ հասարակ 'ի մահ վարէր. և անդ հեծնեալ զԱկիւլիոն կարեկից հիքա-ցեղոյն, ասէր • զայսօրինակ արդ աւարձրացի Հռոմ՝ յորժամ արք տոհմիկք յառաքի-նութեան ոչինչ վերջացին քան զվաստա-տոհմիկսն • և յորժամ 'ի նմին եղ և եւս ա-րասցեն և ժողովրդականք՝ որպիսի ոք ինքն է՝ ընդ քաղաքավարմիցն և ընդ աւագացն : Իսկ երբեմն և վէճին եւ Սկիպիոնի՝ ինչ մի 'ի կարգաց անուանի Կատոնի մի՛ շարժել Սկիպիոնի , հեռացաւ նա անփառունակ յառաջնորդութեան անդ իւրում , անցու-ցեալ անգործ ուղղոյն զայն ժամանակ :

Յետ այսորիկ յաղթանակի հանդէս կատարեալ Կատոնի, ոչ ինչ վատացաւ երբեմն զբազումսն՝ որք ոչ յառաքինութեան սակս մրցեալ՝ այլ 'ի փառաց, 'ի ժա-մանելն 'ի ծայրն և 'ի հիւպատոսանալն միանգամ և 'ի յաղթանակելն, մնացեալք տեղի տան այնուհետև 'ի գործոց քաղա-քին, և յանդորրու և 'ի գրգութեան ան-ցուցանեն զնշխարեալ աւուրսն • այլ սա անդուլութեամբ առաքինացաւ երբեմն ար-դարև որք ձեռնամուխք միանգամ 'ի հա-սարակաց գործս՝ երբեմն 'ի սաստիկ ծարաւոյ

բերեալք իցեն գեղեցիկ փառաց և պատուոյ, մեծաքայլս և պնդագոյնս խաղայր 'ի սպասաւորկութիւնս բարեկամացն և քաղաքայնոցն, և յառաջադէմ մխէր և 'ի փառատաբանութիւնս և 'ի նահատակութիւնս զինուորութեան։ Եւ թիկունս ևս տայր նա իւրով ջանիւն Տիբերիոսի Սեմպրոնիոսի հիւպատոսին 'ի խաղալ նորա 'ի Թրակիա և յԻստրոս, և նիզակակից երթայր ընդ նմա։ Ապա յետ այնորիկ և յԵլլադա խաղաց նա իբրև հազարապետ 'ի միասին ընդ Մանեայ Ակիղիոսի ընդդէմ մեծին Անտիոքոսի. այն՝ որ 'ի մեծ արհաւիրս պաշարեաց զՀռոմայեցիս, որպէս և ո՛չ ոք այլ՝ յետ Աննիբաղայ։

Քանզի սա այս Անտիոքոս անդրէն ընդբռնամբ կալեալ վայրիկ մի և ողջոյն զԱսիա, զոր 'ի վաղուց գրաւեալ իսկ էր Նիկանովր Սելևկոս, և շատ յոյժ 'ի մարտիկ ազգաց բարբարոսաց նկուն արարեալ՝ փքացաւ բարձրացաւ. զի և մինչև ընդ Հռոմայեցւոց մարտ գնել կռուել, իբրու ոյք միայն բաւական էին 'ի ժամուն 'ի վէճ գալ ընդ նմա. և ցուցանէր իմն այնպէս՝ իբրև 'ի գեղեցիկ պատճառաց մղել ըզմարտն և յազատութիւն իւրեանց զՀելլենացիսն փոխել, որում և ո՛չ պէտք ինչ էր նոցա. քանզի Հռոմայեցւոց յազատութիւն ինքնիշխանութեան հանեալ իսկ էր զնոսա յայնժամ 'ի ձեռաց Փիլիպպոսի և Մակեդոնացւոց։ Ապա Անտիոքոս խաղայր գնայր անդր սաստիկ զօրու, և անդէն ող-

Ջոյն Եղլադա յուղեալ ծփեցաւ գիւթեալ 'ի հռետորաց անտի՝ որ գեղեցիկ յուսումն արքային թակարթեցին զխուժանն ։ Այլ Մանիոս առեալ հրեշտակս արձակէր 'ի քաղաքս , և Տիտոս Փղամինիոս անշշունջ անձանկոծեալ խաղաղացուցանէր զաղմուկս չփոթիցն՝ որպէս 'ի վարս նորա արձանագրեալ է . անդուստ և Կատոնն նկուն առնէր զԿորնթացիսն և զՊատրացիս և զԵգիացիս , և շատ ևս ժամանակ եկաց նա յԱթէնս ։

Եւ ասացեալն՝ ճառս խօսեալ անդանօր Կատոնին Հելլենացի առ ժողովուրդն՝ 'ի զովութիւն առեալ զառաքինութիւն ըզծերունեացն Աթենացւոց . և մեծապէս ևս զոհ ցուցեալ զանձն 'ի վերայ քաղաքին՝ վասն մեծութեանն և գեղեցկութեանն ։ Այլ չէ ճշմարիտ . քանզի թարգմանաւ խօսեցաւ նա ընդ Աթենացիս , ոչ զի անտեղեակ էր հելլէն բարբառոյն , այլ զի զսովորոյթ պահեաց զհայրենեացն . ծիծաղեալ զնոքօք՝ որ հիացեալ իմն էին ընդ իրս Հելլենացւոցն ։ Ուստի և Պոստումիոսի Աղբինոսի յարձանագրելն երբեմն պատմութիւն 'ի Հելլենականն և 'ի խնդրելն ներումն , հեգնեալ Կատոնին ասէր . Արդարև դա ներողութեան արժանի է , եթէ արդեօք 'ի ձեռաց անտի Ամփիկտիոնեանցն ստիպեցաւ առնել այնպէս ։ Եւ ասեն ևս՝ զքանչանալ Աթենացւոցն ընդ լակոնաբանութիւնն Կատոնին և ընդ կորովութիւն իմաստիցն . զի զոր նա սղագունիւք

վճարէր, զնոյն Թարգմանն բազմամանեանուած մերկանայր և երկարս. և համբուն՝ կարծեցին եթէ Հելլենացւոցն 'ի շրթանց վաղեն բանքն, իսկ Հռոմայեցւոցն՝ 'ի սրտէն ։

Իսկ երբ Անտիոքոս պատեաց փակեաց զօրօքն զանձուկսն շուրջ զԹերմոպիւղեաւ, և շերտափակ և պատուարափակ ամրացոյց զամուրս անխաբ վայրացն, և անդէն բանակ հարեալ նստաւ յանդորրու, յայնժամ ապա բնաւ իսկ յուսահատ լինէին Հռոմայեցիք վանել զանձուկսն ։ Բայց Կատոնն յուշ ածեալ զպարագայ շրջանն՝ զոր անդ երբեմն արարին Պարսիկք, առեալ ընդ իւր հատուած 'ի զօրուէն՝ անկաւ յուղի գիշերի ։ Իբրև եկին հասին նոքա 'ի կատար անդր բարձանցն, ուղեցոյցն որ 'ի գերեացն՝ մոլորեալ յուղւոյն, յայս կոյս յայն կոյս Թափառեալ ընդ դժուարս և ընդ անկոխս, յայնժամ իսպառ սրտաբեկ լինէին զօրականք յահի մեծի ըմբռնեալք. անսեալ Կատոնի զվիշտ վտանգին՝ հրաման տայր առհասարակ զտեղի ունել անշշունջ. իսկ ինքն առեալ ընդ իւր զԼեւկիոս զոմն Մալլիոս՝ այր յաջողակ 'ի մագլել 'ի վեր ընդ լերինս, գնայր զուղին զայն մեծապէս վտանգաւ և անձկութեամբ յանլուսին 'ի խոր գիշերի՝ ընդ ժանտաձիթենիսն և ընդ կոթողսն՝ որ ցցուեալք խոչընդակն եւս լինէին և խոչընդոտն ճանապարհին. մինչև հասեալ ժամանեալ 'ի պողոտայ մի զոր կարծէին իջուցանել 'ի բանակ անդր Թշնամեացն, նշանս առեալ

կանգնեցին 'ի ծայրս երեւելիս կարկառացն Կալլիդրոմեայ. անդուստ ապա դարձեալք յետս եւ առեալք զզօրականսն ածէին ընդ երեսն մինչեւ 'ի նշանսն. կալան զգըզրոսայն, եւ ընդ այն խաղային 'ի վայր. Իբրեւ վայր մի յառաջ խաղացին, կարծեալք պատերազմայն եւ եկեալ առաջոբեր յանդգունդս բանին ահագինս։ Ապա անդրէն միանգամ տագնապեցան եւ զահի հարեալ դողային, ոչ գիտելով եթէ ով իսկ հասեալ իցէ նոցա առ թշնամին։ Իբրեւ այգն մերկացաւ, թուէր այնպէս ընդ լեռն լինել ձայնից աղաղակաց, եւ տարագ տարագ յանկն իւրեանց արկանել եւ զղանկիչ Հելլենացւոցն, եւ զառաջապահս նոցա 'ի ներքոյ ափափայիցն։

Անդանօր ապա բանակեցուցեալ Կատովնի զզօրն՝ հրամանս տայր յառաջ մատչել միայն Փիլոմիացւոցն, զորոց եւ զփորձ գիտէր զհաստատամտութեանն եւ զնահատակութեանն։ Իբրեւ նոքա խռնեցան զնովաւ, խօսել սկսաւ եւ ասէ. "Կարօտ է ինձ զայր մի ձերբակալ կենդանւոյն ունել 'ի թշնամեացն, իմանալ՝ ոյք ոմանք իցեն յառաջապահեստեղդ, քանի՞ն բազմութիւն նոցա, զինչ այն իցէ եւ յօրինուած եւ կարգ ողջոյն բանակին, եւ կազմածք՝ որով մեզ սպասեալ մնան։ Բայց առ 'ի հասանել ունել ձեզ զայրդ՝ արագաւոր յափշտակութեան եւ քաջարութեան պէտք են ըստ անզէն առիւծուց օրինակի, յորժամ նոքա թեթեւք եւ յանձնապաստանք խոյացին յերկչոտսն 'ի գազանաց"։ Ապա Կա-

տոնէ, և անդէն փերմիացիք՝ որպիսիք գը-
տան 'ի ժամուն՝ յարուցեալ խուժէին առ-
հասարակ ընդ զառ 'ի վայրն 'ի վերայ
յառաջապահիցն. և յեղակարծումն 'ի վե-
րայ անկեալ՝ խռովս հարեալ սաստ անդ-
վարատեալ ցիր և ցան առնէին. և զայր
ումն 'ի նոցանէն զինու զարդու ձերբակալ
արարեալ՝ ածեալ կացուցանէին առաջի
Կատոնին: 'Ի նմանէն ապա իրազեկ եղեալ
Կատոնի՝ զի բանակ ողջոյն Թշնամեացն
յանձուկսն անդր զետեղի կալեալ նստի
հանդերձ Թագաւորաւն, և յառաջա-
պահք վեցհարիւր են Թուով այրընտիր յԵ-
տովլացւոց, նա ունչս արարեալ սակաւա-
ձեռն գնդին նոցա և անհոգութեանն,
անդէն առաջին ինքն մերկացեալ զսուրն՝
խաղայր ընդդէմ նոցա 'ի ձայն սապազափո-
ղոցն և մեծ աղաղակաւ: Նոքա տեսեալ
զՀռոմայեցիսն 'ի վայր դռոյթ 'ի ժայռէցն
տուեալ, զոտս արձակեալ փախչէին 'ի
բուն բանակ անդր, և զնա խռովութեամբ
լնուին: Ցայնժամ պահու անդուստ և Մանլիոս
'ի ներքոյ նեղէր տագնապէր զպատնէշսն,
և հարկանէր վանէր զանձուկսն միահա-
մուռ ամենայն զօրութեամբ. ուրանօր և
Անտիոքոս վիմով հարեալ 'ի բերանն, և
ատամանցն սարսեալ և Թափեալ, յան-
հնարին ցաւոցն՝ առեալ ընդ կրունկն դար-
ձուցանէր զերիվարն: Անդ ապա և ոչ
գունդ մի 'ի զօրաց նորա 'ի դիմի հարաւ
Հռոմայեցւոցն. այլ Թէպէտ և ոչ դաշտ
փախստեան էր անդանօր և ոչ տե-

զի Թաքստեանն , զի և գԹեալք 'ի վայր հոսեցին ընդ ապառափայսն և ընդ վախճան և 'ի ճահճիճս ճախճախուտս , այնպէս ցիր և ցան ընդ անձուկն ընդ այնոսիկ և ընդ միմեանս ընդ հարեալք , և յահէ հարուածոցն և երկաթոյ Թշնամւոյն վանեալք , 'ի միմեանց հարեալք սատակեցին ։

Իսկ Կատոնի՝ անդստին իսկ երևեալ անձնապարով , և յայնժամ յայտնի եւ պանծալի ընդ գործն՝ խորու ընդ եւ մեծագործ նահատակութեանն և պերճանայր ընդ մրցանակն ընդ այն և սակէր . եթէ և որք յայնժամ ականատեսք եղեն նահատակութեանն նորա առ 'ի Թշնամիսն , քաջ իսկ վկայեցին՝ եթէ քան Կատոնի ժողովրդոց , ժողովուրդք առաւել պարտական կացին Կատոնի . և Թէ՝ ինքնին Մանիոս հիւպատոս դեռ եւս ջերմին 'ի յաղԹութենէն՝ փարեալ զջերաջերմ Կատոնիւ և ժամս հարեալ այնպէս զիրկ ընդ խառն՝ ձայն բարձեալ գոչէր առ խնդին , եԹէ ոչ ինքնին և ոչ ժողովուրդք առհասարակ չունին զուգակշիռ չափել մրցանացն Կատոնի ։

Ապա յետ մարտի պատերազմին՝ զնա ինքնին առեալ արձակեցին 'ի Հռոմ քաղաք՝ աւետաբեր իւրոց նահատակութեանցն ։ Նա յաջողակս նաւեալ 'ի Բրենդեսիոն , անտի զմի օր անցանէր 'ի Տարանտոն . և ճանապարհ տարեալ այլ եւս աւուրս չորս՝ եկեալ հասանէր 'ի Հռոմ յաւուրն հինգերորդի ելիցն իւրոց 'ի նաւէն , և լինէր

ինքն նախընծայ աւետաւոր յաղթութեանն։ Եւ ընդ յայնժամ քաղաքն ուրախութեամբ ՚ի տօնախմբութիւնս և ՚ի նուէրս զոհից, և խնդայր ժողովուրդն ՚ի խորհուրդս իմն մեծամեծս, իբրու անհասարակ տիրել ծովու և ցամաքի։

Եւ արդ ՚ի պատերազմական մրցանացն Կատոնի՝ այդոքիկ են հոյակապքն։ Իսկ ըստ քաղաքական կարգացն յայնժամ թուի թէ ոչ դուզնաքեայ ինչ համարէր նա՝ ամբաստան կալ և հալածիչ արանց չարաց. զոր և արար իսկ առ բազումս ՚ի նոցանէ. զարձեալ և գործակից լինէր հալածչացն, և այլոց ևս թելադիր ՚ի նոյն. ըստ որում և զՊետիլլիոսն դրդեաց ընդդէմ Սկիպիոնի։ Այլ քանզի ՚ի մեծ զարմէ էր Սկիպիոն, և ընաւ իսկ յանձնապաստան՝ առ ոտս զամբաստանութիւնսն հարկանէր, ոչինչ ուժեալ ընդդէմ նորա՝ եթող և այլ ամբաստան առեալ ընդ իւր յարեաւ ընդդէմ Լեւկիոսի եղբօր նորա, և շատ դրամոց տուգանէր զայրն՝ տալ ՚ի գանձ արքունի. որում անձեռնհաս այրն և արգելեալ ՚ի բանտի, ապա հազիւ ուրեմն բողոք կալեալ առ ժողովրդապետսն՝ արձակէր յազատութիւն։ Եւ էր երբեմն զի ՚ի պատանեկաց ումն պատուհաս ՚ի վերայ ածելով թշնամւոյն հօր իւր վախճանելոյ, ասեն՝ եթէ Կատոն ընդառաջ ելեալ պատանւոյն ՚ի հրապարակին յետ վճռոյ պատուհասին, կալաւ զաջոյն և ասէր նմա, եթէ՝ Այսպիսի յուղարկաւո-

րութեամբ պարտ է զոհել ծնողացն ոչ զառինս և ոչ ուլս, այլ զարտասուս և ըղ-ձաստակնեք աւրանց Թշնամեաց նոցա:

Սակայն և ոչ ինքնին Կատոնն 'ի քաղա-քականութեանն անբասիրս գտաւ. այլ պատճառս երբեք տուեալ Թշնամեացն, ցանգ քարշեցաւ նա 'ի դատաստան և 'ի վտանգս պաշարեցաւ՝ ցորչափ և եկեաց: Քանզի պատուոյն՝ ամբաստանութիւնս կրել նորա զոգ յիսունիցս անգամ. և զվերջին նուագն՝ լեալ նա ամաց ութսունն և վե-ցից, բարբառեալ նմա յայնժամ զհռչակե-լին զայն առած, եթէ «Դժնդակ է՝ որ 'ի մէջ այլոց մարդկան կեցեալ իցէ, և այլոց առաջի՝ վասն անձին պատասխանի տա-ցէ»: Այլ և ոչ ցայս վայր սահման եդ նա իւրոց մրցանացն. այլ ամբաստանեալ եկաց նա և վասն Սերվիլիոսի Գալբայ յետ չորից ամաց՝ մինչդեռ զիննսնամենիւք ուրեմն էր. քանզի և եկեաց նա իբրու զայլ ոմն Նեստոր մինչև յերրորդ ազգ, և ցանգ պա-րապեալ 'ի գործ. 'ի վերջ եկեալ բազում անգամ՝ որպէս ասացաքն՝ յառաջնորդու-թեան քաղաքին՝ ընդ մեծին Սկիպիոնի, և ժամանեալ մինչև 'ի Սկիպիոն կրտսեր՝ որ էր որդեգրեալ թոռն առաջնոյն և որ-դի Պաւղոսի, այն՝ որ զՊերսէոն վանեաց և զՄակեդոնացիսն:

Բայց տասն ամօք զկնի հիւպատոսու-թեանն զհետ կրթեցաւ Կատոնն համա-րակալութեան: Եւ արդեօք այս բարձ պատիւ է ամենայն փառաց, և լրումն ամե-

նոյն պաշտամանց քաղաքին․ քանզի և է իսկ ինքնին համարակալն՝ հանդերձ բազում այլ իշխանութեամբն՝ և ոստիկան քննիչ կենաց և վարուց մարդկան ։ Քանզի և ոչ լաւ համարեցան Հռոմայեցիք թողուլ զայր այր ըստ հաճոյս կին ածել կամ զաւակս առնել կամ զհանապազօրեայ կեանսն վարել կամ կոչունս առնել ըստ ցանկութեան և ըստ կամաց անձինն, առանց ուրուք խորհրդոյ և քննութեան․ այլ զմտաւ ածեալ եթէ քան 'ի գործսն հասարակաց և 'ի քաղաքականսն՝ առաւել յայնոսիկ բոյս բարուց մարդոյ 'ի վեր երևի, ուստի և զմի ոք 'ի պատրկաց անտի և զմիւս այլ 'ի ժողովրդականացն՝ կարգէին պահապան և ուղղիչ և պատուհասադիր վարուց․ զի մի ոք թերևս 'ի բնաշխարհիկ և 'ի տնկակից քաղաքավարութենէն զառածեալ՝ կեանս ըստ հաճոյից վարեսցէ․ և նոցա անունն կարդային Համարակալ․ որք և իշխան էին՝ յասպետաց 'ի բաց զերիվարն առնուլ, և 'ի Սինկղիտոսէն 'ի բաց զանժուժկալսն և զխառնակեցիկսն հանել։ Նոքա տքնէին և 'ի վերայ զոհիցն և զծախսն սահմանէին․ և կարգէին զաշխարհագիրն և զպաշտամունս զքաղաքացն․ և իշխանութիւն մեծ էր նոցա և 'ի վերայ բազում ինչ իրաց ։ Ուստի և ընդդէմ դառնային հետամտութեանն Կատոնի գոգ ամենայնաքը աւագք 'ի Սինկղիտոսին ։ Քանզի Պատրիկք նախանձաբեկ լինէին, իբրու յանարգութիւն համանել ազնուականու-

թեանն՝ եթէ որք անաւագք ամբարձեալք 'ի բարձրագոյն պատիւ և զօրինչափ իշխանութիւնն 'ի ձեռին կային ։ Իսկ այլք գիտակք ևս անձանց վատթարութեանն և հայրենի աւանդից օրինազանցութեան, զանգիտեալ դողային յանաչառութենէ առն՝ որ բնաւ իսկ անողոքելի կայր առ գեջք յիշխանապանծ աւագութեանն ։ Վասն որոյ և 'ի խորհուրդ մտեալ նոքա ընդ միմեանս՝ քարընդառն լինել խորհրդոցն նորա, հետամուտ այլ եօթն ընդդէմ յարուցին նմա . որք չնթեալք խուժանին յանդուգանէին զնա՝ խնդրել յայն աւագութիւն զայր քաղցր և ըստ իւրեանց ըղձին ։

Իսկ անդուստ Կատովն երբեք ոչ քաղցրութիւն 'ի դէմս բերեալ և ոչ հեզութիւն, նա և սպառնալիս 'ի բեմէ անտի 'ի վերայ կառուցեալ չարացն և բոլոր կալեալ՝ եթէ մեծապէս մաքրութեան պէտք են քաղաքին, նախանձ գեղեցիկ արկանէր ժողովրդոցն . զի եթէ ուշիմք իցեն՝ առեալ կարգեսցեն իւրեանց բժիշկ զոմն ոչ ամոք և հեշտ, այլ անաչառ և անողոքելի . և ասէր զանձնէն՝ այնպիսի ոք լինել, այնպիսի և 'ի պատրիկս միայն զՓղակկոս Վաղերիոս . և ապա 'ի միասին ընդ նմա ակն ունէր կարել 'ի բաց և 'ի հուր դատել իբրև զհիդրայն զայն՝ զշռայլութիւն զամենայն և զցոփանս, և գործ գործել գեղեցիկ . և խիթայր վասն այլոցն հետամտից վատանաւ յիշխանութեանն յայնմիկ՝

իբրև զանդգնեալ խոստովանեն նորա յանդա_ չառ իշխանէն ։

Եւ արդ մեհ արդարև զատաւ Ժողովուրդ Հռովմայ, և մեհաղունեցն արանց արժա_ նի առաջնորդութեան. զի և երբէք զահի չհարեալ 'ի սպառնալեացն և 'ի խորոխոտ և 'ի պերճ կերպարանէն Կատոնին, 'ի բաց միանգամայն մերժեալ զհետամտուս մար_ դելոյզն, առեալ կարգէր համարակալ զՓղակկոս 'ի միասին ընդ Կատոնի. իբ_ րու ոչ եթէ հետամուտ ինչ լեալ Կատո_ նի բարձին այնմին, այլ թէ արդէն իսկ զնոյն զանձամբ առեալ՝ բուռն հարցէ այ_ նուհետև 'ի գործ զիշխանութիւնն վարել ։ Ուստի և Կատոնն արագ արագ առեալ դրէր 'ի թիւ Սինկղիտոսին զիշխանակից իւր և զբարեկամ զՂեւկիոս Վալերիոս Փղակկոս. և անտի 'ի բաց մերժէր զբա_ զումս, յորս և զՂեւկիոս Կուինտոս՝ որ եօթն ամօք յառաջ եկաց հիւպատոս. և որ մեծ ևս էր քան զհիւպատոսութիւնն, զի էր նա եղբայր Տիտոսի Փղամինիոսի՝ որ 'ի պարտութիւն մատնեաց զՓիլիպպոս ։ Իսկ պատճառք 'ի բաց հանելոյն՝ էր այս_ պիսի ։

Էր իսկ զորհանապազ առ Ղեւկիոսի տարփածու 'ի պատանեկաց ոմն չքնաղա_ գեղ. որում 'ի զօրավարութեան անդ իւ_ րում շուք մեծապէս և իշխանութիւն տայր Ղեւկիոս, որչափ ինչ յառաջին բա_ րեկամացն նորա կալաւ և ոչ ոք ։ Իսկ ու_ րեք 'ի կուսակալութեան իւրում բազ_

խնդրէր տալ Կատոնին զհամար զտարագրութեանն. իբրև անդ Կատոնի կայր և պատմէր ոճով զամենայն զբանս զկոչնոցն. անդուստ Լեւկիոս ժխտեալ յուրաստ լինէր. սակայն յերդումն հրաւիրեալ՝ ի Կատոնէ՝ տեղի տայր. և այնպէս կնքեցաւ արժանահաս պատուհասն: Այլ ապա երբեմն ի Թատրոնի սա այս Լեւկիոս ի բացեայ յոյժ ի կարգէ հիւպատեանցն՝ գնացեալ բազմեալ ուրեք, այնչափ իմն ի կարեկցութիւն շարժեաց զժողովուրդն, զի և ձայն բարձեալ բռնադատեցին զնա մատչել յառաջ, դարձեալ զայս՝ ըստ կարգի՝ տանելով պչտին նորա: Առ այս՝ և զՄանիլիոս, որում ըստ առհասարակ ակնկալութեանն հասանէր բարձ հիւպատոսութեան՝ ի բաց ի Ծերակուտէն եհան Կատոնի. զի ի տուընջեան յանդիմանն դստերն համբոյր ետ նա կնոջ իւրում: Եւ ասէր Կատոնն՝ եթէ զիրկս իւրն երբէք չէած իւրում կնոջն, բայց ի մեծ յորոտալ ամպրոպացն. և ընդ խաղ դարձեալ ասէր նա, եթէ երջանիկ է նա յորժամ Արամազդ որոտայ: Իսկ որ առաջին նախանձու արկ զԿատոնիւ, զի զեղբայրն ի բաց եհան նա յեղբօրէն Սկիպիոնի ի Լեւկիոսէ ի յաղթանակող առնէն. զի այնպէս իմն թուեցաւ՝ նովին թշնամանել նմա զԱփրիկանոսն Սկիպիոնի: Բայց որ դժոխըմբերելի յոյժ դատաւ բազմաց, զի կարճնել խնդրեաց նա զշռայլութիւն զրգանացն՝ յորում անկղնացեալ առհասարակ բազ-

տակայն երջանիկ առաւելիկ եմ ես և ընչաւէտ տակս աւելորդացդ այդոցիկ և անպիտանեացն": Եւ այսպէս ապա ցանկութին ընչաւէտութեանն ոչ 'ի բնաւորական ինչ կրից է, այլ սպրդի 'ի մեզ 'ի ռամկացն և յօտարին կարծեաց:

Բայց Կատոնի երեւս ինչ չարաբեալ խազմարար մարդկանն, և անողոքելի ևս զանձն 'ի ներքս բերեալ, քանդեաց միանգամայն զամենայն ջրմուղսն՝ որ ջուր զհասարակացն բաշխէին 'ի տունս և 'ի պարտէզս, և տապալէր քակէր զամենայն կոճանս շինուածոց 'ի քաղաքին. և նուազ առնէր զվարձս աշխատութեանցն, և աճեցուցանէր տուրս 'ի վերայ վաճառուց: Ուստի և յատելութիւն մեծ գրգռեցան ընդդէմ նորա. և դաշնաւորք ևս ընդ Տիտոսի եղեալ՝ եառն Ֆլամինինոսին եղծանել զպայմանն զոր կռեաց նա 'ի նորոգութիւն մեհենիցն և հասարակաց շինութեանցն, իբրև պայմանս իմն ունայնս: Առ այս՝ դրդեցին և զյանդգունս 'ի ժողովրդապետացն ամբաստան զնմանէ կալ առ ժողովուրդն և տուգանել զնա քանքարաց երկուց. և շատ ևս ընդդէմ դարձան նորա 'ի շինութեան արքունեացն, զոր շինեաց նա 'ի հասարակաց դրամոցն առ երի հրապարակի խորհրդարանին, և անուն կարդայր նմա՝ Արքունիք Պորկեան:

Այլ յայր ամենայնի վերայ՝ յոյժ սքանչացեալ էին ժողովուրդք ընդ նահատակութիւն նորա 'ի համարակալութեանն.

Թեւակոխելին նմանել ինչ գործոց նորա և չյաջողւէր նոցա, կոչէր զնոսա՝ կոփոճս յախողակս: Եւ ասէր նա՝ եթէ 'ի գործս դժուարինս և 'ի բազմավտանգս՝ ողջոյն Սինկղիտոսն ականկառոյց էր 'ի նա, որպէս որք 'ի յուզել մրրկաց դէտ ակն 'ի նաւապետն կալցեն. և թէ՝ էր բազում անգամ՝ յորժամ նա մերձ չէր, այնպէս անվճար մնային իրք մեծամեծք մինչև 'ի գալուստ նորա:

Եւ զայսոսիկ՝ և այլք ևս վկայեն մեզ. քանզի և էր իսկ մեծապէս իշխանութիւն նորա 'ի քաղաքին, և քաղաքավարութեն կենացն և ճարտարաբանութեամբն և ծաղկեալ ալեօքն: Էր նա հայր բարի. և ընդ ամուսնոյն զնայր բարեմոյնս. և մտադիր ևս էր 'ի շահաստացութիւն՝ իբրև ոչ 'ի հարկանցի պարապեալ գործ և 'ի դուզնաքեայ. ուստի և 'ի դէպ իսկ առ այս պատմեցից ես համօրէն զնորայն: Քանզի ած նա կին քաջազգի առաւել՝ քան ընչաւէտ. զմտաւ ածէր, զի թէպէտ և հաւասար՝ երկու ևս ազգդ այդ կանանց բարձրայօնք բնաւորեալ են և ամպարհաւաճք, սակայն առաւելինքդ պատկառեալ 'ի յոռւոյն՝ 'ի գեղեցիկսն և 'ի պարկեշտսն հլուք առաւել հանգիպեսցին և հնազանդք արանց: Եւ ասէր նա՝ եթէ որ զկինն հարկանէ կամ զորդին, ձեռն արձակէ յիրս իմն յոյժ նուիրականս և սուրբս. և թէ՝ արդոյ ևս է նմա լինել ամուսին բարի, քան աւագ 'ի Սինկղիտոսին. և սքանչա-

ցեալ յայժ է ինքն ընդ Նախնիսն այն Սոկրատէս՝ ոչ յայլ ինչ պատճառս, քան եթէ զի ցանկայ այնպէս հեզ և հանդարտ ընդ զժխեմ կնոջն եկեաց նա և ընդ ապուշ զաւակացն։ Իսկ ինքն որդւոյ ծնեալ Կատոնին, միանգամայն զամենայն գործ կարեւոր այնուհետեւ՝ բայց 'ի հասարակացն՝ 'ի բաց թողլոյ, զի մերձ կնոջն գտանիցի 'ի լուանալ և 'ի խանձարուրել զտղայն. քանզի և ինքնին մայրն իւրով կաթամբն դիեցուցանէր զնա. էր բազում անգամ զի և աղախնաց ծառայիցն իւրոց տայր զիւր ըստինսն 'ի դիել, զի հաւասար կաթնածուծք՝ բարեմտութիւն յարդարեսցեն նոքա առ իւր զաւակն։ Իսկ իբրև յարբունս խելացն հասանէր մանուկն, ինքնին Կատոնն առեալ վարժէր զնա 'ի դպրութիւնս։ Թէպէտ և էր իսկ նորա ծառայ մի Քիղոնն անուն դպրամանկավարժ քաջ, և վարժապետ և կացեալ էր բազմաց տղայոց, 'ի դէպ չհամարեցաւ՝ որպէս ասէ իսկ ինքն՝ եթէ իւր որդեակն կշտամբանս 'ի ծառայէն առցէ, կամ թէ յամրոււս տղայն՝ ունկնատանջ 'ի նմանէն լինիցի. կամ թէ շնորհս այպա կալցի ծառայէն զգեղեցիկ դաստիարակութեանն. այլ ինքն անձամբ անձին էր նորա վարժապետ, ինքն օրէնսուսոյց, և ինքն դարձեալ ըմբշամարտ. ոչ միայն աշտէնկեց լինել և զինավարտ լինել և ձիաւորել ուսոյց որդւոյն, այլև բռնամարտիկ մրցել, և ջերմին և ցրտոյն ժուժալ բերել, և ընդ գետս բազմայորձանս և սրընթացս 'ի լուղ

անցանել: Եւ սակս Կատոնի, եթէ նստաւ ինքն և մատամբք իւրովք արձանագրեաց պատմութիւնս 'ի տառս խոշորս, զի իւր որդեակն առ տնին հմուտ և տեղեակ վաղնջուց իրաց հայրենեացն լինիցի. և թէ՝ մեծապէս զգուշացեալ էր խօսել բանս գժպատեհ առաջի մանկանն, իբրու որ գլխովին առաջի կացեալ իցէ Նուիրական կուսիցն զոր Վեստեանս կոչէին. և թէ՝ ինքն 'ի միասին ընդ մանկանն չեմուտ երբէք 'ի բաղանիս: Այլ այս հասարակ թուի սովորոյթ Հռոմայեցւոց. քանզի և փեսայք նոցա զգուշանային մտանել անդ 'ի միասին ընդ աներացն, չերևել մերկ առաջի նոցա. այլ ապա յետ ժամանակաց ուսեալք 'ի Հելլենացւոց մերկանալ, փոխարէն և նոքա ուսուցին Հելլենացւոց առնել զնոյն և ընդ կանանց:

Զայս օրինակ ջան եդեալ Կատոնին՝ կրթանս բարիս տալ զաւակին, և յառաքինութիւն հրահանգել զնա, թէպէտ և 'ի յօժարութեան եռանդանն անստգիւտ էր մանուկն, և ոգւոյ բարւոյ դիպեալ և քաջամոյն և հլու, այլ քանզի մարմնոյն տկար էր 'ի վաստակս, վասն մի 'ի խստամբերութենէ կենացն թոյլ արար հայրն: Այլ թէպէտ և այնպէս վտիտ, այր. քաջ երևեցաւ նա 'ի զինուորութեան. և մեծապէս արութեամբ մարտ եդեալ կռուեցաւ ընդ Պերսէոսի առ զօրավարութեամբն Պաւղոսի Էմիլիոսի. ուր և հարեալ նորա սուսերին և 'ի քրտնահոծ ձեռացն զեր-

ծեռայ 'ի Նոմանէ, 'ի տարգմանող անկեալ պատանեկին և հանդերձ Նիկողակեցւոցն մտադրամ յարձակեալ 'ի խառն Թշնամեացն, և մեծաւ մրցանօք և քաջութեամբ վանեալ զնոսս և զխոյթ՝ բանայր զվայրն, և 'ի զինուորյա անցոր և 'ի Թամծրապետյա զխաղանց բարեկամացն և Թշնամեաց զատանէր զատներն. որք աղաղակաւ և Պօղոս զօրավար մեծապէս զարմացեալ էր ընդ պատմանեխն։ Եւ Նամակ մի եւս Նորին Կատոնի կայ առաքեալ առ որդին, 'ի գովութիւն յոյժ առեալ զգեղեցիկ ջանն վասն առներին։ Եւ առաջնոյ այս պատանւոյ ածէր 'ի կին զՏերտիա դուստր զԷմիլիոսին և զքոյր Սկիպիոնի, հառաջաղաստութեամբ կապեալ ընդ տոհմիկ զարմին վասն քաջութեան անձինն և խելոյ հօրն։ Եւ եւս այս եղեն գեղեցիկ զառաքինութեանն Կատոնի վասն որդւոյն։

Էին Կատոնին և արծաթագինք բազումք 'ի գերւոյ պատերազմին. և առնուէր 'ի մանկահասակաց անտի, որք էին զակառնոս կամ զմորուակս՝ դիպաւորագոյնք եւ իցեն 'ի մարզս դաստիարակութեան։ Իսկ 'ի նոցանէն զնայր և ոչ ոք 'ի տուն օտարի, բայց 'ի Կատոնէ առաքեալ կամ 'ի տիկնոջէն. և հարցեալ անդանօր ծառայն վասն Կատոնի, ոչ այլ՝ բայց զանգիտութիւն պատասխանէր։ Այլ առ ունէին պարտ էր ծառային կամ 'ի գործ պարապել, կամ 'ի քուն լինել. և յոյժ սիրէր Կատոն՝ 'ի քուն անսեալ զծառայսն, իբրու որք հե-

զարդո՛յնք ևս բնաւորեալք իցեն քան զորք-նեալսն, և յետ վայելից քնոյն՝ յաջողա-գոյնք ևս իցեն յամենայն սպասաւորութիւնս։

Բայց յառաջին յաղքատութեան իւ-րում 'ի զինուորութեանն Կատոնի չէր անհամբոյր, և 'ի սեղանի չցանկոյր երբէք ինչ վասն կերակրոյն. իբրև դժուարի կար-ծէր կազմել ընդ ծառայիցն 'ի պատճառս պորտոյն։ Այլ ապա 'ի մեծութեանն և 'ի կոչունսն բարեկամացն և իշխանակցացն՝ անդէն յետ ճաշուն ելեալ պատուհաս 'ի վերայ ածէր փոկով անհոգացելոցն 'ի սպասաւորութեան։ Եւ կամէր նա՝ ծա-ռայիցն ցանկ 'ի դժուարութեան լինել ընդ միմեանս, քանզի խիթայր և զանգիտէր 'ի համաձայնութենէն նոցա։ Իսկ 'ի նոցանէ զվնասակարսն մահու՝ լսէ համօրէն յետ դատակնքոյն տայր սպանանել յանդիման այլոց ծառայիցն։

Այլ յետ այնորիկ յորժ հետամուտ եղեալ 'ի շահատացութիւն, և զերկրագոր-ծութիւնն՝ քան եթէ շահ՝ զբօսանս առա-ւել համարեալ, թեակոխէր 'ի հաստ հաս-տատունս և աներկեանս. տայցաւ իւր լինել և աղբերականս ջերմկաց, վայրս յարմա-րաւորս թափչաց, և գետինս արօտաբերս և անտառաւորս. և այնպէս հաստ կը-թէր առատ 'ի կալուածոց անտի. որոց՝ որպէս սովորեցաւ նա ասել՝ և ո՛չ Արա-մազդ ինքնին դրժել կարող էր։ Արդ 'ի գործ արկանէր նա՝ և վաշխ նաւականն քան զամենայն վաշխս առաւել խոտան,

Թեանն Ովլոպեանց: Ցայնժամ պատա-
նիք Հռովմայ բանակերք մտավարժք խուռ-
նեին յայց ելանել հրեշտակացն, և դե-
գերեալք ընդ նոսա և յանկձիւս կացեալք
ունկն գնեին նոցա: Առաւել ևս Կառ-
նեադէս յայնժամ շնորհաշուք բարբա-
ռոյն ազգոյ յոյժ և արգոյ և պատուա-
կան, իբրև այնպիսի ունկնդիրս մեծարոյս
և քաղցրաձայնս շուրջ զիւրև տեսանէր,
շնչեաց ապա ելից իբրև հողմ՝ ողջոյն զքա-
ղաքն 'ի դղրդումն և 'ի համբաւ մեծ. զի և
առհասարակ 'ի կողմանց կողմանց շշնջիւն
լսելի եղև, եթէ Հելլենացի ոմն այր ե-
կեալ համեալ կայ ասադ այր սքանչելի և
ճնաշխարհիկ. որ առհասարակ ամոքեալ և
նկուն զամենայնն արարեալ՝ սէր ուժգնա-
կի ազդէր 'ի պատանիսն, 'ի բաց զամենայն
գործանսն եդեալ և զափափութիւնս՝ իբ-
րու 'ի գեղեցիկ մոլութենէ բերիլ յիմաս-
տասիրութիւն անդր: Եւ ապա առհասա-
րակ Հռոմայեցիք խնդացեալք յոյժ էին,
զի իւրեանց պատանեակք 'ի մարդս պա-
րապեալք Հելլենականին՝ կենակից ա-
րանցն լինէին սքանչելեաց: Բայց Կատոնն
անդստին՝ յորմէ այն անէնչ վարժիցն ըն-
թանայր ընդ քաղաքն, դժկամակս բերէր՝
զանգիտեալ եթէ յանկարծ պատանիք 'ի
նոյն զիւրեանց պատուասիրութիւնն շըր-
ջեալք՝ սիրեսցեն զփառս զբանիցն՝ քան
զարդեանցն և զմարտին նախապատուութեանց:
Իսկ իբրև համբաւ իմաստասիրացն և ևս ա-
ճեաց, և զի՝ և զառաջին ճառս բանից նո-

ցա Իտալիոյ Գայիոս Ակիլէոս ականաւոր 'ի Սինկղիտոսութին առ և Թարգմանեաց յուրոց ջանիցն և յայլոցն խնդրոյ, խորհուրդ խոր-հեցաւ այնուհետև Կատոնի՝ քաջավայե-լուչս իմն 'ի բաց զիմաստասէրսն արձակել 'ի քաղաքէն ։ Այլա յանդիմանեն Սինկղի-տոսին եղեալ զանազանէր ընդ ատեանդանին, զի այնչափ հարուստ ժամանակ անմկար հռետորականութեանն թողին կալ անդէն ա-րանցն. որք՝ ոչ քաջ իսկ բաւական են կամագլուխ յամենայնին լինել համոզակեր բանիւքն. և ասէր նա՝ փութայէս խոր-հել սահմանել վասն հռետորականութեանն, զի իմաստասէրքդ դարձ յիւրեանց արա-րեալ վարժարանն՝ անդանոր զմանկունս վարժեսցեն զՀելլենացւոց, և Հռոմայեց-ւոց պատանիքդ դարձցին անդրէն 'ի հնա-զանդութե օրինաց և ատենադանոյն ։ Զայս ինչ գործեաց Կատոնի ոչ չարակամութե ինչ ընդդէմ Կառնէադեայ, որպէս կար-ծեն ոմանք, այլ զի ինքնին ներհակակիր իմաստասիրականին էր, և բարձրաձայնս ընդ-վզէր հարկանէր միանգամայն և զՄուսայն և զվարժս Հելլենականին ։ Եւ ասէր Կա-տոնի՝ եթէ և ինքնին Սոկրատէս շաղա-կրատ և յանդուգն՝ նկրտեալ իսկ էր՝ ըստ կարիս՝ բռնաւոր ընդդէմ ամբառնալ հայ-րենեացն, տապալեալ զվաղնջուց սովո-րոյթս և յանդուգնեալ զքաղաքացիսն 'ի կարծիս ինչ հակառակ օրինացն ։ Առ այս՝ և զԻսոկրատեայ վարժարանն հեգնեալ, ասէր՝ եթէ մանկունք ուսանողք առ նմա

ալեկոծեալք ծերանան. զի զհնացեալն ապա վարել զարուեստն և փաստաբանել անդանօր 'ի դժոխս ներքինս: Եւ առ 'ի յաչաց հանել որդւոյն զհելլէն դպրութիւն՝ ձայն բառնայր առաւել քան զծերունւոյ առն՝ ձայն պատգամաւոր և նախագուշակ, եթէ կորուսցեն Հռոմայեցիք զքաղաքն 'ի ներկրթիլն իւրեանց հելլէն դպրութեամբք: Այլ սակայն ձախողակի գուշակութիւնդ նանրացաւ, յորժամ քաղաքն 'ի ծագ վերջին բարձրացաւ, և թարթափեալ ևս էր առհասարակ 'ի վարժս և 'ի դպրութիւնս հելլենացւոց:

Բայց Կատոնի ոչ հելլենացի միայն իմաստասիրացն թշնամի ընդդէմ կերեցաւ, այլ 'ի կասկածի էր նա՝ և վասն արանցն բժշկաց որ 'ի Հռոմ: Եւ քանզի լուեալ ևս էր՝ զոր Հիպպոկրատէսն ասաց առ թագաւորն՝ 'ի հրաւիրել նորա և քանքարս ևս բազում 'ի ներքս ընծայել նմա: Իսկ Հիպպոկրատէս տայր պատասխանի, եթէ երբէք մի լիցի նմա սպաս բարբարոսացն հարկանել՝ որ թշնամիքն են Հելլենացւոց. ապա ասէր Կատոնն՝ եթէ սա այս էր երդումն հասարակ և բժշկացն ամենեցուն. և յորդորէր զիւր որդին՝ անձնապահ լինել յամենեցուն նոցա. և ասէր՝ ինքնին իսկ գրեալ խրատս և մարգս՝ բաւական 'ի բուժել զհիւանդս տանն, և կարգ և սահման դնել կենաց նոցա. երբէք ոչ պահս օրինադրելով նոցա, այլ բանջարօք բուծանելով զնոսա և 'ի միս բադից և հաւափալաց և

նաւապատասխանակաց․ զի են խոհ այդպիսիք փոքրոգւոյք և հիւանդագաց շահասիրաց․ բայց թէ՝ յերբարձումք ասպա յերադեցուցեն այնպիսի՝ որք չատան ուսուցանեն 'ի նոցանէ։ Իսկ ասպա զրինակ զայս բժշկութեանց և գարմանով ասէր նմա պահեալ զանձն քաղաքացւոյ զիւր անձն և զիւրոյն առհասարակ։ Սակայն և առ այս ոչինչ արդեօք անտարբեր էր Կատոնին 'ի մեռանել կնոջն նորա և որդւոյն։ Իսկ ինքն Կատոնի եկաց քաղաքացին յոյժ հարուստ ժամանակ, քանզի և առ ոյր և կարողացեալ էր մեծարանօք․ զի և 'ի ծերութեան պարարտութեան մնայներ նա առ կին իւր․ և ած եւս նա 'ի կին զորիորդ՝ անճահ հասակին․ և՛ էր պատճառք այսպիսի ինչ։

Յետ մահուն կնոջն, ամուսնացուցանէր նա զորդին իւր ընդ Պաւղոսի դստերն՝ քեռ Սկիպիոնի․ իսկ ինքն մնացեալ այրի՝ միասնէր առ աղախին իւր աղջիկ, որ 'ի ծածուկ գնայր առ նա․ այլ զի 'ի միում անձուկ տանն բնակէր և հարսնն՝ 'ի վեր ելանէր բանն․ և անցեալ երբեմն այն աղախին յանդուգնագոյնս իմն և պերճս 'ի հանդիպակայ նոցա՝ իբրու որ 'ի սենեակն երթայ Կատոնին, անդանօր պատանին տեսաց և ոչինչ, սակայն խեթիւ հայեցաւ 'ի նա և դարձաւ 'ի միւս կողմն․ իրազգացեալ այսմ եղեալ ծերունւոյն և 'ի վերայ կացեալ զժկամակութեան փեսայի և հարսինն, ոչ արտնեցաւ և ոչինչ կալաւ գանգատ․ այլ իջեալ՝ որպէս սովորն էր՝ հանդերձ բարեկամօքն 'ի հրապարակ անդր, և 'ի ձայն

բարձր կարդացեալ զՍալոնիոս զոմն՝ որ
դպիր կացեալ իւր էր նորա և միշտ հե-
տևէր ընդ նմա, հարցանէր՝ եթէ զդուստրն
առն տուեա՞լ իցէ․ նա պատասխանի
տուեալ՝ եթէ ո՛չ, մինչև հարցեալ զայն՝ ի
Կատոնէ, ասէ Կատոն․ «Քա՛ջ է․ իմ քեզ
աւագիկ ՚ի դէպ գտեալ է փեսայ, թէ ո՛չ
ճն և օն Աբրահամայ՝ անհաճոյացուցէ քեզ վասն
հասակին․ քանզի անարատ ամենևին է
այլն, բայց յոյժ ծեր է»։ Իսկ և Սալոնիոս
ասէր՝ ՚ի նմա իւրքն հաւատալ զբանն, խնամ
ունել կուսին և տալ զնա առն և հովանի
լինել կուսին՝ որպէս և պիտոյ, զի և իւրքն
կոյսն նորա խնամոցն պէտս ունի․ ապա
Կատոնի ոչինչ յամեալ, և խնդրէր ՚ի նմա-
նէ զկոյսն վասն իւր։ Յառաջ կրթեցաւ
Սալոնիոս՝ տեսեալ զԿատոնի անցեալ զնա-
ւուրբք ամուսնութեանն․ առ այս՝ և զան-
ձին միշտ յոյժ օտար ՚ի հիւպատեան և
՚ի յաղթանակող որերոյն։ Սակայն փու-
թաջան ՚ի բանն տեսեալ զԿատոնի՝ մտա-
դիւրագոյնս յանձն առնոյր․ և անդէն ի-
ջեալ ՚ի հրապարակն՝ կնքեցին զաշն։

Իսկ և հարսանեացն հանդէս ՚ի պատրաստու-
թի էր; որդին Կատոնի առեալ զազգա-
կանսն՝ չոգաւ հարցանել ցհայրն, եթէ
երբէք խէթ ինչ կամ միշտ հասուցեալ
իցէ հօրն, զի մօրու ածէ նմա։ Իսկ ընդ-
հարցուածին ձայն բարձեալ Կատոնի՝ ա-
սէր․ «Ա՛ղէ դու մի՛ որդեակ, ուշիմս իմո-
սեայց․ Ամենայնիւքն առ ՚ի քէն սիրելիք իմն
են․ և չիք իմ ինչ գանգատ զքէն երբէք․

տունն գործ ամենագեղեցիկ համարէր անցուցանել զծերութիւնն 'ի քաղաքականին. և ապա 'ի պարապեալ ժամսն և 'ի զբօսանսն՝ սփոփութիւն էր նմա արձանագրութիւն մատենից և մշակութիւն երկրի: Եւ գրեաց նա բազմադէմ ճառս, և պատմութիւնս: Իսկ 'ի մշակութիւն երկրի պարապեցաւ՝ մինչդեռ տակաւին պատանի էր՝ առ 'ի պէտս. քանզի և ասէր իսկ նա՝ կրկին միայն ունել իւր շահավաճառութիւնս, զմշակութիւն և զտնտեսութիւն. այլ յայնժամ 'ի ծերութեանն դեգերանս և մնաց սփոփութիւն էին նմա իրք ագարակին: Եւ արձանագրեաց ևս նա գիրս զՄշակականին. յորում և վասն գործելոյ պլակինդիս և վասն պահպանութեան մրգաց, ճշգրիտ ապատուաքրեաց յամենայնի և ոճով:

Իսկ էր նորա ընթրիք 'ի գեղջն առաւել մեծահաց, ցանգ հրաւիրեալ զմերձակայսն գեղջն և զգաւառականսն, և խնդամտեալ դեգերէր ընդ նոսա. զի և քաղաքավարութեամբն հեշտ և բաղձալի էր ոչ հասակակցացն միայն, այլ և պատանեացն գլխովին. զի և 'ի բազում ինչ իրս՝ այր քաջափորձ էր, և 'ի գործս բազումս նահատակեալ և 'ի բանս բազումս արժանալուրս: Եւ այնպէս իմն համարէր նա զսեղան կոչնոցն՝ իբրու բարեկամութեան առիթ. և զրոյցք անդանօր՝ գովասանք էին արանց լաւաց և առաքինի քաղաքացեաց, և երբէք յիշատակ չլինէր յոռեացն և անպիտանեացն.

զի և թոյլ չտայր երբէք Կատոնի յետ կո-չմանն ոչ բազմաժամանակաց լինել և ոչ գովու-թեանց լինել վասն նորա ։

Բայց նախահասակութիւն նորա վերջին յառաջնորդութեան քաղաքին՝ թուի թէ՝ քանդումն եկաց Կարքեդոնին. և 'ի գլուխ զայն տարաւ Սկիպիոն կրսերն, սակայն ըստ քաջ խորհրդոցն և խելամտութեանն Կատոնին ։ Եւ դրդեցան 'ի նոյն մարտ յայսպիսի լինել պատճառաց ։ Առաքեալ Կատոնի 'ի սինկղիտոսէն երթալ խնամել, զի՞նչ պատճառաւ մարտին և զժտութեանն լեալ ընդ Կարքեդոնացիս և ընդ Մասա-նասսա Նումիդացւոյ. քանզի Մասանասսա ցանդ բարեկամ կացեալ Հռոմայեցւոց, բայց և Կարքեդոնացիք դաշնաւորք էին նոցա՝ յետ հարուածոյն եղելոց 'ի Սկի-պիոնէ, որ զտէրութիւնն հատեալ էր 'ի նոցանէ և 'ի ծանր հարկս կացուցեալ էր զնոսա ։ Ապա Կատոնի յանկն զԿարքեդոն արկեալ և գտեալ՝ ոչ իբրու վատեալ լինել յուժոյ, որպէս կարծէին Հռոմայեցիք, այլ բարգաւաճ և բազմաժողով յերիտա-սարդաց, լի և բազմահարուստ մեծութբ, և զինուք գունակ գունակ պատրաստ և մարտի հանդերձանօք, որով և ոչ խոնար-հագոյն լինել վասն իւր ունէր զկարծիսն ։ Խելամուտ լինէր Կատոնի՝ զի ո՛չ ինչ յաղա-գեացին Հռոմայեցիք համոզել զնոսա զՆո-մադացւոցն և զՄասանասսայն. այլ թէ ո՛չ զտէպլինգք վաղվաղակի հասեալ վա-նեսցեն նոքա զԿարքեդոն զվաղնջուց զայն

զթշնամին և զծանրացաստամին ընդդէմ նոցա՝ որ մեծապէս բարգաւաճեալ էր յայնժամ, անշուշտ դարձեալ միւսանգամ 'ի նոյն վտանգ պաշարեսցէին Հռոմայեցիք իբրու զառաջինն :

Այսպս փութապէս դարձ արարեալ Կատոնի՝ իրազեկ զՍինկղիտոսն առնէր, եթէ յառաջին հարուածոցն և յաղէտիցն Կարգեդոնացիք նուազեալ ոչ այնչափ 'ի զօրութենէ՝ քան թէ յանմտութենէ իւրեանց, չեն ինչ նոքա վատեալք. նա փորձք և հմուտք լեալ են 'ի կռիւ մարտի. և ասէր եւ՝ մարտին նոցա ընդ Նումադացիսն նախամարտութիւն լինել հանդերձելոյ կռուոյն ընդդէմ Հռոմայեցւոց. իսկ հաշտութեան զաշինքն՝ անուանք մերկ իցեն դեգերանաց նոցա 'ի կռուին՝ ակնկալեալք դէպ ժամանակին : Իբրև զայս բանս ասաց Կատոնն, պատմեն՝ եթէ անդէն թօթափեալ զպատմուճան իւր 'ի մէջ անդր Սինկղիտոսին՝ տայր 'ի վայր անկանել թըզոցն՝ զոր 'ի Լիբիոյ բերեալ իւր էր. և տեսեալ՝ զի ընդ պարարտութիւն պտղոցն և ընդ գեղն առհասարակ հիացաւ ակումբն՝ յաւել և ասէ. զաւառն պտղոցդ մրգաբեր՝ 'ի բացեայ կայ աւարիկ 'ի Հռովմայ աւուրց երից նաւագնացութեամբ : Այլ ազդողագոյն եւ առ այս գործեալ զբանն՝ և յամենայն իսկ իրս տուեալ զիւր խորհուրդն, ցանգ կրկնէր և երկքնէր նա՝ ըղհետ բերեալ զայս ինչ. "Եւ ինձ թուի՝ եթէ չէ պարտ կալ Կարքեդոնի": Բայց և

րում հասանէր յամբոխ գործոյն ժամանանել. որ էր յայնժամ տակաւին պատանի և 'ի կարգ զինուորականին հազարապետ լեալ՝ նահատակէր 'ի գործ հանճարոյ և 'ի մրցանս քաջութեան, որոյ և համբաւն 'ի Հռոմ մինչև յունկն հասեալ Կատոնի, պատմեն ասել նմա յայնժամ ըզտողն զայն. "Դու հանճարեղ, իսկ այլք ստուերք շարժունք": Եւ ապա զնախաձայնութիւն իւր զայն վաղվաղակի առգեամբք ճշգրտէր Սկիպիոն:

Եւ թողոյր Կատոնի զարմին իւրոյ զաւակ յերկրորդ կնոջէն՝ Սալոնիոս անուն՝ որպէս ասացաք, և թոռն մի ևս յառաջնոյն որդւոյն՝ որ մեռաւ: Եւ վախճանեալ Սալոնիոս 'ի զօրավարութեան, թողոյր որդի Մարկոս անուն՝ որ եկաց հիւպատոս. Նա էր հաւ Կատոնի իմաստասիրի՝ այն որ առաքինութեամբ և փառօք գերազանցեալ գտաւ զամենեքումբք՝ որ առ իւրովքն ժամանակօք:

# ԶՈՒԳԱԿՇՌՈՒԹԻՒՆ

## ԱՐԻՍՏԻԴԵԱՑ
## ԵՒ
## ԿԱՏՈՆԻ ՄԵԾԻ

ՍՈՒ արդ գլխաւորակաց արժանեաց արձանագրեալ մեր վասն երկոցուն զոցա, եթէ զամենայնն զնոցայն 'ի կշիռ առցէ ոք միանգամայն ընդ ամենայնիւն, ոչինչ այնպէս տարբերեալ գտցէ արդեօք՝ 'ի պատճառս շատ ինչ և մեծամեծ նմանութեանց։ Այլ եթէ ըստ մասին ուրոյն՝ իբրու քերթուած մի կամ նկար մի, տեսցէ՝ զի բարգաւաճել դոցա յիրս քաղաքին և փառք նոցա և համբաւ, քան յազգատոհմէն՝ առաւել յանձանցն առաքինութենէն իցէ և 'ի քաջութենէն։ Այս հասարակ է երկոցուն նոցա։

Սակայն Արիստիդէս ականաւոր եղև՝ յորժամ չև էին մեծացեալ Աթենացիք. և յառաջագէմ գտաւ նա 'ի զօրավարս և

'ի ժողովրդապետս, յորժամ ընչիւք չափաւորք էին և հաւասարագոյք. քանզի առաջին կարգին համն՝ էր յայնժամ գրուաց հինգհարիւրոց. իսկ երկրորդին՝ ասպետացն, երից հարիւրոց. իսկ երրորդին՝ լծակցելոցն, երկերիւր գրուաց։

Իսկ Կատոն 'ի գուղձնաքեայ կալուածոյն իւրմէ և 'ի շինական կենացն եկեալ՝ էջ իբրու յահագին ծով 'ի Հռոմ քաղաք, յորժամ ոչ Կուրիոսք ոմանք առաջնորդք կային քաղաքին կամ Փաբրիկիոսք կամ Ոստիլիոսք. և ոչ յանձն ես առնոյր քաղաքն՝ զի աղքատք և մշակք ամբարձցին 'ի ցուցանաս իւր, կամ թէ յարօրաց և 'ի փայտատից անցեալ՝ կացցեն իւր առաջնորդք և զօրավարք. այլ 'ի քաջազարմութիւնն նա գէտակն ունէր և յընչաւէտութիւն և 'ի պարգևս և 'ի հետամտութիւնս, և ամբարտաւանութեամբ և զօրութեամբ պերճացեալ էր, և արհամարհոտ ևս էր նոցա՝ որ 'ի խնդիր ելանէին առաքինութեան։ Եւ քանզի Թեմիստոկլէս ոչ տոհմիկ ոք էր և ոչ ընչաւէտ (զի ասեն 'ի սկզբանն գոյաւոր լինել նմա երից տաղանդաց, կամ թէ առաւել հնգից). ուստի և չէ ընդ մի. համար՝ ունել անձին նախանձաւոր զԹեմիստոկլէս, և մրցել և ել և ելս առնել ընդ Սկիպիոնից Ափրիկանոսից և ընդ Սերվիլիոսից Գալբայից և ընդ Կուինտոսից Փլամինիոսից, անզօրավիգն և անթիկունք՝ միայն զհամարձակաձայն լեզուն ունելով և զարդարախօսն։

կացին 'ի մարտի. սակայն 'ի քաղաքակա-նին Արիստիդէս նկուն գտաւ 'ի Թե-միստոկղեայ, և վտարանդի եւս չոքաւ խե-ցեկոյտ վճռովն ։ Իսկ Կատոն գոգցես զամենայն աւագս և զճոխս Հռովմայ ու-նելով ընդդէմ իւր ախոյեանս, իբրև ար-գարև ըմբիշ քաջ մինչև յալևոյթն զդէմ կալեալ՝ ցանգ անդրդուելի մնաց. և բա-զում յոյժ անգամ յանդիմանեալ ժողո-վրրդեան՝ իբրև դատախազ և իբրև դատա-խազեալ, տալ եւս դատակնիք 'ի վերայ բազմաց, ինքն անձնապուր յամենայն դա-տակնքոյ. ոչ այլ ունելով ապաստանա-րան կամ գործի աջողական, բայց զճար-տարաբանութիւնն. որպէս զի և քան բաղ-դին և քան Քաջի ունեին՝ առաւել եւս ճարտար լեզուին գրեացէ ոք՝ զի ինչ մի յանպատշաճից երբէք նա ոչ կրեաց ։ Քան-զի և նմին իսկ Արիստոտէլի իմաստասիրի՝ բաց յայլոց քաջալաւութեանցն, զճշգրիտ համոզողականն՝ տայ 'ի մեծապէս գովու-թիւն Անտիպատրոս՝ գրեալ յետ մահուն նորա ։

Բայց և այս ինչ խոստովանեալ է առ-հասարակ՝ եթէ առաքինութիւն չէր մար-դոյ առաւել արգոյ քան զքաղաքակա-նին. և ոչ դուզնաքեայ մասն զնորա՝ զտըն-տեսականին ունին բազումք ։ Քանզի և քաղաքն գլխովին համախմբութիւն գոլով տանց, 'ի գեղեցիկ կարգաց առն առն քա-ղաքայնոյ՝ միանգամայն և բոլորն զօրա-ցեալ գտանի ։ Ուստի և Լիւկուրգոս տա-

Այլ ինձ երբեք չէր սիրելի
Գործ և վաստակ 'ի ձեռին,
Ո՛չ տանց խնամ՝ յորմէ շահեալ
Զաւակք արդոյք բուծանին։
Այլ փարելիք ցանց ինձ եղեն
Նաւք քաջաթիք հաստատամուր,
Խոշինք մարտից ներբեքթեսան
Նետք և սլաք սայրասուր։

Իբրու արդարև զայնոսիկ՝ որք անհոգացեալքն իցեն յասուանիինան, և որք զպարէնս պատրաստեսցեն յանկրաւութենէ։

Քանզի և չէ իսկ արդեօք վայելուչ, եթէ զոր օրինակ ձէթ՝ լոռ բժշկացն՝ արտաքնոյն մարմնոյ օգտակար, և ներքնոյն վնասակար, սոյնպէս և արդարն՝ այլոցն միայն պիտանի իցէ, իսկ իւրում անձինն և իւրոյն անպիտան։ Ուստի և 'ի մասինդ՝ թուի թէ՝ թերացեալ իցէ քաղաքականն Արիստոտելեայ. բայց զի (որպէս ասեն բազմագոյնք) փոյթ եղև նմա թողուլ ինչ զկնի յաճխո դասերաց, և 'ի թողումն անձինն։ Վասն որոյ և Կատոնին զարմն մինչև յաղչորրորդ ընծայեցոյց Հռովմայ և հեղատասս և զօրավարս, քանզի և նորա կալան թոռունք և թոռանեայք աւագութիւնս մեծամեծս։ Իսկ վերջին չքաւորութիւնն Արիստիդեայ՝ թէպէտ և ինքն նախապատիւ 'ի Հելլենացիս, զիէսս 'ի զարմէն ածձգեալ 'ի պնակս իմն ստասարկապետ ձեռնածուաց. և զիէսս դարձեալ մուրիկ կացոյց կարօտեալ դանձուն զինոսական. և

վարի 'ի պէտսն, չէ՛ նա գոհ և ինքնաբաւ. այլ՝ թէ պէտս չունի այնոցիկ և չցանկայ, ունայնութիւն է մթերելն. ապա եթէ պէտս ունի և չվարէ զայն առ ապահովութեանն, թշուառական է ։

Այլ ինձ մտադիւրագոյն էր հարցանել Կատոնին, եթէ արդարև առ 'ի պէտս գոլով ընչաւէտութիւնն և առ 'ի ծախս, առ ի՞նչ գա պարծիւ կուտեալ մթերս ամբաւ, յորժամ շատ էին նմա չափաւոր ծախքն ։ Եւ եթէ գեղեցիկ յոյժ է՝ որպէս և է իսկ՝ զստորականն առնուլ հաց, և զնոյն ըմպել գինի զմշակացն և զծառայիցն, և ո՛չ խնդրել ո՛չ հանդերձ ծիրանի և ո՛չ յարկ երևելի և բռեալ, ապա ուրեմն ո՛չ ինչ թերացան 'ի պատշաճականսն ո՛չ Արիստիդէս և ո՛չ Եպամինոնդաս և ո՛չ Մարկոս Կուրիոս և ո՛չ Գայիոս Փաբրիկիոս, զի չեղեն հետամուտք ստանալ զայն ինչ, զորոյ զպէտսն յանձն չառնուին ։ Քանզի և վասն մարդոյ՝ որում սպաս համեղաճաշակ էին շողգամք և ինքեան ձեռօքն եփէր զնոսա, անդուստ և կինն ինքնին զհայան հարկանէր, չէին ինչ պէտք արդեօք այնչափ բանս շարժել և շառաչիւնս արձակել վասն միոյ խերևէշի. և նմանել մատենագրել, եթէ զխո՛րդ ոք արդար արդար ընչաւէտ կարասցէ լինել. քանզի սակաւապէտ կեանք և ինքնաբաւութիւնն ինքնին յոյժ մեծ է. քանզի 'ի բաց զմեզ քեցէ 'ի ցանկութենէ և 'ի հոգոյ աւելորդացն ։ Նաև պատմէն՝ եթէ Արիստիդէս յամբաստանութե

թեանն. Թէպէտ և ի՛նքնին նա 'ի ճառս ուրեք ասէ, եթէ՝ Օտար է և դժպատեհ՝ եթէ անձնադիմի լինել և եթէ անձնանախատ: Այլ ես այնպէս համարիմ, եթէ քան զայլ անձնդրում առաւել կատարեալ յառաջինութեան նա է, որ ոչ այլոցն զուղութեան պէտս երբէք ունիցի: Քանզի անփառասէր բարք մեծապէս թիկունս տայ հեզութեանն՝ որում պէտք են առաջնորդի քաղաքին. բառ որում և ներհակաբար՝ դժոխումբերելի է փառասիրութիւնն և ատելութեան և նախանձու ատար. իսկ 'ի կրից արտաքի՝ մինն զլխովին անբաժ էր, և միւսն՝ մեծապէս զբաղեալ: Ուստի և Արիստիդէս նիզակակից եղեալ Թեմիստոկլեայ 'ի մեծամեծս, և իբրու անձնապահ պահապետ նմին կացեալ 'ի նորա զօրավարութեանն, յաւէն կանգնեաց զերս Աթենացւոցն: Իսկ Կատոնն 'ի մէջ ընդ Սկիպիոնի եկեալ, և վայրիկ մի եւս մէր 'ի վայր տապալէր զնորա արշաւանսն ընդդէմ Կարքեդոնացւոց՝ յորում վանեալ նորուն լինէր յայնժամ անպարտելին Աննիբալ. և ապա ցանկ խէթ իմն և բարուր ընդդէմ նորա շարժեալ՝ տապալէր վանէր զնա 'ի քաղաքէն. և անարգաբար դատաստանիւք ըղդողձ տայր տալ վասն եղբօրն նորա:

Առ այսոսիկ՝ և զայն ժուժկալութիւնն՝ զոր բազմանդէմն և գեղեցիկս գովէ Կատոնն, բնաւ իսկ անբիծ և սուրբ պահեաց Արիստիդէս. այլ ոչ նոյնպէս և Կատոնն. որում ամուսնութիւնն այն՝ անձնահ ա-

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Իւրն առաջին անուանք նորա՝ Մարկոս Գորկլիոս Գրիպքոս։

2. Հոմերոս. Հագներգ. ԺԴ. Ոդիսսականին։

---

# ՊԼՈՒՏԱՐՔԵԱՅ

## ԶՈՒԳԱԿՇՌՈՒՔ

## ՊԻՒՌՌՈՍԻ

## ԵՒ

## ԳԱՅԻՈՍԻ ՄԱՐԻՈՍԻ

## ՊԻՒՌՌՈՍ

ԱՌԱՋԻՆ յետ ջրհեղեղին թագաւորեալ 'ի վերայ Թեսպրոտացւոց և Մոլոսացւոց՝ պատմեն զՓայեթոն, որ մի էր յընկերացն որք ընդ Պելասգոսի եկեալ հասին յԷպիրոս. իսկ կէսք ասեն՝ եթէ Դևկալիոնն և Պիւռռա յետ կանգնելոյ զմեհեան Դոդոնացւոյ՝ անդանօր առ Մոլոսացիս կալան բնակութիւն : Իսկ յետ ժամանակաց Նէոպտողեմոս Աքիլլեայ որդի առեալ ժողովուրդ՝ ինքն զնոյն աշխարհ կալաւ ընդ ձեռամբ, և զարմն ևս զարքայից յիւրմէ թողեալ անդանօր, որոց անուն կարդային Պիւռռոսեանք. քանզի նա 'ի տղայ տիոցն մականուն կալաւ Պիւռռոս. և զնոյն անուն եդ նա միում յորդւոց անտի իւրոց հարազատաց՝ զոր ծնաւ նմա Լանասսա դուստր Կղէոդէոսի Իւղղեան : Ուստի և շուք աստուածեան կալաւ

Աքիլլէս յՆաւփակտոս. և 'ի բաղդատ աշխարհին անուն կարդային նմա Ասֆեղօս այն է՝ Անմատոյց:

Բայց ապա յետ առաջնոյ Թագաւորացն այնոցիկ՝ զկնի եկեալքն մինչև 'ի Թարրիտաս՝ խուժադուժք դաժանք և անաւագք, մինչև ոչ գիտել նոցա ոչ զտէրութիւն և ոչ զկեանս. և պատմեն՝ եթէ սա այս Թարրիտաս առաջին զարդարեալ զքաղաքսն Հելլենացի բարոյիւք և դպրութեամբք և մարդասէր օրինօք, զհամբաւի հարաւ: 'Ի Թարրիտասայ ծնաւ Աղկետաս, յԱղկետեայ Արիւբաս, և յԱրիւբասէ և 'ի Տրովադեայ ծնաւ Էակիդէս՝ որ ած 'ի կին զՓթիա դուստր Թեսսաղոսի Մենոնեայ, որ անուանեալ գոլով 'ի Լամփակեան պատերազմին, և զկնի Լէոսթենեայ բարձրեց էր 'ի մէջ Նիզակակցացն: Իսկ Էակիդոսի ծնան 'ի Փթիայ դստերք երկուք Դէիդամիա և Տրովադա, և ուստր մի անուն Պիւռոս:

Ապա աղմուկ շփոթից յաւելեալ 'ի Մոլոսացիս և տարագիր զԷակիդէս արտաքսեալ, և փոխանակ զորդիսն կացուցեալ զՆէոպտողեմեայ՝ զբարեկամսն զԷակիդեայ 'ի մահ վարէին. սակայն Անդրոկլիդէս և Անգեղոս մազապուր զՊիւռոս տղայ արարեալ 'ի ձեռաց Թշնամեացն, փախստեայք երթային ածեալ ընդ իւրեանս սակաւս ոմանս 'ի ծառայից և 'ի նաժշտաց դիեկցուցանել զտղայն: Այլ դանդաղեալք 'ի փախստեանն՝ 'ի ժամանել

'ի վերայ ճարմանդիւն գլխոյ իւրն և նշանա-կէր զկարխս և զքաղդ մանկանն. ապա զկեղևն պատեալ 'ի քար՝ հաստատուն 'ի քարընկէց անդր, այնպէս առեալ ձգէր 'ի միւս ափն. Այլ կէպք ասեն՝ եթէ զկեղևն պարուրեալ շուրջ 'ի նետարանն՝ այնպէս արձակեաց յայնկոյս. Իսկ որք յայնկոյս կային առեալ ընթերցեալ զգիրն և 'ի վե-րայ կացեալ տապանակին նոցա, անդէն հա-տեալ ծառս և լաստս կապեալ, այնպէս անցանէին ընդ գետն. Արդ որ առաջին նաւհատակեցաւ յանցսն՝ անուն էր նորա ըստ դիպաց Աքիլլէս, և առեալ զմանուկն զՊիւռռոս տղայ՝ անցուցանէր. և ապա այլք ըստ նմանէ՝ ըստ որում պատահէրն՝ անցուցանէին և զայլսն.

Եւ այսպէս ապա զերծեալք, չոգան 'ի Իլիւրիկեցիս առ Գղաւկիաս արքայ, և գտեալ զնա 'ի տան ընդ տիկնոջն բազ-մեալ, եդին 'ի գետնի զմանուկն առաջի երկոցունց նոցա. 'Ի վերայ հասեալ բանին Գղաւկիաս, կայր և զմտաւ ածէր՝ զանդի-տեալ 'ի Կասսանդրոսէ՝ որ թշնամին էր Էակիդեայ. և այնպէս հարուստ ժամա-նակ անշշունչ մտախորհ լինէր Գղաւկիաս 'ի սրտի իւրում. Այլ 'ի պահուն յայնմիկ յանխիթերս գնացեալ Պիւռռոս առ ար-քայն և կալեալ ձեռօքն զվերարկուն և 'ի վեր կանգնեալ զծնգօքն Գղաւկիոսի, զառաջինն 'ի ժպիտ շարժեաց զարքայն, ապա 'ի գութ խանդաղատանաց 'ի վերայ մանկանն՝ իբրու արտասուալից ողոքաւորի.

այնր ոտինն աստուածեան ունել զօրու-թիւն. իբրու որ յետ մահուան ողջոյն նո-րա աճիւնացեալ մարմնին, այն մատն նո-րա աննկէզ և անապական մնայր 'ի հրոյն: Այլ յաղագս այսորիկ յետոյ ուրեմն 1 :

Ապա անդ դարձեալ նա եօթն և տա-սանց, և աներկեան զանձն կարծեալ յար-քայութեանն, ել չոգաւ առ Աւրիկեցիս 'ի հարսանիս միոյ ուրուք յորդւոցն Գլաւ-կեայ դայեկորդւոց իւրոց: Իսկ յայնժամ միւսանգամ վտարանջեալ Մոլոսացիքն՝ 'ի բաց զբարեկամսն նորա հալածեն, և յա-ւարի առեալ զգանձն արքունի՝ նուաճին ընդ ձեռամբն Նէոպտողեմեայ: Եւ այսպէս ապա յարքայութենէն զրկեալ Պիւռոս և լքեալ յամենեցուն, չոգաւ առ Դեմե-տրիոս որդի Անտիգոնոսի, որոյ կին էր Դէիդամիա քոյր նորա. այս Դէիդամիա՝ մինչդեռ մանուկ էր՝ խոստացեալ 'ի հար-սնութիւն Աղեքսանդրոսի որդւոյ Ռոքսա-նեայ, սակայն ընդ ձախողակս իրք նորա գնացեալ, հարսնացու եղեալ Դէիդամիա՝ ամուսնացաւ ընդ Դեմետրիոսի:

Եւ ապա 'ի մեծի պատերազմին յԻպ-սոն, ուրանօր մարտ եղեալ կռուէին ամե-նայն թագաւորք երկրի, Պիւռոս տակա-ւին պատանեակ միշտ անմեկնելի էր 'ի Դեմետրեայ, և նկուն արարեալ զամենայն հակառակամարտս նորա՝ մեծապէս երևե-լի լինէր 'ի զօրականին: Ապա և Դեմե-տրիոս նկուն եղեալ, նա երբէք չեթող զքեռայրն. այլ ընդ նորա ձեռամբն հաս-

Այլ յետ այնորիկ որք փախստեայք զաղտաբար ընդ միմեանս ձգէին զնոսա. և որ առաւել գրգռեաց զԿիւռոս՝ որպէս ասեն՝ էր այսպիսի. Էր սովորութիւն արքայիցն գնալ 'ի զոհ Արէսեանն Արամազդայ 'ի Պասարգադս՝ վայր գաւառին Մողոտացւոց. և զոհեալ՝ երդուեալ կալ առաջի ժողովրդեանն՝ ըստ օրինացն վարել զտէրութիւնն. նոյնպէս և ժողովրդոցն՝ պահել նոցա զտէրութիւնն ըստ օրինացն ըստ այնոցիկ: Կատարեցան և յայնժամ այսոքիկ յանդիման թագաւորացն երկոցուն՝ որ անդր եկին հասին հանդերձ բարեկամօքն. ուր և մեծապէս ընծայաբերք ընծէին նոքա միմեանց: Անդ Գեղոմէ հաւատարիմ Նէոպտղոմեայ՝ ըղձակալթ առ Կիւռոս եղեալ՝ պարգևէր նմա ամոլս երկու արօրաձիգ եզանց: Զսոսա խնդրեալ 'ի Կիւռոսէ Միւրտիղոս մատռուակ նորա, և 'ի յանձն չառնուլ Կիւռոսի և 'ի տալ այլում, յոյժ սրտնեալ խեթացաւ Միւրտիղոս. որում և խրաղզած լինէր Գեղոմէ, և յանթրիս հրաւիրեալ զնա (և որպէս կէսք ասեն՝ զինէհարութեամբն եղեալ ևս ընդ նմա՝ զի էր գեղեցիկ), հրապոյրս արբուցանէր նմա՝ զկողմն կալեալ զՆէոպտղոմեայ՝ դեղել զԿիւռոս: Անդ Միւրտիղոս ընկալեալ զհրապոյրսն խոստու 'ի վերին երեսս հաւանեալ ընդ բանին և անդստին ևս կամել զայն, երթեալ տալոյ 'ի վեր հանէր զբանն առ Կիւռոս:

Այլ 'ի հրամանէն Կիւռոսի Միւր-

ռի և նա զառաջին առեալ՝ բուռնայր զՆէոպտողեմոս 'ի կենաց, յորժամ 'ի միառին բարգեցաւ և այն խելթ մահահոտ։ Յետ այնորիկ Պիւռռոս յուղարկեալ զԲերենիկէ և զՊտողոմէոս, յանուն պտղոմեայ կոչէր զորդին՝ զոր ծնաւ նմա Անտիգոնէ. և շինէր ևս քաղաք 'ի Քերսոնէսոն Եպիռոսի, և անուն կարդայր նմա Բերենիկիդէս։

Իսկ յետ այսորիկ բազում ինչ և մեծամեծ նահատակութիւս խնդրեալ Պիւռռոս և յուսով խնդացեալ, նախ քան զամենայն՝ որ առ ոտս կայր՝ գտանէր հնարս իմն ձեռնամուխ յիրս Մակեդոնացւոցն՝ օրինակ զայս. Էր Անտիպատրոս երէց որդի Կասանդրոսի սպանեալ զմայր իւր Թեսաղոնիկէ, և 'ի բաց զեղբայր իւր վարեալ զԱղեքսանդրոս։ Սա առաքեալ խնդրէր թիկունս 'ի Դեմետրիոսէ, կոչէր և զՊիւռռոս ինքնին. իբրև Դեմետրիոս անպարապեալ դանդաղէր, գնացեալ առ նա Պիւռռոս խնդրէր 'ի վարձ մարտին զՍտիմփէա և զծովափնեայն Մակեդոնիոյ. դարձեալ և 'ի ժողովրդոցն նուաճելոց զԱմբրակիա և զԱկառնանիա և զԱմփիլոքիա։ Զորս և առ հասարակ առեալ, կարգէր անդ պահանորդս. և խաղայր դիմէր այնուհետև առնոյր նուաճէր ընդ ձեռամբ Աղեքսանդրի զվայրսն՝ հանեալ 'ի ձեռաց Անտիպատրեայ։

Իսկ Լիւսիմաքոս արքայ կամեցեալ ձեռն տալ Անտիպատրոսի և խափանեալ

յանպարապութեանցն, սակս զինուորել չափ եթէ ըստ կամս Պտղոմեայ երթէք չելանէ Պիւռռոս՝ առեալ առաքէ առ Պիւռռոս նամակ մի կեղծ իբրև 'ի Պտղոմեայ. հրաման տուեալ նմա անդի տալ յարշաւանաց անտի խուրոց, և փոխն այնորիկ քանքարս երեքհարիւր առնուլ յԱնտիպատրեայ: Իբրև ընթեռնոյր զայն բանսայր Պիւռռոս, անդէն 'ի վերայ հասանէր նենգին Լիւսիմաքեայ. քանզի զսովորականն չգտանէր 'ի նմա գրեալ զանուանակոչութիւնն, զայն, եթէ Հայր առ Որդի, Խնդալ. այլ թէ՝ Արքայ Պտղոմէոս առ արքայ Պիւռռոս, Խնդալ. Ուստի և կշտամբանս առաքեալ նա առ Լիւսիմաքոս, հակամիտէր սակս և 'ի հաշտութիւնն. և երեքին նոքա միանգամայն եկեալ հասին՝ երդմամբք 'ի զոհս կռել զպայմանսն: Իբրև 'ի զոհսն 'ի մէջ ածին նոխազ մի և ցուլ մի և խոյ մի. դէպ եղև խոյին մինչչև յազեալ մեռանել ինքնին, և 'ի ծաղր շարժեաց առհասարակ. այլ անդ Թէոդոտոս խղճ չտայր թոյլ Պիւռռոսի երդնուլ, և ասէր զայն դէպսն նշանակ մահու միոյ ուրուք 'ի թագաւորացն. ուստի և Պիւռռոս յայնժամ ձեռնթափ լինէր 'ի խաղաղութենէն:

Իսկ յետ այնորիկ 'ի հանդարտութիւն դարձեալ իրք Աղեքսանդրի, համայն և այնպէս Դեմետրիոս եկն եհաս անկոչ 'ի նմանէն և յոչինչ պէտս. ուստի և ահ անկաւ 'ի վերայ նորա: Իբրև աւուրս սակաւ կացին նոքա առ միմեանս, յերկուացեալ

այր ընդ ընկեր՝ որոգայթ լարէին միմեանց. այլ Դեմետրիոս դէպ ժամանակ գտեալ և կանխեալ՝ բառնայր 'ի կենաց զԱղեքսանդրոս, և ինքն համբաւէր թագաւոր Մակեդոնիոյ։ Բայց էր և 'ի վաղնջուց խէթ Դեմետրի ընդդէմ Պիւռոսի, զի և ասպատակեալ էր Պիւռոս 'ի Թեսաղիա. առ այս և ցանկութիւն առելասացութեան՝ անկակից ախտ թագաւորաց՝ զնոցա զառ միմեանս մերձաւորութիւնն ահագին և կեղակարծելի յարդարէր, յաւէտ իմն յետ մահուանն Դեղամեայ։ Այլ իբրև երկոքեին նոքա գրաւեալ զՄակեդոնիա՝ 'ի նոյն և 'ի մի հետամուտք լինէին, և թշնամութեան նոցա այնուհետև մեծամեծք էին բարուք, Դեմետրիոս խաղացեալ ընդդէմ Ետողացւոց և նուաճեալ զնոսա՝ թողոյր անդէն զՊանտաւքոս բազում զօրու, և ինքն դիմէր ընդդէմ Պիւռոսի. 'ի նոյն և Պիւռոս ընդդէմ նորա վաղվաղակի՝ իբրև ազդ լինէր նմա. այլ երկոքեին մոլորեալք յուղւոյն՝ ոչ պատահէին միմեանց։ Դեմետրիոս մխեալ յԵպիռոս աւար հարկանէր, և Պիւռոս պատահեալ Պանտաւքոսին՝ կարգեցաւ 'ի կռիւ մարտի։

Իբրև պատերազմն խառնեցաւ, ահագին և մեծ էր գործն՝ յաւէտ իմն առ կողմամբք զօրավարացն։ Քանզի Պանտաւքոս արութեամբ քաջութեամբ և ուժով մարմնոյն և յաջողակի վարժիւքն առաջին 'ի զօրավարսն Դեմետրի՝ մեծամիտ գոռ և խե-

խօսէին որ միանգամ ականատես կացին շահատակութեանցն նորա, և ընդ նմա 'ի վէգ եկին: Քանզի թուէր նմա այնպէս նոցա՝ 'ի դէմս կերպարանացն և յարագութեանն և 'ի դարձմն բերել Պիւռոսի զնմանութիւն զԱղեքսանդրին, զշուք և ըզթափոյն յարձակմանն և զբռունն զօրութեանն 'ի կռուին ընկարագիրն՝ 'ի Պիւռոս տեսանել. քանզի զնմանութիւն բերէին զԱղեքսանդրին այլք 'ի թագաւորաց 'ի հանդերձս ծիրանեացն և 'ի բազմակոյտ անձնապահապետսն և 'ի թեքել պարանոցին և 'ի պերճանալ բարբառոյն. մի միայն Պիւռոս հանգունատիպ եկաց նմա 'ի զէնս և 'ի կորովութեան ձեռացն: Իսկ յաղագս հմտութեան վարժից նորա 'ի կարգել և 'ի վարել բանակաց, գեղեցիկ հաւաստիք գոն մեզ յարձանագրութեանց անտի նորա յաղագս իրացս այսոցիկ:

Եւ ասեն՝ եթէ հարցեալ Անտիգոնոս, ո՞ իցէ առաւել քաջ 'ի զօրավարաց, ետ պատասխանի. Պիւռոս 'ի ծերանալ իւրում. յայտ արարեալ զնա քաջ՝ որ միայն առ իւրովքն էին ժամանակօք. այլ ապա Աննիբաղ վկայէր՝ զի և քան զամենայն զօրավարս հանճարէն ըստ վարժիցն հմտութեան առաջին եկաց Պիւռոս. և երկրորդ՝ Սկիպիոն. և երրորդ՝ ինքն գլխովին. ըստ որում 'ի վարսն Սկիպիոնի արձանագրեալ կայ 2: Եւ գլուխ բանին՝ թուի թէ 'ի զինուորականին՝ անդուլ բանասիրութեամբ պարապեցաւ Պիւռոս, զայն

վարժ զեղեցիկ յոյժ համարելով առն Թագաւորի առաւել քան զամենայն, և այլ բազմաքանդակն մակացութեանց չաա-նելով փոյթ։ Քանզի և պատմեն՝ եթէ հարցեալ նմա 'ի կոչունս ուրեք՝ զո՞ դը քաջ ես համարեսցի որնդահար, ասրդեալ զՊիւ-ռոսն՝ եթէ զԿափիխոնս, ապա պատա-խանի՝ եթէ զԳողիւսակերքան զորավար. Իբրու որ 'ի դէպ առն Թագաւորի իցէ՝ այսոցիկ միայն պատկառ կալ և զխանել։ Եւ էր Պիւռռոս հեշտ բաղձալի առ ըն-տանիսն, և հեզ և հանդարտ 'ի բարկու-թեանն, և կազմ յօժարամիտ փոխարինել երախտեաց. զոր աղագաւ և մեծապէս ցաւեաց նմա օրհաս մահուն Էրոպեայ. և ասէր՝ եթէ Էրոպոս 'ի մահուն իւրում կրեաց զհասարակաց կիրս կանանցածնաց. և միանգամայն կշտամբէր զանձն Պիւռռոս, զի զանդաղագոյնս չէր փոխարինեալ ե-րախտեաց նորա։ Քանզի զպարտս մարթին և ժառանգք հատուցանել պարտատեարց. իսկ եթէ զարձ փոխարինի ոչ տացի երախ-տաւորացն կենդանեաց, վիշտ մեծապէս է այն արանց լաւաց և արդարոց։

Իսկ էր երբեմն 'ի կարծել ոմանց՝ եթէ Պիւռռոս ինքենին գոլով յԱմբրակիա՝ տա-րադիր արասցէ զայր ոք լեզուագար և ըզ-հայհոյիչ, ասէր Պիւռռոս. "Նա՛ մնա-ցանդ կայցէ մնասցէ այրդ այդ և լեզուա-գարեսցէ զմեզ 'ի մէջ սակաւ ամբոխից, քան եթէ շուրջ եկեալ արտաքս 'ի մէջ ամենայն մարդկան"։ Էր դարձեալ զի

յերիտասարդաց ոմանք ընդ գինի մտեալ և յիշոցս առ նա արձակեալ, և ըմբռնելըն իւրեանց՝ հարցանէր Պիւռռոս եթէ ճշմարիտ բարբառեցան յայնպիսեաց անտի, եւ պատասխանի մի ոմն 'ի նոցանէ և ասէ. « Այո՛ բարբառեցաք մեքայ. այլ արգեօք մեր առաւել բարբառեալ էր, եթէ առաւել ևս արբեալ էր մեր »: Ծիծաղեցաւ Պիւռռոս և արձակէր յազատութիւն:

Յետ այսորիկ առ 'ի բարգաւաճ ևս զիւրս իւր առնել և զզօրութիւնն, զկնի մահուն Անտիգոնեայ ած նա և զայլ կանայս, զդուստր Աւտոլէոնտեայ արքային Պէոնացւոց, և զԲիրկեննա դուստր Բարդիւլիոսի արքային Իլլիւրիկեցւոց, և զԼանասսա զԱգաթոկղէսի Սիրակուսացւոց, որ եբեր նմա յօժիտ զԿերկիւրացւոց քաղաքն՝ զոր էառ ինքնին Ագաթոկղէս: Եղև նմա յԱնտիգոնեայ որդի Պտղոմէոս, 'ի Լանասսայ՝ Աղեքսանդրոս, և 'ի Բիրկեննայ՝ Եղենոս կրսերագոյնն որդւոց: Եւ ապա ինքն գեղեցիկ պատերազմականութեամբ առհասարակ զնոսա յարդարեաց 'ի զէնս, և յարիութեն և յաշխոյժս վառեաց ելից զնոսա անդրատին յառաջին տիոց հրահանգեալ զնոսա: Քանզի պատմեն՝ եթէ հարցեալ 'ի միոյ յորդւոցն՝ տակաւին տղայ, ո՛ւմ ումեք 'ի նոցանէն թողցէ զարքայութիւնն, եւ պատասխանի. Ոյր 'ի ձէնջ սրագոյն նա իցէ սուսեր: Եւ այս ոչինչ օտար է յՈղբերգական նզովից անտի, եթէ՝ 'ի սրասայրաւոր յերկաթ՝ փոխանն վիճակեսցի եղբարց: Այնչափ

իմն անհաղորդական և գազանական է ցանկութիւն առաւելստացութեանն ։ Այլ յետ պատերազմին այնորիկ դարձ 'ի տուն արարեալ Պիւռռոսի, այնպէս երեւէր 'ի փառս և 'ի խորհուրդս մեծամեծարս զուարճացեալ ընկրկէր․ և յԾոփացւոց ևս վասն այնորիկ անուն առեալ Արծուի, ասէր․ "Ձերովք Արծուի եմ ես․ զի զիարդ ա-պա ո՞չ յաղթողեացի ինձ ձերովք զինուք իբր արաթեւովք սաւառնեալք բարձրաթռուիչ լինել" ։

Բայց յետ սակաւուց լուր առեալ Պիւռռոս զդժուարին հիւանդութեանն Դեմետրի, յանկարծակի յեղակարծումն ժամու հորդանս տայր անկանէր 'ի Մակեդոնիա․ ասպատակաւ ափուէր և աւար հարկանէր, և վայրիկ մի ևս առ հասարակ տիրանայր աներարգել 'ի վերայ արքայութեան. յառաջադէմ անդիմադարձ խաղայր գնայր մինչև յԵդեսիա, և շատք ևս գային յաւելուին 'ի նա՝ զինուորեալք ընդ ձեռամբ նորա ։ Այլ մեծ վտանգին յայնժամ դրդէր 'ի վեր կանգնէր զԴեմետրիոս՝ թէպէտ և վատեալ՝ յուժոյ․ և անդէն բարեկամք նորա և զօրավարք բազում ամբոխեկազմութեան առեալ սակաւ բանակի՝ դիմէին 'ի վերայ Պիւռռոսի ։ Իսկ Պիւռռոս՝ որ ասպատակաւոր մնացեալ յասպատակ անդր հասեալ կայր, խուճապեալ 'ի փախուստ դարձեալ, և ապա կորուստ ևս անկանէր 'ի զօրուէն նորա․ զի և անդուլ յուղւոյն 'ի վերայ նորա անկանէին Մակեդոնացիք ։

Այլ Թէպէտ և այնպէս վաղ ընդ փոյթ վանեաց Դեմետր զՊիւռոս, ոչինչ այնպէս արհամարհէր զնովաւ. այլ 'ի մտի եդեալ զմեծամեծաց Թեկն ածել, և անդրէն ողջոյն զարքայութիւն հայրենի 'ի բուռն արկանել, և հանդերձեալ նաւս հինգ հարիւր և ամբոխ զօրաց բիւրուց տասանց՝ ոչ 'ի կռիւ ընդ Պիւռոսի կայքաւէր, և ոչ դարձեալ մերձաւոր զոք կամէր Թողուլ Մակեդոնիոյ 'ի զօրաւորաց անտի. և քանզի ժամանակն չներէր նմա 'ի կռիւ ընդ Պիւռոսի, խաղաղութիւն արարեալ ընդ նմա՝ խաղայր գնայր ընդդէմ այլոց Թագաւորաց։ Այս զգաշինն կռեալ, և 'ի մեծապէս պատրաստութենէն յերևան եկեալ խորհուրդ կամացն նորա, զահէ հարեալ այլք 'ի Թագաւորացն՝ առեալ հրեշտակս և նամականի յղէին առ Պիւռոս, զարմացեալք յոյժ՝ Թէ որ զդէպ ժամանակն 'ի ձեռաց հանեալ Պիւռոս՝ սպասեալ միայ մարտ զնել կռուել ընդ Դեմետրի 'ի զօրանալ նորա. և ձեռնհաս առ օրէն զոլով 'ի Մակեդոնիոյ զնա 'ի բաց վանել 'ի բազում անպարապութեան նորա, դանդաղէ մինչև 'ի պարապել նորա և 'ի յօրանալ. զի ապա այնուհետև մարտ եդեալ կռուեսցի 'ի վերայ տաճարաց և չիրմաց զերեզմանացն Մողոսացւոց. և նա այսպէս՝ յորժամ անդ Դեմետր վաղը մի յառաջ եհատ 'ի նմանէ զԿերկիւրա, դարձեալ և զամուսինն՝ օժտաբեր նորա։ Քանզի Լանասսա դժկամակս բերեալ ընդ

Պիւռռոս, զի յաւէտ իմն հակամիտեալ էր յայս յամուսնացն՝ Թէպէտ և 'ի բարբարոսաց, մեկնեցաւ 'ի Կերկիւրայ. և 'ի խնդիր նոր հարսանեաց եղեալ արքայից՝ կոչեաց ըզ-Դեմետրիոս, իբրու որ առաւել հեշտալուր 'ի Թագաւորս յամուսնութիւն անդր. և որդեակք իսկ եղեալ նաւեաց անդր Դեմետր և հարսնացոյց զԼանասսա, և Թողոյր 'ի քաղաքին պահանորդս:

Զայս ինչ առալ գրեալ Թագաւորաց առ Պիւռռոս, միաբանամայն և ինքեանն նոքա խօսէր ընդ տան լինելին Դեմետրի 'ի գեգերանս նորա: Քանզի Պտղոմէոս նաւեալ նաւաց բազմութեամբ՝ յապստամբութիւն գրգռեաց զՀելլենացի քաղաքն. անդ առա և Լիւսիմաքոս 'ի Թրակիոյ գրոհ տայր 'ի Մակեդոնիա վերին և աւերէր քանդէր. և Պիւռռոս դարձեալ յարուցեալ խաղաց գնաց 'ի վերայ Բերիեայ, զմտաւ ածէր՝ որպէս և եղև իսկ՝ եթէ Դեմետրիոս չու արարեալ ընդդէմ Լիւսիմաքեայ՝ ամայի լքցէ զվայրապատառն: Բայց 'ի գիշերին՝ մինչև խաղացեալ Պիւռռոսի, Թուէր նմա 'ի քուն կոչել զինքն Աղեքսանդրի մեծի. և 'ի մօտ երթալ՝ տեսանել նմա զԱղեքսանդր խօթագին անկեալ 'ի մահճի. որ և գգուանօք ընկալեալ զնա՝ խոստանայր նմա մտադիւրագոյնս օգնել. իսկ Պիւռռոսի համարձակեալ ասել, "Եւ զիարդ, ով արքայ, խօթացեալ գոլով քո, զօրավիգն ինձ եղիցիս". և տալ պատասխանի Աղեքսանդրի, եթէ Անուամբ. և անդէն յերիվար

Նիւսեան աշտանակեալ Աղեքսանդրի, հոր-դել նմա ճանապարհ ։ 'Ի տեսլենէն մե-ծապէս խրախուսեալ Պիւռոս, ճեպով հասեալ զմիջնավայրն հասեալ ունի ըզ-Պերրիա. և անդ բազմանկոյթ զօրուն դա-դար առեալ, խաղայր և ընդ ըծով արկա-նէր զկողմանս այլ զգաւառաւքն 'ի ձեռն զօ-րավարացն ։

Լուր հասեալ առ Դեմետր, և խռովեալ ևս եղեալ զի 'ի բանակն խռով հարեալ է 'ի Մակեդոնացիս սաստիկ և մեծ, զահի հարու երկեաւ՝ եթէ և յառաջագէմ ևս խաղացեալ՝ նոքա մօտ իւրեանց ունելով զոք արքայ ընտիր Մակեդոնացի և ձոխ՝ (որ-պէսի ոք Լիւսիմաքոսն էր) 'ի նորա կողմն կացցեն ։ Այսպէս չուոյ հրաման տուեալ զօ-րուն՝ խաղայր գայր ընդդէմ Պիւռոսի, իբրու որ յօտարաց իցէ այն այր և Մա-կեդոնացւոց ատելի ։ Իբրև անդ մօտ բա-նակ հարեալ նստաւ և Դեմետր, շատք ո-մանք յայնժամ գնացեալ 'ի Պերրիայ 'ի բանակ անդր նորա, 'ի գովութիւն զՊիւռ-ռոս առնուլին՝ իբրու անպարտելի այր 'ի զէնս, և հոյակապ այր և շքեղ, և հեզ և մարդասէր առ նուաճեալսն ։ Իսկ էին անդր և գաղտաբար արք ոմանք՝ առաքեալք 'ի Պիւռոսէ, որ ասէին զանձինս Մակե-դոնացիս զոլ. և թելադիր ևս լինէին՝ իբ-րու 'ի դէպ ժամանակի յայնժամ թօթա-փել զլուծ ծանր զԴեմետրեայ, և անցա-նել առ Պիւռոս՝ իբրև առ ժողովրդա-կան այր և զօրականին սիրող ։

ջոյն զաշխարհն բաժանէին նոքա 'ի մէջ իւրեանց. երկոցուն ևս կողմանցն մեծապէս շահ, և դուլ և դադար առ 'ի մարտէն, այլ ոչ բազում ժամանակ. զի նոյն այն բաժանել չարգել իսպառ զթշնամութիւնն. նա և պատճառք գլխովին լինէր կագին և գժտութեանն նոցա :

Քանզի չէ և չէ իսկ հնար, եթէ երբէք նոքա որոց ցանկութեան աւելաստացութեանն ոչ ծով լինէին չափ դնել բաւական եղև և ոչ լերանցն զօտիք և ոչ անապատք ամայիք, և որոց կիրք ոչինչ գրաւեալ պարանեացին 'ի սահմանացն՝ որ զԵւրոպէ անջրպետեանն և զԱսիա, եթէ երբէք այնուհետև դրացիք միմեանց գոլով յանդորրու կացցեն, և երբէք այր զընկեր չզրկեսցէ. այլ 'ի հարկէ խմբէ անդուլ մարտ եղեալ կռուեսցին նոքա տնկակից ատելութեամբ և դաւով. և ապա 'ի վար առնուն նոքա զանուանան զկրկին՝ զմարտին և զխաղաղութեան՝ իբրու արդարև դահեկանս ոմանս, ծախեալ զայնոսիկ ըստ դէպ ժամանակին յանձանց շահ՝ և ոչ յարդարութիւն : Սակայն լաւ ևս նոքա են՝ որ յայտնի 'ի մարտն պատերազմին, քան որք զդուլ և զդադար զանիրաւութեանն՝ արդարութիւն կոչեն և բարեկամութիւն : Զսոյն յայտնի 'ի դէմս երբեր Պիւռռոս :

Քանզի անդրէն միւսանգամ յարուցեալ նա 'ի վերայ Դեմետրի՝ որ երթալով երթայր և զօրանայր, և հակառակ ամբարձեալ նորա զօրութեանն՝ որ իբրև 'ի դը-

օտարական, որք նախնիքն ցանգ 'ի ծառայութեան կացին Մակեդոնացւոց. իսկ զմեծին Աղեքսանդրի զպարտականն և զընտանիս հանէին վանեցին 'ի Մակեդոնիոյ։ Իբրև բազումք ոմանք հրապուրեցան 'ի բանսն, զահի հարեալ Պիւռոս եւ մեկնեցաւ հանդերձ Եպիրացւովքն և Նիզակակցօքն. և օրինակ զայն 'ի ձեռաց հաներ զՄակեդոնիա, որով և 'ի բուռն արկ։ Ուստի և արքայից չէ արժան մեղադրել ռամկին լինել, եթէ երբեք խլրտեսցեն ինչ նոքա 'ի շահ անձանցն. քանզի նմանողք վարժապետացն լինին դրժանացն և մատնութեանն, և համարին իմն այնպէս եթէ շատ ինչ օգտի՝ որ սակաւ 'ի վեր զարդարութիւնն առնու։

Ապա յայնժամ մեկնեալ Պիւռոսի յԵպիրոս և թողեալ զՄակեդոնիա, էր իսկ նմա առ 'ի բաղդէն նստել վայելել յերկրին՝ յանդորրու թագ կալեալ անդանօր. այլ սակայն թուէր իմն նմա եթէ աշխատ զայլս չառնել, և աշխատ յայլոց չլինել, ժամավաճառութիւն իցէ տաղտուկ. ըստ որում և Աքիլլէս ոչինչ հանդարտէր պարապորդութեանն. " Այլ հիւծէր մաշէր 'ի սիրած յոգին՝ անդանօր կալով մնալով, և ցանկայր գոչին և մարտի պատերազմի ,, 4։ Ապա դէպ եղև ընձեռն Պիւռոսի՝ օրինակ զայս զնորոց բուռն հարկանել նահատակութեանց։

Զայնու ժամանակաւ մարտ եղեալ կռուէին Հռովմայեցիք ընդ Տարանտինա-

ցի՝ որպէս արժանն է՝ և զբօսնուլ և կայ-
թել, չարգելուք։ Արդ եթէ ուշիմք իցէք, առհասարակ ամենեքեան վայելեցէք դուք յազատութիւնդ՝ զոր ունիմքս առաջիկ. քանզի ո՛չ ինչ իրս արդեօք հասանիցէ ձեզ գործել և ո՛չ օրինակ վարուց կեանս և ո՛չ քաղաքավարութիւն, յորժամ Պիւռռոս մուտ 'ի քաղաքս արասցէ,,։ 'Ի բանից աստի շատք ոմանք 'ի Տարանտինացւոցն հաւանեցին և շշնջիւն էր 'ի ժողովին իբրու գովել զՄետոնին։ Բայց որք խիթային՝ 'ի հաստատել խաղաղութեանն՝ անձնատուր 'ի Հռոմայեցւոց լինել, սկսան կշտամբել զխուժանն՝ զի այնպէս հեզաբար տարալբենի ամենհարութեանն և ժպրհութեանն. և ապա առհասարակ յարուցեալ արտաքս վարեցին զՄետոնն։

Ապա կարգեալ զմիոն՝ արձակեցին հրեշտակս պատարագօք յԵպիռոս ոչ 'ի Տարանտինացւոց միայն, այլ և յԻտալացւոց անտի, ազդ առնել Պիւռոսի՝ զի հանճարեղ և քաջի զօրավարի պէտս են նոցա. և զի՝ զօրաժողով մեծ 'ի գաւառաց առ ձեռն կայ, բանակ կազմեալ 'ի Լեկանացւոց և 'ի Մեսապացւոց և 'ի Սամնիտացւոց և 'ի Տարանտինացւոց՝ այրուձի երկուց բիւրուց, և հետևակք՝ երեսուն և հինգ բիւրուց։ Եւ ապա այս ազդումն ոչ զՊիւռոսին միայն ոգին վառեաց, այլ և իղձ սաստիկ յորդեաց Եպիռացւոցն խաղալ գնալ 'ի կռիւ մարտին։

Իսկ էր զայնու ժամանակաւ Կինէաս

ոմն թեսաղացի այր՝ զհանճարոյ հարեալ այր քաջուշիմ և զգօն։ Սա այս Կինէաս աշակերտ կացեալ Դեմոսթենեայ հռետորի, Թուէր նմա՝ միայն 'ի մէջ ճարտասանից ժամանակին խօսու ճշգրիտ պատկերաւ յուշ ածել լսողին զճարտասանութիւն և զզօրութիւնն Դեմոսթենեայ։ Եւ բնակէր սա ընդ Պիւռռոսի, և 'ի նմանէ առաքեալ 'ի քաղաքս քաղաքս, ճշգրտէր զԵւրիպիդեայ զնուագն, եթէ “ Զամենայնն տապալէ քանդէ բանն, որչափ ինչ միանգամ զօրէ պողովատիկ Թշնամեացն ,,։ Եւ վկայէր ինքնին Պիւռռոս, եթէ շատ ես 'ի քաղաքաց ժառանգեցոյց նմա Կինէաս ճարտարաբանութեամբքն, քան եթէ ինքն զինու զարդու. ուստի և մեծապէս պատուէր զնա, և ստէպ գործի 'ի ձեռն առնոյր զնա։

Արդ տեսեալ սա յայնժամ զՊիւռռոս պատրաստեալ խաղալ յԻտալիա, ժամ գտեալ զրուցէր ընդ նմա և ասէր. “ Քաջամարտիկք յոյժ են ով Պիւռռոս՝ որպէս ասեն՝ Հռովմայեցիք. և նուաճեալ ես են ժողովուրդս բազումս հզօրս. և եթէ Աստուած ինքնին տացէ մեզ պարտել զնոսա, զի՞նչ շահ կայցէ մեզ 'ի յաղթութենէ անտի “։ Եւ պատասխանի Պիւռռոս և ասէ։ “ Զյայտնեաց դու հարցումն առնես ով Կինէաս. 'ի պարտութիւն մատնեալ Հռովմայեցիք, այնուհետեւ ոչ 'ի բարբարոսաց ոք և ոչ 'ի հելլենացւոց քաղաք երբէք 'ի վէճ գայցէ ընդ մեզ. այլ անդէն

ողջ զինուորս 'ի բուռն կալցուք, որք մե-
ծութեանն և զօրութեանն և տէրութեան
անտեղեակ՝ թող այլ ոք մանաւանդ իցէ,
քան թէ դու ինքնին»: Անդ Կինէաս վայր
մի մտախոհ, կրկնեաց և ասէ. «Այլ արդ
զինուորս կալեալ մեր ով արքայ, զինչ
գործեսցուք»: Չև Պիւռռոս համօրէն 'ի
վերայ կացեալ մտացն նորա, ասէր. «Ահ
գանոր մերձ կայ Սիկիլիա՝ ձեռնտու զօրա-
վիգն մեր, կղզի երանելի և բազմաժողով,
զոր և հեշտիւն կալցուք մեք: Քանզի և զար-
գիս՝ յորմէհետէ մեռեալ եա անտի Ագա-
թոկղէս, ով Կինէաս, 'ի հերձուածս ամ-
բաւ պաշարեալ նստի Սիկիլիա, և անիշ-
խանութիւն է անդ քաղաքաց, և անդ ող-
ջոյն թագաւորէ խռովագլխութիւն հռե-
տորացն խուժանին»: Կրկնեաց Կինէաս և
ասէ. «Եւ կարծի՛ իսկ քաջ են բանքդ.
այլ կէտ նպատակի զինուորութեանս մե-
րոյ՝ իցէ՞ թերևս առնուլ Սիկիլիոյ»: Պիւռ-
ռոս ասէ. «Տացէ մեզ Աստուած ինքնին
յաղթութիւն և ելս գեղեցիկ. և արդ
Սիկիլիոյ առնուլ՝ նախամարտութիւն մե-
ծաց նահատակութեանցն իցէ՝ զոր արդ
նահատակեսցուք մեք: Քանզի ոք այնու-
հետև հանդուրժել բաւական իցէ ոչ ան-
ցանել անդուստ 'ի Լիբիա և 'ի Կարքե-
դոն՝ որ այնչափ մօտ կայ. զոր և ինքնին
Ագաթոկղէս գոգցես հասեալ կալաւ,
գաղտագնաց 'ի Սիրակուսացւոց անցեալ
հասեալ սակաւ նաւուք զծովն: Իսկ յոր-
ժամ այնց վայրացն տիրեսցուք, երբեք ո՛

փառն յուսոյն խորհէ ուժգինս ձգեալ բերէր յայնժամ այրն ։

Այս առաջին առեալ արձակեաց զԿինէաս առ Տարանտինացիս հանդերձ երեք հազար զօրականօք. և յետ այնորիկ տայր բերել 'ի Տարանտեայ նաւս բազումս ձիաբարձս. և նաւս դարձեալ յարկածածուկս, և զազգ ազգ նաւաց բեռնաբարձից. և առեալ կարգէր 'ի նոսա փիղս քսան, այրուձի երեքհազար, հետևակս երկուց բիւրուց, աղեղնաւորս երկու հազար, և պարսաւորս հինգհարիւր ։

Եւ այսպէս կազմ տուեալ ամենայնին՝ անկանէր յուղի. սակայն 'ի մէջն հասեալ Յոնիոյ՝ խուճապեալ պաշարէր 'ի հիւսիսն բռնութենէ, որ ուժգինս շնչեալ արտաքոյ ժամանակին՝ ձգեալ ընդ իւր վարէր զնաւսն ։ Եւ թէպէտև բուռն և սաստիկ էր հողմն, յինքն 'ի քաջութենէ նաւաստեացն և ղեկավարացն՝ հատանէր անցանէր զօրութեամբ և մօտէր 'ի ցամաքն մեծաւ աշխատութեամբ ։ Իսկ այլք 'ի նաւացն որոշեալք 'ի միմեանց՝ յայսկոյս յայնկոյս ցանեալք ցրուեցան. կէսք վարեալք տարագէմ 'ի ծով Լիբիոյ և 'ի Սիկիլիոյ՝ ոչինչ կարացեալ ունել զխաղաղս. և կէսք դարձեալ ոչինչ բաւականք զդէմ ունել հրաւանդանին Յապիգեայ՝ պատեալք 'ի մութ գիշերոյն՝ հարեալք ծփային յամեհի կոհակացն ծովուն 'ի խորուտս խինս և 'ի վայրս ծանծաղս. և առհասարակ ամենայնն հարեալք և հարուածեալք՝ բայց յարքու‐

նի նաւէն՝ ուր կայր ինքնին Պիւռռոս՝ որ-պէս ասացաք. որ և 'ի ծովէն թաղեալ կայր յակատամանի, երբ և յաղթ էր և քա-ջամուր և ժուժայր բերէր բռնութեանն. սակայն շնչեալ 'ի նա հողմոյն՝ որ 'ի ցա-մաքէն, տագնապեցաւ և նա քայքայիլ 'ի բռնութենէ ահագին ալեացն բախեալ առաջակողմն նաւուն։ Եւ քանզի թողուլ միանգամ 'ի ծովն վայրենացեալ և 'ի թափ հողմոյն շնչելոյ բազմօրինակ և փո-փոխ՝ յոյժ ահագին էին կիրք, անդէն վազեալ Պիւռռոս 'ի ծով անդր արկանէր զանձն, 'ի նոյն և բարեկամք և անձնապա-հապետք ընդ նմա. և անդ 'ի ջուրսն այր զարաւք 'ի խուռն տագնապին խնդրէին ձեռն տալ նմա. սակայն և յաղջամուղջ գիշերոյն և 'ի կոհակացն յահագին գոչ-մանէն և 'ի սաստիկ խորտակելոյ ալեացն՝ կարի դժնդակ էր զօրավիգն. մինչև 'ի լու-սանալ աւուրն և 'ի դադարել հողմոյն՝ հա-զիւ ուրեմն հասանէր ունէր նա զցամաքն. թէպէտ և վաստակեալ յոյժ մարմինն՝ այլ անվկանդ և կորովի ոգին 'ի կիրս ամբաւ աղէտիցն։ Անդ Մեսապացիք յորոց յա-փունսն անկաւ Պիւռռոս՝ փութապէս ըն-թացեալ ձեռն տային ըստ ժամուն պի-տոյից, որպէս և այլոց ևս նաւացն ապրե-ցելոց. յորս և նուաղունք յերիվարաց, հետևակք երբեք երկու հազար, և փիղք երկու միայն։ Զսակաւաձեռն զայն գունդ առեալ Պիւռռոս՝ անկաւ յուղի 'ի Տա-րանտոն։

Լուր առեալ Կինէասայ՝ հանդերձ զօրուն ընդ առաջ խաղաց Պիւռոսի. և այնպէս մտեալ 'ի քաղաքն, ոչինչ բռնանայր և ոչ դժկամակս ինչ Տարանտինացւոցն գործէր, մինչև ապրեալք հասին նորա նաւք և 'ի մի խմբէր զօրն բազմազոյն մասամբ: Եւ ապա տեսեալ Պիւռոսի, զի մինչչև 'ի մեծէ բռնութենէն ստիպեալ Տարանտինացւոց՝ ոչինչ յաջողեսցին նոքա ոչ յանձանցն փրկութիւն և ոչ յայլոցն, այլ իբրու որք յանդորր ելեալք 'ի նահատակութենէն նորա, ինքեանք դադարեալ կային 'ի տունս՝ պարապեալք զբօսանաց 'ի բաղանիս և յակումբս բազմականին, տայր ապա Պիւռոս կնքել փակել զապարէզս նոցա և զճեմելիսն՝ ուր ճեմ առեալք զրուցէին տարապարտս այլ այլ իբրու զօրավարք ոմանք զմրցանաց մարտին. արգել կնքեաց և զգինեըմբուս նոցա, և զխնճոյս կայթիցն, և զդժպատեհ սփոփութիւնսն. և ձայն տուեալ կարդաց զնոսա 'ի զէն և 'ի զարդ, և խիստ և անողոքելի գտանէր նա յայնժամ 'ի համար զօրաժողովին. որպէս զի և շատք ելեալ մեկնեցան 'ի քաղաքէն, զի և բնաւորեալ չէին՝ եթէ ոք հրամայեսցէ նոցա, և ծառայութիւն ասէին՝ եթէ ոչ ըստ կամի վարէին կեանս:

Իսկ իբրև լուր հասանէր առ Պիւռոս, եթէ Լեւինոս հիւպատոս Հռոմայեցւոց դիմեալ գայ ընդդէմ զօրու ծանու և քանդէ աւերէ զԼեւկանիա. թէպէտ և նիզակակիցքն չև էին հասեալ, դժպատեհ հա-

մարտեացաւ՝ գերագերել մինչև 'ի մահու թշնամեացն ։ Եւ առատապէս խուռնս զզուականացն. քարոզ մի առնուլ յղէր յառաջագոյն առ Հռովմայեցիս, առնել եթէ հաճոյ իցէ նոցա մինչ չև դրդուեալ մարտին՝ դատաւոր կալ ընդ այլոց Իտալացւոց, զինքն ունելով դատաւոր և միջնորդ ։ Իսկ պատասխանի տայր Լեւինոս, եթէ երբեք Հռովմայեցիք չկարգեցին զՊիւռոս 'ի միջնորդ, դարձեալ՝ և չերկեան ինչ 'ի նորա թշնամութենէն, յառաջ խաղաց Պիւռոս և եկեալ բանակ հարկանէր 'ի դաշտին ընդ մէջ Պանդոսեայ և Հերակլեայ ։ Անդանօր լուր առեալ եթէ մօտ կան Հռովմայեցիք՝ բանակեալ յայնկոյս գետոյն Սիրեայ, մերձ 'ի գետ անդր գայր յերիվար աշտանակեալ 'ի զինին կալ թշնամեացն. տեսեալ զդաստաւորութիւնն և զպահակերաց զզգուշութիւնն և զգեղեցիկ զկարգն և համբուն զզօրուն ճակատ, հիացեալ Պիւռոս՝ դարձաւ առ որ 'ի բարեկամացն մերձն կայր, ասէր. “Դա՛ւ այդ դաստաւորութեան կարգ բարբարոսացդ ո՛վ Մեգակղէ, չէ բարբարոսական. այլ տեսցուք զարդիւնս գործոց դոցա”։ Եւ անդ հոգ մեծապէս զհանդերձելոցն կալեալ՝ խորհէր մնալ նիզակակցացն, և հանէր կարգէր առ ափամբ գետոյն պարեկապանս 'ի քաջաց. զի թէ երբէք կանխեսցեն զգետն անցցեն Հռովմայեցիք՝ ընկրկեսցեն զնոսա ։

Բայց անդստին Հռովմայեցիք աճապարեալք քան զակնկալութիւնն Պիւռոսի,

պատրաստեցան անցանել. հետեւակք ընդ հունն, և այրուձին աստ անդ 'ի վայրաց վայրաց խուժեցան ընդ գետն. ուստի և Հելլենացւոց պահակք զանգիտեալք եթէ 'ի ներքս փակեսցին, տեղի տուեալ գնային։ Լուր առ Պիւռոս հասեալ՝ 'ի շտապ տագնապի հրաման տայր զօրագլխաց հետեւակին վաղվաղակի կարգ տալ զօրուն, և կազմ կեալ հրամանին նորա։ Եւ ինքն հանդերձ երեքհազարեան այրուձիովն յառաջ խաղայր. ակն ունէր արհաւիրս ըզ-Հռոմայեցւովքն արկանել 'ի վարատական անցսն։ Բայց առ ափամբն յակն արկեալ նա զփայլիւն բազմախուռն վահանաց, զարձեալ՝ զի և կարգ առ կարգ գեղեցիկ այրուձին այնպէս ընդդէմ նորա խաղայր, խիտ առ խիտ խմբեալ զինուորն՝ այնպէս ինքն առաջին նահատակեցաւ 'ի թշնամիս անդր. և որպէս ականաւոր և երևելի Պիւռռոս 'ի գեղ և 'ի շողիւն հրաշազարդ զինուցն, սոյնպէս և նահատակութեամբն ոչ ինչ նուազեալ լինէր առ ետեղ 'ի գեղեցիկ համբաւոյն, ձիգն մեծաձիգն թափեալ մարտ դնել կռուել կորովի բազկօք և քաջապէս վանել ընկրկել զախոյեանս. առ այս և անշփոթ զառաջնորդականն կալեալ անվթար ուշիւ միտացն, այնպէս գեղեցիկ իբրու բնաւ իսկ անզրժելի 'ի վտանգաց՝ տանէր բերէր զգոռ մարտին. ընթանայր վազէր առհասարակ, և ձեռն տայր ընդդէմ բռնութեան թշնամեացն։

Յայնմ մեծի տագնապի գետակն 'ի վեր

ամբաստանեայր Լեոննատոս Մակեդոնացի, տեսանէր զոմն յԻտալացւոց անձն՝ զի ուղ-անքթիւթ կալեալ միայր Պիւռոսի, և ան-դուլ 'ի նա կոյս զերիվարն մտրակեալ՝ փո-խէր շարժէր զուղղահետ Պիւռոսի, ձայն տուեալ նմա՝ ասէր. «Տեսանե՞ս ո՛վ ար-քայ զբարբարոսդ 'ի սեաւն աշտանակեալ ձի և 'ի ձեռնամարտութեան. անշուշտ զա մեծ ինչ և ահաւոր 'ի միտսն յուզէ, 'ի քեզ ինքն միայն զհետակն կալեալ և քո 'ի հանդիպոյ ցանկոց արձանացեալ խաղայ՝ զայրացեալն ըն-քաջութեամբ՝ զայլովքն զանց արարեալ։ Բայց դու յառաջնեգ պահ կալցես անձինդ»։ Եւ պատասխանի Պիւռոս և ասէ. «Յոր-հանէն ո՛վ Լեոննատէ փախչել չէ՛ք հնար. սակայն ոչ դա և ոչ այլ ոք յԻտալացւոց ոչ խնդասցէ՝ 'ի վէճ ընդ մեզ եկեալ»։ Այն ինչ նոցա բանքն 'ի բերան էին, ան-դուստ Իտալացին զտէգն ձօձեալ և երի-վարին ձախր տուեալ՝ թափ արձակէր ընդ-դէմ Պիւռոսի. և այնպէս միահետ հա-րեալ խոցէր նա զերիվար արքային, և Լեո-նատէս զերիվար նորա։ Իբրև երկոցուն ե-րիվարքն տապաստ անկանէին, շուրջ բոլոր կամացն վարեալ՝ զՊիւռոս ապրեցու-ցեալ 'ի բաց հանէին. և Իտալացին 'ի կռուել իւրում անդէն դիտապաստ ան-կանէր։ Էր սա ազգաւ Փրենտացի զօրա-պետ միոյ գնդի, Ոպլակոս անուն նորա։

Իսկ յայնմանէ մեծ եւս զգուշութիւն իւրում անձինն առնէր Պիւռոս. և տե-սեալ զպայրուաձին տեղի առ՝ յառաջ զփա-

զանգն կոչէր և ճակատ յարդարէր ։ Ապա
զիւր քղամիդն և զզէնսն՝ Մեգակղեայ
տուեալ բարեկամին, և զնորայսն ինքն ա_
ռեալ, այնպէս քողարկեալ հարկանէր 'ի
գիմի Հռոմայեցւոցն. իսկ նոքա քաջապէս
'ի կռիւ ելեալք զդէմ ունէին, զի և հա_
րուստ մի ժամանակ այնպէս անվճար լի_
նէր մարտն. և պատմէին ևս՝ եթէ և երկո_
քին կողմանք եօթն անգամ քաջ քաջ 'ի
փախուստ դարձան, և նոյնչափ դարձեալ
հետամուտք հալածեցին ։ Եւ թէպէտ և 'ի
ճահ զինուցն փոփոխել արքային՝ պատ_
ճառք նորա փրկութեանն լինէր, վայրիկ
մի ևս յայնմանէն խանգարեալ եղծանէր
առհասարակ ամենայնին և 'ի գերեւս յաղ_
թութիւնն ելանէր ։ Քանզի շատք ոմանք
յայնժամ յարձակեալք 'ի Մեգակղէս, մի
ոմն անուն Դեքսոս՝ առաջին հարեալ ապա_
նանէր զնա. և զսաղաւարտն և զքղամիդն
կապտեալ 'ի նմանէ՝ մօտակ 'ի կուշտ ձիա_
ւորեալ առ Լեւինոս՝ ցուցանէր շքով լղ_
կապուտն. ձայն բարձեալ աւէր ապանեալ
զՊիւռռոս ։ Մինչդեռ այն կապուտ շուրջ
'ի դասս զօրականին յերևան գայր՝ 'ի ձայն
ցնծութեան ուրախացեալ Հռոմայեցիք
աղաղակ բառնային. իսկ անդուստ Հելլէ_
նացիք տրտմեալք պատառուշք 'ի սուգ
թաղծութեան համակեցան ։ Ապա եղեալ
Պիւռռոսի՝ անդէն զզէնսն առեալ մերկա_
նայր և յերեւար աշտանակեալ ընթանայր
շուրջ զբանակաւն. ձեռս շարժեալ տա_
տանէր առ մարտիկսն, և 'ի ձայնէն դար_

զստուար զայն բանակ զՀռոմայեցւոցն եհար խորտակեաց ։

Բայց Հռոմայեցիք յայնժամ ո՛չ ՚ի բաց առին զզօրավարութիւնն ՚ի Լեւինոսէ. Թէպէտ և պատմեն՝ ասել Գայիոսի Փաբրիկիոսի, եթէ ո՛չ Հռոմայեցիք ինչ յԷպիրացւոց անտի՝ այլ ինքնին Լեւինոս պարտեցաւ ՚ի Պիւռռոսէ, ո՛չ զօրականին գրեալ զհարուածն՝ այլ զօրավարին նոցա ։ Անդէն ապա զօրաժողով նոր ՚ի հանդէս արկեալ նոցա, և հուչակ հարեալ յանձնապաստան և անզարհուրելի վասն մարտին այնորիկ՝ պատաթափ առնէին ըզՊիւռռոս. որում և հաճոյ թուեցաւ յայնժամ՝ առաջին ինքն առաքել առ Հռոմայեցիս ՚ի պայմանս հաշտութեան. զմտաւածէր՝ զի առնուլ քաղաքին և ողջոյն զօրաւոր՝ ոչինչ դուզնաքեայ իցէ նահատակութիւնն. և ո՛չ դարձեալ առ ձեռն զօրականօքն վճարեսցին ինչ իրքն. առ այս՝ զի և հաշտութիւն կալեալ և բարեկամութիւն հաստել յետ յաղթութեանն՝ մեծ ևս ըզհամբաւի հարցէ զնա ։

Ապա առաքեալ առ նոսա Կինէաս՝ երթեալ խօսս ՚ի մէջ առնոյր ընդ աւագս քաղաքին. և ամենեցուն նոցա՝ դարձեալ և կանանց նոցա՝ առեալ պատարագս ՚ի ներքս մատուցանէր յանուն արքային. այլ առնոյր և ո՛չ ոք ՚ի նոցանէն զպարգևսն. և առհասարակ նոքա և կանայք նոցա պատասխանի առնէին, եթէ ՚ի հասարակաց հաստել խաղաղութեն, ապա և ինքեանք

առանձինն յօժարեցին 'ի կամս արքային։ Իսկ յառաջնապահութեան անդ իւրում Կինեասս 'ի ծերակուտին՝ շատ ինչ մարդասիրութեամբ խօսեալ և բանս բարեաց և հաւանեցականս, ոչինչ մտադիւրագոյնս լսելի լինէր. Թէպէտ և խոստանայր եւս 'ի ներքս բերել՝ արձակել Պիւռոսի առանց փրկանաց զգերիսն, և նպաստակակից եւս Հռոմայեցւոց՝ ընդ նոցա ձեռամբ ողջոյն նուաճել զԻտալիա, և 'ի դարձ փոխարէնին միայն զնոցա բարեկամութիւնն խնդրել, և զՏարանտինացւոցն անդորրութիւն։ Սակայն էին անդ և բազումք 'ի հաշտութիւն անկեալ հակամիտեալք յայտնապէս յետ պարտութեանն 'ի մեծի պատերազմին. առայս՝ զի և խիթային եւս միւսանգամ հարուած առնուլ 'ի մեծէ եւս բանակէ. քանզի և յիտալացւոց անտի նորոգ խմբեցան ընդ Պիւռոսի։

Յայնժամ Կղաւդիոս Ապպիոս՝ այր հոյակապ, որ 'ի ծերութենէն և առ կուրութեանն տեղի տուեալ 'ի քաղաքային գործոց՝ մեկնացեալ նստէր, լուր առեալ զառաջարկութեան արքային և զհակամիտել առ նա ծերակուտին, չհանդուրժեալ՝ հրաման տայր ծառայիցն շալակաւ ածել զինքն մինչև 'ի ծերակոյտ անդր՝ անցեալ ընդ մէջ հրապարակին։ Իբրև 'ի դրունս հասանէր Ապպիոս, անդ որդիք նորա և փեսայքն ժողովեալ զնա՝ մուծանէին 'ի ներքս. իսկ ծերակոյտն 'ի շուք առեալ առն 'ի լռութեան դադարէր. ապա խօսել սկսա-

Ապպիոս և ասէ. «Զառաջինն ես ով Հռովմայեցիք՝ վշտօք մեծօք բերէի զա-ղէտս զանտեսանելեացս, այլ զարդիս ցաւէ՛ ինձ՝ զի կոյր գոլով իմ, չեմ և խուլ. այլ լսեմ ես զանարգաբար ձեր զխոր-հուրդն և զվճիռն՝ աղարտել եղծանել զՀռովմայ զփառսն: Ո՞ւր արդ պարծանքդ իցեն՝ հռչակ առ հասարակ հարեալ առ մարդիկ, որով մեծամեծս կոտորէիք ասել՝ եթէ յԻտալիա երեկէր մեծին մինեալ էր Աղեքսանդրի և մարտ ընդ մեզ ընդ պա-տանեացս եդեալ և ընդ մերն նախնիս 'ի ծաղկի հասակին նոցա, արդեօք չէր նորա իբրև անպարտելի զհամբաւ հարեալ. այլ կամ փախստեայ կամ աստէն դիտապաստ, շքեղ եւս զմերն յարդարէր Հռովմ: Արդ յայսմանէ 'ի դէմս բերէք, զի ողջոյն մեծա-բանքս սնոտեաց և կոկոզանք էին՝ որ յայն-ժամ բանքդ: Դուք որ զահի հարեալ կայք 'ի Քայոնացւոց և 'ի Մոլոսացւոց. ժողովուրդ՝ որ 'ի հանապազօրեայ յաւա-րի կան Մակեդոնացւոց, և դողանի հա-րեալք 'ի Պիւռոսէ՝ որ զկեանսն մաշեաց սպաս հարկանել միում ումեք 'ի Թիկնա-պահաց Աղեքսանդրի, և զարդիս թափա-ռեալ շրջի դա ընդ Իտալիա, քան 'ի զօ-րավիգն Հելլենացւոց որ աստ՝ առաւել եւս փախստեայ 'ի թշնամեացն որ անդ. խոստումն կալեալ՝ մեծ եւս ժառանգեցու-ցանել մեզ տէրութիւն 'ի ձեռն զօրակա-նին՝ որով և ոչ միայն գուղնաքեայ զՄա-կեդոնիոյ բաւական եղև պահել վասն իւր:

Մի՛ ինչ կարծեսջիք բարեկամ զայս ունելով ազատանալ 'ի նմանէ. Նա՛ կայցէք մնացէք 'ի ձեզ յարձակմանն՝ որոց արհամարհեցիքն զձեզ՝ իբրև ժողովուրդ դիւրավանելի, եթէ Պիւռոս առի 'ի բաց գնասցէ ոչ անապաստահաս միայն վասն հարստահարութեանցն, այլ և զՏարանտինացիս զԲրետոսլին և զՍամնիացիս տարեալ մրցանակ՝ զի խաղ արարին զՀռոմայեցւովք"։

'Ի բանից աստի Ապպիոսի գրգռեալ Հռովմայեցիքն 'ի կռիւ մարտի, առեալ 'ի բաց արձակէին զԿինէաս՝ պատասխանի արարեալ զայս ինչ. եթէ՝ մինչև 'ի բաց յԻտալիոյ երթեալ Պիւռոսի, մի ինչ զա աշխատ լիցի վասն առ միմեանս բարեկամութեանն. այլ մինչ դա զինու զարդարեալ դեգերեալ կայ, անդուլ Հռոմայեցիք մարտ եդեալ կռուեսցին ընդ նմա չափ, թէպէտ և Լեւինոսս բիւրս 'ի մարտին պարտեսցէ: Իսկ պատմեն՝ եթէ Կինէաս անդանօր յաւուրս հրեշտակութեանն մանր դէտակն կալեալ զննէր զքաղաքականութիւն զՀռոմայեցւոցն և քննէր իմանալ զկարգն նոցա. և կենակից աւագացն եղեալ և համօրէն 'ի վերայ կացեալ, ապա բա՛ց յայլոցն բանիցն՝ ասէր առ Պիւռոս. եթէ՝ ծերակոյտ ինքնին խուռն իմն թուէր նմա արքայից բազմաց. և զի՝ առ բազմութեանն մարդկանն՝ թերևս ընդ Լեռնեանն Հիդրայի ինքեանք մարտ եդեալ կռուեսցին. քանզի և բանակ առաւար կրկին քան զառաջինն զօրաժողով արարեալ իսկ է

հիւպատոսին. և զի՝ Հռոմայեցիք յողնաԹիւք յաղԹողականք 'ի զէնս՝ և շատ ևս այլ յայսպիսեաց կազմեցեն բանակաց։

Ապա յետ այսորիկ գային դեսպանք առ Պիւռռոս խօսել վասն գերւոյն. էր ընդ նոսա և Գայիոս Փաբրիկիոս, զորմէ ազդեալ իսկ էր Կինէաս՝ յոյժ մեծապէս շուք նմա գնել Հռոմայեցւոց՝ իբրու լաւի առն և քաջի զօրավարի, Թէպէտ և աղքատ յոյժ։ Արդ Պիւռռոս՝ մասնաւոր ցուցեալ մարդասիրուԹիւն զամենայն առ Փաբրիկիոս, գուն գործէր հաւանեցուցանել զնա՝ առնուլ մԹերս զոսկւոյ ոչ 'ի գծապատեհս ինչ՝ այլ 'ի նշան հիւրամեծար բարեկամուԹեան. իբրև Փաբրիկիոս չառնոյր յանձն զպարգևսն, լռեաց առ ժամն Պիւռռոս. այլ յաւուրն երկրորդի՝ ահ իմն խնդրեալ արկանել նմա՝ գիտելով չափ՝ զի փիղ տեսեալ ընաւ չէր նորա, հրաման տայր՝ 'ի խօսել նոցա ընդ միմեանս՝ զահագինն 'ի գազանաց անտի սպառազէն վառեալ՝ ունել 'ի ծածուկ յետոյ վրաւատին։ Այսորիկ այսպէս եղելոյ, տայր ապա նշան Պիւռռոս՝ և 'ի բաց զվրաւատն ձգեալ, անդէն զպատիճն 'ի վեր առեալ գազանին՝ առնոյր ածէր զգլխովն Փաբրիկիոսի, ձայն արձակեալ՝ պոռոտէր ահեղ և սոսկալի։ Փաբրիկիոս հանդարտ և հեզ յետս զակն դարձուցեալ և մանր ժպտեալ՝ ասէր առ Պիւռռոս. “Ո՛չ երեկ ոսկիդ շարժեաց զիս, և ոչ այսօր գազանդ“։

Ապա 'ի կոչունս ընԹրեացն բազմորի-

նաւէ անկեալ զբանիւք, և յաւէտ իմն վասն Եպիկուրայ և վասն իմաստասիրացն, զեւս ըն-նէր Կինէասայ յուշ զԵպիկուրոս ածել և զբանս զաղանդոյն զայնորինակ վասն դիցն և վասն քաղաքականին. և զի՝ զծայրագոյն ունին դնէր ՚ի հեշտութեան, և ՚ի գործոց խոյս տալն քաղաքայինն՝ իբրու որ աղարտիչք և խռովիչք երանութեանն իցեն. և զաս-տուածականն գլխովին օտարացուցանեն նոքա ՚ի շնորհաբաշխութեանց և ՚ի ցաս-մանէն և ՚ի խնամոցն առ մեզ, և կեանս տան նոցա ողջ անգործ և բերկրապատար։ Մինչդեռ նա տակաւին խօսէր, Փաբրիկիոս ձայն բարձեալ ասէր. "Բա՛րէ Հերակլէս, Թո՛ղ Պիւռոս և Սամնիացիք ձեռն առ-ցեն վարդապետութեանդ՝ ցոր վայր մարտ եղեալ կռուիցին ընդ մեզ"։ Հիացեալ Պիւռոս ընդ գեղեցիկ խորհուրդս մտացն Փաբրիկեայ և ընդ պերճութիւն անձինն, քան զմարտ պատերազմին՝ սաստիկ եւ ըղ-ձայր բարեկամութիւն առնել ընդ քա-ղաքին նորա. և ՚ի կողմն մի ածեալ զնա ՚ի բանս առնէր՝ ՚ի խաղաղել իրացն գալ բնակել ընդ նմա առաջին ՚ի սիրելիս և ՚ի զօրավարս նորա։ Առ այս՝ ասեն՝ ՚ի ցած պատասխանի ղայս առնել Փաբրիկեայ. "Այլ ո՛չ օգուտ քեզ՝ ո՛վ արքայ՝ եղիցի բանդ. զի որ այժմդ պատուեն զքեզ և առ քեզ յակնածիւս կան, յորժամ և զիս առ-ցեն զփորձ՝ անշուշտ քան զքեզ՝ առաւել զիս ինքն խնդրեսցեն իւրեանց թագաւոր"։ Այսպիսի ոք Փաբրիկիոսն էր։

Այլ Պիւռոս ոչ ցանկայր երբեք բռնանալ ընդ բանսն. նա առաջի բարեկամացն գովէր զմեծութիւն ոգւոյն Փաբրիկեայ, և 'ի նա միայն հաւատայր զգերիսն. զի թէ երբէք Սինկղիտոսն ոչինչ հաւանեսցի ընդ հաշտութիւնն, դարձուսցեն զնոսա առ ինքն՝ յետ համբուրի ողջունի ազգականացն, և յետ կատարելոյ Կռոնոսեան տօնիցն, զոր և արարին իսկ նոքա յետ տօնին. դատակնիք մահու ինքնին Սինկղիտոսն 'ի վերայ ածեալ՝ որ միանգամ ոչ դարձցի առ Պիւռոս:

Զկնի այսորիկ Փաբրիկիոս անցեալ 'ի բարձ իշխանութեանն, հրեշտակ մի հասանէր առ նա 'ի բանակին նամակ մի բերեալ նմա 'ի բժշկապետէն Պիւռոսի. յորում և խոստանայր նա դեղ մահու արբուցանել արքային՝ եթէ վարձ գեղեցիկ տացեն նմա Հռոմայեցիք. և այնպէս հեշտին ապրեցուցանել զնոսա 'ի կռուոյն: Այլ Փաբրիկիոս զայրացեալ լի բարկութեամբ խոժոռեալ ընդ եղեռն առնն, և 'ի նոյն զիշխանակիցն ձգեալ, անդէն նամականի տայր առ Պիւռոս՝ ազդ առնէր պահ անձին ունել 'ի դաւոյն, գրելով այսպէս. "Գայիոս Փաբրիկիոս և Կուինտոս Էմիլիոս հիւպատոսք Հռոմայեցւոց, առ արքայ Պիւռոս՝ խնդալ: Թուի ինձ այնպէս, եթէ քո ոչինչ յաջողեալ իցէ հաւատոյ քննութեամբ 'ի վերայ կաս՝ ոչ բարեկամացն քոց և ոչ թշնամեաց: Արդ ընթերցեալ քո զնամականիդ առաքեալ առ

մեզ, համաձայնէին 'ի վերայ կայսերն՝ զի մարտ եղեալ կռուիւ զօր ընդ լուսոյ արևուց և ընդ աղօթարոց. և զանձինս հաւատացեալ է քո արդարոց անիրաւաց և ամբարշտաց: Սակայն և ոչ 'ի շնորհն ինչ քո 'ի վեր հանեսջիք քեզ զգանձս. այլ զի մի թերևս 'ի պատճառս քոց կորիցէ մեզ խնդրելին հասցէ զօրավարութիւն, և կարծեցի՝ եթէ քաջութեամբ անձնանուէրք՝ գաւառվ վճարեցաք զկռուիւն: Արեալ Պիւռռոսի զնամականին, և ծիծղեալ 'ի վերայ հասեալ գաւառին, պատուհաս 'ի վերայ ածէր յանցաւորին. այլ և Փաբրիկիոսի և Հռոմայեցւոց 'ի դարձ փոխարինին ձրի 'ի նոքա մատուցանէր նոցա զգերին. և անդրէն դարձեալ զնոյն Կինէաս արձակէր խօսել վասն հաշտութեանն:

Այլ Հռոմայեցիք յանձն չառեալ առանց փրկանաց զգերին, ոչ իբրև շնորհս իմն 'ի թշնամւոյն և ոչ դարձեալ իբրև կաշառ առ 'ի չանիրաւել ինչ, արձակէին և նոքա յազատութիւն նովին չափով 'ի գերւոյն Տարանտինացւոց և 'ի Սամնիտացւոց: Իսկ յաղագս բարեկամութեանն և հաշտութեանն՝ և ոչ բան մի թոյլ տուան խօսել Կինէասայ, մինչև Պիւռռոսի 'ի բաց յԻտալիոյ առեալ զզէնսն՝ դարձցի անդրէն յԷպիրոս նովին նաւուք որովք և եկն:

Ապա միաբանեալ 'ի կռիւ հարկաւորեալ Պիւռռոս, խաղաց և 'ի դիմի Հռոմայեցւոցն հարեալ առ Ասկղոն քաղա-

քաւն, և բուռն վանեալ 'ի Նոցանէ՝ անկանէր 'ի վայր իմն դժուարին այրուձիոյ, և 'ի գետափն մի խարձաւէտ և անկոխ, զի և հնար չէր գազանացն անցանել միանալ ընդ փաղանգին. և անդ բազում վիրաւորք և դիտապատաք Թաւալգլոր խաղային. և մարտ եղեալ կռուէին մինչև 'ի ժամ գիշերոյն, և ապա բաժանէին 'ի միմեանց:

Իսկ յաւուրն երկրորդի մարտ 'ի գլուխ յարդարեալ Պիւռռոս, ուր և գազանքն ինքնին խառնեցելին ընդ Թշնամիսն, կանխեաց կալաւ զդժուարս վայրացն գնդաւ միով. և միջամուխ զբազմութիւն մեծ ըղ-տիգաւորաց և զաղեղնաւորացն ընդ գազանսն արարեալ՝ սաստիկ զօրութեամբ վարէր ստիպէր զզօրն խիտ առ խիտ և գեղեցիկ կարգաւ: Իսկ անդ Հռոմայեցիքն չունելով վայր Թաքստի և ապաստանարանս իբրու զառաջինն, խառնեցան 'ի ճակատ արձակ արձակ և ձիգն Թափեալ ընկրկել զհետևակն՝ մինչև խուժեալ գազանացն՝ ահագին մարտ եղեալ կռուէին սուսերօքն ընդդէմ գայխտոնացն, ոչինչ հոգացեալ զանձանցն՝ ուր միայն եղեալ հարկանել և տապաստ արկանել ոգւով չափ: Բայց յերկարել մարտին՝ ասեն՝ Թիկնապարծոյց լինել Հռոմայեցւոց 'ի կողմանէ անտի հրոսակին Պիւռռոսի, որ շտապ տագնապի 'ի վերայ հասուցանէր նոցա: Իսկ որ յաւէտ իմն զնոսա 'ի փախուստ խուձապեաց, ուժգնակի բաղխել գազա-

ներ. իսկ անդուստ Հռոմայեցւոցն իբրու
յանսպառ աղբերէ բղխեալ 'ի տանէն՝
հեշտ և փոյթ էր լնուլ զտեղին. և քան
լքանել 'ի հարուածոյն՝ սաստիկ ևս առ
ցասմանն կորովանալ և առ պատուասի-
րութեանն։

Մինչդեռ յայս տագնապ տարակուսի
կայր Պիւռռոս, անդրէն միւսանգամ մնա-
տի յուսոյն խնդայր. քանզի և հրապոյրք
այլ ընծայեցան նմա, միանգամայն և տալ-
տապինք խորհրդոց նորա։ Քանզի եկեալ
հասանէին առ նա արք աւագք 'ի Սիկիլիոյ
տալ նմա 'ի ձեռս զԱկրագանտա և զՍի-
րակուսա և զԼէոնտացիս. և աղաչել զնա՝
վանել 'ի վայրաց զԿարքեդոնացիս և 'ի
բռնաւորաց յանդորր զկղզին հանել։ 'Ի
նոյն միանգամայն և արք աւագք եկեալ
ժամանէին առ նա յՅելլադայ ազդ առ-
նել՝ զի անկաւ Պտղոմէոս Կերաւնոս 'ի
մարտին ընդդէմ Գաղատացւոց. և 'ի դէպ
ժամու արդեօք յանդիմանեսցի նա Մա-
կեդոնացւոցն՝ որոց թագաւորի անշուշտ
պէտք էին։ Եւ վասն այսորիկ մեծապէս
Պիւռռոս յայնժամ գանգատէր բախտին,
որ այնպէս հանդէպ կրկին այլ և այլ զմե-
ծաց նախհատակութեց 'ի միում ժամանակի
'ի ներքս խառնէր նմա. և զմտաւ ածեալ՝
իբրու որ աներկեան վասն երկուցն ևս՝ վրի-
պել 'ի միոյն կամ 'ի միւսոյն, այնպէս օ-
դուստ ժամս յուզէր ծփայր 'ի խորհրդեան
իւրում։ Այլ ապա 'ի վերջէ՝ նախհատակու-
թեանց իւրոց վայր լայնատարածման զՍիկի-

լեալ համարեալ մտաւոր Լևինոյ, 'ի նոյն զկնտան շրջեցաւ. և անդէն զԿինէաս անդր արձակէր, երթալ կանուխ խօսել՝ որպէս սովոր էր՝ ընդ քաղաքացւոյն: Իսկ ինքն գունդ մի 'ի ներքս թողեալ առ Տարանտինացիսն, որ դժկամակս ընթեալ՝ խնդրէին նոքա կամ 'ի գլուխ զմարտն տանել ընդ նոսա՝ որոյ աղագաւ եկեալն էր, կամ յառաջին կարգին թողուլ զնոսա. նա պատասխանի արարեալ նոցա խելամ՝ լուել և մնալ դէպ ժամանակին, ինքն անկանէր յուղի ընդ ծով։

Հասեալ 'ի Սիկիլիա՝ յաջողէր նմա ըստ յուսոյն ամենակալութեան, և անձնատուր նմա քաղաքաքն լինէին, և հակառակութիւն ինչ չէր նմա զառաջինն. այլ հասեալ նա անդր երեսուն բիւրուք հետևակաց, և երկու հազար և հինգ հարիւր հեծելազօրու, և երկերիւր նաւուք, հարկանէր վանէր ըզՓիւնիկեցիսն և քանդէր տապալէր զտէրութիւն նոցա: Իսկ էր անդամոր Երիւկոս՝ անխոտ և ամուր վայր, և բազումք էին 'ի նմա պահակք. ժամեցաւ Պիւռոս առաւօտուն զօրհնս յարձակել ունել զպատուարսն. և մինչդեռ կազմ էր զօրն 'ի շահատակութիւն անդր, ինքն զզէնսն ողջոյն զանձամբ արկեալ և յառաջ նահատակեալ, ուխտ դնէր Հերակլեայ՝ հանդէս կարգել մրցանաց և զոհ զոհել արութեն, եթէ երբէք շնորհեսցի նմա՝ առաջի Հելլենաց բնակաւորացն Սիկիլիոյ այր երևել քաջամարտիկ՝ արժանի զարմին և բախ_

տին. ետ նշան 'ի ձայն փողոյ, և վարատեալ փարատեալ զբարբարոսն 'ի տարափս նետից, և զսանդուղն ածեալ 'ի պատուարսն՝ ինքն նահատակ խաղայր ելանէր 'ի վեր. անդ 'ի բազմակոյտ ամբոխ պաշարեալ՝ պաշտպանէր անձին, և վանեալ յայսկոյս յայնկոյս 'ի վայր ընդ պարիսպն հոսէր ամբոխ մեծ 'ի նոցանէն, և շատ ևս 'ի սայր սուսերին հարկանէր սատակէր, և դիզանէր թանձրանայր դիակոյտ անկելոցն. այլ ինքն վտանգէր և ոչ ինչ. նա՛ և այնչափ ահագին էր թշնամեացն, զի և 'ի տեսլենէն միայն զարհուրեալ պակչէին. և այնպէս ապա ճշգրտեաց Պիւռռոս՝ եթէ ուղղապէս ուրեմն և իմաստութեամբ գրեաց Հոմերոս, եթէ յառաքինութիւնս միայն Արիութիւնն՝ է բազում անգամ զի գեղեցիկ մոլութեամբ վարի և յաշխոյժս հրաշանայ: Ապա առեալ զքաղաքն, զոհ զոհեաց դիցն մեծապէս պատրաստութեամբ. և տեսարան ևս կարգէր ազգի ազգի մրցմանց խաղուց:

Այլ հելլենացիք անդ յոյժ նեղեալք 'ի բարբարոսացն Մեսսենայ՝ որոց անուն կարգայրին Մամերտեանք, և 'ի հարկի ևս կացուցեալ էին զհելլենացիս, և բազումք էին նոքա և քաջամարտիկք (ուստի և 'ի Լատինաց բարբառ կոչէին Արեսեանք). ետ ապա Պիւռռոս ձերբակալ զհարկահանսն նոցա առնել և 'ի մահ վարէր. և զբարբարոսսն 'ի մարտին պարտեալ, հիմն 'ի վեր քանդէր շատ ինչ 'ի բերդից նո-

զքաղաքն և զօրավիգն եղեն նմա 'ի նախատակութիւնս բազումս ։ Իսկ յորժամ Սոսատրատոս զահն հարեալ մեկնեցաւ, ինքն մահու դատէր զԹինոնն իբրու որ համախոհ էցէ նմա. և յայսմանէ ապա ոչ յուշիկ և տակաւ հիմն 'ի վեր շրջեցան իրք Պիւռռոսի, այլ անդէն ոխերիմս բերեալք ընդ նմա քաղաքք՝ կէսք ձեռն տային 'ի Փիւնիկեցիս անդր, և կէսք դարձեալ զաշնաւորս եղեն Մամերտինեանցն ։

Այն ինչ Պիւռռոս շուրջ զակն յածեալ՝ առհասարակ տեսանէր ապստամբութիւնս և խլրտումն և դաւադրութիւնս ահագին ընդդէմ անձինն, գիր հասանէր առ նա 'ի Սամնիացւոց և 'ի Տարանտինացւոց, ազդ առնէր՝ զի հազիւ ուրեմն նոքա 'ի ներքս 'ի քաղաքսն զդէմ ունէին մարտին՝ վանեալք 'ի դաշտէն, և խնդրէին զօրավիգն ։ Եւ ապա այս նմա գեղեցիկ հանդերձեցաւ 'ի վերին երեսս՝ մի փախուստ զնուն համարել կամ յուսահատ կերպ 'ի նախատակութենէն. սակայն 'ի ներքոյ՝ անձեռնհաս նա 'ի տիրանալ Սիկիլիոյ՝ որ նաւ իմն էր նա ալէծածն մրրկեալ ձողոպրեալ 'ի նմանէ անդրէն միւսանգամ ծովագնաց անկանէր յԻտալիա ։ Եւ ապամեն՝ յուղւոյն յետս 'ի կղզի անդր հայեցեալ՝ ասել որոց մերձն կային. "Բա՜քէ, զո՞ր ապարէզ մեք ո՜ բարեկամք Թողումք Կարքեդոնացւոցն և Հռոմայեցւոց" ։ Եւ քա՛ջ՝ որպէս ասացին՝ ոչ յետ բազմաց ինչ արդինացան բանքն ։

կաւորն իջուցանէր 'ի կառափն, և այնպէս 'ի բազկին կորովութենէն և 'ի քաջամուխ երկաթոյն՝ յերկուս պողովատիկն ողջ ըզմարմինն կտրեալ, 'ի նոյն միանգամայն աստի և անտի երկոքին հատուածքն յերկիր անկանէին։ Յայնմանէ յետս նահանջեցան բարբարոսք՝ հրաշացեալք և պակուցեալք 'ի Պիւռռոսէ, իբրու որ վեհագունիցն վիճակեալ բնութեան։

Այս յանդորրու զուղին մնացեալ՝ գայր հասանէր 'ի Տարանտոն քսան հազար հետևակօք և երեքհազար այրուձիով. և առեալ ևս անդ զքաջս 'ի Տարանտինացւոց, խաղայր գնայր ընդդէմ Հռոմայեցւոց՝ որ բանակ հարեալ նստէին յերկրին Սամնիացւոց։ Եւ էին Սամնիացւոցն իրք վատթարեալք յոյժ, և ոտնաթափք 'ի բազում հարուածոցն՝ զոր հարան 'ի Հռոմայեցւոց. և զչարեալ նոքա սակաւ մի ընդ Պիւռոսի՝ զի եւ նաւեաց նա 'ի Սիկիլիա, ոչինչ բազումք խմբեցան ընդ նմա։

Յայնժամ յերկուս զզօրն ամենայն բաժանեալ Պիւռոս, զմին առեալ արձակէր 'ի Լեւկանիա ընդդէմ միոյ 'ի հիւպատոսացն, խափանել զնա 'ի տալ թիկունս իշխանակցին. և ինքն զմիւսն առեալ խաղայր ընդդէմ միւսոյն՝ այն էր Մանիոս Կուրիոս, որ զտեղի առեալ առ Բենեբէնտ քաղաքաւ յանխաբ վայրի՝ մնայր օգնականութեանն 'ի Լեւկանիոյ. առ այս՝ զի և իղձք 'ի հաւահմայիցն և 'ի զոհիցն՝ 'ի բաց զնա քեցէին 'ի կռուոյն, և նա անդ-

գեղգեղեալ նաւակք անդորրն: Այսպէս աճա-
պարեալ Պիւռռոս անկանէր 'ի վերայ՝
մինչչև հասանեալ որոց 'ի Լեւկանեաց, ա-
ռեալ ընդ իւր այրուձին 'ի զէն 'ի զարդ 'ի
քաջաց և զքաջամարտիկսն 'ի զաւրացն,
խաղացոյր զփղերն 'ի շտապ տագնապաւ 'ի վե-
րայ բանակին Թշնամւոյն: Եւ քանզի 'ի
յամբոյն չուայն՝ էր նմա շրջան առնուլ ընդ
երկայն ուղի անդեղ և անտառախիտ, ոչ
բաւեցին նմա զամենայնն՝ և զփղամեկանն այնոր
անդր վարատեալ օժանէր, և յամենայն՝ կայր
ծառաէր զփղերն. իսկ անդադրար Թշնամիք Է
լուսանալ առաւօտուն տեսեալ զնա 'ի կատա-
րաց անտի բարձանցն 'ի վայր դրոհ տուեալ,
խուճապեցան տագնապեցան: 'Ի վերայ
այսր՝ զօրք բարեհաջողք պատահեալ յայն
ժամ Մանիոսի և 'ի ժամանակէն ևս շտա-
պեալք 'ի կռիւն, եւ նա առաջս և ան-
կեալ 'ի վերայ յառաջամարտկացն Պիւռ-
ռոսի և զնոսա 'ի փախուստ դարձուցեալ՝
արհաւիրս մեծամեծս զմնացեալքն արկա-
նէր. անդ և ոչ սակաւք դիպեցան ան-
կանէին 'ի նոցանէ, և հասեալ կալան և 'ի
զաւղանեաց անտի:

Յայսմանէ ապա քաջալերս խրախու-
սեալ Մանիոս, միջամուխ և 'ի գիրկս կռ-
ուէր ընդ Պիւռռոսի. և այնպէս խառ-
նեալ մարտիկն 'ի բացարձակ դաշտի, առաւել
հարկանէր խորտակէր Մանիոս զԹև բա-
նակին Թշնամեաց, և անտի բուռն և տա-
ռիկ վանեալ ընկրկէր 'ի զաւղանացն մինչև 'ի
բանակետղն. ապա յառաջ կոչէր առնայէր

'ի զէն և 'ի զարդ վառեալ զկորովի Նաւհա-տակսն 'ի հանդարտեալ զօրականէն, որք ստուար գնդաւ կային 'ի պահ զգուշութեն զակչէն. Նոքա յառաջ եկեալ յամրոց վայրացն և 'ի վերայ անկեալ գազանեացն, տագնապեցան գազանքն և ընդ կրունկն փախստեայք վազէին ընդ մէջ Նիզականակ-ցացն. յորմէ և խռով սաստիկ հարեալ 'ի Նոսա, տանէին Հռոմայեցիք զյաղթու-թիւնն. և այն եղև Նոցա մեծապէս բար-գաւաճել տէրութեանն: Քանզի այնու-հետև 'ի մարտից անտի և 'ի քաջութենէ արութեանն մեծ ևս խրախուսեալք, և համբաւ ևս առեալ Նոցա իբրու զանյաղ-թից ումանց՝ իսկ և իսկ տիրացան Իտալիոյ, յետ սակաւուց և Սիկիլիոյ:

Եւ այնպէս ասա անկանէր բեկանէր Պիւռոս 'ի յուսոյն իւրմէ, որով խնդայր 'ի բուռն զԻտալիա արկանել և զՍիկիլիա, ծախեալ ամս վեց 'ի կռուէն, և վատթա-րեալ յիրս իւր: Սակայն և անվկանդ ըզ-քաջութիւն պահեալ զորդւոյն յաղէտս հարուածոցն, և քաջին հնազանդութեամբ զի-նուորականին և բազկացն կորովութեամբ և սրտին արիութեամբ, աղքայիցն որ առ իւրովքն ժամանակօք՝ զհամբաւն հարա-բնաւիցն մեծագոյն: Բայց Նա զոր սաստ-ցեալ ժառանգէր առաքինի Նախահաստատու-թեամբքն, զնոյն 'ի ձեռաց հանէր անսահ յուսովքն. չպահէր՝ որ 'ի գեղ իսկ էր՝ զառձեռինն՝ առ ցանկութեան բազմա-կայիցն: Որ աղագաւ և Անտիգոնաւ՝

իւր կարկառեալ ձգեալ, առ ինքն միան-գամայն հրաւիրէր զգնդապետսն և զդա-սապետսն. և յիւր կողմն յանդգնեցեալ զհետեւակազօրն զայն, ապա Անտիգոնոս եղեալ խոյս տայր 'ի վայրացն. սակայն և քաղաքս ծովափնեայս 'ի բուռն արկանէր։ Իսկ 'ի փառաց անտի կատարածին Գաղա-տացւոց յոյժ խնդացեալ Պիւռոսս, ա-ռեալ զգեղեցիկն յաւարաց նոցա՝ կախէր 'ի ձօն 'ի տաճար Իտոնեանն Աթենասայ, արձանագրեալ զՈղջականն՝ այսպէս.

Զասպարս ըզգոռ Գաղատացւոց՝
Զօն Իտոնեանն Աթենասայ՝
Մողոսացին Պիւռոս կախեաց,
Յորժամ ողջոյն զԱնտիգոնեան
Բանակն եհար և խորտակեաց։
Բայց զարմանաց մեծաց պատճառք
Չեն ինչ նախճիրքս այս գեղեցիկ,
Զի ցանգ զարդիս՝ և վաղ ուրեմն
Էակիդեանք են գոռ մարտիկ։

Յետ մարտի պատերազմին միւսանգամ գրաւեալ զքաղաքսն և ընդ լծով զՆեգեա-ցիսն արկեալ՝ անհամբոյր գնայր ընդ նո-սա, և 'ի Գաղատացւոց իւրոց գունդ մի թողոյր անդանօր։ Բայց Գաղատացիքն՝ ազգ ընչաքաղց, մխեցան փորել պեղել զշի-րիմս թագաւորացն՝ որ անդ, և զհարստու-թիւնսն կապտեալ 'ի նոցանէ, թշնամանօք ևս ցան և ցիր արկին զոսկերսն։ Թուէր իմն Պիւռոսի հեզաբար տանել իրայն,

կամ առ մեծի անպատրաստութեանն յայնժամ, կամ զի առ ահին անպատուհաս արձակէր զպատգամաւորսն. որ ապագայ և Մակեդոնացիք գաղտնապէս բամբասէին զնա: Այլ քանզի չև էին իրք Պիւռոսի հաստատուն յանդորր եկեալ, նա անդրէն 'ի նորոգ յոյս խնդացեալ և ոտնհար Անտիգոնոսի եղեալ՝ լիրբ և ժպիրհ կարդայր զնա, զի ոչ զձորձ՝ այլ ծիրանի տակաւին արկեալ է զանձամբ:

Զայնու ժամանակաւ գայր հասանէր առ նա Կղէոնիմոս Սպարտացի. և հրաւէր տուեալ նմա 'ի Լակեդեմոնիա, նա մտադիւրագոյնս հաւանէր բանին: Էր այս Կղէոնիմոս յարքունի զարմէ, այլ բուռն և սաստիկ և 'ի միապետութեան կիրս մեծապէս հակամիտեալ՝ ատեաց և մերժեցաւ 'ի նա և ոչ ոք, և թագ կալեր յայնժամ ընդ նորա Արեւս. և էր այն նմա վաղնջուց խէթ սրտի ընդդէմ հայրենեացն: Առ այս՝ և 'ի ծերութեանն կին գեղեցիկ էած նա յարքունի զարմէ Քելիդոնիդէ անուն՝ դուստր Լեոտիքիդեայ. այլ սա մոլեգին 'ի սէրն հարեալ Ակրոտատոսի որդւոյ Արեւսի՝ քաջատոյգ պատանւոյ, յոյժ դժոխըմբերելի և անփառունակ զամուսնութիւնն յարդարէր զԿղէոնիմեայ՝ որ սիրէրն զնա. քանզի և առհասարակ Սպարտացւոց ծանօթ էր առնհարութիւն նորա 'ի կնոջէն: Եւ այսպէս ապա յառաջնին 'ի կիրան 'ի վերայ բարդեալ և քաղաքայնոյն, վառեալ 'ի ցասմանէն և յանհը-

նարհն անձկութեանցն, առնոյր ածէր ընդ Պիւռոսս 'ի Սպարտա քսան և հինգ հազար հետևակօք, երկու հազար այրուձիով, և քսան և չորս փղամբք. զի և յայնչափ պատրաստութեանցն յայտնի էր առաջս տեսանելեացն՝ եթէ ոչ Կղէոնիմեայ ինչ նուաճել զՍպարտիա խնդրէր Պիւռոս, այլ իւրում անձին ողջոյն զՊեղոպոննիսոս: Թէպէտ և ինքն 'ի բանսն գողանայր զխորհուրդ մտացն 'ի Սպարտացւոց անտի՝ որ հրեշտակս արձակեցին առ նա 'ի Մեգաղէպօլիս՝ յանել անդ առ նոսա, խաղալ դիմել նմա անդր 'ի փրկութիւն քաղաքացն՝ զոր անդ նուաճեալ ունի Անտիգոնոս. և ասէր, ճն և ճն՝ եթէ և յիւրոց անտի կրտսերագոյն որդւոցն, թէ խափան չկայցէ, խնդրէ արձակել 'ի Սպարտիա 'ի դաստիարակութիւն լակոնացի, շուք ունել քան զայլս 'ի թագաւորաց:

Զայս այսպէս կեղծաւորեալ Պիւռոսս և առ ոյս յուղղոյ պատահէին նմա, միջամուխ 'ի Լակոնիկա՝ անդէն վաղվաղակի աւար հարկանէր և կապուտ կողոպուտ թողոյր. անդ բողոք հրեշտակացն կալեալ Սպարտացւոց՝ զի մինչչև ազդ արարեալ մարտ պատերազմի գումարեաց 'ի նոսա, ետ պատասխանի Պիւռոս. "Այո՛, և մեք գլխովին գիտեմք քաջ. զի և ոչ դուք ինքնեան Սպարտացիքդ կամուս ազդէք այլոց, զոր գործելոցն էք": Իսկ անդ յեղելոցն ոմն Մանդրոկլիդաս անուն ասէր առ Պիւռոս 'ի բարբառ լակոնացի. "Եթէ աս-

տուած ումն ինչես դու, ո՛չ մնասցուք մեք 'ի քէն չարիս, զի ոչինչ անիրաւեցաք. ապա եթէ մարդ ինչես, ինչ արդեւք ոք զօրաւոր-ագոյն ես քան զքեզ"։

Ապա իջեալ Պիւռոս 'ի Լակեդեմո-նիա, և Թախանձեալ 'ի Կղէոնիմեայ՝ անդէն փութայր անկանել 'ի վերայ քաղաքին, զանգիտեալ Պիւռոսի՝ որպէս ասեն՝ Թերևս 'ի գիշերային ժամանակի զօրա-կանք յաւարի ղքաղաքն առցեն, յանձն չառնոյր՝ և զցերեկ ասէր անկանել 'ի վե-րայ քաղաքին. քանզի և քաղաքացիք ինք-նին սակաւք էին և կազմեալ չէին յանակըն-կալ պատերազմանէն. առ այս՝ զի և Արևս արքայ չէ՛ անդ և 'ի Կրետէ երթեալ է 'ի Թիկունս Գորտինացւոց։ Եւ ապա այս զեղերանք 'ի փրկութիւն լինէր քաղաքին, զի այնպէս առ սակաւութեանն և տկա-րութեանն արհամարհեցաւ նա. քանզի և կարծեալ Պիւռոսի եթէ և ո՛չ ոք 'ի կռիւ կարաւեսցէ ընդ նմա, անդէն զտե-ղի կալաւ։ Իսկ 'ի ներքս 'ի քաղաքին բա-րեկամք Կղէոնիմեայ և Խղոտք հան-դերձեալ կազմէին զտուն նորա, իբրու եթէ առ նմա Պիւռոսի ընթրել հան-դերձեալ իցէ։

Իսկ 'ի գալ գիշերոյն խորհուրդ հաս-տատեցին 'ի քաղաքին Սպարտացիք՝ նախ քան զամենայն զկանայսն առնուլ արձակել 'ի Կրետէ, այլ կանայքն ընդդէմ դարձան խորհրդոյն. և անդ Արքիդամիա ինքնին առեալ զսուսերն չոքաւ 'ի ծերակոյտ

անդր, կայր և բողոք բառնայր զօրանց յա-
նուն ամենայն կանանց, զի կարծեն նոքա
կենդանի մնալ կանանց 'ի կորնչել Սպար-
տիոյ։ Ապա խորհուրդ առհասարակ հաս-
տատեցաւ յայնժամ, խրամ հատանել
զքաղաքաւ 'ի հանդիպոյ զուգահեռ բա-
նակի Թշնամւոյն. և աստի անտի հարկա-
նել 'ի նմա կառս մինչև 'ի կէս անուոցն,
զի այնպէս Թաղեալք և պնդեալք քար-
ընդոտն եղիցին գազանացն։ Իբրև ձեռն 'ի
գործ առնէին, անդր խռնեցան և կանայք
և կուսանք. կէսք՝ հանդերձեալք զձորձս և
զվտաւակս, և կէսք՝ համակ վտաւակօք
այնպէս գործակից վաստակակից լինէին
արանց ծերունեաց. և Թախանձ արկեալ՝
որոց մարտ մղել հանդերձեալ էին՝ զի
հանգիցեն, ինքեանք զչափ առեալ խրա-
մոյն՝ ինքեանց ձեռօքն աշխատեցան զեր-
րորդ մասն նորա. և էր խրամին լայն կան-
գուն վեց, և խոր՝ չորս, և երկայն՝ ութավար-
ութ, որպէս ասէ Փիւղարքոս. իսկ ըստ
Երոնիմեայ՝ սակաւ մի պակաս։

Իբրև օրն լուսանայր և Թշնամիք շար-
ժէին խաղային, անդ կանայք և կուսանք
Սպարտացւոց զզէնսն 'ի ձեռս տուեալ պա-
տանեացն և նոցա յանձն զխրամն արա-
րեալ, խրախոյս կարդային քաջութեամբ
վանել զյարձակեալսն և պահ խրամոյն
ունել, և ասէին. Քաղցր է յաղթութիւն
ակն յանդիման հայրենեացն, և փառք են
մեռանել 'ի գիրկս մարց և 'ի գիրկս ամուս-
նաց, և տապաստ քաջութեամբ անկանել

երկրն արժանիք Սպարտիոյ : Իսկ Քելիդոն-
նիդէ անդանօր մնացեալ 'ի վայր մի՝
կազմ 'ի պատրաստի զխեղդանն ունէր, զի
մի 'ի ձեռս անկցի Կղէոնիմեայ յառ-
նուլ քաղաքին :

Անդուստ ապա Պիւռոս առնուլէր յա-
ռաջ խաղայր 'ի ճակատէն հանդերձ հե-
տեւակազօրուն ընդդէմ բազմախուռն աս-
պարաց Սպարտացւոց, դէմ եդեալ 'ի
խրամ անդր՝ զոր և ոչ անցանել կարող
էր. և ոչ առ ափամբն գտանէին ինչ մար-
տիկք գետին հաստատուն 'ի կռուան,
քանզի խարխարեալ յոյժ էր հողն : Իսկ
Պտղոմէոս որդի Պիւռոսի առեալ ընդ
իւր երկու հազարս 'ի Գաղատացւոց և այլ
եւս այլընտիր զՔաոնացւոց, և այսր անդր
յածեալ առ խրամովն՝ յուզէր գտանել
հուն անցից ընդ կառսն. որ քաջապէս
հաստատեալք խիտ առ խիտ և կուռ առ խրա-
մովն, ոչ Թշնամեացն միայն քարընդոտն
էին՝ այլ և Լակեդեմոնացւոցն ինքնին
դժուարին էր պաշտպանել նոցա : Ուստի
և Գաղատացւոցն ձեռն արկեալ կորզել 'ի
հողոյն զանիւսն և զկառսն՝ Թաւալել ձգել
'ի գետ անդր, անդուստ դէտակն կալեալ
վտանգին պատանին Ակրոտատոս՝ ընթա-
նայր վազէր և ընդ մէջ անցեալ քաղաքին
երեքհարիւր զօրականօք, խաղայր գնայր
'ի ներքս փակել պաշարել զՊտղոմէոս. և
մօտէր մերձենայր առ նա ընդ վայրս ինչ
խորխորեալս և ընդ դարափոս, զի և ոչ
տեսանել կարացինն՝ բայց յանկանել իւրում

'ի վերայ վերջոտնելոց զօրականին. և այն-
պէս խուճապեցոյց զնոսա՝ դառնալ մարտ
գնել կռուել ընդ նմա. անդ ընդհարեալ
բախէր այր զընկեր յայն աղմուկ շփոթից,
և անկեալ հոսեալ 'ի խրամ անդր ընդ
մէջ խիտ առ խիտ կառացն, մինչև հազիւ
ուրեմն 'ի մեծ հարուած վանեալք ընկըր-
կէին: Իսկ անդուստ ծերք և կանանց ամ-
բոխ կային 'ի զինին և տեսանէին զԱկրո-
տատեայ նահատակութիւնն. մինչև միւ-
սանգամ եկեալ նա այարէն՝ անցեալ ընդ
մէջ քաղաքին դառնայր յիւր կայան՝ յա-
րիւն և յապաժոյժ, կայտառ և պերճ 'ի
յաղթութէն. Թուէր ինն ամենայն Լակո-
նուհեացն նա հոյակապ և գեղեցիկ քան
զառաջինն, և երանի ևս տային Քելի-
դոնիդեայ վասն նորա. առ այս՝ և 'ի
ծերունեաց անտի ոմանք զհետ ընթա-
ցեալ նորա՝ աղաղակէին. "Երթ դու
ով Ակրոտատէ, երթ մուտ առ Քելիդոն-
նիդէ. միայն եթէ զաւակս քաջս Սպար-
տիոյ արասցես":

Այլ սակս սաստիկ և գոռ մարտի եղե-
լոյ 'ի գնդէ անտի Պիւռռոսի, շատք 'ի պա-
հուն գտան երևելիք քաջապէս կռուեալք.
ընդ որս և Փիւլլիոս յետ երկար նահա-
տակութեանն և հարուածոց շատից ա-
խոյենիցն՝ որ Թևակոխէին զնովաւ, ինքն
նուաղեալ այնուհետև տեսանէր զանձն 'ի
բազում վիրացն, այլում ումեք զիւր կարգն
տուեալ՝ ինքն եկեալ անկանէր 'ի մէջ նի-
զակակցացն, զի մի Թշնամիք առցեն ըզ-

զլխակն Նորա ։ Բայց գիշերոյն 'ի վերայ հասեալ և գուլ մարտին տուեալ, տեսանէր 'ի քուն Պիւռոս տեսիլ այսպիսի. Թուէր նմա՝ կայծականց շանթել 'ի Լակեդեմոնիա, և ողջոյն այրել զնա, և ցնծութեամբ մեծապէս լինել զնա ։ Զարթուցեալ 'ի քնոյն առ սաստիկ խնդին, վաղվաղակի հրամանն տայր զօրապետացն կազմ զզօրն ունել. և զտեսիլն պատմէր առաջի բարեկամացն, իբրու որ անկասկած այնու հետև կալցէ զքաղաքն ։

Անդ առ հասարակ հաճեալք հաւանէին. միայն Լիւսիմաքոս ոչ լաւ համարեցաւ զտեսիլն և զանգիտէր՝ զի վայրք շանթեալք հրացան բարկութեամբ իբրու անմատոյց նուիրականս լինին համարեալք, ամպէս և աստուածակողմանն՝ ասէր՝ թէրես նախազգուշեցին Պիւռոսի լինել, մի մտանել նմա 'ի քաղաք անդր ։ Այլ Պիւռոս ընդդէմ կրկնեալ, եթէ այդ բանդագուշանք դրդջիւնք են խաժամուժ ամբոխին, և են իսկ այդուքիկ աղօտահայեացք ոմանք. իսկ առ ժամդ վայելուչ այն է՝ զէն 'ի ձեռն առնուլ, և իւրաքանչիւր ասել ցանձն. Գուշակ լաւագոյն է՝ մարտ դնել կռուել 'ի վերայ Պիւռոսի. Զայս ասաց և յարեաւ, և անդէն 'ի ծագել առաւօտն առեալ խաղացուցանէր զզօրն ։

Այլ անդուստ Լակեդեմոնացիք ոգւով չափ մեծաւ եդեալ կռուէին՝ իրախուսեալ քան զկար անձանց. էին էին մեծ անդ և կանայք՝ որք նետս և վէքէնս

առեալ մատուցանէին նոցա , և կերակուր և ըմպելի պատրաստէին կարօտելոցն , և 'ի գլուխս ուրեանց առեալ ժողովէին զվիրաւորսն : Իսկ Մակեդոնացիք վաստակաբեկ յոգնեալք ընդ գիշերն՝ արկեալ 'ի նա խառն 'ի խուռն նիւթ բազում, ընդ որովք և ծածկեալ թաղեցան զէնք և գետակուռք անկելոցն . սատի գուն սաստիկ եղեալ Սպարտացւոց խափանել զնոսա, և անդուստ Պիւռռոս մեծապէս զօրութեամբ սլացեալ վաղէր զխրամովն . Թէպէտ հարեալ մօրակէր զերիվարն հանդէպ քաղաքին : Անդ էր լսել զմեծ գոչիւն զզօրականին , և զճչիւն և զվայիւն զկանանւոյն՝ յայսկոյս յայնկոյս խուճապեալ վազեալ, մինչդեռ անցեալ իսկ էր Պիւռռոս , և վանէր ընդոտնէր առհասարակ զախոյեանսն . սակայն 'ի պահուն խոցեալ երիվարին ընդ պորտովն 'ի կրետացի վիգնէ , առ անհնարին ցաւոյն մոլեգնեալ անկանէր տապաստ՝ և 'ի վայր զՊիւռռոս ինքնին սասանեցուցանէր ընդ սահուռս և ընդ զառ 'ի վայրս : Շուրջ զնովաւ բարեկամացն խուճապեալ, անդուստ և Սպարտացիք 'ի վերայ խուժեալ նետընկէցք՝ զնա և առհասարակ զամենեսեան յետս ընկրկէին :

Յայնժամ Պիւռռոս 'ի կողմանց կողմանց դուլ առնէր մարտին . կարծեաց՝ վայր մի տեղի տալ Սպարտացւոցն առ բազմութեան անկելոց գիակացն ուրեանց . և զի և առհասարակ գոգցես վիրաւորք էին : Այլ գեղեցիկ բախտ քաղաքին այ-

նորին, (եթէ շատ իսկ զփորձ առեալ ըղքաջութեան որերոյն այնորիկ, և եթէ դարձեալ զզօրութիւնն զմեծ 'ի ներքս ընթեալ յամբաւ տարակուսին), մինչդեռ Սպարտացիք ընաւ իսկ յուսակտուրք, անդր ածեալ հասուցանէր 'ի Կորնթոս զԱմինիաս Փոկէացի զԱնտիգոնեայ զօրավարն հանդերձ եկօք զօրականին. այն ինչ նոցա 'ի քաղաքն մտեալ, անդր հասեալ ժամանէր 'ի Կրետեայ և Արեւս արքայ երկու հազար զօրականօք: Անդէն առա և կանանց ամբոխ փարատեալ գնային իւրաքանչիւր 'ի տունս. ոչ այլ 'ի դէպ համարեցան միջամուխ 'ի կռուն լինել. և 'ի բաց ևս արձակեալ զծերունեացն խումբ՝ որ 'ի ժամուն զէն առեալ էին, կարգեցան կացին 'ի ճակատ՝ որ եկեալ հասեալն էին անդր:

Իսկ Պիւռռոս 'ի գալուստ օգնականն գնդին՝ մեծ ևս քաջալերեցաւ և պատուասիրէր հասանել ունել զքաղաքն. այլ յառաջադէմ չեղեալ 'ի նահատակութեանն և հարուածս ևս տարեալ, տեղի ետ. և գնացեալ քանդէր աւերէր զգաւառն, և խորհէր ձմերել անդէն: Սակայն և անխուսափելի է մարդոյ օրահաս նորա: Քանզի յայնժամ աղմուկ շփոթից հարեալ յԱրգոս՝ ընդ Արիստէաս և ընդ Արիստիպպոս. և կարծեալ իմն՝ եթէ Արիստիպպոս միաեալ յԱնտիգոնոս՝ զօրավիգն կալցի, աճապարեալ Արիստէաս կոչէր ըղՊիւռռոս յԱրգոս: Իսկ Պիւռռոս ցանդ-

նորանոր 'ի յուսոյ 'ի յոյս մտաբերելով, և 'ի գեղեցիկ նաւահանգստութեանց թևակոխեալ յայլ, խնդրէր յաջողութեանցն դժախողականն բուժել. ուստի և ոչ 'ի պարտութենէն և ոչ դարձեալ 'ի յաղթութենէն՝ երբէք դուլ անձին կամ այլոցն տայր. և ժողովեալ անդէն զքանակն չու առնէր խաղայր յԱրգոս։

Բայց Արեւս զարանն բազում գործեալ նմա և հասեալ կալեալ զդժուարս վայրացն յուղւոյն անդ, ուր 'ի վերայ եղեալ կոտորէր 'ի Գաղատացւոց և 'ի Մողոսսացւոցն 'ի վերջապահ զօրուն։ Արդ էր իսկ նախապատուամ եղեալ Պիւռռոսի յորձկէց անտի 'ի զոհսն անգլուխ լերդից, եթէ զմի ոք 'ի կարևոր ազգականացն կորուսցէ Պիւռռոս. այլ յայն աղմուկ մոռացօնք նմա եղեալ գուշակութիւնն, հրաման տայր որդւոյ իւրում Պտղոմեայ դիմել նիզակակցօքն 'ի թիկունս հարուածելոցն. և ինքն 'ի շտապ տագնապի ձեպէր զքանակն յանդորր հանել յանձուկ վայրացն։ Բայց մոլեգին մարտի եղելոյ առ Պտղոմեաւ, իբրև 'ի Սպարտացւոց անտի քաջք և կորովիք խառնեցան անդ ընդ զօրավարութեամբ Եվալկոսին, այր ոմն անդրուսա յաղթաբազուկ և արագոտն Որիսոս անուն՝ այր 'ի Կրետեայ Ապտերացի, արագավազ քերեալ առ եղի պատանւոյն Պտղոմեայ՝ որ գոռայր և կռուէր քաջապար, հար զնա 'ի կողն և անդէն յերկիր տապալէր։ Իբրև նա այնպէս դիտապաստ անկանէր, որք

ընդ Նոմեայն էին՝ 'ի փախուստ դառնային. և Սպարտացիքն յաղթականն զհետ մտեալ վանէին, մինչև միջամուխ եւ 'ի կռուին ըն-նել՝ որոշեալք 'ի պատուարէն մերձաւորեալ հեռանալէն ։

Այն իսկ Պիւռռոս զմահ լուեալ զորդ-ւոյն և կաքել յոյժ 'ի խոր խոցեալ, ա-ռեալ 'ի վերայ նոցա խաղացուցանէր զայ-րուձին Մոլոսացւոց, և ինքն առաջին նա-հատակեալ մտրեալ զերիվարն։ էր նա ոչ յապաղածոյժ արեանց թաթաւեալ Սպար-տացւոցն՝ զոր հարկանէր սատակէր. թէ-պէտ և միշտ ահագին անկռուելի 'ի զէնս, այլ յայնժամ սաստիկ եւ հզօր և զա-րանհնարին՝ որպիսի ոչ ուրեք երբէք յա-ռաջինսն ։ Ապա մտրակ 'ի կուշտ երիվարին ընդդէմ Եւալկոսին, վայրիկ մի եւ քերեալ ասրա առ նովաւ՝ հարկանէր վաղականու-րաւն զփոկ երասանացն. այլ եհար նա զերասանն և 'ի բաց կտրէր ։ Յայն շառա-տուագնապի Պիւռռոս շէշտ զգեղարդն 'ի նա արձակեալ և թափ յայնկոյս անցու-ցեալ զանէգն, 'ի նոյն 'ի թափ հարուածոյն վազեալ 'ի վայր յերիվարէն, այնպէս հե-տի առանց կազմածոյ առհասարակ զըն-տիր ընտիր զՍպարտացւոցն զխաթաւալ կացուցանէր՝ որ մարտ եդեալ կռուէին 'ի վերայ Եւալկոսին ։ Եւ այսպէս ապա զօ-րավարացն պատուասիրութիւն պատճառ լինէր Սպարտոյ անհնարին տուգանացն, մինչ մարտ պատերազմին նոցա վճարեալ իսկ էր ։ Ապա Պիւռռոս՝ իբրու որ զոհ

յաղթեալ 'ի ձօն որդւոյն և յուղարկաւորութիւն շքեղ կարգեալ նմա, և շատ ինչ եւս գիւրեալ 'ի սաստիկ ցաւոյն՝ թափեալ զցասումն 'ի թշնամիս անդր, այնպէս զառաջիկայ ուղին հատեալ խաղայր յԱրգոս:

Լուր առեալ՝ զի Անտիգոնոս զտեղի կալեալ նստի 'ի կատարս բարձանց 'ի վերոյ դաշտին, բանակ հարեալ նստաւ մօտ 'ի Նաւպլիա: Այլ յաւուրն երկրորդի Քարոզ մի առեալ արձակէր առ Անտիգոնոս. կոչէր զնա այր մարդախոշոշ, և ասպարէզ ես կարդայր նմա 'ի դիւրի 'ի մարտ պատերազմի՝ վճարել վասն արքայութեանն: Պատասխանի տայր Անտիգոնոս, եթէ 'ի զօրավարութեան իւրում՝ քան զինուցն՝ առաւել դէպ ժամանակին ինքն պատկառկայ. և եթէ ինքնին Պիւռոս ոչ ես հանդարտէ յաւերժանալ 'ի կեանս, են իսկ նորա բաց առաջի ճանապարհք շատք առ 'ի մահ:

Այլ 'ի ժամանակին յայնմիկ դեսպանք հասանէին առ նոսա յԱրգոսէ, աղերս արկեալք՝ զի մեկնեալ նոցա իւրաքանչիւր 'ի վայրացն՝ ազատ թողցեն զքաղաքն. և շատ իցէ երկոցուն նոցա բարեկամ հասարակաց ունել զԱրգոս: Հաւանէր Անտիգոնոս, և տայր ես Արգոսացւոց 'ի պատանդի զորդին: Իսկ Պիւռոս թէպէտև խոստանայր ես 'ի բաց գնալ, այլ գրաւական ոչ տուեալ՝ գտաւ կասկածելի: Յետ այսորիկ և ինքնին Պիւռոս հմայս ինն մեծ

յանկն արկանէր. Քանզի գլուխք եղանցն յաղէլոց 'ի բաց կտրեալք, 'ի դուրս զեղզուան արձակեալ՝ շուրջ լեզուին զարիւն խուրեանց: Առ այս և 'ի քաղաքին Արգոսացւոց քրմանոյշն Լիւկեանն Ապողոնի յայսկոյս յայնկոյս վազս առնոյր, ձիչ բարձեալ՝ եթէ 'ի բազմակոյտ դիականց և յապականոյժ արեանց տեսանէ ողջ զքաղաքն. և արծուի մի ևս խոյացեալ 'ի կռիմարտ, և 'ի նոյն անդրէն անհետացեալ:

Ապա 'ի խոր գիշերի մօտ 'ի պատուարս պարսպացն տարեալ Պիւռոս զզօրն, և զդուռն Դիոմիդէրէս անուն՝ բաց գտեալ յԱրիստէասէ, առեալ զիւր Գաղատացիսն 'ի ներքս մուծանէր, և անշշունջ հասեալ ունէր զհրապարակն: Այլ քանզի յանգս զազանացն չէր ինչ բաւական դուռն, և պէտք էին 'ի վերուստ զբուրգսն 'ի վայր առնուլ և կրկին անդրէն հաստատել 'ի մթանն և 'ի դղրդիւն թնդման, այնչափ խմն թարթափեցան 'ի գործն՝ մինչև առդ Արգոսացւոցն եղեալ, դիմեալ վազեցին 'ի վայրն՝ որ անուանեալ կոչի Ասպիդէ, և յայլ ևս անխաբ վայրս, և անդէն փութապէս առաքեալ կոչեցին զԱնտիգոնոս: Նա խաղաց եկն և զտեղի կալեալ կայր արտաքոյ քաղաքին. գէտակն ունէր դէպ ժամանակին տանել զյաղթութիւնն. ապա առեալ արձակէր 'ի ներքս զիւր որդին և զօրավարս ստուար գնդաւ 'ի թիկունս քաղաքին: Անդ գայր մտանէր 'ի ներքս և Արեւս, առեալ ընդ իւր հազար

մի 'ի Կրետացւոց, և զյոյժ թեթեւընթացս 'ի Սպարտացւոց ։ Ապա միանգամայն նոքա անկեալ 'ի վերայ Գաղատացւոցն՝ խառնս հարկանէին 'ի նոսա ։

Իսկ անդ Պիւռռոս միջամտեալս եղեալ մօտ 'ի Կիւլարաբէ և ձայն խրախուսի բարձեալ և գոչիւն մեծ, իբրև 'ի Գաղատացւոց անտի արձագանգս ինն կրկնէր ձայնից ոչ արիագոյնս և քաջս, այլ խուճապելոց ոմանց և տագնապելոց, անդր 'ի նոցա կոյս ձեպէր սաստիկ շտապաւ հարեալ վանեալ յառաջոյ իւրմէ զերիվարսն, որ դժուարընթացք և գայթ 'ի գայթն խաղային ընդ ադուգային լուալեաց՝ որովք լցեալ իսկ էր քաղաքն ։ Եւ ապա անդ յաղջամղջեան գիշերամտութին ոչ արդիւնք գործոց յայտնի ինչ էր, և ոչ ձայն հրամանին. և զօրականն յայսկոյս յայնկոյս թափառ վարատեալ գնայր՝ քակեալ այր յընկերէ ընդ անձուկ պողոտայսն. անդ և ոչ զօրավարաց քաջութիւն բաւական ինչ էր զզինուորականն 'ի ներքս բերել վարժս յանճշդիլ խաւարին և 'ի խառնաձայն խառնաղանջ աղաղակին և 'ի դժուարին վայրացն. այլ առհասարակ ամենեքեան դէտ ակն կալեալք առաւօտն՝ կային անդ անգործք ։

Իբրև այգն լուսանայր, յակն արկեալ Պիւռռոս՝ զի ոչ Ասպիդէ շողէր 'ի փայլիւն զինուց թշնամեացն, զահի հարաւ. և սաստիկ ևս դարձեալ տրտմութեամբ լինէր՝ ւոյն ինչ զակն դարձուցեալ 'ի ձօնս անդ

բաղդաւանս 'ի Հրապարակին՝ տեսանէր գայլ մի պղնձէի և ցուլ մի՝ խորու որ ընդ միմեանս գայլոյն և ցլոյն 'ի կռիւ կազմաւեալք. յայն տեսանել յուշ եւս ածէր Պիւռոս ըղ-վաղնջուց զայն պատգամ՝ նախապատուամ առ նմա եղեալ, եթէ՝ Օրհաս մահուան նմա առ զուգութս կայ՝ յորժամ գայլ տեսանիցէ նա ընդ ցլու 'ի մէգ եկեալ: Իսկ պատմեն Արգոսացիք՝ երկուց այն կենդանեաց անդ կանգնեալ 'ի յիշատակ վաղնջուց դիպուա-ծոյն: Քանզի ասեն՝ եթէ Դանայոս զա-ռաջին նաւագն միջամուխ յերկիր նոցա եղեալ, Ճանապարհորդեալ յԱրգոս առ Պիւրամեա Թիւրեայ, գայլ մի տեսանէ կռուել ընդ ցլու. և անձին 'ի դէպ յար-մարեալ Դանայոս զգայլն (իբրև որ օտա-րածին էնքն գոլով, յարձակեալ զայ 'ի վերայ գաւառացւոյ որերոյն՝ իբրև գայլ,) անդ զառեղէ կալաւ Դանայոս 'ի զինին կռ-ուոյն. և յաղթական եղեալ գայլոյն, էնքն յաղօթս կացեալ առ Ապողոն Լիւ-կեան և ձեռնամուխ 'ի գործն եղեալ՝ յաղ-թէր 'ի կռուին, վանեալ զԳեղանոր՝ որ յայնժամ. Թագաւորէր Արգոսացւոց: Այլ անդանօր ձօնք անդրեաց կենդա-նեացն՝ բանն զայս ունին:

Այսպս յայն տեսիլ սրտաթափ պտտա-ռուչ եղեալ Պիւռոս, և զի և ոչինչ ըստ յուսոյ ակնկալութեանն յաջողեցաւ, խոր-հեցաւ ետեղի տալ մեկնել. սակայն յանձ-կութենէ դրացն զանգիտեալ՝ առեալ հրեշտակ արձակէր առ որդին իւր Եղենոս՝

զոր անդ արտաքոյ քաղաքին թողեալ էր սատուար գնդաւ. հրաման տայր քանդել աւերել զպարիսպն, և առնուլ ժողովել զելեալսն արտաքս՝ վանեալս 'ի թշնամեաց։ Բայց 'ի խուճապ տագնապին և յամբոխ շփոթից քաջին զբանն չիմացեալ հրեշտակին և ոչ ճշգրիտ զպատգամն տարեալ, մեծապէս վրիպակ եղեալ 'ի տեղւոջն՝ առեալ ընդ իւր պատանին Եղենոս և զմնացեալսն 'ի գաղանաց և զկորովիսն 'ի զօրականէն՝ դէմ եդեալ խաղայր 'ի ներքս 'ի քաղաքն 'ի Թիկունս հօրն։ Դէպ լինէր 'ի նմին պահու և Պիւռոսի տեղի տալ 'ի միջոյ քաղաքին, և անդ յարձակ քաղաքամիջին վերջոտնել և 'ի նոյն դարձեալ մարտ եդեալ կռուել և վանել զթշնամիսն. այլ ապա 'ի հրապարակէն վարեալ մղեալ յանձուկ պողոտայն որ 'ի դուռն հանէր, ընդ առաջ նմա ելանէին՝ որ յայնմ կողմանէ դիմեալ գային 'ի Թիկունս նմա։ Նա ձայն բարձեալ գոչէր առ նոսա ընդ կրունկն դառնալ. այլ նոքա չիմանային. և զի և սաստիկ ևս խրախուսեալք էին 'ի մարտն. առ այս՝ զի և 'ի Թիկանց կուսէն նոքա մղօն առեալ տագնապէին՝ յորոց խուռն 'ի ներքս խուժէին։

Անդ և 'ի փղաց անտի յոյժ ահագինն տապաստ անկեալ ընդ մէջ դրացն գոռայր ահեղ և պոռոտէր, և քարընդգոտն դարձելոցն լինէր։ Դարձեալ և այլ ոմն 'ի գաղանացն որ 'ի ներքս անդ մտեալն էին՝ Նիկոն անուն, գուն մեծ գործեալ առ-

Նոււլ յինքն զիւր փղապանն տապաստ անկեալ 'ի բազում հարուածոց վիրացն, և վազեալ ընդդէմ խուճապելոյ զօրականին՝ խռով սաստիկ հարկանէր առհասարակ 'ի բարեկամս և 'ի թշնամիսն, հարեալ և բախեալ միանգամայն՝ որ ընդ միմեանս անկանէին. մինչև հուպ ուրեմն գտեալ զազանին զդիակնն, առեալ ամբարձեալ 'ի պատիճն և եդեալ 'ի վերայ երկուց ժանեացն, այնպէս դառնայր յետս մռմռեալ լի բարկութեամբ. վանեալ առաթուր կոխէր՝ որոց միանգամ պատահէր։ Եւ անդ ապա այնպէս կուռ և խիտ նեղեալ նոքա, ոչ ոք 'ի պահուն առանձինն գործել ինչ բաւական էր. այլ այն խուժանն իբրու որ անշուշտ մարմին մի բոլոր միաձուլական իցէ, այնպէս ողջոյն մերթ աստ մերթ անդ միաձոյլ տարուբեր լինէր։ Եւ մարտք անդ դուզնաքեայք էին ընդ թշնամիսն՝ որ յառաջոյ անդ պնդեալք և 'ի թիկանց անտի նեղեալք. և զեան մեծապէս էին ինքեանք ինքեանց. քանզի սուր անդ ուրուք մերկացեալ կամ գեղարդն խոնարհեցուցեալ, հնար չէր միւսանգամ ամբառնալ և կամ ամփոփել, այլ խոցեալք վիրաւորէին ընդ հարեալքն 'ի նոսա, և այնպէս այր զայրամբ՝ հարեալ սատակէին 'ի միմեանց։

Յայնժամ մեծի տագնապի ամբաւ տարակուսանաց խուճապեալ Պիւռոս, 'ի վայր 'ի սաղաւարտէն զպսակն առեալ արքունի, տայր միում ումեք 'ի բարեկամացն. և ինքն ապաստան յիւր նժոյգն՝ խոյացաւ 'ի խուռն

Թշնամեացն՝ որ վանէինն զնա. անդ դե-
զարդահար 'ի պատերան զբահիցն խոցեալ՝
ոչ մեծ ինչ և մահացու, դարձաւ ընդդէմ
խոցողին. և էր նա Արգոսացի այր ոչ յա-
ւադաց ոք, որդի կնոջ աղքատի և պառա-
ւոյ: Այս պառաւ յայնժամ 'ի զնին կա-
ցեալ կռուոյն՝ որպէս և այլք ևս 'ի կա-
նանց 'ի բարձանց յարկին, տեսեալ զոր-
դին 'ի վէգ ընդ Պիւռռոսի, զահի հարեալ
'ի վտանգէ զաւակին՝ առեալ կղմինտր մի
երկոքումբք ձեռօքն արձակէր ընդդէմ
Պիւռռոսի: Անկեալ բռնութեամբ կղ-
մինտր 'ի վերայ գլխոյն ընդ սաղաւարտն,
ջաղջեալ մանրէր զանրակսն 'ի խարխուխս
անդր պարանոցին. յորմէ և անդէն նորա
մառախուղ զաչօքն արկանէր, և 'ի ձեռացն
թողանայրին երասանակք. և ինքն մօտ 'ի շի-
րիմ անդր Լիկիմնիոսի տապաստ յերկիր
անկանէր անծանօթ 'ի խուժանէն: Այլ
անդ Զոպիւռոս ոմն զինուորեալ առ
Անտիգոնոսի, և երկուք և երեք այլք ըն-
թացեալք 'ի վայրն, ծանուցեալք զնա՝ ա-
ռեալ ձգէին 'ի դաւիթ մի՝ այն ինչ նորա
ուշին դառնայր 'ի նա: Անդանօր Զոպիւ-
ռոս զսուրն մերկացեալ գլխերկեցի՝ 'ի
բաց զգլուխն հատանել, զաչսն 'ի պահուն
բացեալ Պիւռռոս և այնպէս իմն ահագին
տեսօք աչաց խայեաց 'ի Զոպիւռոս, զի և
սաստիկ զարհուրեալ՝ դողդողանի ձեռքն
հարկանէին. այլ գոյն եդեալ 'ի գլուխ
զգործն հանել՝ այնպէս լի արհաւրօք և
խռովութեամբ հարկանէր զսուրն ոչ շէշ-

տանէին, այլ ընդ մէջ բերանոյն և ծնօտին. մինչև հազիւ ուրեմն վտանգեալ 'ի բաց կարէին զգլուխն:

Մ ինչ այս մինչ այն՝ շշուկ հարեալ բանակին, վազէր Խիզոնին և Ալկիոնեւս որդի Անտիգոնոսի. խնդրէր զգլուխն՝ երթ ճանաչել զնա. առեալ յինքն՝ անդէն մտրակեալ զերիտասարդն 'ի հայրն կոյս, և դնեալ զնա բազմեալ ընդ բարեկամացն՝ առաջ առաջին ընկենոյր զգլուխն: Ա՛յն ինչ Անտիգոնոս յանկն արկեալ ծանեաւ զնա, յարուցեալ 'ի բաց վարէր զորդին 'ի հարուածս գաւազանին, և նզովեալ և խուժադուժ կարդայր զնա. և ինքն զքղամիդն զաչօքն ածեալ յարտասուս հատաւ. յուշ էր ածէր զԱնտիգոնոս զհաւ իւր և զԴեմետրոս զհայր իւր. պատկերք ընտանեաց յարափոխ բաղդին: Ապա զգլուխն զարդու զարդարեալ ողջոյն և զմարմինն Պիւռռոսի, այնպէս շքով տայր 'ի խարոյկ հանել:

Բայց յետ այնորիկ նոյն Ալկիոնեւս պատահեալ Եղենոսի հիքացելոյն, որ քղամիդ դուզնաքեայ զանձամբ արկեալ էր, մարդասիրապէս ժողովեաց զնա և առեալ ածէր առ հայր իւր: Զայն տեսեալ Անտիգոնոսի՝ ասէր. «Քա՛ջ ևս են առադիկ ծռ որդեակ՝ այդորիկ, քան զառաջինն. նա՝ և ոչ զարդիս գործես դու համբուն ուղիղ, ոչ բարձեալ քո 'ի դիմանէ զհանդերձ զայդ, որ քան զնա՝ զմեզ ինքեանս անփառաւորունակ յարդարէ՝ որ յաղթօղս եմք: Ապա ինքն հիւրամեծարու-

թեամբ ժողովեալ զՀեղենոս, և շքեղ կազմեալ և յարդարեալ զնա, այնպէս առեալ արձակէր զնա յԵպիրոս. և տիրացեալ այնուհետև ողջոյն բանակին և զօրուն Պիւռոսի, հեզաբար և մարդասիրութեամբ գնայր ընդ բարեկամն նորա:

---

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Սակայն յետոյ տարեմն ոչ եւ կրկնեն բանքն վասն այսորիկ. Թերեւս մոռացօնք ե-ղեւ Պլուտարքեայ 'ի հերքել զատանցին զբանսն ։

2. Վարք Սկիպիոնի առ 'ի Պլուտար-քեայ՝ 'ի համարի է որոց չեննն այսօր 'ի միջի ։

3. Καυσία. Տեսակ մի Արտախուրակի՝ լայնալրուանոցք 'ի պահպանութիւն յա-րեւու ։

4. Հոմերոս յՆշխանականն. Հաղներգ. Բ։

# ԳԱՅԻՈՍ ՄԱՐԻՈՍ

Օ ԳԱՅԻՈՍԻ Մարիոսի զերրորդն ոչ ունիմք ասել զանունն. որպէս և ոչ Ըղկուինտոսի Սերտորիոսի, որ հասեալ կալաւ զԻբերիա. և ոչ զօրձեալ զԼեւկիոսի Մոմմիոսի՝ որ առ զԿորնթոս: Քանզի Աքայիկոսդ՝ նմա գործոյ նահատակութեն մականուն հանդերձեցաւ. ըստ որում և Ափրիկանոս՝ Սկիպիոնին. և Մակեդոնիկոս՝ Մետեղեայ: Ցորմէ և Պոսիդոնիոս համարի յաւէտ ևեթ յաղթահարել զայնոսիկ, որ զերրորդ անունն՝ Հռովմայեցւոց սեպհական և մերազդոյն կարծեն անուն, որպէս՝ Կամիլլոս, և Մարկեղղոս, և Կատոն. ևթէ զի անանուն ուրեմն հանդիպեսցին նոքա՝ որ զերկուս առաջինն միայն ունիցին: Այլ ոչ'ի միտ առնու Պոսիդոննիոս, զի այդուիկ դա առհասարակ զկա-

Նայս անանուն առաջրէ. քանզի ուղղուք 'ի կանանց չէք առաջին անուն, զոր ընտրագոյնս Հռոմայեցւոց համարի Գոսփգոմինիոս. և յերկուց անտի այլոց զմին կարծէ հասարակ առ 'ի զարմէն, իբրու Գոմիլէոսք, Մանղիոսք, Կոռնելիոսք, (որպէս և թէ ոք ասէր և Հերակլիդեսք և Պելոպիդէսք.) իսկ զմիւսն՝ յարանուանութիւն՝ կամ 'ի բուսոյ բարուցն կամ 'ի գործոց արդեանցն կամ 'ի կերպարանէ և 'ի կրից մարմնոյն, իբրու՝ Մակրինոս, Տորկուատոս, և Սիւղղաս. և առ Հելլենս՝ Մնեմոնն, և Գրիւպոս և Կալլինիկոս: Սակայն և յայսոսիկ՝ փաստս և պայքարս 'ի ներքս բերեն սովորոյթք այլ և այլք:

Այլ զդիտակի երեսացն Մարիոսի՝ մեր իսկ տեսեալ է պատկեր մի նորա 'ի քարէ կանգնեալ 'ի Ռաւեննա Գաղատիոյ. Ճշդրիւ մեզ 'ի դէմս բերեալ զաննուէր և զվայրենի բարս նորա՝ զոր ասեն: Քանզի անզգամին 'ի բնութենէն կորովի և մարտնիկ միձակեալ, և զդաստիարակութիւն առեալ զզինուորականին՝ քան զքաղաքականին, իբրև իշխանացաւ՝ վայրագ գտաւ և աստառուամ: Եւ պատմեն՝ ոչ վարժել նմա 'ի հելլենականն, և ոչ հելլենացի խօսել 'ի կարևորսն. ծիծաղելի համարէր ուսանել զդպրութիւնն՝ որոց վարժապետք 'ի ծառայութեան կային այլոց. և թէ՝ յետ երկրորդ յաղթանակին իւրոյ՝ կարգեալ նա տեսարանաց հանդէս հելլենացիս 'ի նաւակատիս տաճարի, մտեալ 'ի Թատ_

բերացւոց՝ 'ի պաշարել Սկիպիոնին Ափրիկ-
եանոսի զՆումանտիա, ինքնին զօրավարելն
յայտնի լինէր քաջութիւն Մարիոսի՝ ա-
մենայն երիտասարդացն վեհագոյն. և զե-
ղեցիկ ևս յարմարէր նա զիւր անձն 'ի նո-
րաստեղծման տարազ կենացն՝ զոր եւ Սկի-
պիոն զօրականին, որ 'ի գրգանս եղծեալքն
էին: Եւ ասեն ևս՝ 'ի մէջ ընդ միում 'ի
թշնամեացն գլխաւորաց արկանել նմա
զախոյեանն յանդիման աչաց զօրավարին,
և Սկիպիոնի բազում պատուով յինքն
առնուլ զնա: Եւ էր երբեմն յընթրիս ընդ
նմա 'ի զրուցել վասն զօրավարացն, հար-
ցեալ Սկիպիոնի յումեմնէ 'ի բազմականին,
(կամ զի անշուշտ տարակուսեալ վասն
բանին, կամ զի հարցուածոյն ինչ մի ա-
խորժ կամէր առնել Սկիպիոնին), զո՞ ոք
յետ նորա ժողովուրդ Հռովմայ կալցէ
իւր զօրավար իբրև զնա, Սկիպիոնին հեզիկ
հարեալ ձեռամբն զուս Մարիոսի՝ որ 'ի
վերոյ բազմեալ էր, ասէ. Թերեւս զսա:
Այնչափ իմն մեծ երևէր մին անդստին 'ի
պատանի տիոցն, և միւսն անդստուստ 'ի վե-
րուստ խելամուտ լինէր բարգաւաճութե
պատանւոյն: Եւ պատմեն՝ եթէ Մարիոս
յաւէտ իմն 'ի բանից աստի քաջալերեալ
իբրև յաստուածապատումն գուշակութէ,
և 'ի յոյս մեծ մտաբերեալ՝ այնուհետև՝
ձեռնամուխ լինէր յիւր քաղաքն. և ձգէր
յանձն զբարձ ժողովրդապետութեանն զօ-
րավիգն սատարութեամբ Կեկիլիոսի Մե-
տելլայ, յորոյ 'ի տան ինքնին ծառայու-

Թիւն հարկանէր նա անդադարն 'ի ընկէ ժա-մանակաց հօրն :

Արդ՝ 'ի ժողովրդապետութեան իւրում Մարիոս օրէնս մի գրեաց վասն քուէարկութեանն, որ զիշխանութիւն աւագանւոյն նուազէր իմն 'ի դատաստանս, ընդդիմեալ գործոյ նորա Կոտտաս հիւպատոս և զծերակոյտն հաւանեցուցանէր յեղծումն օրինացն գրելոց, և կոչ եա Մարիոսի տալ գէլ յատեան անդր : Իսկ վճիռեալ, եմուտ Մարիոս 'ի ծերակոյտն՝ ոչ խոնարհեալ ինչ և ոչ նկուն, իբրու պատանի այն ինչ ձեռնամուխ լեալ քաղաքին՝ մինչև նահատակութիւն 'ի ներքս բերեալ. Նա՝ իսկ ապերջ և ձախ անդէն կանուխ 'ի հանդերձելոց իւրոց նահատակութեանցն, կայր և սպառնայր 'ի վերայ կառպէր Կոտտասայ, 'ի բանտ զնա արկանել եթէ ըզվճիռն ոչ լուծցէ : Իսկ Կոտտաս դարձեալ առ Մետելլոս և զխորհուրդն հարցեալ, և Մետելլոս յարուցեալ հաւանէր ընդ նա, յայնժամ Մարիոս վարոցաւոր մի 'ի ներքս կոչեալ՝ տայր զՄետելլոս ածել 'ի բանտ : Բողոք բարձեալ Մետելլոս առ այլս 'ի ժողովրդապետսն և ոչ բամբիշն չգտեալ, յայնժամ և ծերակոյտն խափանէր զվճիռն : Ապա Մարիոս յանձն իւր զուարձացեալ՝ գնայր և հաստատէր զօրէնսն. իբրու այր՝ որ ոչ յերկիւղէն ստորնեցի և ոչ յամօթոյն չիկենեցի, հզօր և անհարիկ ծերակուտին 'ի պայքարս ժողովրդեան : Սակայն և վաղվաղակի յայլ

խոտոյն ընդ քուարկու աւազակացն. քանզի այս Սաբինոսն էր 'ի կարեւոր մտերմաց անտի Մարիոսի: Ապա Սաբինոսն յանդիմանեալ եղեալ դատաւորացն՝ ասէր, եթէ ծարաւեալ ինքն առ սպասոյն՝ ջուր ցուրտ խընդրեաց. և մտեալ ծառայն բաժակ մատուցնմա, և արբեալ՝ անդէն ել նա արտաքս: Այլ զՍաբինոսն 'ի բաց արար 'ի ծերակուտէն հանէին համարակալքն՝ որ զկնի. և անարգեցաւ 'ի դէպ արդեօք, կամ յաղագս սուտ վկայութեանն կամ յաղագս անժուժկալութեանն: Բայց ընդդէմ Մարիոսի յառաջ կոչեցաւ 'ի վկայ և Գայիոս Երեննիոս. սակայն ասէր Երեննիոս՝ չէ օրէն վկայութիւն տալ ընդդէմ պաշտպանաւորացն. և յօրինացն երբէք 'ի նոյն ոչ առնելոյն Պատրոնք (զայս անուն տային Հռովմայեցիք պաշտպանացն). և Մարիոսի նախնիքն և ինքնին Մարիոս՝ ցանգ պաշտպանաւորք կացին զարմին Երեննեանց: Իբրև հաւանեցան դատաւորքն, անդուստ Մարիոս ընդդէմ դարձաւ Երեննիոսի և ասէր, եթէ միանգամ ինքն աւագացեալ՝ արդեամբ այնուհետև լինէր 'ի պաշտպանաւորին գոլոյ: Սակայն ոչ արդարանայր. զի ոչ ամենայն աւագութիւն յայնմանէն ազատ կացուցանէ զաւագացեալսն և զնոցայն զարմ. այլ աւագութիւնն միայն՝ որում զԹիւրոսն աթոռակ տան օրէնք: Արդ թէպէտ յառաջին անդ աւուրսն ձախողակի գնային իրք Մարիոսի յատենին, զի էին խակ նորա դատաւորքն անա-

կալ կեանան, զամենեցուն զսէրն յինքն յանկուցանէր: Քանզի արդեօք և առան աւան քաջալերութիւն մեծապէս է 'ի վերատակն ունել իւր կամակար վստահականեց. քանզի և այնպէս թուի ինձ նմազել քրտանց վաստակոցն. նա՝ և յորժ թերևրանք այն են Հռովմայեցի զօրականին՝ անսանել զեւրեանց զօրավարն՝ զնոյն հաց զհասարակացն ունել յանդիմանն և հանդաչել 'ի դուզնաքեայ խշտի և ինքնին ձեռն տալ յաշխատութիւնն՝ խրամ հատանել կամ պատնէշ փակել. զի և ո՛չ այնչափ ինչ պքանչացեալ են Հռովմայեցւոց զօրավարք՝ շուք և արծաթ 'ի ներքս բերելով զօրականին, որչափ որք բաժանորդք նոցայն վտանգացն լինիցին և քրտանց. և սիրեն նոքա առաւել զվաստակակիցս զօրավարսն, քան զորս անվտանգ թողցեն ըզնոսա: Այսմ ամենայնի պատկառ կացեալ Մարիոս և յինքն զզօրականսն յանդուցեալ, անդէն զԼիբիա և զՀռոմ լնոյր նա 'ի հռչակ համբաւոյն. և զօրականքն ինքնին առեալ գրէր առ որս 'ի տանն էին, ո՛չ վճարել մարտին 'ի Լիբիա՝ մինչև հիւպատոս կարգեալ Մարիոսի:

Յայսմանէ 'ի խոր խոցեալ Մետեղեայ, առաւել ևս 'ի թաղծութիւն պաշարեալ զնա դէպքն Տուրպիղեայ: Սա այս Տուրպիղիոս կապանօք հայրենի հիւրընկալութեան սերտեալ էր ընդ Մետեղղոսի. և էր նա յայնժամ առ նմա զօրագլուխ կարգեալ Ճարտարաց գործոյն, և 'ի պահ ըզ-

նայն արդոյ և պատուական՝ տայէն և զէնս պատուական որերոյն. զմտաւ ածեալ եթէ այլք այլ 'ի զօրականէն զգոյսն իւր տայէ տուհաւատչեայ լաւութեան անձինն: Այլ ոչ այս տիրագոյնս նախատ արար զՄարիոս, այլ նորա խորխա և լըբենի բարբառ, որով յաւակնագոյնս և յայրատագոյնս թշնամանէր զաւագս քաղաքին, և ձայն բարձեալ ասէր՝ եթէ է իսկ իւրն հիւպատոսութեան բարձ՝ նմա կապուտ կողոպուտ դրդանաց ազատորերոյն և ընչաւէտ մարդկանն. և թէ՝ նա զանձին իւրոյ զպալս և զվէրսն յանդիմանէ խուժանին, և ոչ զշերիմս ինչ զմեռելոց և զօտարին զպատկերս: Եւ ապա սակայ բան ծառեալ յաղագս զօրաժողովացն՝ որք հիգացան 'ի Լիբիա. և զԲեստիաս և զԱլբինոս՝ արս կոչեալ տոհմիկս, այլ 'ի կռիւ անքաւականս ումանս, որոց և առ անհմտութեանն ոչ յաջողեցան իրք, հարցանէր առ որս մերձն կային, եթէ արդեօք և նախնիք նոցա խնդրէին ունել զաւակս հանդունանատիպս ինքեան. իբրև նոքա ոչ 'ի զարմին քաջութենէ, այլ 'ի գեղեցիկ նահատակութեանցն և յառաքինութենէն զտան փառաւորք: Զայս ասէր Մարիոս ոչ 'ի նանիր և ոչ յաւակնագոյնս, և ոչ տարապարտ հպարտացեալ 'ի վերայ աւագանւոյն, այլ զի խուժան ռամկին խնդացեալն 'ի նշաւակութեան ծերակուտին և 'ի մեծաբանս անտեաց՝ յորոց և բնաւորեցաւ նա ցանդ չափել զարիութիւն ոգւոյն, խեռացուցանէր ինք-

նին զՄարիոս և զորդեր մի խորշել յերե-ւաց աւազանւոյն, զի այնպէս ընդունելի խուժանին լինիցի:

Ապա իբրև անց գնաց նա 'ի Լիբիա, ոչինչ հանդուրժեալ կրեցն Մետեղլոս և 'ի խոր եւս խոցեալ, զի 'ի վճար մարտին յորժամ մնայր միայն զՅուգուրթաս ձեր-բակալ առնել, եկն եհաս Մարիոս՝ ան-շնորհակալու բերմամբ առ ինքն յաւագու-թիւն ամբարձեալ կապտել առնուլ 'ի նմանէն զպսակն և զյաղթանակն. այլ չհանդուրժեալ լինել ընդ նմա՝ տեղի ետ 'ի վայրացն, և երեսփոխան նորա Հռու-տիլիոս առեալ 'ի ձեռս տայր Մարիոսի զբանակ զօրուն: Սակայն 'ի վախճան նա-հատակութեանցն հարաւ և ինքնին Մա-րիոս պատուհաս կրեալ 'ի խեթացեալ Քա-ջէն. քանզի Սիւղղաս յինքն տարաւ ըզ-փառսն, ըստ որում ինքն խնդրեաց զՄե-տեղեայն: Իսկ թէ զիարդ, սղագունիւք անցցուք. քանզի և ոճով արձանագրեալ կայ 'ի վարսն Սիւղղայի:

Բոկքոս արքայ բարբարոսաց վերնագա-ւառին՝ աներ Յուգուրթայ՝ ոչ մեծ ինչ զօրավիգն լինէր նմա 'ի մարտին. դժուա-րեալ ընդ անհաւատարմութիւն նորա, և զանգիտեալ եւս 'ի զօրութենէն: Իսկ իբ-րև հեքացեալ Յուգուրթաս գնայր փախըս-տեայ Թափառական, յոյս առեալ 'ի վեր-ջինսն՝ եկն ապաւինեցաւ առ աներն. նա ժողովեալ զնա իբրև աղաչաւոր, քան 'ի մարդասիրութենէն՝ առաւել եւս յամօ-

'ի բաց զխուժանն սարտուսցեն յառ. նա մեծապէս շքոյն և 'ի հակամիտութենէն:

Սակայն և ընդ հուպ մախանք և պատերութիւնք և ամբաստանութիւնք ընդդէմ Մարիոսի վարատեալ փարատէին յահագին վտանգէ անտի Խտալիոյ՝ յուզեալ յարևմտից կուսէ, իբրև անդ քաղաքին պէտք լինէին մեծի զօրավարի և քաջի դեկավարի՝ յանդորր հանել 'ի զայրացեալ մրրկէն. յորում և ոչ ոք 'ի տոհմիկ և յընչեղ զարմիցն ոչ ժտեցաւ թեկն զհիւպատոսութեանն առնել. ուստի և 'ի ժամուն հիւպատոս ընտրեալ կարգեցաւ Մարիոս՝ մինչդեռ 'ի բացեայ կայր: Քանզի այն ինչ լուր հասեալ ձերբակալութեանն Յուգորթասայ, անդէն շռինդն ահեղ հարկանէր յաղագս ահագին ասպատակին Տեւտոնեանց և Կիմբրացւոց. զառաջինն իբրև սուտ համբաւեցաւ լուր ամբոխի զօրականին նոցա և բանակին նոցա. այլ ապա յայտնի եղև նուազ քան զճշմարտութիւնն լինել: Քանզի մարտիկք 'ի նոսա և 'ի զէն 'ի զարդ վառեալք՝ էին բիւրք երեսուն. և ասէին՝ եթէ բազմագոյնք ևս են բանակք տղայոց և կանանց աղխաղխեալք 'ի չուանդր, 'ի խնդիր ելեալք գետնոյ բաւական 'ի կերակուր ամբաւ խուժանին, և քաղաքաց ևս 'ի բնակութիւն նոցա. որպէս և լուեալ իսկ էր նոցա նախ քան զնոսա ըղչուն Կեղտաց, որ զքաջաբեր կողմն հասեալ կալան զԽտալիոյ՝ 'ի բաց հանեալ 'ի ձեռաց Տիւռրենացւոց:

Արդ քանզի խուժանին այնմիկ ընդ այլ ժողովուրդս հաղորդութիւն չէր, և զի՛ և 'ի սահմանաց բացարձակ գաւառի հորդան եասան նոքա, ոչինչ գիտէին՝ զինչ մարդիկ իցեն դոքա. և Թէ՝ ուստի ուստեք շարժեալ նոքա այնպէս եկին իջին՝ իբրև ամպ և մէգ 'ի վերայ Գաղատիոյ և Իտալիոյ. սակայն և 'ի դէպ յոյժ կասկածէին լինել նոցա 'ի սերընդոց անտի Գերմանացւոց բնակո-ղաց Ովկիանոսին հիւսիսի, առ 'ի յաղթան-դամ հասակէ անտի նոցա և 'ի կապու-տակ աչացն և 'ի կոչելոյ անտի Գերմանաց-ւոց զաւազակսն յանուն Կիմբրացւոց: Այլ կէսք ասեն՝ եթէ սահման Կեղտաց լայնա-ծաւալ և բացաձիգ՝ յՈվկիանոս և յԱր-ջայլեան կլիմայից անտի Թեւակոխեալ յա-րեւելս կոյս առ Մէոտեաւ, գայ յօդի ընդ Պոնտոսեանն Սկիւթիա. և ասեն՝ ե-Թէ անդուստ 'ի միասին խառնեցան այն ժողովուրդք. և Թէ՝ ո՛չ միահամուռ նոքա միանգամայն շարժին 'ի կայից իւրեանց և այնպէս հրոսակ սփռեն անդուլ, այլ ամ ըստ ամէ նոքա յառաջադէմ խաղան միշտ 'ի ժամանակ գարնայնոյ. և գնան ծաւա-լին այնպէս բազում ժամանակօք մարտիւ պատերազմի 'ի վերայ ցամաքի. ուստի Թէ-պէտև առանձին նոցա անուանք իցեն սար-քերեալք, հասարակ անուամբ կոչէին նոքա 'ի բանակին իւրեանց Կեղտոսկիւթացիք: Իսկ և կէսք ասեն՝ եթէ գուզնաքեայ մասն ամբոխին նոցա էր 'ի Կիմմերացւոց անտի՝ քաջ իսկ 'ի նախնումն ծանօթք Հելլենաց-

ւոց. որք 'ի շփոթից անտի Սկիւթացւոցն՝
'ի Մէոտիդեայ անցին յԱսիա՝ ածեալք
անդր 'ի Լիգդամիոսէ. այլ բազմադոյնք
'ի նոցանէ և քաջամարտիկքն բնակէին 'ի
վերջին սահմանս մերձ Ովկիանոսն, ուր
ասեն՝ զերկիրն մառախլապատ և անտա֊
ռաւոր, և ծմակ անարև առ թաւութեան
և խիտ առ խիտ մայրեացն՝ որ երկայնեալ
ձգին մինչև յԵրկինոսն. և երկրին այն֊
միկ զոլ ընդ երկնիւք, ուր և ամբառնալ
բևեռացն անդ 'ի հակեալն անտի զուգա֊
հեռականացն՝ վայրիկ մի տարբերեալ իցէ
'ի գագաթահայեացն կէտէ բնակչացն նո֊
րա, և տիւ զուգահաւասար գիշերոյն հա֊
մառօտեալ և երկայնեալ՝ հասարակէ անդ
զժամանակն. յորմէ և նիւթ 'ի նեղքս բե֊
րաւ Հոմերոսին կեղծեաց վասն Մեռելա֊
պատում Ուրուականացն։

Արդ 'ի նոցուն վայրացն ասեն հորդան
տալ բարբարոսացն յԻտալիա, որք յա֊
ռաջն Կիմմերացիք՝ և յայնժամ վայրա֊
պար այնպէս կոչէին Կիմբրացիք։ Այլ
զայսոսիկ 'ի կարծ ասեն, քան 'ի հաւաս֊
տի պատմութենէ։ Իսկ 'ի պատմագրաց
բազումք զԹիւ համարոյ նոցա առաւել
ասեն քան զհամբաւն։ Եւ էին նոքա յա֊
րութեան քաջութեան անվանելիք ոմանք,
և յոյժ յաղթողաձեռնինք 'ի կռուել. խոյա֊
ցեալք յարձակէին սաստիկ թափով և
բռունն՝ հանդունատիպ հրոյ, և հանդար֊
տէր և ոչ դք առաջի նոցա. այլ վանեալք
առհասարակ 'ի հանդիպոյ՝ ձգէին տանէին

ակն յայտնի Հռովմայեցւոց զանհաւատալին նոցա բանն՝ զՅուգուրթայ գերեալ, առ որոյ կենդանութեանն ակն ոչ երբէք չունէին նկուն զխուժադուժն առնել. այնչափ լինի այս Յուգուրթայ բազմայեղանակ լեալ բաղդիցն դառնակ դառնակ փոփոխեր, և ընդ լրբենի յանդգնութեանն ունելով և խորամանկութիւն մեծ. այլ յայնժամ քարշեալ ձգեալ նա 'ի յաղթանակին հանդէս, ասեն՝ եթէ ցնորեալ անկանէր նա 'ի մտաց: Իսկ յետ յաղթանակին ածեալ նա 'ի բանտ, կէսք բռնի 'ի թիկանցն կորզէին զպատմուճանն, և կէսք խուճապեալք 'ի կորզել զգինդն նորա զոսկի՝ 'ի միասին կորզէին և զբլթակ ունկանն. և այնպէս մերկ և հնչեցեալ 'ի վիրապ մի առեալ խարդաւանէին զնա. Նա անդ լի՛ արհաւրօք և բերանաբաց սարսեալ ասէր. "Բա՛ղէ Հերակլէս, զի՛արդ ցուրտ է բաղանիքդ ձեր": Անդանօր նա զաւուրս վեց կռուեալ ընդ սովուն, և ցյետին շունչն զհետ կրթեալ կենաց, հուսկ ապա այնպէս լուծանէր զպատուհաս զամբարշտութեանցն:

Եւ պատմեն՝ 'ի յաղթանակին յայնմիկ ածել լեալ բերաց ոսկւոյ՝ երեք հազար և եօթն. և ձոյլ արծաթոյ՝ հինգ հազար եօթն հարիւր և եօթանասուն և հինգ. և դրամակրչւոց արծաթոյ՝ եօթն և տասն հազար և քսան և ութ: Իսկ յետ հանդիսին՝ խմբէր Մարիոս զծերակոյտն 'ի Կապիտոլիոն. և ինքն կամ ոչինչ ուշ եդեալ կամ թէ

խորշակատապագոյնս 'ի գետս քերելով զեզերցին զիւր բանակն, այնպէս 'ի նոյն պատմութեան յաղթանակին մնացեր անդր. այլ անդէն կոտորած եղեալ խուժադուժութեան ծերա-կուտին՝ յարուցեալ եղանէք արտաքս և դառնայր անդրէն՝ վերադարձու առեալ զան-ձամբ ։

Յետ այնորիկ չու 'ի մարտ արարեալ, կրթէր յուղղով զզօրականն 'ի վաստակս աշխատութեանց. և յարգ ազգ արշաւա-նաց և յերկարութիւնս ճանապարհաց. հրամայէր ապա առն առն զիւր աղխն բառ-նալ տանել, և իւրեանց ձեռօքն զկերակուրն պատրաստել. և յայնմանէ ապա որք աշ-խատասիրաբար և անշշուկ կատարէին հա-մակայր զամենայն հրամանսն, անուն կարգայէին նոցա՝ Ջորիք Մարիոսեան ։ Սա-կայն կէսք համարին՝ այլ պատճառս լի-նել անուանակոչութեանն, և ասեն՝ եթէ 'ի պաշարմանն Նումանտիոյ կամեցեալ Սկի-պիոնի տեսանել զննել ոչ զզէնսն միայն զզօրականացն և զերիվարսն՝ այլ և զջորւոցն և զսայլացն զկազմութիւն զառն առն, անդ Մարիոս ածէր զանուանեալ զերիվար իւր զքաջարոյծ և ջորի մի քաջառողջ և ըն-տելութեամբն և կորովութեամբն յոյժ երևելի. զորս տեսեալ Սկիպիոնի և մեծա-պէս սիրեալ և առէալ ապա յիշատակ ա-րարեալ զնոցա, դէպ եղև յետ այնորիկ՝ զի որք հեգնել իւնչ և գովել միանգամայն խնդրէին զայր անխոնջ և համբերատար, անուն կարգալ նմա՝ Ջորի Մարիոսեան ։

Բայց թուի 'ի ժամանակին յայնմիկ գեղեցիկս յաջողել Մարիոսի . քանզի խուժադուժքն նորա յորձանապարձ իւրեանց թափոյն արգելեալ և յորդեալ ծաւալեալ՝ նախ զիւրերիւս ողողել, յայն պարապ ժամանակին առեալ Մարիոս կրթէր կորովացուցանէր զմարմինս զօրականին, և զոգիսն այնդէր հաստատէր լի քաջալերութեամբ. և որ մեծ եւս՝ ընտելացուցանէր զնոսա 'ի ճաշակ իւրոց բարոյիցն։ Քանզի նորա անհաղթնայեաց ոճիպ, և անամօթք խոլամամբերութիւն 'ի պատուհասել՝ յառաջին զժոխամբերելի զօրականին, երբե առաջ անձնեցան հլուք և հնազանդք նմա, վայելուչ երևէր նոցա և կենսատուիթ. և նորա խորոխա ոգին և վայրենի և խաղաղասխուղա բարբառ ձայնին և ժահապխմութիւն կերպարանին, երբե տակաւ ընտելացաւ նոցա առ 'ի կենակցութենէն, ահընկեցք այնուհետև թուեցան ոչ նոցա՝ այլ թշնամեացն։

Իսկ զոր առաւել քան զամենայնն սիրեաց զօրականին, դուզդութիւն նորա 'ի դատաստանին. այր հաւատոյս՝ գէսպս իմն պատմեն այսպիսի։ Էր անդ զինուորեալ 'ի զօրապետութեան Գայիոս Լուսիոս եղբօրորդի նորա, ոչ անպարտ միջնակեալ բարոյից, սակայն և ցանկաւէր դեղեցիկ պատանեաց։ Սա 'ի սէրն հարեալ պատանւոյ ուրումն անուն Տրեբոնիոս՝ որ 'ի դասու զօրականին իւրոյ, սակայն նեղէր զնա՝ այլ դամանդիւոչ լինէր։ Այլա 'ի գիշերի միում առաքեալ առ նա պաշտօնեայ մի կոչել

զնա, յաղթուցեալ Տրեբոնիանոս չոգաւ. (քանզի և 'ի կոչ զօրապետեանն անտեսանել արժան չէր.) Իբրև եմուտ 'ի վրան անդր, պատրաստաւորեցաւ Լուսիոս բռնաբարել զնա. և նա ձգեալ զսուրն անդէն սպանանէր զԼուսիոս. և չէր յայնժամ Մարիոս 'ի բանակին: Իբրև դարձաւ, յանդեան կոչէր Մարիոս զՏրեբոնիանոս. անդ իբրև բազումք ամբաստանեալն կային և պաշտպան չէր ոք ուրեք, ինքնին Տրեբոնիանոս յառաջ անցեալ պարզեալ՝ պատմէր ոճով զամենայնն, և հաւաստեաց ևս ածէր հանդերձ վկայիւք, զի բազում անգամ ընդդէմ դարձաւ հրապուրիցն Լուսեայ. և թէպէտ մեծամեծք էին պարգևքն՝ նա երբեք չառար տալ 'ի պղծութիւն զմարմինն: Հիացեալ կայր Մարիոս ընդ ազնուական խորհուրդ պատանւոյն, և յանձն իւր գուարճացեալ՝ հրամայեաց տալ ածել անդէն զպսակն զմեծամեծ նահատակութեանցն ըստ հայրենի կարգին. և ինքնին ձեռօքն պսակէր զՏրեբոնիանոս իբրև մրցանաւոր քաջ 'ի ժամանակին՝ յորում այնպիսեաց պէտք էին գեղեցիկ օրինակաց:

Լուր բանին հասեալ 'ի Հռոմ, ոչ սակաւ ինչ զօրավիգն լինէր երրորդի հիւպատոսութեանն Մարիոսի. առ այս՝ զի և սպասեալք հռոմայեցին բարբարոսաց 'ի մուտս գարնանայնոյ, չառնոյր յանձն զօրականն կռուել ընդ այլով զօրավարաւ: Սակայն և վրիպեալ զաման նոցա, զի անց և այն ժամանակ հիւպատոսութեանն Մարիոսի:

կռուել 'ի տարաժամու: Այլ քանզի ա-ծել պաշարոյն ընդ ծով զառաջինն եր-կայնաձիգ մճարէր չրջանաւ և ծանրագնի, նա հեշտին և արագ գործեաց: Քանզի բերանքն Հռոդանոսին նխուլթ բազում ա-ռեալ 'ի ծփանաց ծովուն և անդանօր ա-ւազն խառնեալ ընդ մեծաւոր Ճահճին 'ի հեղեղատաց ալեացն, սաժանակիր և անձուկ ևս էր նեղուցն վասն ցորենաբեր նաւացն. առայս Մարիոս պարապեալ զօրականին հրամայեաց տայր հատանել խրամ մեծ և խոր՝ ստասպնջական մեծ ևս նաւաց. և յայն խրամ խաղացուցեալ ջուր առատ 'ի գետոյն, բե-րան նոր բանայր 'ի ծովեզերին՝ քաջաղխալա-գոյն և հեշտընթաց 'ի ծովանդր: Եւ կար-դան զխրամն ցայսօր յանուն Մարիոսի:

Այլ խուժադուժքն յերկուս բաժա-նեալ բանակս, էր Կիմբրացւոցն 'ի վերին կողմանէն ընդ երկիր Նորիկեցւոց խա-ղալ ընդդէմ Կատղոսի, և բռնացան նորա անցանել յայնմ կողմանէ. իսկ Տեւտոնք և Ամբրոնացիք խաղայինն ընդդէմ Մարիո-սի ընդ Լիգիւացիս՝ քերեալք առ ծովա-փամբն: Կիմբրացիք յամեալք զանդաղե-ցան 'ի չուն. այլ Տեւտոնք և Ամբրոնա-ցիք փոյթ և արագ անցեալ հատեալ զմիջ-նադաշտն՝ յորդեալք ծաւալեցան բազ-մութիւն անհուն խօլաց, անգեղեալք և խուժադուժք, ահեղք և սոսկալիք, և 'ի խորխովուն ձայնիցն և 'ի խռնուրդն խառնա-ղանջին խաւրեանց՝ ոչինչ ամենևին հանգու-նաստխալք այլոց մարդկանն: Հասին կայան

վայր լայնատարածման երկրի, և բանակ հա-
րեալ՝ ասպարեզ Մարիոսի կարգային 'ի
կռիւ. Նա փոյթ ինչ չարարեալ ձայնա-
տու խօլայն՝ 'ի զանձին ամփոփեալ ունէր
զզօրականն. և կշտամբանս դառնապէս ա-
ծէր 'ի վերայ խիզախ մարդկանն, և որ կա-
րի խրախուսեալք գրոհ 'ի խուժադուժան
ժողէին առ և 'ի կռիւ խառնել, և կար-
գայր զնոսա հայրենեաց մատնիչս. զի և չէր
իսկ ժամանակն պատուաստելոյ 'ի յաղ-
թանակս և յախոյեանս, այլ հնարիմաց ի-
մաստութեամբ փարատել վանել զահա-
գին ամպրոպ և զահեղ փայլատակունն
զմարտին և յանդորր զխոսալիս հանել:

Զայս բանս առէր առանձին զօրապե-
տացն, և որ 'ի նոցունն սակի. իսկ առ սա-
կականսն 'ի զօրականէն, հրաման տուեալ
զի մի ըստ միոջէ 'ի շերտապարակէ ամեն նո-
քա գէտակն կալեալ հայեսցին 'ի խու-
ժադուժսն. և այնպէս ընտելացուցանէր
զնոսա բերել զժահադիմութիւն կերպա-
րանաց նոցա, և ժուժալ զժոխալոր և
խռպոտ ձայնին նոցա, և գիտել գիտել
զատպարազ զինու զարդու և շարժմանց նոցա.
զի և որք յառաջն ահաբեկք և վայրենիք՝
տակաւ տակաւ առ 'ի յաճախ տեսու-
թենէն փոքրոգիք գտան յերևակութեան
նոցա: Քանզի և հաստատեալ իսկ էր, զի
նորութիւնն ինքնին շատ ինչ ստութեամբ
զարհուրանս բարդէ յերկիւղալիսն. իսկ
ընտելութիւնն նուազէ զարհաւիրսն և
զապառափելեացն գլխովին:

Եւ արդեօք տէրութիւն համապատուրեայ յայնժամ ո՛չ զահ զերկիւղին միայն կարծէր 'ի Նոցանէն, այլ ևս ձայնն զգլխաւորին խժդժիցն բռնաւորաց մեծամեծս կոտորելոց և գոռոզ պանծանացն 'ի մեծ պատուտութեան բարկութեան բորբոքէր զնոսա, և վառէր բորբոքէր առհասարակ զոգիս Նոցա, մինչդեռ անզանոր բարբարոսքն ո՛չ յաղթարար միայն վարեալ առար հարկանէին շուրջանակի, այլ և լքեալ ժպրհութեամբ յառաջ վարեալք մօտ մինչև 'ի չերաստփակ անդր Նոցա քերեալք բաղխէին. զի և զօրականքն հռոմայեցւոց սաստիկ տանեալք, և այսպիսի իմն գանգատանաց հատանէին ձայնիւք յանդիման Մարիոսի. "Անարի վատութիւն զո՞ր երբէք 'ի մեզ անկանէիր Մարիոս, որ աղագաւ 'ի կռուոյն խափանէ զմեզ, արգելեալ առ զմեզ իբրու ըզկանայս ոմանս 'ի ներքոյ դռնափակաց և 'ի պահ դռնապանաց. Ո՞ն առեալ, որ մինս և խորհուրդ բարձեալ բերեմք զազատորերոյ, գնասցուք առնա հարցանել՝ թերևս այլուում զօրականի նա սպասեալ մնայ զալատեան՝ մարտ դնել կռուել 'ի վերայ ազատութեան. իսկ զմեզ արդեօք ցանգ իբրև աշխատութեանց գործաւորս կալցէ դա, յորժամ նմա խրամս հատանել պէտք իցեն և կաւ և տիղմ պեղել հանել կամ զգետս առնուլ շրջել. իբրև գործն աղագաւ արդեօք կրթեաց դա զմեզ յայնչափ վաստակս. և դարձ արասցէ դա ցուցանել հայրենեացն զդոյն նահատակութիս զեւ-

րոյ հիւպատոսութեանն ։ Կամ՝ թէ եր-
կուցեալ Թերևս խիթայ զա յարկածիցն
Կարբոնեանայ և Կեպիոնեանայ՝ որ նկունն 'ի
թշնամեացն եղեն . սակայն էին իսկ զօրքս
յոյժ խոնարհագոյն քան զՄարիոս 'ի
փառս և 'ի քաջութեան, և բանակ ա-
ծէին՝ յոյժ խոնարհագոյն քան զզօրայն ։
Բայց լաւ ևս իցէ արդեօք կրել փոքու ինչ
զկէրս արկածից նոցա և ինչ մի 'ի ներքս
բերել, քան 'ի զինին աստ միայն նստել ա-
ղէտից նեղակակցացն մերոց" ։ Յանձն իւր
զուարճացեալ բերկրէր Մարիոս 'ի լուր
զանգատանացն, և կայր և ամոքէր զզօրա-
կանն՝ զեղերանս տալ կռուոյն ոչ ա-
յերկուանացն 'ի նոսա . այլ զի 'ի պատ-
ճառանաց ինչ խնդրէ դէպ ժամանակ որսալ
և զշփոթեալ վայր զհաւատոյ յաղթութեան ։
Քանզի Մարիոս մեծապէս յարգանօք
տայր տանել շալակաւ ամենայն ուրեք
ուր և երթայր, կին մի Ասորացի Մարթա
անուն՝ կարծեալ իղձ և գուշակ . և ըստ
նորա կամին կատարէր նա զզոհսն ։ Սա այս
կին զառաջինն հերքեալ մերժեցաւ 'ի
Սինկղիտոսէն, քանզի խնդրէր միջամտու-
թեամբ խօսել ընդ նմա զայսպիսեաց իրաց և նա-
խապատուամ զհանդերձելոցն լինել ։ Այլ
ապա հաւատոյ 'ի ներքս բերեալ զիւրոյ
քաջութեանն առ կանայս՝ առ որս մուտ
գտեալ էր, և յաւէտ իմն առ կին Մարիո-
սի, յորժամ նստեալ առ տես մենամար-
տացն նախագուշակ եղև՝ ո՞ ոք 'ի նոցանէն
յաղթական եղիցի . ապա առեալ նա զիղձն

արձակեէր առ այլն. և էր այնուհետև նա սքանչացեալ, և բազում այն էր՝ որ զնոյնս նա բարձեալ շալակաւ, և ածեալ ընկերէին զնա 'ի գուհն՝ պատառմունձամբ արկեալ ծղո-նի՝ կրկին ճապաղմունքեալ, և 'ի ձեռն նորա զեղազարդն՝ բոլորեալ վարդապանակալօք և պատակօք: Այլ թատերականն այդ ցոյցք՝ բազմաց պատահմունք լինէր տարակուսանի, արդեօք ոգւոյ համառօտ զօրոյ կէին յերևան ածեալ Մարիոսի, եթէ 'ի կերպ արդեօք և համառ-խոսհ ընդ կենօքն:

Իսկ պատմութիւնն արձանագրեալ յԱղեքսանդրէ Միւնդիոսէ յաղագս ան-դերձագցն՝ սքանչելի է: Քանզի երկուք 'ի հասարակաց այսուի ցանկն երկակին շուրջ զգանա-կաւն՝ մինչչև եղեալ յաղթութեանն՝ և զհետ երթայյին. և քաջ խոկ ծանուցեալ էին թռուչնքն 'ի մանեկաց անտի այնձոյ՝ զոր արկին զօրականքն ընդ փողս նոցա՝ կա-լեալ զնոսա և արձակեալ անդրէն. ուստի և այն անդեղք ընդելեցեալք զօրականին, թռուցեալք գայլին՝ խնդրև ողջոյն առ նո-ցաս. և զօրականքին յանկն զնոսա արկեալք 'ի շուրջ խաղերանց, յոյժ ցնծայլին խրոու որ անշշաւշտ 'ի հասարակաց յայն նահատա-կութեն 'ի գլուխ տարցեն: Ցեռ այնորիկ և նշանք 'ի վեր երևեալ բազումք, և ոչ մի 'ի նոցանէն հասարակս լինէր ընդերէր. բայց յԱ-մերիոյ և 'ի Ցուղերաեայ քաղաքացն խուա-բացւոց լուր հասանէր՝ թէ գիշերի երևեցան յերկինս գեղարդունք բոցաւէտք, և վա-հանք զառաջինն այսր անդր մեկինք ձօ-

ձեալք և շարժեալք, ապա ընդ միմեանս հատեալք բախեալք զանխղ երերելով զմնարտիկ զօրականին, 'ի վերջէ ուրեմն կողմն մի տիրացեալ և միւսն անդր տուեալ՝ 'ի վայր հոսեցան յարեւմուտս կոյս:

Այլ և յաւուրսն յայնոսիկ և Բատտաբակէս քուրմն մեծի Մօրն՝ եկեալ հասանէր 'ի Պեսսինունտեայ լուր բերեալ՝ ասել նմա դիցուհւոյն յԱրքունեաց անտի դաբիրային, եթէ յաղթութիւն և զօրութիւն մեծ 'ի մարտին 'ի կողմն կայ Հռոմայեցւոց: Նմա հաւատս տուեալ Սինկղիտոսին, և վճիռ եւ տայր՝ կանգնել տաճար դիցուհւոյն 'ի շնորհս յաղթութեանն. ապա անցեալ գայր Բատտաբակէս առ ժողովուրդն ազդ զերազն առնել. այլ Աւլոս Պոմպէոս ժողովրդապետ արգելոյր զնա և խաբուսիկ եւ կարդայր զնա և զզուեալ եւ 'ի բեմէն մերժեաց զնա. և ապա այս մեծապէս հաւաստիս առթեաց քրմին: Քանզի անդէն Աւլոս մեկնեալ յատենէն 'ի տուն իւր՝ անկանէր տապացեալ սաստիկ ջերմամբ, և յետ աւուրց եօթանց մեռանէր. յայտնապէս ցուցեալ պատուհասին և հուշակ հարեալ առհասարակ:

Արդ մինչդեռ անդէն դարեալ դադարեալ կայր Մարիոս, յանդգնեցան Տեւտոնք միջամուխք 'ի նեղ արկանել զզանկէշն և հարկանել. սակայն 'ի տեղապատարտի հարեալք 'ի նետոյցն 'ի պատնիշէն և կէպք եւ դիտապատատ անկեալք, խորհուրդ հաստատեցին անցանել յառաջ տիրանալ Ալ-

պետանց աններկիւղք յանձնապաստանք ․ ժողովեցին զզօրանսն, խաղային գնային առ երի բանակին Հռոմայեցւոց ․ և յայտնի իսկ յայնժամ երևէր բազմութիւն ամբոխումանին նոցա յերկայնել ձգել շուրայն նոցա ․ քանզի ասեն՝ եթէ զաւուրս վեց այնպէս աղխաղխեալ անցանէին նոքա առ պատանշաւն Մարիոսի ․ և մօտ քերեալք՝ ձաղէին և հարցանէին ես Հռոմայեցւոց եթէ ինչ մի ունիցին նոքա առաքել առ կանայս իւրեանց, առ որս երթեալ ժամանեսցեն նոքա մերձ ընդ մերձ ։ Իբրև յառաջ անցեալ խաղացին բարբարոսք, ապա և Մարիոս ժողովեալ զզօրանակն՝ զհետ խաղայր նոցա ․ և զանեղի կալեալ նստէր ցանգ մօտ առ երի նոցա, հարեալ զզօրանակն քաջամուր շուրջանակի 'ի վայրս անխարդ՝ օթագայել յանդորրու ։ Եւ այնպէս հասեալք անցեալք՝ եկեալ հասանէին 'ի մըտակսն, որոց անուն կարդային Սեքստիլեանք, ուստի ոչինչ բացաձիգ կային Ալպեանք ։

Բայց Մարիոս անդանօր պատրաստէր կազմէր յարդարել մարտ՝ բանակ հարեալ 'ի վայր մի ամուր, բայց սակաւաջուր ․ խնդրէր՝ որպէս ասեն՝ և յայնմանէն դարձեալ գրգռել զզօրականն ։ Եւ արդեօք շատք անդանօր դժկամակեալք և դանդաղեալք զջրոյ 'ի ծարաւէն, նա մատնանիշ նոցա զաղբիւրն արարեալ՝ որ բղխէր մօտ 'ի շերտափակ անդր բարբարոսացն, ասէր անդուստ զեւրեանց ըմպելին գնել

գնոց արեան. ուստի և նոքա կրկնէին. «Այս խմէ՛ ուրեմն քո ոչ փոյթ ընդ փոյթ խաղացուցանել զմեզ ընդդէմ դոցա, ցորչափ մեր գալար է արիւնն»։ Նա համգարտ և հեզ ետ պատասխանի. «Նախ քաջամուր գործել մեզ արժան է զմեր բանակն»։ Այսպա զօրականք թէպէտ և պահանջեալք՝ խելամուտ եղեալ հնազանդէին նմա։ Բայց խուժան բեռնակրաց բանակին՝ քանզի չգոյր ջուր ոչ նոցա և ոչ գրաստուցն, իջին նոքա ամբոխիւ 'ի գետ անդր՝ կէսք սակրաւորք, կէսք սապարաւորք, և կէսք դարձեալ սուսերաւորք և տիգաւորք, հանդերձ սափորովք՝ առնուլ ջուր թէպէտ և կռուել հասանիցէ։

Անդանոր զառաջինն ընդ նոսա խառնեցան 'ի կռիւ գունդ մի սակաւաձեռն բարբարոսացն, յորոց և շատք ելեալք 'ի բաղանեացն նստեալք ճաշէին և կէսք դեռ ևս 'ի ներքս անդ էին. քանզի և վայրն ինքնին անդ խոխոջեալ բղխէ աղբիւր ջերմկաց. ուստի և հռոմայեցիք ահ արկանէին նոցա, մինչդեռ նոքա անդէն խնդացեալ կային 'ի սփոփութիւնն, հիացեալք ընդ գեղալից վայրան։ Այլ 'ի ձայնէ աղաղակին նոցա բազումք ընթացեալք դիմեալք 'ի վայրն, դժուարին ուրեմն էր այնուհետև սանձել Մարիոսի զզօրականն՝ որ 'ի վտանգի զաշխատաւորսն տեսանէին զբանակին. առ այս՝ զի և գունդ մի քաջամարտիկ խաժդըժիցն՝ յորոց յառաջն առ Մալլիոսիւ և առ Կեպիոնիւ նկուն գտան հռոմայե֊

ցին , յարուցեալք յանժամ 'ի զէն ընթացան: Եւ անուն կարգային քաղաքամարտկացն այնոցիկ Ամբրոնք. և նոքա միայն աւելի էին քան զբիւրս երիս: Թէպէտ և կերակրով յղփացեալք և մարմնով ծանրադանդաղք , սակայն և 'ի նոյն յոյժ զուարթացեալք 'ի գինւոյ, մեծապէս խրախուսեցին գունդք և խրոխտք. և դիմեալք խաղային ոչ անկարգս և խուճապ, և ոչ աղաղակ բառնային անտաղաւորս , այլ բաղխս և զարկս տուեալ զինուցն չափով և թուով, և համագունդ միաբան քայլս տուեալ զուգահետս, այնպէս գալով գային՝ ստէպ զինուորեանցն բարբառելով զանուանն, Ἄμβρωνες Ἄμβρωνες. կամ զի այսպէս այր զընկեր կարդալով խրախոյս յորդէին , կամ զի այնպէս կանուխ ահ թշնամեացն արկանիցեն՝ ծանօթս տուեալ զանձանց:

Բայց նախահասակք ընդդէմ նոցա յիտալացւոց գնդէն խաղացին Լիգիւացիք. որոց և լուեալ զձայն աղաղակի բարբարոսացն և զանուանն, արձագանգ զնոյն անուն կրկնէին և նոքա զԱմբրոնացն՝ զինուորեանց իսկ զհայրենին. (քանզի և Լիգիւացւոց հասարակ ըստ ազգին զայս կարգան անուն): Եւ այնպէս աստ աստի և անդի զնոյն անուն ստէպ կրկնեալ և կրկնեալ՝ մինչչև խառնեալք 'ի կռիւն. զնոյն ձայն և երկոցունց գնդացն հնչէին զօրաւարքն՝ և անդ այր զարամբք բարձրացուցեալ զձայնն, յայն աղաղակ առաւել ջեռուցեալք բորբոքեալք այնպէս սաստիկ եւս զայրացան 'ի յորդոր իւրեանց:

Բայց Ամբրոնք 'ի հոսանաց անտի գետոյն բաժանեալք երկփեղկեցան. քանզի մինչև 'ի կարգ դասաւորեալք նոցա յայնկոյս նորա, շտապաւ 'ի վերայ նահատակացն անկեալ Լիգուրացիք, խառնեցան 'ի մարտ: Անդուստ և Հռոմայեցիք 'ի Թիկունս Լիգուրացւոց՝ դիմեցին 'ի վերուստ մեծաւ բռնութեամբ, որպէս զի և տագնապեցան նոքա յայնժամ Թիկնադարձոյց լինել. և շատք ևս անդ տապաստ անկանէին՝ յափն գետոյն հարեալ այր ընդ ընկեր 'ի մեծի խուժանին և լնոյր գետն յարեան ապաժոյժ և դիականքն անկելոցն: Իսկ որք անցեալն էին ընդ գետն, արտաԹաւինք 'ի Հռոմայեցւոց՝ կէսք դիտապաստք կէսք վանեալք ապաւինեցան մինչև 'ի բանակ անդր իւրեանց և 'ի կառսն: Բայց անդ 'ի դուրս յարձակեալ նոցա կանայք և ընդդէմ դարձեալք 'ի սուր և 'ի տապար, ճիչ բարձեալ կատաղի՝ զպարտազին լի բարկութեամբ, առհասարակ յետս ընԹադարձեալք զփախստեայսն և զհետամուտսն, զկէսս իբրև մատնիչս և զկէսս իբրև Թշնամիս, խառնամուխք 'ի մարտիկան զվահանս կործեալք մերկ ձեռօք զՀռոմայեցւոցն և զսուսերսն յափշտակեալք, դիմագրաւք յամենայն 'ի վէրս և 'ի սատակումն անձանց՝ անպարտելի արուԹեամբ նահատակեցան մինչև ցվախճան: Եւ այսպէս ասպա՝ զմարտն խառնեալ առեն յայնժամ առ գետովն ըստ դիպաց՝ քան 'ի հրամանէ զօրավարին:

Այսպէս Հռովմայեցիք հարուածս ածեալ մեծամեծս 'ի վերայ Ամբրոնացն և ընկըրկեալ՝ զի և գիշերոյն 'ի վերայ հասանէր մթանն, նոքա ոչ երգս յաղթականս 'ի վերայն առին ըստ օրինի կարգին 'ի վերայ մեծի յաղթողութեանն, և ոչ 'ի գինեըմբուս ինչ մտին ընդ վրանս, կամ ուրախացան ինչ յընթրիս հիւրամեծարս. և որ հեշտալին ևս արանց՝ որ գեղեցիկ յաղթողութեամբ մարտ եղեալ կռուեալ իցեն՝ քուն քաղցր չառին նոքա. այլ ողջոյն զգիշերն այնպէս յահ և յերկիւղ և 'ի վարանս կացին: Քանզի և չէր իսկ նոցա բանակ շուրջ պարըսպեալ ոչ 'ի խրամոց և ոչ պատնշաւ. և անդուստ ևս բիւրաւորք բազումք բանակեալ կային 'ի բարբարոսաց անկռուելիք. ընդ որս համախմբումք և փախստէիցն եղեալ յԱմբրոնաց անտի, ողբ իմն զամենայն գիշերն լսելի լինէր խժդժիցն՝ ոչինչ նմանօրինակ 'ի կոծ և յաշխարան մարդկանն, այլ կաղկանձիւն և ոռնիւն և կրճիւն գազանաց՝ մղձկեալ 'ի խէթս սպառնալեաց. և այսպէս յամբառ խուժանէն յայնմանէ խառնաձայնն՝ շուրջ զլերինս հնչեցուցանէր և զխոխոմս գետոյն, և հասեալ ընդ դաշտն առհասարակ լնոյր ահագին գոչմամբ. յորմէ և Հռովմայեցիք պակուցեալք՝ ինքնին և Մարիոս զահի հարկանէր. ակընկալեալ ժամ 'ի ժամէ մենայինն գիշերամարտին՝ լի՛ արհաւրօք և խռովութեամբ: Սակայն ոչ 'ի գիշերին և ոչ դարձեալ յառաւօտն երկրորդի յարձակեցան բարբա-

բռաքն, այլ անդէն զաեղի կռուեալք կազմէին պատրաստէին, և 'ի գունդս գունդս բաշխէին զեզեցիկ կարգաւ։ Եւ քանզի անդանօր 'ի վերայ բարբարոսացն լերինք փապարուտք ամբարձեալ կային և լի խաւարին ափափայիւք 'ի հովանաւոր 'ի Թաւմայրեաց անտի, անդր Մարիոս առեալ արձակեր զԿղաւդիոս Մարկեղլոս երեք հազար հետևակօք, հրաման տուեալ դարանամուտ լինել. և ապա 'ի Թիկանց կուսէն անկանել 'ի վերայ բարբարոսացն 'ի ժամ կռուոյն։

Այպս կանուխ կերակուր և հանգիստ տուեալ զօրականին, 'ի ծագել աւուրն ածեալ զնոսա առաջոյ պատնշին՝ կարգէր ճակատեցուցանէր, և յառաջոյ արձակէր զայրուձին 'ի դաշտին։ Իսկ Տեւտոնք յայն տեսիլ չհանդուրժեալք մնալ Հռոմայեցւոցն իջանելոյ 'ի մարտ 'ի դիւրի, 'ի շտապ տագնապի մոլեգին 'ի զէն 'ի զարդ վառեալք՝ խաղային գնային 'ի վերայ նոցա անկանել 'ի բլուրն։ Յայնժամ Մարիոս ընդ ամենայն կողմն առաքեալ զզօրապետսն, հրաման տայր քաջութեամբ կալ զտեղի առնուլ, և անդուստ ոտընկէց 'ի թշնամիսն լինել 'ի մօտել նոցա. և ապա զվաղակաւորն 'ի գործ առեալ՝ 'ի վայր կոյս բուռն և սաստիկ զյարձակեալսն ընկրկել. քանզի անդանօր զառ 'ի վայրն տանսառ և 'ի ներքոյ կալով թշնամեացն՝ ոչ ինչ ուժեսցեն առ նոցայն հարուածք. և ոչ գալուձեալ ասպարափակ նոցա կուռ ինչ

Ապա տիրացեալ առհասարակ վրանաց նոցա և կառաց և ողջոյն կարասւոյն բարբարոսաց, վճիռ եառուն առ Մարիոսի որչափ ինչ յանկածէ անտի գողունի չէր. Թէպէտ և 'ի չքեղ պարգևաց անտի ոչինչ համարեցան առ տիրասուր գեղեցիկ զօրավարութեան նորա 'ի մեծ տագնապ տարակուսին այնորիկ: Իսկ կէսք այլազգագոյնս ունին զկարծիսն յաղագս պարգևին որ յանկածէն, և համարոյ անկելոցն: Բայց ասեն՝ եթէ Մասսալիացիք 'ի բազմակոյտ ոսկերաց անկելոցն զայգիս իւրեանց ցանգեցին շուրջանակի. և թէ՝ 'ի դիականցն նեխելոց և 'ի տեղոյ անձրևացն ձմերայնոյ անդանօր, յոյժ յուռթացաւ երկիրն և 'ի խոր ևս տարրացաւ նեխին և պարարտոյժն. զի և ապա գարնայնի սքանչելի իմն առատացոյց զպտուղն. և քաջ զբան զԱրքիղոքոսին արդարացոյց, որ ասաց. եթէ "'ի պատճառաւէ աստի յայսմանէ յոյժ պարարտանան անդաստանք": Առ այս և պատմեն՝ եթէ յետ մեծամեծ մարտից պատերազմաց բազում այն է՝ զի իջանեն տեղատարափք անձրևաց. կամ զի 'ի Քաջաց ումեմն այնպէս ողողեալ սրբէ լուանայ զերկիրն 'ի ջուր սուրբ և դիւցատեղաց. կամ զի յարեանց վտակէն և 'ի նեխութենէն գիճին և թանձր 'ի վեր ամբարձեալ շոգի՝ խառցուցանէ զօդս յեղյեղուկ և 'ի բազում ինչ դիւրափոփոխ 'ի գուզնաքեայ պատճառէ:

Իսկ յետ վճարելոյ մարտին, 'ի զինուց

անտի և յաւուրէ բարբարոսացն հատըն-տիր զչէնըճնակըր արտաքսեալ Մարիոս զպեղափայլուն և զանարատան 'ի հանդէս շքեղ յաղթանակին, զայլն ամենայն առեալ կուտէր շեղջ 'ի խարոյկ մեծ՝ զոհ կատարել հոյակապ։ Շուրջ կացեալ զօրուն 'ի զէն 'ի զարդ վառեալ և պսակօք բոլորեալ, և ինքն ըստ օրինի կարգելին զօտեւորեալ և զպատմուճանն արկեալ․ այն ինչ ջահ առեալ և յերկինս 'ի վեր ամբարձեալ երկոքումբք ձեռօքն՝ կամէր մատուցանել 'ի ներքոյ խարուկին, յայնժամ պահու արք աւագք բարեկամք անդուստ մօրակ 'ի կուշտ երիվարին զայլին հասանէին առ նա․ ուստի և առհասարակ 'ի լռութիւն դարձեալք յակճիւս կացին։ Իբրև մօտ եղեն՝ իջեալք յերիվարէն, կալեալք զաջոյն Մարիոսի՝ աւետիս տային նմա զհինգերորդ հիւպատոսութեանն, և նամականի ևս վասն բանին մատուցին նմա։ Անդանօր ցնծութիւն մեծ յաւելեալ 'ի հանդէս յաղթութեանն, առհասարակ զօրականք խնդացեալք ծափս և կայթս հարկանէին 'ի շաչիւն շառաչիւն զինուցն, և զօրապետքն միւսանգամ 'ի բոլորս դափնենեաց առեալ պսակէին զՄարիոս․ և ապա ինքն մատուցեալ կրակ 'ի խարոյկ անդր՝ այնպէս կատարէր զզոհն։

Այլ որ անապակ և սուրբ երբէք չտայ մեզ վայելել 'ի խնդութեան, և զկանանցածնաց զկեանսն խաղ առնէ խառնութեամբ չարեաց և բարեաց, կամ Բախտն զլխովին իցէ կամ թէ 'ի Քաջաց խեթա-

ցելոց ումն, կամ թէ ինքնին հարկաւոր բնութիւն իրացդ, ոչ յետ բազմաց ինչ աւուրց՝ ածեալ բերէր առ Մարիոս համբաւ՝ որչափ ինչ միանգամ դէպք պատահեցան Կատղոսի իշխանակցին. այնպէս միանգամ իբրեւ 'ի պարզի 'ի խաղաղաւէտ անդորրութեան նոր ումն յուզեցաւ ամպրոպ մրրկածին և ահաբեկ Հռովմայ: Քանզի Կատղոս՝ որ ընդդէմ Կիմբրացւոց բանակեալ կայր 'ի պահ զգուշութեան լերանցն Ալպեանց, զի մի թերեւս 'ի կողմանս կողմանս բաշխ տուեալ զօրականին՝ նուազեալ 'ի զօրութենէն գտանիցի, էջ 'ի վայր յԻտալիա և բանակ հարեալ 'ի վայր մի 'ի հանդիպոյ Անտիսոնի գետոյն՝ հուրջանակի ամրացուցանէր պատնէշք արգելուլ զանցսն. և կամուրջ մի ևս կապէր 'ի զօրավիգն յայնկոյս կացելոցն, եթէ երբէք բարբարոսք անցեալք ընդ անձուկ կիրճսն նեղեսցեն անդ զպահանորդսն:

Բայց բարբարոսքն յանչափս գոռոզացեալք և խրոխտք, զի և 'ի ցոյց քաջութեան ոգւոցն՝ քան թէ հարկաւորեալք ինչ, մերկամարմինք կացին ժուժացին 'ի ձիւնաբերսն. և ընթացեալք այնպէս ընդ պաղս սառամանեացն և ընդ ձիւնախաղաղն՝ ելին հասին 'ի կատարս լերանցն. և ապա 'ի բարձանց անտի ընդ երաստանօք զվահանսն տուեալ զպայնչիւ՝ այնպէս սահեալք խաղացին իջին 'ի վայր ընդ զահավէժ ժայռսն և ընդ վիհս անբաւս և սեպացեալս: Իբրեւ բոլորեցան բանակեցան

*մօտ և զինեցին զխօրս գետոյն, ձեռն ար-կեալ 'ի լինուլ զնա, հարեալ կորէին ան-դանօր իբրև հսկայք Տիտանեանք 'ի բլրոց անտառի շուրջանակի, ձգէին վարէին 'ի գետ-անդր առհասարակ տանելս արմատովք խլեալս և ժայռից հատորս և հողաբլուրս, որովք և զհոսանս անձկացուցեալ զգե-տոյն, առեալ արձակէին բանութեամբ ամբարտաւանս անարիս ընդդէմ հաստարա-նաց կամրջին. որ և 'ի թափ վարեալք գե-տոյն ուժգնակի բախմամբ սասէին զկա-մուրջն։ Ցայն տեսիլ ահագին պակուցեալ զօրականքին Հռոմայեցւոց, բազումք այն էին՝ որ 'ի մեծ բանակէն վերջոտեալք տեղի տային։*

*Անդ ապա Կատղոս արդարև զքաջ և զլաւ զօրավարի բերեալ զնմանութիւն. քան զամենեսին շուք՝ զքաղաքացւոցն նախա-պատիւ առնէր. քանզի ոչինչ բաւական 'ի ժամուն հաւանեցուցանել զզօրականն կալ յակաստանի՝ որ և զնային իսկ 'ի բաց 'ի անհնարին արհաւրքն, հրաման տայր առ-նուլ բառնալ զԱրծուին. և ինքն կացեալ 'ի գլուխ շուրոյն՝ խաղայր յառաջոյ նոցա. խնդրէր զանարգանսն զայն անձին ուղղոյն զբաւականանել և ոչ հայրենեացն. զի կար-ծեսցին նոքա ոչ իբրև փախստեայք ոմանք, այլ հետևողնթացք զօրավարին։ Իսկ բարբա-րոսքն 'ի վերայ յարձակեալք ամբոխին՝ որ յայնկոյս Ատիսոնիսին և կալեալ զնա, և հիացեալ զարմացեալք ընդ քաջութիւն ամբրականացն Հռոմայեցւոց՝ որք հզօրք և*

կորովք, որք մարտ մղեալք և 'ի կշիռ զօ-
դիսն եդեալք մեծապէս արութեամբ՝ ար-
ժանի քաջք իւրեանց ցուցան հայրե-
նեացն, արձակէին զնոսա յազատութիւն
փառօք պայմանս կռուեալ և երդումն եր-
դուեալ 'ի Ցուլն պղնձի 3. և ապա այն
Ցուլ յաւարի առեալ յետ մարտին նոցա,
ասեն՝ եթէ ածաւ 'ի տունն Կատողոսի՝ իբրև
անկած հոյակապ նորայն յաղթութեանն։
Յետ այնորիկ յորդեալ ծաւալեալ բար-
բարոսացն ընդ գաւառն Թափուր 'ի պա-
հակաց՝ աւար հարկանէին։

Զայնու ժամանակաւ կոչեցեալ Մա-
րիոս 'ի Հռոմ քաղաք, մինչդեռ առհասա-
րակ ակն ունէին յաղթանակին նորա, և
ինքնին ծերակոյտն մտադիւրագոյն վճիռ
տուեալ էր, հրաժարեցաւ Մարիոս. կամ
զի հաւասարորդ շքոյն խնդրէր առնել զզօ-
րականն որ ը̅ նմա նահատակեցան, կամ զի
խնդրէր 'ի ժամուն աներկեան զժողովուրդն
գործել, թողեալ իբրու յաւանդ 'ի բախտ
քաղաքին զփառս առաջին իւրոց նահա-
տակութեանցն, առ 'ի շքեղ ևս յարդա-
րել 'ի ձեռն հանդերձելոցն։ Ապա խօսս
ժամուն քաջադէպս զրուցեալ, յարեաւ
գնայր առ Կատողոս և քաջալերէր 'ի ներքս
մատուցանէր նմա, և առաքէր կոչէր զզօ-
րականն իւր 'ի Գաղատիոյ. նոքօք հան-
դերձ չու առնէր անցանէր Մարիոս ընդ
Իրիդանոս գետ հանել վանել զբարբա-
րոսն արտաքս քան զԻտալիա։ Այլ նոքա
ձնալ ասէին Տեւտոնեանցն և զարմանալ

եւ ընդ այնչափ յամելն նոցա, և այնպէս դանդաղէին 'ի մարտն. կամ զի անշուշտ անտեղեակք էին հարուածոյն նոցա, կամ զի այնպէս ցոյցս տային ոչ հաւատալ բանին. քանզի և սաստիկ պատուհասէին՝ որք միանգամ համբաւ չար բերէին զնոցանէ։

Ապա տուեալ դեսպանս արձակեցին առ Մարիոս, խնդրէին 'ի նմանէ գետին և քաղաք բաւական վասն անձանց և վասն եղբարց իւրեանց։ Իսկ հարցեալք նոքա 'ի Մարիոսէ, ո՞յք ոմանք իցեն եղբարքն, և պատասխանի տուեալ՝ եթէ Տեւտոնք, առ հասարակ 'ի ծաղր հատանէին. և Մարիոս հեգնեալ ասէր. "Ա՛ղէ դուք վայր մի 'ի բա՛ց թողէք զեղբարսդ զայդ. քանզի ունին իսկ դոքա և կալցեն եւս յաւիտեանս ժամանակաց գետին, զոր առին նոքա 'ի մէնջ"։ Հեգնութեանն 'ի վերայ կացեալ դեսպանացն՝ սկսան թշնամանել զնա, և սպառնացան եւս վաղվաղակի զպատուհասն լուծանել 'ի ձեռն Կիմբրացւոց, ապա և Տեւտոնեանցն 'ի ժամանել նոցա։ Կրկնեաց Մարիոս և ասէ. "Այլ դոքա ժամանեցին արդեօք. իսկ ձեզ լինէին ոչ դոյ մեկնիլ աստի՝ մինչչև գիրկ ընդ խառն եղեալ ձեր ընդ եղբարսդ"։ Զայս ասաց, և հրաման տայր ածել զառաջեաւ զթագաւորսն ըզՏեւտոնեանց շղթայակապս, զոր ձերբակալ իսկ արարեալ էին Սեկուանացիք 'ի վերայ Ալպեանց 'ի փախչել նոցա։

Իսկ Կիմբրացիք զայս բանս լուեալք 'ի դեսպանացն, անդէն փութանակի խա-

զայլն 'ի վերայ Մարիոսի. Նա յանդորրութեան կայր և իւրում բանակին միայն խնամ ածէր: Եւ ասեն՝ եթէ 'ի մարտին յայնմիկ առաջին Մարիոս հնարագիտ եղև 'ի փոփոխութեան աշտէից: Քանզի տիգաբուն փայտին ագուցեալ յերկաթն՝ պնդեալ կայր 'ի սեպս երկուս երկաթի. իսկ Մարիոս յայնժամ թողեալ զմին որպէս և էրն, միւսոյն փոխանակ կարգէր սեպ 'ի դիւրախորտակելի փայտէ. հնարաւոր իմաստութեամբ՝ զի 'ի հարստել աշտէին յասպար թշնամւոյն՝ մի չեշտակի այնպէս կացցէ մնասցէ, այլ փայտեայ խորտակեալ սեպին՝ թեքեսցի յերկաթն կոյս. և նիզակարունն զհետ գայցէ առ 'ի քարշ կառեալ այնպէս 'ի սլաքն թեքեալ:

Արդ յայնժամ Բիոյրիկս արքայ Կիմբրացւոց շուրջ առեալ սակաւս յիւրոց անտի, մօտ գայր յերիվար աշտանակեալ 'ի բանակ անդր թշնամւոյն. ձայն տայր Մարիոսի, որ և տեղի սահմանել 'ի կռիւ մարտի, վճարել սահմանել ընդ նոսա վասն ժառանգութեան գաւառին: Եւ պատասխանի Մարիոս, չէ օրէն Հռոմայեցւոց զթշնամիսն խորհրդակամս առ 'ի մարտ առնուլ. սակայն և այնպէս հաճեսցէ նոսա զԿիմբրացիս: Ապա ժամանակեցին մարտ դնել կռուել յաւուրն երրորդի, և տեղի մարտին՝ ետուն զդաշտն մօտ 'ի Բերկելլաս. վայր դիպան այրուձիոյն Հռոմայեցւոց, և Կիմբրացւոցն դարձեալ՝ ձգել երկայնել անդ զհրոսակ ամբաւ խուժանին:

նաւացեալք . և վառեալք 'ի զարդս վերջս
ամբարձանձից ցցունեց՝ երևէին յաղթք ա-
ռաւել և երկայնադէզք ։ Եւ էին նո-
ցա զրահից պատեանք փայլուն յերկա-
թոյ, և վահանք նոցա շողշողուն սպի-
տակք. տանէին առհասարակ նետս երկ-
թեւեանս. և 'ի խառնել մարտին՝ վաղվաղա-
կաւոր 'ի գործ ածնուլին մեծ և յաղթ ։ Եւ
խաղալին գնայնին յայնժամ ոչ 'ի հանդի-
պոյ ճակատուն Հռոմայեցւոց, այլ յաջ-
կոյս թեւակոխեալ՝ այնպէս տակաւ տակաւ
ածնուլ զնոսա 'ի ներքս իւրեանց փակել
և հետևակազօրուն՝ որ կայր 'ի ձախմէ ։

Քա՛ջ իսկ խելամուտ դաւանեցն զօրա-
պետքն եղեալ Հռոմայեցւոց, այլ ոչինչ
ժամանեալ սանձել զզօրականն, ա՛յն ինչ 'ի
նոցանէն մի ոմն աղաղակ բարձեալ եթէ 'ի
փախուստ թշնամիքն խուճապեն, անդ
միահամուռ թա՛փ տուեալ զհետ պնդեցան
նոցա. բայց անդուստ հետևակազօրք ամ-
բաւ խուժանին բարբարոսաց արձակ արձակ
հորդան տային իբրև ալիք բազմակոհակք
ահագին ծովու ։ Յայնժամ Մարիոս ձեռս
'ի վեր ամբարձեալ յերկինս, ուխտս դնէր
դիցն զհարիւրեզեանն. անդ և Կատուլոս
ուխտ ուխտէր 'ի վեր զձեռսն առեալ
նուիրել տաճար զԲաղդ զաւուրն ։ Եւ ա-
սեն՝ Մարիոսի յայնժամ զոհ զոհեալ և
զախտանդամս պատանդիցն զննեալ, անդէն ա-
ղաղակել բարձր եթէ՝ Իմ է յաղթութիւնն ։

Այլ 'ի խառնել անդ երկոցուն բանա-
կացն, պատմէ ինքնին Սիւղղաս պատահ-

եալ էր մի զհետ ժխնդրութեան գնոյն ընդ-դէմ Մարիոսի։ Քանզի առհաւդին ամբ և մէգ փոշւոյն անդանօր մրրկեալ յուզեալ, պատէր ծածկէր զզօրն. և Մարիոս ինքնին՝ որ յառաջագէմ խաղացեալ իսկ էր ան-հնարին թափով'ի վերայ բարբարոսացն՝ ոչ յաջողեցաւ հասանել ունել զնոսա, այլ անդրադարձոյն ևս յառաջ անցեալ առ երի փաղանգին նոցա, այնպէս հարուստ ժա-մանակ յածէր թափառէր 'ի դաշտին վրի-պեալ 'ի նոցանէ։ Իսկ բարբարոսք ըստ դի-պաց պատահեալք Կատղոսի խառնեցան 'ի մարտ ընդ զօրականին նորա, յորս էր և Սիւղղաս՝ որպէս ասէ իսկ ինքն. և անդ մարտակից հռոմայեցւոցն՝ ասէ՝ գտանէր և տապն և արեգակն շէշտ ճառագայթա-ձակ 'ի դէմս հարեալ Կիմբրացւոց։ Զի Թէպէտ և սառամանեաց համբերատարք քաջք էին խուժադուժքն՝ որպէս պատ-մեցաք՝ իբրու որ բնակասնունդք հովանա-ւոր և ցրտին վայրաց, ոչինչ կարէին հան-դարտել տապոյն. առ հասարակ սաստկա-պէս ընդ քրտան հարեալք՝ նոցա Թանէին ոգիք, այնպէս ապարածածուկ զերեսս գործեալ առ 'ի շողից արևուն. քանզի և էր իսկ մարտն յետ արևադարձին ամարայ-նոյ. որպէս և գլխաւորն տոնեն հռո-մայեցիք յառաջ քան զաւուրս երիս նորոյ ամսոյն՝ զոր արդ Օգոստոսի, և յայնժամ կարդային Սեքստիլեայ ամիս։ Այլ ամբ փոշւոյն 'ի զօրավիգն Կատղոսի զօրականին՝ միդապատ ծածկեալ զամբաւութիւն խու-

ժանին, ոչինչ պտտաբեկ եղեն նոքա. քանզի և ’ի բացուստ ոչինչ զննեալ զբազմութիւնն՝ դիմեալք ’ի կռիւն ընդ ախոյեանսն՝ այնպէս խառնեցան մինչև զարհուրեալք նոցա յահագին տեսութենէն: Իսկ և նոցա մարմինք այնպէս իմն կործանեալ էին և փապարեալք ’ի վտասկս քրտանց, զի և յանհնարին տապոյն՝ թէպէտ և յոյժ յոգնեալք՝ ոչ ոք ’ի Հռոմայեցւոց անտի քրտնահար թօշնէր կամ յոգւոց թափէր. ըստ որում և ասեն՝ գրեալ ինքնին Կատղոսի ’ի գովութիւն առեալ զզօրականն:

Բայց անդանօր բազումք այն էին ’ի բարբարոսացն և ’ի քաջամարտկացն որ տապաստ անկանէին, հարեալ և բաղխեալ այր ընդ ընկեր. քանզի յառաջամարտիկք նոցա աղխաղխեալ էին երկայն փոկովք՝ ածեալք զգօտեաւ, զի մի՛ քակտեալ բաժանեսցի կարգ դասաւորութեան նոցա: Իսկ զփախստեայսն վանեալ Հռոմայեցւոցն մինչև ’ի պատնէշս նոցա, անդանօր տեսիլ տեսանէին ողորմ և յոյժ աշխարելի: Քանզի ’ի վերայ բազմախուռն կառացն կացեալ խումբ կանանցն նոցա համակեալք ’ի թուխս՝ հարեալ սպանանէին զապաւինեալսն անդր. կէսք զայրս, կէսք զեղբարս, և կէսք դարձեալ՝ զհարս. և հեղձամղձուկ ինքեանց իսկ ձեռօք զտղայսն արարեալք՝ ձգէին ընդ անուօքն առաւթուր ոտից գրաստուցն. և ապա անձին ևս առնէին ’ի պահուն:

Եւ պատմեն՝ եթէ մի ոմն ’ի կանանց

անտի կախեալ մնաց զծայրից առեղին՝ հանդերձ երկու որդւովքն արկեալ նոցա խեղդման 'ի կոճս ոտից իւրոց ատտի և անտի. և թէ՝ մարդիկն առ պակասութեան անդ ծառոյն, կէսք յեղջիւրս եզանց, և կէսք 'ի սրունս նոցա խեղդ պարանոցացն ածեալ, և մտրակաւ մոլեգինս ընդոստուցեալք զնոսա, այնպէս 'ի քարշ առաւթուր հարեալք 'ի նոցանէ սատակէին : Այլ թէպէտ և նոքա այնպէս մահ՝ անձանցնիւթեցին, համայն և այնպէս ոգիս աւելի քան զքիւրս մեց կենդանւոյն ձեռնակալ արարին 'ի նոցանէ. և առեն ևս՝ եթէ կրկին նոյնչափ գիտապաստ անկան 'ի նոցանէ : Բայց ըղդրամոց մթերան նոցա յաւարի առին յայնժամ զօրականք Մարիոսի. այլ անկածք պատերազմին և դրօշքն և փողքն՝ պատմեն՝ եթէ ածեալ կուտեցան 'ի բանակն Կատղոսի. որ և տապա հաւատալիք մեծապէս եղեն յաղթութեանն նորա :

Իսկ իբրև վէճ և պայքար յուզեցաւ 'ի զօրականսին (ըստ որում և 'ի դէպ իսկ պատահել), կարգեցան դատաւորք իրաւախոհք կայզին՝ դեսպանք Պարմիացւոց՝ որ անդ գտան. զորս և ածեալ զօրականացն Կատղոսի 'ի մէջ դիականցն՝ ցուցանէին նոցա զխոցեալսն յիւրեանց իսկ աշտէից, յորս և յայտնի իսկ երևէին 'ի նիզակաբունսն տառք դրօշմաւորք անուանն Կատղոսի : Ցայսր ամենայնի վերայ՝ ողջոյն նահատակութիւնն ընծայեցաւ Մարիոսի 'ի պատճառս առաջին յաղթութեանն. և զի

տութենէն որ 'ի մարտս պատերազմաց, գլխովին էր նա անվարժ յատեանս ժողովոց, ուր և զանձին ինչ լուեալ կամ գովեստ կամ պարսաւ, ոչ յայլմէ լինէր։ Եւ պատմեն իսկ զայս, եթէ պարգեւեալ նորա զքաղաքացեաց կարգ՝ հազար մարդկան Կամերինացւոց, որ մեծապէս քաջութեամբ նահատակեցան 'ի մարտին. իսկ զի հակառակ էր գործն սովորութեան օրէնացն, ասէր Մարիոս առ մեղադիրսն՝ եթէ 'ի շառաչիւն զինուցն ինքն ոչինչ լսէ օրինացն, սակայն առաւել զահի հարեալ է 'ի շառաչիւն աղաղակի ժողովոցն։ 'Ի մարտին էր նորա աւագութիւն և զօրութիւն առ 'ի հարկէն. իսկ ապա 'ի քաղաքականին վերայ գտեալ նա 'ի նախաթոռ բարձէն՝ գնայր ապաւինէր 'ի սէր մտերմութեան խուժանին, և առ 'ի լինել մեծ՝ զանց առնէր լինել քաջալաւ։ Որպէս և առ հասարակ աւագորեարն զժկամակս բերէին առ նա. յորս և յաւէտ իմն զանգիտեալ նա 'ի Մետեղղոսէ՝ որում և յոյժ անշնորհակալու գտեալ էր, և գիտէր իսկ քաջ զՄետեղղոս անդստին 'ի բնութենէն և յանկեղծաւոր առաքինութենէն ոխերիմ մարդելուզաց խուժանին, մեքենայէր առն տարագրութիւն 'ի քաղաքէն։ Ոյր աղագաւ և սերտիւ մտերմացեալ ընդ Գղաւկեայ և ընդ Սատուրնինոսի, արք ժըպիրհք և յանդգունք և յանկուցիչք աղքատաց և խազմարարաց խուժանին, զիւր օրէնսն Մարիոս 'ի նոցա ձեռն գրեալ 'ի

ներքս մատուցանէր. և ածեալ ևս զզօրականն՝ խաւնէր և զնոսա յատեանս. և այնպէս ապա զէր կողմն յօրացոյց քան զՄետեղղոսին և կամակախուս լինէր:

Արդ Հռուտիլիոս այր ճշմարտասէր և լաւ, սակայն և մասնաւոր՝ ոսոխ էր Մարիոսի պատմէ, եթէ վերջերորդին եհաս Մարիոս հիւպատոսութեանն՝ բազում արծաթով կաշառեալ զցեղսն. և թէ՝ զնոց արծաթոյ նա եւս և 'ի բաց զՄետեղղոս մերժել, և հիւպատոս ընդ իւր կարգել զՎալերիոս Փլակկոս. այն՝ որ պաշտօնեայ առաւել գտաւ նմա՝ քան իշխանակից: Իսկ անդ 'ի նախնումն ումեք ամենեւին չետուն 'ի ձեռս ժողովրդոց զայնչափ նուագ զհիւպատոսութիւնն, բայց Կոռվինեայ Վալերիոսի. սակայն և նորա ընդ առաջին հիւպատոսութիւնն և ընդ վերջինն՝ ասեն՝ անցանել 'ի վերայ ամաց քառասուն և հնգից. իսկ Մարիոս յետ առաջնոյն անց միահետ և ընդ հինգ ևս այլ՝ վարեալ անդուլ 'ի գեղեցիկ բախտէն:

Բայց 'ի վերջնումն յոյժ ատելի գտաւ Մարիոս՝ կուսակից և գործակից Սատուրնինոսի գոլով 'ի քարուակաս նորա. յորոց և մին սպանութիւնն էր Ոնիոսի՝ զոր ինքնին խողխողեաց Սատուրնինոս, հետամուտ ընդ իւր ունելով զնա 'ի ժողովրդապետութիւնն: Արդ կարգեալ Սատուրնինոս ժողովրդապետ, գրեաց օրէնս վասն բաշխելոյ գետնոց. յաւելեալ 'ի նոյն՝ և երդումն կոչել ծերակուտին հաստատուն

անդրդուելագործ կալ յամենայն սահմանա-
դրութեան ժողովրդեանն վասն բանին այ-
նորիկ ։ Իսկ Մարիոս յատեանն խորհրդոյն
կեղծաւորեալ զգեստ ունել մասին այնմիկ
օրինացն՝ ասէր ոչ հաւանել ընդ երդումն,
և ոչ խոստանայ ումեք զաղձեալ ձեռն տալ
հաւանութեան 'ի բանին յայնմիկ. զի թէ
չար չէին օրէնքն և վնասակար, անարգու-
թիւն է ծերակուտին երդմամբ չափ կա-
պել 'ի նոյն հարկաւորեալ, և ոչ ինքնին
կամակար տալ ընդունել զայն ։ Զայս
բանս ասէր Մարիոս ոչ յանկեղծաւոր
իմիք մտաց, այլ 'ի հարկէ անզերծանելի չա-
ղել զՄետեղղոս ։ Քանզի զատեալն առաքի-
նութիւն վարկուցեալ և ուժգնութիւն,
փոյթ չէր նմա վասն բանին զոր ասաց 'ի
ծերակուտին. և ծանուցեալ չափ զՄե-
տեղղոս այր անդրդուելի, որ ըստ Պինդա-
րեան բանին զխոստ իսկ զճշմարտութիւն՝
Սկիզբն մեծի առաքինութեան. խնդրէր
հնարս 'ի հրաժեշտն նորա յերդմանէն՝
անհնարին թշնամութեամբ ձգել զնա ընդ
խուժանին, որ և եղև իսկ ։

Քանզի յասել անդ Մետեղղոսի՝ եթէ
ինքն երդնու ոչ, արձակեցաւ ատեանն.
իսկ յետ սակաւ աւուրց միւսանգամ խրախ
ըեալ Սատուռնինոս զՍինկղիտոսն՝ ստիպել
յերդումն, անդր չոգաւ և Մարիոս. իբրև
ամենեքեան 'ի լռութիւն դարձան յերեսել
նորա և յակնկալութիւն առ նա կային, ասէր
Մարիոս՝ հրաժեշտ զխոստմն տալ յառա-
ջին բանիցն՝ զոր անզգուշաբար մտածութե.

տաաց, զի և չէ իսկ ինքն այնչափ իմն խրա-տապարանոց՝ 'ի կարևորան յամառել ալըն-դել յոր միանգամ տաաց՝ մինչչև քաջերկ տեղեկացեալ. այլ թէ՝ երդնու ինքն և հնազանդէ օրինացն՝ եթէ արդարև իցեն օրէնք: Եւ յաւել նա զայս խորամանկու-թիւն, քող իմն արկանելով լըբութեանն: Իսկ յայնժամ ժողովուրդք ցնծացեալք ընդ երդումն նորա՝ ծափս հարկանէին նմա. բայց աւագանին 'ի խոր թաղծութեն պաշարեալք՝ խոռէին զլեղլեղուկ միտսն Մարիոսի. և ապա անդ այր այր կարգաւ-տայլին երդումն առ ահի խուժանին՝ մինչև 'ի Մետեղղոս: Այլ նա՝ թէպէտ և բարե-կամք նորա յորդորէին պաղատանաց անկեալ-տալ զերդումն և ապրել յանազորոյն ըս-պառնալեացն Սատուռնինոսի, ոչինչ անկա-թեկաւ 'ի հաստատուն խորհրդոյն. ոչ կռեաց զերդումն. խնդրեաց կրել բերել զամենայն կտտանս, քան ինչ մի գործել 'ի յոռեաց. Եւ արտաքս յառենէն և ա-սէր առ որս զիւրեան կային, եթէ՝ չար գոր-ծել յինչ և իցէ օրինակ՝ միշտ վատթարու-թիւն է. իսկ բարի՝ զերծ 'ի վտանգաց, հասարակ գործ է և ռամկին. այլ բարի առնել՝ թէպէտ և վտանգ առ դուրս կայ-ցէ, գործ է առանձին քաջի առն և ար-դարոյ:

Ապա Սատուռնինոս վճիռ 'ի ներքս բե-րէր՝ տալ հրապարակաց վտարանդութիւն Մետեղղոսի, արգելուլ խափանել նմա զհուր, զջուր, և զյարկ. բայց անդանօր

խառնաղանճ ռամկին պատրաստեալ եւ էր մահ ածել առնն. իսկ արք լուռք և քաջք կարի 'ի խոր խոցեալք և ըղձակաթք 'ի նա, դիմեցին առ նա. նա ոչ հանդարտեալ յիւր պատճառս աղմուկ յուզել 'ի ժողովրդեանն՝ ինքնին մեկնեալ անտի տայր 'ի քաղաքէն, բան մի իմաստասիրեալ յոյժ հանճարեղ: Քանզի ասէր այսպէս. «Կամ իրքդ այդ 'ի լաւագոյնս շրջեսցին և ժողովուրդք սորջասցին, և ես ինքնին դարձայց այսրէն հրաւիրեալ. կամ կացցեն մնացեն նոյնպէս, և լաւ ես իցէ լինել բացական»:

Այլ թէ քանի՞ մարդասիրութեանց և 'ի քանի՞ն շուք ժողովեցաւ Մետեղղոս յիւրում վտարանդութեանն, և զիա՞րդ իմաստասիրութեանց անցոյց նա զաւուրսն 'ի Ռոդոս, ոճով մեք արձանագրեսցուք 'ի վարս նորա Դ.: Իսկ յայնժամ Մարիոս 'ի շնորհս Սատուրնինոսի կեղծաւորեալ լռէր յամենայն եղեռն նորա և 'ի լըբութիւնն. և անքննաբար դժոխըմբերելի կրիցն սատար եղեալ ոչ իմանայր, եթէ կրթեալ իսկ էր Սատուրնինոսի 'ի բռնաւորութիւն անդր 'ի սպառասպուռ սատակումն քաղաքին: Այլ նա աւագանւոյն պատկառ կացեալ՝ միանգամայն և ժողովրդեանն, գործ մի գործեաց կարի անփառունակ և խորամանկեալ: Քանզի եկեալ առ նա զիշերի արք աւագք և հոյակապք դրդել զնա ընդդէմ Սատուրնինոսի, 'ի նմին պահու 'ի տուն իւր ընկալաւ և զՍատուր-

ժանին , ոչինչ պարտաբեկ եղեն նոքա • քանզի և 'ի բացուստ ոչինչ զննեալ զբազմութիւնն՝ դիմեալք 'ի կռիւն ընդ ախոյեանսն՝ այնպէս խառնեցան մինչև զարհուրեալք նոցա յահագին տեսութենէն : Իսկ և նոցա մարմինք այնպէս իմն կորովացեալ էին և փապարեալք 'ի վաստակս քրտանց , զի և յանհնարին տապոյն՝ թէպէտ և յոյժ յոգնեալք՝ ոչ ոք 'ի Հռոմայեցւոց անտի քրտնահար թօշնէր կամ յոգւոց թասէր • ըստ որում և ասեն՝ գրեալ լինքնին Կատուղոսի 'ի գովութիւն առեալ զզօրականն :

Բայց անդանօր բազումք այն էին 'ի բարբարոսացն և 'ի քաջամարտկացն որ տապաստ անկանէին , հարեալ և բաղխեալ այր ընդ ընկեր • քանզի յառաջամարտիկք նոցա աղխաղխեալ էին երկայն փոկովք՝ ածեալք զգօտեաւ , զի մի՛ քակտեալ բաժանեսցի կարգ դասաւորութեան նոցա : Իսկ զփախստեայսն վանեալ Հռոմայեցւոցն մինչև 'ի պատնէշս նոցա , անդանօր տեսիլ տեսանէին ողորմ և յոյժ աշխարելի : Քանզի 'ի վերայ բազմախուռն կառացն կացեալ խումբ կանանւոյն նոցա համակեալք 'ի թուխ՝ հարեալ սպանանէին զապաւինեալսն անդր • կէսք զայրս , կէսք զեղբարս , և կէսք դարձեալ՝ զհարս • և հեղձամղձուկ ինքեանց իսկ ձեռօք զտղայսն արարեալք՝ ձգէին ընդ անուօքն առաւթուրոտից գրաստուցն • և ապա անձին ևս առնէին 'ի պահուն :

Եւ պատմեն՝ եթէ մի ոմն 'ի կանանց

անտի կախեալ մնաց զծայրից աւելին՝ հանդերձ երկու որդւովքն արկեալ նոցա խեղդման 'ի կոճս ոտից իւրոց տատի և անտի. և թէ՝ մարդիկն առ պակասութեան անդ ծառոցն, կէսք յեղջիւրս եզանց, և կէսք 'ի սրունս նոցա խեղդ պարանոցացն ածեալ, և մտրակաւ մղեցին ընդոստուցեալք զնոսա, այնպէս 'ի քարշ առաթուր հարեալք 'ի նոցանէ սատակէին: Այլ թէպէտ և նոքա այնպէս մահ անձանցն իւթեցին, համայն և այնպէս ոգիս աւելի քան զբիւրս վեց կենդանւոյն ձերբակալ արարին 'ի նոցանէ. և ասեն եւ՝ եթէ կրկին նոյնչափ դիտապաստ անկան 'ի նոցանէ: Բայց ըղդրամոլոց մթերան նոցա յաւարի առին յայնժամ զօրականք Մարիոսի. այլ անկածք պատերազմին և դրօշքն և փողքն՝ պատմեն՝ եթէ ածեալ կուտեցան 'ի բանակին Կատղոսի. որ և արդ հաւաստիք մեծապէս եղեն յաղթութեանն նորա:

Իսկ իբրև վէճ և պայքար յուզեցաւ 'ի զօրականսն (ըստ որում և 'ի դէպ իսկ պատահել), կարգեցան դատաւորք իրաւախոհք կացին՝ դեսպանք Պարմիացւոց՝ որ անդ գտան. զորս և ածեալ զօրականացն Կատուղոսի 'ի մէջ դիականցն՝ ցուցանէին նոցա զխոցեալսն յիւրեանց իսկ աշտէից, յորս և յայտնի իսկ երևէին 'ի նիզակաբունսն տառք դրոշմաւորք անուանն Կատղոսի: Ցայսր ամենայնի վերայ՝ ողջոյն նահատակութիւնն ընծայեցաւ Մարիոսի 'ի պատճառս առաջին յաղթութեանն. և զի

և զաւագութիւն հիւպատոսութեան ինքն ունէր։ Եւ մանաւանդ իսկ ժողովուրդք անուն կարգային նմա՝ երրորդ հիմնադիր Հռովմայ, իբրու այն որ ապրեցոյց զնա 'ի վտանգէն՝ ոչինչ նուազ քան զԿեղտացն երբեմն։ Ապա այր այր ուրախացեալք տօնախմբութեամբ առհասարակ 'ի տունս 'ի միասին ընդ որդւոց և ընդ կանանց, զերեկոյրիս ընթրեացն և զնուէր բաժակաց նուիրէին միանգամայն և զիցն և Մարիոսի, և արժանի երկուց ևս յաղթանակաց համարէին զնա։ Բայց նա ոչ յաղթանակեաց միայնակ, այլ 'ի միասին ընդ Կատուղոսի. խնդրեաց պարկեշտանալ 'ի մեծամեծ նահատակութիւնսն. առ այս՝ զի և զանգիտէր 'ի զօրականէն նորա, որ պնդէին թոյլ չտալ յաղթանակելն, եթէ և ինքնին Կատուղոս բաժանորդ ոչ լիցէ։

Արդ էր յայնժամ Մարիոսի 'ի ձեռս հիւպատոսութիւն հինգերորդ. ապա և զվեցերորդին թեկն ածէր նա յոյժ տարփամամբ, որչափ ինչ ոչ ոք հետամուտ երբէք վաճան առաջնոյն. յինքն զխուժանն յանկուցանէր սպասարկութեամբ, ոչ դժպատեհ միայն աւագամեծար բարձին, այլ և ընդդէմ իւրոյ բարոյիցն՝ ցուցեալ զանձն հեշտ և ժողովրդական, որ չէին երբէք այնպիսումն վիճակեալ բնաւոյ բարուցն։ Այլ որպէս ասեն՝ էր նա առ 'ի կրից փառասիրութեան՝ յոյժ փոքրոգի 'ի քաղաքականսն և 'ի շփոթս խուժանին. և յանգդայհուրելի ոգւոյն և յանդորդութեան հաստա-

Ներքս մատուցանէր. և ածեալ եւս զզօրականն՝ խառնէր և զնոսա յատեանս. և այնպէս առաւ զիւր կողմն յօրացոյց քան զՄետեղղոսին և կամագիւտ լինէր:

Եւ Հռուտիլիոս այր ճշմարտասէր և լաւ, սակայն և մասնաւոր՝ ոխերիմ Մարիոսի պատմէ, եթէ վերջերորդին եհաս Մարիոս հիւպատոսութեանն՝ բազում արծաթով կաշառեալ զզեղսն. և թէ գնոց արծաթոյ նա եւս և 'ի բաց զՄետեղղոս մերժել, և հիւպատոս ընդ իւր կարգել զՎալերիոս Փլակկոս. այն՝ որ պաշտօնեայ առաւել զատա նմա՝ քան իշխանակից: Իսկ անդ 'ի նախնումն ումեք ամենեւին չետուն 'ի ձեռս ժողովուրդք զայնչափ նուագ զհիւպատոսութիւնն, բայց Կորվինեայ Վալերիոսի. սակայն և նորա ընդ առաջինն հիւպատոսութիւնն և ընդ վերջինն՝ սաստ անցանել 'ի վերայ ամաց քառասուն և հնգից. իսկ Մարիոս յետ առաջնոյն անց միահետ և ընդ հինգ եւս այլ՝ վարեալ անդուլ 'ի գեղեցիկ բախտէն:

Բայց 'ի վերջնումն յոյժ ատելի զատաւ Մարիոս՝ կուսակից և գործակից Սատուրնինոսի գոլով 'ի քարուսականս նորա. յորոց և մին սպանութիւնն էր Ոնիոսի՝ զոր ենքնին խողխողեաց Սատուրնինոս, հետամուտ ընդ իւր առնելով զնա 'ի ժողովրդապետութիւնն: Ապա կարգեալ Սատուրնինոս ժողովրդապետ, գրեաց օրէնս վասն բաշխի գետնոց. յաւելեալ 'ի նոյն՝ և երդումն կոչել ծերակուտին հաստատուն

տասց, զի և չէ իսկ ինքն այնչափ իմն խըս-տապարանոց՝ 'ի կարևորսն յամառել պըն-դել յոր միանգամ տասց՝ մինչև քաջիկ տեղեկացեալ. այլ թէ՝ երդնու ինքն և հնազանդէ օրինացն՝ եթէ արդարև իցեն օրէնք: Եւ յաւել նա զայս խորագիտու-թիւն, քօղ իմն արկանելով լըռութեանն: Իսկ յայնժամ ժողովուրդք ցնծացեալք ընդ երդումն նորա՝ ծափս հարկանէին նմա. բայց աւագանին 'ի խոր թախծութի պաշարեալք՝ խոռէին զլեղլեղուկ միտսն Մարիոսի. և ապա անդ այր այր կարգա-տային երդումն առ ահի խուժանին՝ մինչև 'ի Մետեղղոս: Այլ նա՝ թէպէտ և բարե-կամք նորա յորդորք պաղատանաց անկեալ տալ զերդումն և ապրել յանագորոյն ըս-պառնալեացն Սատուրնինոսի, ոչինչ անկա-րեկաւ 'ի հաստատուն խորհրդոյն. ոչ կռեաց զերդումնն. խնդրեաց կրել բերել զամենայն կտտանս, քան ինչ մի գործել 'ի յոռեաց. եւ արտաքս յատենէն և ա-սէր առ որս զիւրեան կային, եթէ՝ չար գոր-ծել յինչ և իցէ օրինակ՝ միշտ վատթարու-թիւն է. իսկ բարի՝ զերծ 'ի վտանգաց, հասարակ գործ է և ռամկին. այլ բարի առնել՝ թէպէտ և վտանգ առ գուցս կայ-ցէ, գործ է առանձին քաջի առն և ար-դարոյ:

Ապա Սատուրնինոս վճիռ 'ի ներքս բե-րէր՝ տալ հիւպատոսաց վտարանդութիւն Մետեղղոսի, արգելուլ խափանել նմա զհուր, զջուր, և զյարկ. բայց անդանօր

խառնամաղամբջ ռամկին պատրաստեալ եւ էր մահ ածել առնն. իսկ արք լաւք և քաջք կարի 'ի խոր խոցեալք և ըղձակաթք 'ի նա, դիմեցին առ նա. նա ոչ հանդարտեալ յիւր պատճառս աղմուկ յուզել 'ի ժողովրդեան՝ ինքնին մեկնեալ անտի այլ 'ի քաղաքէն, բան մի իմաստասիրեալ յոյժ հանճարեղ: Քանզի ասէր այսպէս. "Կամ իրքդ այդ 'ի լաւագոյնս շրջեսցին և ժողովուրդք սառչասցին, և ես ինքնին դարձայց այսրէն հրաւիրեալ. կամ կացցեն մնացեն նոյնպէս, և լաւ ես իցէ լինել բացական":

Այլ թէ քանի՞ մարդասիրութեանք և 'ի քանի՞ն շուք ժողովեցաւ Մետեղղոս յիւրում վտարանդութեանն, և զինչ իմաստասիրութեանք անցոյց նա զաւուրսն 'ի Ռոդոս, ոճով մեք արձանագրեսցուք 'ի վարս նորա 4: Իսկ յայնժամ Մարիոս 'ի շնորհս Սատուռնինոսի կեղծաւորեալ լռէր յամենայն եղեռն նորա և 'ի լրբութիւնն. և անքննաբար դժոխըմբերելի կրիցն սատար եղեալ ոչ իմանայր, եթէ կրթեալ իսկ էր Սատուռնինոսի 'ի բռնաւորութիւն անդր 'ի սպառսպուռ սատակումն քաղաքին: Այլ նա աւագանւոյն պատկառ կացեալ՝ միանգամայն և ժողովրդեանն, գործ մի գործեաց կարի անփառունակ և խորամանկեալ: Քանզի եկեալ առ նա գիշերի արք աւագք և հոյակապք դրդել զնա ընդդէմ Սատուռնինոսի, 'ի նմին պահու 'ի տուն իւր առընկալաւ և զՍատուր-

նենոս՝ մուծեալ զնա ընդ այլ դուռն զան-խուլ 'ի նոցանէն ։ Այլա պատճառեալ ա-ռաջի երկոցուն կողմանցն զորովայնալոյծ զկարիս մարմնոյն, անցանէր սենեակ 'ի սե-նեկէ մերթ առ Սատուրնինոս և մերթ առ ատագորեարն, գրգռէր զերկոցուն կողմն ընդդէմ միմեանց ։ Իսկ յետ այնորիկ յու-զեալ ծերակուտին և ասպետացն դաշնա-ւորաց ընդ միմեանս, և բողոք յոյժ կա-լեալ ընդդէմ նորա, ստիպեցաւ և Մա-րիոս խմբել զօրականս 'ի հրապարակի անդ. և վանէր հալածէր զՍատուրնինոս և զար-բանեակս նորա . Նոքա դիմեալ ապաւինե-ցան 'ի Կապիտոլին . և նա անդ զնոսա տանջէր ծարաւով հատեալ զամենայն ջրմուղսն նորա ։ Ապա ոչ ևս հանդուր-ժեալ կոչեցին զՄարիոս և 'ի նա անձնա-տուր լինէին 'ի հաւատ գթածականն ։ Նա զամենայն հնարս հնարեցաւ ապրեցուցա-նել զնոսա՝ այլ 'ի զուր . քանզի անդէն 'ի հրապարակ իջեալք՝ 'ի մահ վարեցան ։

Իսկ յետ այնորիկ դժկամակս բերեալ ընդ նա ազատանւոյն և ռամկին միանգա-մայն, ոչինչ ժամեցաւ նա՝ որպէս կարծէին՝ թեկն առնել զհամարակալութեան բար-ձին . քանզի ընդ այն աւուրս 'ի վերայ կայր ընտրութիւնն . այլ թոյլ ետ ընտրու-թեան խոնարհագունիցն քան զինքն, զան-գիտեալ՝ եթէ մերժեսցի . Թէպէտ և ինքն գեղեցիկ 'ի վերայ առեալ բարուք՝ ոչ կա-մէր լինել համարակալ, զի մի թշնամի ընդ-դէմ կքրեսցի բազմաց ոմանց՝ ճշգրտա-

զայնս քննութեանս 'ի վերայ կացեալ կենաց և վարուց նոցա:

Այսպէս խորհուրդ 'ի ներքս բերեալ 'ի ժողովս՝ դարձուցանել 'ի վտարանդութենէ զՄետեղղոս, անդ Մարիոս բանիւք և օրինակք հզօրագոյնս ընդդէմ դառնայր. այլ ամենայն ջանիցն 'ի դերև ելեալ՝ հուսկ առաջ լռէր: Իսկ երբե մնաագիւրագոյնս և ժողովուրդք հաւանեցան, ոչ հանդարտեալ նա տեսանել զդարձն Մետեղղեայ. ել և նաւեաց 'ի Կապադովկիա կոյս և 'ի Գաղատիա, իբրու 'ի վերին երեւս զոհ կատարել Ոսկեմօր դիցն ըստ ուխտին. այլ 'ի ներքոյ յայլ ինչ պատճառաց ուղևորեցաւ նա զանխուլ 'ի ժողովրդոց: Քանզի նորա բնոյ բարուց ոչինչ 'ի ճահ պատահեալ խաղաղութեան՝ և ոչ կիրթ 'ի քաղաքականան գոլով, իբրու որ 'ի մարտից և 'ի խառնիճաղանջ դաւած լեալ էր. առայս և զմտաւ ածեալ եթէ տակաւ 'ի պարապութեան փառք առաքինութեանն նորա նուաղեսցին, հնարէր խռովս հարկանել նորա. և ակն ունէր՝ զի թէ 'ի թագաւորաց գրգռեսցէ զոք, յաւէտ իմն զՄիհրդատ՝ զհակառակելն թերևս 'ի մարտ, զնա կարգեսցեն 'ի զօրավար ընդդէմ ախոյեանին. որով և նորա սքանչ յաղթանակօք միւսանգամ լցցէ նա զքաղաքն, և զտուն իւր յաւարացն Պոնտոսի և զանձուցն արքունի: Ուստի թէպէտ և շքով ժողովեաց զնա Միհրդատ, նա բնաւ իսկ անձնեայն տեղի չետ նմա. այլ պարզաբար ասէր. "Կամ

զոհս գործեա դու ծով արքայ՝ բարգաւաճ քան զՀռովմայեցիսն լինել. կամ թէ հնազանդեա՛ց դու մինչեւ հրամանին նոցա“ ։ Ցասուշ հարաւ Միհրդատ 'ի լուր բանին. զի թէպէտ և բազում անգամ զՀռովմայեցւոցն լուեալ էր զհամբաւն, այլ յայնժամ առաջին զայս լսէր ազատաբերան բարբառ զնոցա ։

Այլ դարձ 'ի Հռովմ արարեալ Մարիոսի՝ շինեաց իւր ապարանս մերձ հրապարակին. կամ զի ոչ կամէր (որպէս ասէր իսկ ինքն) վաստակաբեկ առնել ըզպաշտպանաւորս իւր և զապաստարկուսն յերկայն պողոտայէ գալ առ նա. կամ զի ակն ունէր զմերձաւորութիւն վայրացն պատճառս ունել բազմամբոխ մարդկանն առ դուռս իւր, զոր չէր իսկ տեսանել. քանզի նուաղեալ էր նա քան զայլսն 'ի գեղեցիկ քաղաքավարութեանն և 'ի քաղաքականին. ուստի և զանց զնովաւ առնէին 'ի ժամանակի խաղաղութեան, իբրու որ անօթ միայն պատերազմական իցէ։ Այլ Մարիոսի ոչ այնչափ ինչ ցաւէր յայլոց անտի նկուն լինել, որչափ 'ի Սիւղղայէ։ Նա մեծապէս վիշտ էր նմա. որ և բարգաւաճ լեալ իսկ էր 'ի խեթէ անտի աւագանւոյն ընդ Մարիոսի, և որում շատ օժանդակեցին աւագութեանն 'ի քաղաքին՝ կագք և գժտութիւնք նորա ընդ նմա ։

Իսկ յետ այնորիկ իբրև Բոկքոս Նումադացի նիզակակից եղեալ Հռովմայեցւոց՝ նուիրեաց 'ի Կապետոլիոն զյաղթանակին

նահատակութիւնն, առ նոքօք տապաւո_ րեաց և զՑուդուրթաս ինքնին՝ իւրու ՚ի ձեռս տալով զնա Սիւղղայի. և էր այս ա_ մենայն տպաւորեալ յարձանս ոսկի. յայն_ ժամ Մարիոս առ արտմտութեան ցաս_ մանն և ՚ի փառասիրութենէն այլ յայլմէ եղեալ՝ իւրու յինքն յափշտակել Սիւղ_ ղայի զմրցանս իւր, զոհ գործէր քանդել տապալել բռնի զձօնսն զայն. անգուստ և Սիւղղաս նախանձ ընդդէմ ձգնէր յառին պահել զայնոսիկ։ Եւ այս հերձուած ամբոխից մեծաց յուզէր անդանօր անշուշտ, թէ ոչ մարտ պատերազմի նիզակակցացն յեզակարծումն զրգռեալ՝ սանձէր զկիրսն։

Քանզի ազգք Իտալիոյ յայնժամ քա_ ջամարտիկ և բազմաժողով միահամուռ դրդեցան ընդդէմ Հռովմայ, և վայրեկ մի ևս վեր ՚ի վայր առնէին զամենայնն. զի և էին իսկ նոքա ժողովուրդք հզօրք ոչ ՚ի զէնս միայն և ՚ի կորովութեան, այլ էին էին նոցա և զօրավարք քաջք և հմուտք՝ ճակատ ընդդէմ Հռոմայեցւոցն յարդա_ րել։ Այս մարտ պատերազմի բազմադիմակ ըստ բազմադէմ արկածիցն՝ որչափ փա_ ռաւոր յարդարեաց զՍիւղղաս, այնչափ իմն և նուաղեալ զՄարիոս. որ վեհերոտ դատաւ և դանդաղ, կամ զի նորա առ ՚ի ծերութենէն շիջեալ էին աշխոյժք, քան_ զի զվաթսնամենիւք և զհնգօք անցեալ իսկ էր. կամ զի որպէս ասէր իսկ ինքն՝ խօթա_ ցեալ ՚ի ջիղսն և անբաւական մարմնով, վասն համբաւոյն միայն յայնժամ զզէն_

որդութիւնն յանձն առեալ էր ։ Համ-այն և այնպէս՝ յաղթական ելանէր նա 'ի մեծի պատերազմին, և ոգիս վեց հազար 'ի թշնամեացն 'ի սուր մաշէր, և երբեք նկուն չգտաւ. այլ ցանգ 'ի պատնէշսն 'ի ներքս զտեղի կալեալ՝ ոչ շարժեցաւ, որչափ ինչ միանգամ այպանականակ զնա արարեալ թշնամեացն ձայն տային նմա ։

Եւ պատմեն՝ եթէ յառել առ նա Պոպ-դիոսի Սիլոնի առն աւագի և զօրաւորի 'ի թշնամիսն. «Եթէ ես դու ինքնին ով Մարիէ զօրավար մեծ, ա՛ղէ դու էջ 'ի կռիւ մարտի»: Եւ պատասխանի Մա-րիոս. «Դո՛ւ թէ ես դու ինքնին զօրավար մեծ, ա՛ղէ դու ստիպեա՛ զիս 'ի կռիւ մար-տի յակամայս իմ» ։ Եւ յայլում պահու, այն ինչ ժամ բարեպատեհ նահատակու-թեան ետուն թշնամիքն, և անդուստ հռո-մայեցիքն ոչինչ ժտեցան 'ի նոսա, և երկո-քին կողմանքն տեղի տուեալ դարձան ընդ-կրուկն, խմբեալ նա յեկեղեցի զզօրա-կանն ասէր. «Տարակուսեալ եմ, զո՞յս՝ անարիս առաւել կոչեցից, զթշնամի՞սն՝ ե-թէ զձեզ ինքեանս ։ Քանզի ոչ նոքա համարձակեցան 'ի թիկունս ձեր, և ոչ դուք ինքնին 'ի ծոծրակ դոցա» ։ Եւ ա-պա հուսկ յետոյ հրաժեշտ առեալ նա 'ի զօրավարութենէն, քանզի և վատեալ յոյժ տեսանէր զանձն ։

Իսկ իբրև իրք Իտալացւոցն տեղի տային, բազումք 'ի քաղաքէն հետամուտք լինէին 'ի զօրավարութիւն ընդդէմ Միհրդատայ՝

'ի ձեռն հաւատարաց խուժանին։ Այլ անդ Սուլպիկիոս ժողովրդապետ այր յանդուգն առաւել, 'ի մէջ անցք վարեալ ըզՄարիոս յանուանակնկալն՝ 'ի զօրավար մարտին հրամանատարական էր զնա երկրն փոխանակ Սիւղղաասոսի։ Յայնժամ երկփեղկեցան ժողովուրդք. մի կողմն ունէր զՄարիոսին և միւսն զՍիւղղայեան. և ամէնին եւս առ Մարիոս յառնել զնա 'ի Ջերմաւորին Բոյլեայ, անդ զպատրաստանս մարմնոյն առնել վասնելոյ՝ որպէս ասէր իւր եւրն՝ առ 'ի ծերութենէն և 'ի հարբառուծելոյն։ Քանզի էր իւր անդանօր Մարիոսի առ Միսենաւ դաստակերտ հոյակապ և զարդարեալ. ուր և կարի զգացեալ կենայր նա զժպտանեհ անձինն, որ յայնչափ մարտանահատակեցաւ, և որում այնչափ զինուորութիւնք յանձն եղեն։ Եւ պատմեն՝ եթէ զայն դաստակերտ զընեաց Կոռնելիա եօթանասուն և հինգ հազար դրամակշռոց. և յետ ոչ բազմաց՝ Լեւկիոս Լեւկուղղոս գնէր զայն հինգ հարիւր հազարաց և երկերիւրոց։ Այնչափ իմն յանկարծակի աճրացաւ շռայլութիւնն, և այնչափ արդոյք գնան զգնացքն փափկութեանն։

Բայց յայնժամ Մարիոս յոյժ պատուասիրեալ՝ իբրու այն իւր պատանի, կրթէր յաշխատութիւն զծերացեալ մարմին և զվատթարեալ անդամսն. զօրհանապազ յառաջեալ իջանէր 'ի բանակ անդր և հրահանգէր ընդ պատանեաց իբրև փոքր և թեթևընթացաց 'ի զինաշարժսն և 'ի ձիա-

վարսն. Թէպէտ և 'ի տիսն յայն չէր նա թեթև և հիւծ, այլ թանձրամարմին և գանդաղ: Ցայտուսիկ պարապեալ նորա, շատից ըներկրանս 'ի ներքս բերէր՝ իջանել կալ 'ի զնէին պատուասիրութեան մրցանացն Մարիոսի. սակայն լաւորերոյն ցանէր սանձակոտոր կիրք փառասիրութեանն. զի յաղքատէն նա՝ ընչաւէտ եղեալ, և 'ի փոքուէն՝ մեծ յոյժ, համ երբէք չցնէր յաջողութեանն. և ոչ շատացեալ երանութեն յանդորրու վայելել յաւաջիկայսն, իբրև չքաւոր յամենայնէն՝ յետ յաղթանակացն և բազմապատիկ շքոյն, այնպէս ծանրացեալ աւուրբք ձգէր անդր մինչև 'ի Կապադովկիա և յՈւքսինեանն Պոնտոս՝ մարտ դնել կռուել ընդ Արքեղայոսի և ընդ Նէոպտողեմեայ նախարարացն Միհրդատայ. իսկ և բարոյսն՝ զոր 'ի չքմեղս անձինն կարկառէր՝ 'ի զուր էր. քանզի առէր անձամբ զորդեակն իւր մարզել 'ի զինուորականին ընդ իւրով ձեռամբ:

Եւ ապա յիրաց աստի յայնժամ շըունչն աղագին հարկանէր 'ի քաղաքին, այն՝ որ 'ի վաղնջուց իսկ խօթ էր և 'ի ներքոյ խաղաղաւոր եռացեալ շարաւոյ տագնապէր զնա. քանզի գործի մահահոտ քաղաքին առնոյր Մարիոս զժպիրհ յանդգնութիւնն զՍուլպիկեայ, որ նախանձաւոր Սատուռնինոսի յամենայն իսկ իրս՝ խոսէր զնա իբրև անարի յիրս քաղաքին: Այսա իսկն Սուլպիկիոս անդանդաղ շուրջ զիւրև խմբեալ վեցհարիւր յասպետաց իբրև թիկ-

նաւապանհա, և անուն կարդացեալ նոցա՝ Գերմանինկղերոոս, մինչդեռ ժողովեալ կային հիւպատոսք՝ 'ի վերայ անկեալ գինուք, անդ 'ի բուռն բերեալ սպանանէր զորդին միոյ 'ի հիւպատոսացն՝ որ զանհի հարեալ փախչէր 'ի հրապարակէն. իսկ և Սիւղղաս 'ի վանել խուռում 'ի նոցանէ՝ անցեալ առ դրամբքն Մարիոսի ճողոպրեալ անկանէր 'ի ներքս՝ արտաքոյ ակնկալութեանն, և հետամուտքն յառաջ անցեալ գնային. և ասեն՝ եթէ ինքնին 'ի Մարիոսէ ածեալ նա արտաքս՝ ընդ այլ դուռն՝ այնպէս մազապուր գնայր 'ի բանակն։ Բայց ինքն Սիւղղաս յիւր Յիշատակարանսն ոչ ասէ ինքնին ապաստանան առ Մարիոս եղեալ. այլ թէ անդր ածեալ նա 'ի խորհուրդ վասն իրացն՝ զորոց Սուլպիկիոս խնդրէր բռնի վճռել հաստատել նմա՝ շուրջ զնա 'ի սուսերամերկիցն պատեալ և ածեալ առ Մարիոս. և ապա 'ի հրապարակ ելանէր նա, և որպէս խնդրէինն նոքա՝ լուծանէր զշաբաթուն։

Իբրև այս կատարեցաւ, Սուլպիկիոս տիրացեալ ամենայնին՝ ընտրեալ կարգէր զՄարիոս 'ի զօրավար. նա պատրաստեալ յարշաւանսն՝ առաքէր երկուս 'ի հազարապետաց առ Սիւղղաս, տալ նոցա 'ի ձեռս զզօրն։ Այլ Սիւղղաս յանկուցեալ զզօրն երից բիւրուց զայրուձիոյ և ոչինչ պակաս քան զհինգ հազար հետեւակաց, առեալ խաղացուցանէր զնոսա ընդդէմ քաղաքին. և զօրականն 'ի վերայ դիմեալ

հաղարապետացն Մարիոսի՝ անդէն դէշ արկանէլին զնոսա. անդուստ և Մարիոս 'ի Հռոմ շատ զօրք 'ի բարեկամացն Սիւղղայի 'ի մահ վարէր. և տայր քարոզ կարդալ զազատութեան ծառայիցն՝ որ խմբեսցին ընդ նմա. այլ ասեն՝ երից միայն 'ի նոցանէ խմբել ընդ նմա: Ապա վայր մի զդէմ կալեալ և անդէն անդի տուեալ Սիւղղայի, որ հասեալ մտանէր 'ի քաղաք անդր, 'ի փախուստ խուճապեցաւ Մարիոս. իսկ որք զնովաւն էին՝ իբրև եւ նա 'ի քաղաքէն, ցանեալք ցրուեցան. իսկ ինքն 'ի գալ գիշերոյն՝ գնացեալ ապաստան լինէր յամարանոց մի իւր 'ի Սողոմինիան. և անտի արձակէր զորդի իւր 'ի կալուածս Մուկիոսի աներոյն իւրոյ ուղէնս բացական 'ի վայրաց անտի՝ ժողովել պատրաստել պաշար: Սակայն Մարիոս իջեալ յայնժամ յՕստիա, և անդ պատրաստեալ նաւ մի 'ի բարեկամէն՝ անուն Նումերիոս, եմուտ 'ի նա ոչ սպասեալ որդւոյն, առեալ ընդ իւր զԳրանիոս զուրջուն՝ անկանէր յուղի:

Իսկ որդին Մարիոսի հասեալ 'ի կալուածսն Մուկիոսի, առեալ կազմէր իրս ինչ բառնալ տանել. իբրև այգ եղև՝ ոչինչ անծանօթ 'ի թշնամեացն եղեալ, յորոց և ոմանք հեծեալք՝ կասկած առեալք յայն կողմն խաղային. անդ այրն վերակացու անդաստանացն տեսեալ 'ի բացուստ դդալուստ նոցա, առեալ զպատանին Մարիոս դաղէր 'ի սայլն բակլայից, և լծեալ զեզինսն՝ այնպէս յառաջ վարէր հանդէպ

տուռնիոյն, անձեալ ընդ այն գաւառն 'ի քաղաքն կոյս : Երթեալ պատասխանին 'ի տուն կնոջն՝ առանոյր անուն զամենայն զայլեւան, և գիշերի իջեալ 'ի ծով և ամբարձեալ 'ի նաւ մի որ գտեալ եղեալ էր 'ի Լիբիա, ան-ցանէր անդր :

Իսկ ծերն Մարիոս յաջողակ հողմով քերեալ առ ափամբն Իտալիոյ, և զանգի-տեալ 'ի Գեմինիոսէ՝ այր առաջ 'ի Տերրա-կինա և ի նա ոխերիմ, աղաչէր նաւա-ստեացն բացագոյնս զնալ 'ի ծայրացն և յա-ջողէր. այլ յայնժամ փոխեալ հողմոյն 'ի մրրիկ մեծ, և ամբարձեալ ամեհի ալեացն, զի և ոչ լաստափայտն յամենայն կողմանց ալէկոծ՝ հանդուրժէր բռնութեանն. առ այս՝ տեսեալ նաւաստեացն և զՄարիոս ինքնին վատթարեալ 'ի կիրս ծովականացն, և արկանէր նա խիխաւրաս բազում 'ի ծփա-նաց անտի ծովուն, ձիգն թափեալ հա-զիւ ուրեմն հասեալ կալան զծովափունսն մօտ 'ի Կիրկէոն : Բայց անդուլ սաստկա-ցեալ մրրկին, և կերակուր ևս պակասեալ նոցա, ելին 'ի ցամաքն և թափառեալ զը-նային զըահեւոք. իբրու որք 'ի տագնապ մեծ պաշարեալք՝ ցանգ խնդրեսցեն խոյս տալ յառաջիկայիցն իբրև 'ի վտանգերուց, և անկնկառուչքէ լինիցին 'ի յոյս աներևու-թիցն : Ոխերիմ նոցա ցամաքն, ոխերիմ և ծովն ինքնին գլխովին, ահագին էր նոցա ընդ առաջել մարդկանն, ահագին ևս էր վրիպելն 'ի նոցանէ՝ զի պակասեալ էին կարեւորք կենացն : Այսպ 'ի կարծեալ

աւուրն հանդիպակէին նոցա անգէտորդք, որոց և ոչ մի ինչ էր տալ կարօտելոյն. բայց ծանուցեալ նոցա զՄարիոս, առէին նմա խուճապել խոյս տալ 'ի վայրացն. իբրև վայրիկ մի յառաջ անդանօր տեսեալ իսկ էր նոցա գունդ սաուար այրուձիոյ՝ դիմեալք 'ի խնդիր նորա ։

Ապա յայն գերբարոօրութլից կներս սաստիկս վարանեալ Մարիոս՝ իբրև առաւել ևս դառնայր տեսանէր զընկերսն սովալլուկ նուաղեալ, խոտորեցաւ յուղւոյն. և անկեալ 'ի մայրի մի խոր և թաւ, անդանօր մեծապէս տառապանօք անցուցանէր զգիշերն ։ Իսկ յաւուրն երկրորդի առ 'ի հարկէն մինչև նուաղեալ խսպառ՝ շրջէր գնայր առ ափամբն. քաջալէր 'ի նեղս մատուցանէր և ընկերացն, աղաչէր մի խսպառ 'ի կորուստ համարել զանձինս, մինչև 'ի դերև ելեալ վերջին ակնկալութեանն, որում դեռ ևս ինքն սպասեալ մնայ 'ի վաղնջուց ինչ գուշակութեանցն ։ Քանզի մինչդեռ տակաւին պատանի կայր ինքն 'ի գեղջն, էր երբեմն զի առեալ ժողովեաց նա 'ի հանդերձ իւր բոյն մի արծուոյ անկեալ 'ի բարձանց՝ յորում կային եօթն ձագք արծուեաց. և զայն ծնողացն տեսեալ և հիացեալ՝ հարցանէին յըղձից վասն բանիցն. նոքա ետուն պատասխանի՝ եթէ զաւակին նոցա հասանէ ականաւոր յոյժ լինել յամենայն մարդիկ, և հաստատութեամբ սահմանեալ է դմա եօթն անգամ ամբառնալ 'ի վեհագոյն բարձ աւագութեան ։

Արդ են՝ որք ճշմարտութեամբ ասեն զայն պատահեալ Մարիոսի. իսկ և կէսք այնոքին՝ 'ի պատահման յայնմիկ և յայլում ևս փախստեանն պատմեալ նորա զայս, և ընկերացն հաւատացեալ՝ արձանագրել իբրև ճշմարիտս. Թէպէտ և ընդ իսկ առանցքին բանք, քանզի և երբեք ձուս չածէ արծուի աւելի քան զերկու. և ասեն ևս ասել Մուսեոսի յասել անդ խուրամ զարծուոյ. եթէ "Երիս ածէ, և զերկուս բանայ, և զմին բուծանէ": Այլ զնոյն և բանն իցէ, սակայն անշուշտ՝ Մարիոսի 'ի փախստեանն և 'ի վերջինսն ասել ասացեալ է, եթէ և եօթներորդին հասանէ նմա վիճակել հիւպատոսութեանն:

Արդ քսան ասպարիսաք 'ի բացեայ գոլով նոցա 'ի Մինտուռնայ քաղաքէ իտալիոյ, անդուստ 'ի հանդիպոյ տեսին զգունդ ստուար այրուձիոյ դիմեալ 'ի նոսա. և 'ի նմին պահու դարձեալ՝ և նաւս երկու բեռնաբարձս, որ քերեալ անցանէին առ ափամբն: Ցայնժամ նոքա արագոտնք յոյժ և տագնապաւ վազս առեալ ընթանային 'ի ծովն կոյս, և ընկեցեալ զինքեանս 'ի ծով 'ի լողալ անկեալ գնային 'ի նաւսն: Գրանիոս հասեալ կալեալ զմի 'ի նաւացն, անցանէր 'ի կղզին 'ի հանդիպոյ՝ որ անուանեալ կոչէր Ենարիա. իսկ Մարիոս ծանրամարմին և դժուարաշարժ յերկուց ոմանց 'ի ծառայիցն տաժանմամբ 'ի վեր 'ի ծովէն առեալ՝ ելանէր 'ի նաւն, մինչդեռ անդ այրուձին ժամանեալ իսկ էր. հրա-

մանն տալին յափանց անտի նաւապետացն ունել զցամաք, կամ թէ զՄարիոս ինքնին ընկենուլ արտաքս, և նաւել 'ի դէմ եցեալ անդին:

Անդանօր Մարիոս արտասուօք յորդորք անկեալ պաղատէր առ. տէրս նաւուն. նոքա թէպէտ և շատապեալք տարակուսէին, և շատ ևս փոփոխեալք 'ի խորհուրդս, 'ի վերջէ ուրեմն պատասխանի ետուն զօրականին՝ ոչ տալ զնա 'ի ձեռս: Իբրև նոքա 'ի տրամութիւն բարկութեան բորբոքեալք մեկնեցան 'ի վայրացն. դարձեալ միւսանգամ զառածեալք նաւապետացն 'ի ցամաք կոյս անդր դարձուցանէին զնաւն, և առ. բերանովք գետոյն Լիրեայ, որ անդանօր ձգեալ տարածի 'ի ճահիճս լայնածաւալս՝ արկեալ խարիսխ, յորդորէին զՄարիոս ելանել արտաքս 'ի նաւէն և առնուլ կերակուր 'ի ծովափունսն՝ կազդուրել զվաստակեալ մարմինն. մինչև 'ի սովորակի ժամուն յարիցեն հողմք՝ 'ի նաւարկել ծովայնոյն, յորժամ և յաղտերաց անտի ողոխք օդոյն շնչեսցեն բաւական ճանապարհին նոցա: Հաւանեաց Մարիոս և անսայր յորդորակին. և նոքին իսկ նաւավարքն հանեալ զնա արտաքս՝ նստուցանէին 'ի ցամաքի 'ի վերայ խոտոյ, և Մարիոսի երբէք 'ի միտսն չանկանէր՝ որ ինչ հանդերձեալն էր. իսկ նոքա փութապէս ամբարձեալք 'ի նաւն և ձգեալ զխարիսխն՝ խաղային 'ի խորս. ոչ ինչ արժան համարեցան տալ զՄարիոս 'ի թշնամիս անդր, և

սայս և կրկուսա, զի փոքրագոյնք այնպէս և յանկանելն մի՛ ինչ մնասեսցեն նմա ։

Իբրև ժամք ոչ բազում 'ի վերայ անցանէին, Թնդիւն և տրոփիւն և աղաղակ լսէր նա 'ի տաղաւարէ անտի. քանզի Գեմինիոս արձակեալ շատ որեար 'ի Տերրակինոյ 'ի խնդիր նորա, յորոց և կէսք յառաջեալք ըստ դիպաց մինչև 'ի վայր անդր, կային և արհաւիրս ծերոյն առկանէին ձայն բարձեալ, եթէ Թշնամի զոք զհռոմայեցւոց առեալ նա Թաքուցեալ իցէ ։ Իբրև զայն լուաւ, զահի հարեալ Մարիոս՝ 'ի վեր 'ի խորխորատէն վաղեալ և մերկացեալ ընկենոյր զինքն 'ի լիճ անդր ապախտան և տղրուա ։

Այլ ծածկեցաւ և ոչինչ 'ի խնդրողացն. անդէն առեալ զնա և այնպէս մերկ տղմաշաղախ հանեալ ձգեցին զնա առաջի և ածեալ 'ի Մինտուռնա՝ ետուն 'ի ձեռս իշխանացն ։ Քանզի և էր իսկ քարոզ տանկներոյն կարդացեալ յամենայն 'ի քաղաքս ընդդէմ Մարիոսի առհասարակ՝ հալածել զնա և սպանանել ում ումեք 'ի ձեռս անկցի նա ։ Սակայն և իշխանացն հաճոյ Թուեցաւ խորհել ինչ վասն բանին. առին ետուն զՄարիոս 'ի դիպահոջ 'ի տուն Փաննիայ ։ Եւ կարծէր իմն՝ կնոջն ոչ ինչ յայնժամ մարդասիրել առ Մարիոս առ խէթ ինչ իւր վաղեմւոյ ընդդէմ նորա ։ Քանզի այս Փաննիա հարսնացեալ Տիննիոսի, և ապա բաժանեալ յառնէն խնդրէր զօժիտն իւր բազմահարուստ. այլ

Տիննիոս ամբաստանեալ զնա եբեր շուն յատենան Մարիոսի՝ որ հիւպատոս կայր զվեցերորդ նուագն, եւ ՚ի քննութեանն նշմարեալ՝ կենաց ցոփ յառաջագոյն վարեալ Փաննիայ, եւ զայն Տիննիոսի գիտելով. չառնի առնել զնա ՚ի կին եւ շատ եւս ժամանակ կեցեալ ընդ նմա, անդանօր Մարիոս զերկոցունն միաբանութեան խոտեալ զերկանն՝ զատասանկնիք ՚ի վերայ ածելը առն դարձուցանել զօժիտն, իսկ կնոջն՝ տուգանել պղնձիս չորս ՚ի պատուհաս վատահամբաւութեանն։

Յայսր անձնայնի վերայ Փաննիա յայնժամ ոչինչ վարեցաւ առ Մարիոս՝ եղև կին Թշնամանեալ. այլ ընդ մարդակոք իրովք տեսեալ զնա, և անյիշաչար եղեալ զանձնայն խնամս կալաւ առ նա ըստ բաւականի ձեռինն, և քաջալերէր ևս մխիթարուցանէր նմա. և Մարիոս մեծապէս գովէր զմարդասիրութիւնն, և ասէր ևս յոյժ քաջալերեալ զանձն ՚ի տեսանել անդ իւրում նշանն բարեգուշակ՝ այսպիսի։ Քանզի ՚ի հասանել իւրում հանդէպ տանն Փաննիայ և ՚ի բանալ դրացն, էշ մի անդուստ ՚ի դուրս վազէր ըմպել ՚ի մօտահօս աղբերէն. և ակնկառոյց ՚ի Մարիոս եղեւ հանդարտ և զուարթագին, այնպէս նախ զկայ առեալ հանդէպ երեսացն, ապա. ձայն յստակ արձակեալ՝ քերեալ առ նովաւ կայթս զարկեաց խայտալով. յորմէ և Մարիոս ՚ի միտս եկեալ ասէր՝ ինքնին Քաջէն փրկութիւն ազդել նմա քան ՚ի ցամաքէ՝

գիւր վաղվաղակի զամենայնն 'ի նաւըզս բե-րեալ առ Մարիոս, և նաւ մի ևս անդանօր տուեալ նմա Պեղէոսի ուրումն, զինքն ա-պա Մարիոս յետ այնորիկ տայր նկարել 'ի պնակի ճշգրիտ տպաւորեալ զայս ամենայն արկած զանձինն. և կախէր զայն 'ի ձօն 'ի մեհենի անդ վայրացն՝ ուստի մեկնեցաւ նա յայնժամ յաջողակ գտեալ զհողմն: Անդուստ ածաւ նա ըստ դիպելցիկ բախ-տին 'ի կղզին Ենարիա, ուր և գտեալ ըզ-Գրանիոս և զայլս 'ի բարեկամացն, նա-ւեաց ընդ նոսա 'ի Լիբիա կոյս. այլ ջուր պա-կասեալ նոցա՝ ստիպեցան ունել զՍիկիլիա առ ափամբքն Երիւկինեայ:

Էր անդ պատահեալ 'ի պահպանութիւն վայրացն այր Հռոմայեցի գանձաւոր, և վայրկեան մի ևս ձերբակալ առնէր նա զՄա-րիոս իջեալ 'ի ծովափն. և սպան ևս նա անդ առ իբրև վեշտասան եղեալս 'ի խնդիր ջրոյ. այլ Մարիոս մազապուր մեկնեալ 'ի վայրացն, և անցեալ զհուն զայն ծովուն և հասեալ 'ի կղզին Մենինգա, անդանօր լուր եառ զի որդի նորա ապրեալ հանդերձ Կե-թեգոսիւ դիմեալ են առ Յամպսաս ար-քայ Նումիդացւոց խնդրել օգնութիւն: Զայն լուեալ Մարիոս և վայր մի ոգի ա-ռեալ, խնդրեաց 'ի կղզւոյ անտի անցանել 'ի Կարքեդոն: Եւ զօրավարէր յայնժամ 'ի Լիբիա Սեքստիլիոս այր Հռոմայեցի, որում ոչ բարի և ոչ չար ինչ գործեալ չէր Մարիոսի. այլ կալեալ միայն առ 'ի նմանէ օգնականութեանն 'ի վերա վաստ-

գլխն։ Այլ անդէն յիջանել նորա ընդ ա-կաւուց 'ի ծովեզրն, ընդ առաջ նորա ե-լեալ 'ի պաշտօնէից անուն ոմն, ասէր այս-պէս. «Չէ՞ քեզ թոյլ 'ի Սեքստիլիոսէ ո՛վ Մարիէ, իջանել 'ի Լիբիա. ապա թէ ոչ՝ 'ի գործ նա զդատակնիքս վարեսցէ ըզ-Սինկղիտոսականն, զանել զքեզ իբրև թշնա-մի Հռովմայեցւոց»։ Լուեալ զայս Մարիոս, հեծեծանօք 'ի ցաւոցն և 'ի սաստիկ թաղ-ծութենէն, այնպէս կարկեալ հարուստ մի անմռունչ կայր՝ ակնդէտ աչաց ահագինս ակնարկեալ 'ի պաշտօնեայ անդր։ Ապա հարցեալ պաշտօնէին՝ զի՞նչ պատասխանի տանել զօրավարին, հազիւ ապա Մարիոս խո՛ր յոգւոց հանեալ, ասէր. «Պատմեսցես դու ուրեմն զնա, եթէ տեսեր զԳայիոս Մարիոս վտարանդի թափառական նըս-տեալ 'ի վերայ աւերակացն Կարքեդոնի»։ Գեղեցիկս յօրինակ 'ի ներքս բերելով նմա բանիւն զարկած զքաղաքին զայնորիկ և զիւրոյ անձինն աղէտս։

Իսկ անդուանօր Յամպսաս արքայ Նումա-դացւոց՝ յայսկոյս յայնկոյս տարաբերեալ 'ի խորհուրդս, թէպէտ և 'ի շուք պատուոյ ունէր զպատանին Մարիոս, այլ 'ի խնդրել նորա երբէք մեկնիլ 'ի նմանէ, ցանգ պատ-ճառեալ արգելոյր զնա. և ապա յայտնի էր տեսանելեացն՝ զի չէր ինչ դե-ղեցիկ այս դեղերանք նորա. բայց ինչ մի յայնժամ 'ի սովորականացն պատահէր պատանւոյն 'ի փրկութիւն անձին նորա։ Քանզի գեղանի գոլով պատանեակն Մարիոս

գեալ զնա, և զզաւազանին և զայլ ևս նշանակս զաւագութեանն յղեալ առ նա, հրաժեշտ տայր Մարիոս 'ի մեծաշուք զարդուցն՝ իբրու դժպատեհ առաջիկայ բաղդին նորա. այլ հանդերձ մի անարգ անպաճոյճ արկեալ զանձամբ, այնպէս երկայնագէս և խռովեցեալ զհերսն ուռելով յորէ անտի փախստեան իւրոյ, յամրաքայլ յուշիկ զոտն յոտանէ փոխէր՝ իբրու այն որ զեօթանասնամեամբքն անցեալ ուրեմն էր. խնդրէր զայնօրինակ 'ի գութ խանդաղատանաց զտեսանելեան շարժել: Բայց հեքութիւն անձինն խառն 'ի տեսակից վայրագութեանն էն, քան 'ի գութ՝ առաջել ևս յարհաւիրս արկանէր. և երկիւղացեալ կերպարան առնն յայնժամ ոչինչ սրտառուչ սոսկալի երևեցուցանէր զդէմին նորա, նա և ևս վայրագացեալ 'ի ձախողակ արկածիցն:

Ապա առեալ ժողովեալ զնա Կիննաս և խօսեցեալ ընդ զօրականսն, պատրաստեցաւ նա վաղվաղակի բան 'ի գործ առնել. և անդէն մեծապէս փոփոխեցին իրք: Քանզի նախ առաջին արգել նա իւրովք նաւուք զանցս պաշարոցն. և աւար հարեալ զվաճառականսն՝ տիրացաւ 'ի վերայ ամբարոցն: Ապա յառաջ վարեալ նաւուք հասանէր ունէր զքաղաքսն ծովամերձս. և նենգաւ կալեալ և զՈստիա՝ յաւարի առնոյր զինչս նորա և մարդիկ բազում 'ի մահ վարէր. և կամուրջ մի ևս կապեալ 'ի վերայ գետոյն, բնաւ իսկ խցեալ կուրա-

ցուցանէր զճանապարհ պաշարողոյ առապարոցն 'ի ծովէն առ Թշնամիս անդր: Այսպէս անտի չու առեալ բանակին խաղայր գնայր ընդդէմ քաղաքին, և հասեալ կալաւ զեռաւն՝ զոր անուանեալ կարդան Եանուկլոս: Այլ անդուստ Հոկտաւիոս այնչափ իմն վնասակար լինէր գտեալ՝ ոչ յանհմտութենէն միայն, 'այլ զի և ցանկ ճշգրտագոյնս կամէր ածել յարդարութեն անդր օրինացն, զանց զխորամանկեօքն և զօգտակարօքն արարեալ, որպէս զի և բազմաց յայնժամ Թախանձ արկեալ յաղատութիւն կարդալ զապաստանորացն խումբ, եւ պատասխանի՝ եղեալ զծառայս չառնել բաժանորդ հայրենի քաղաքին՝ յորմէ 'ի բաց զՄարիոս մերժէ 'ի հասարակութիւն օրինացն:

Իսկ երբև Մետեղղոս որդի Մետեղղեայ որ զօրավար կացեալ էր 'ի Լիբիա և փոխարանորդ լեալ էր 'ի Մարիոսէ, եկն եհաս յայնժամ 'ի Հռոմ քաղաք. և երևէր եւ նա քան զՀոկտաւիոս յաջողեալ 'ի զօրավարութեն, լքեալ զօրականին այնուհետև զՀոկտաւիոս՝ անցանէին առ նա. աղաչէին առնուլ զանձամբ զիշխանութիւն և ապրեցուցանել զքաղաքն. զի և գոյր նոցա՝ քաջասրտես մարտ դնել կռուել և զյաղթութիւն առանել, եթէ զօրավար նոցա 'ի գլուխ կացցէ վարժ և արիական: Իսկ Մետեղղոս ընդվայր զայրացեալ հարկեալ՝ պատուիրէր եւ նոցա դառնալ առ իւրեանց հիւպատոս. այլ նոքա յարուցեալ չոքան և'ի կողմն անցին

թշնամեաց. սոյն և Մետեղղոս յայնժամ ելեալ խոյս տայր 'ի քաղաքէն՝ լսելով որ վճարեալ էր այնուհետև վասն նորա ։ Բայց զՀոկտաւիոս ունէին անդէն 'ի Հռովմ քաղդեայք և գիւթք ոմանք և Սիբիլլեանք՝ որ ածեալ հաւանեցուցանէին զնա յաջողել գործոց նորա ։ Քանզի թէպէտ և էր իսկ Հոկտաւիոս 'ի մէջ ամենայն Հռոմայեցւոց քաջուշիմ խորհրդով և առաքինի յայլն ամենայն, և մեծաշուք եւս զիտէր յարդարել զհիւպատեան զգործն, ոչ ինչ միտ եդեալ մարդելուզացն չողոմութեանց, և միշտ վաղնջուց կարգացն պահառ կայր և հայրենատուր օրինացն՝ խըրու անյեղլի սահմանաց, սակայն և 'ի գործս ժամուն մեծապէս տկարութիւն յանձին բերեալ, շատ եւս ժամանակ ծախէր ընդ շաղաւաշտութիւն ոսկերոյն և ընդ բղձիցն և ընդ գուշակացն, քան ընդ քաղաքագէտ արանցն և ընդ մարտիկ ։

Արդ զայս Հոկտաւիոս՝ մինչև Մարկոսի մտեալ 'ի քաղաքն՝ 'ի վայր 'ի բեմէն քարշեալ ձգեալ անդէն խողխողէին, որք յառաջագոյն անդր առաքեալք էին 'ի Մարկոսէ. և ասեն՝ գտանել գիր մահուն 'ի ծոցին նորա գրապանակ քաղդէացի ։ Եւ այսպէս սոցա նոյն բան՝ երկպառակութե 'ի ներքս բերէր. քանզի գուշակութեանցն պատկառ կալ՝ յերկուց անտի զօրավարացն մեծացն՝ զՄարիոս հաստատեաց, և զՀոկտաւիոս կորոյս ։

Իբրև այս եղև, 'ի խորհուրդ խմբեալ

Սինկղիտոսականն՝ առաքէր դեսպանս առ Կին-
նաս և առ Մարիոս. աղաչէին զալ մտա-
նել նոցա 'ի քաղաքն, և խնայել 'ի քա-
ղաքացիսն: Ցայնժամ Կիննաս 'ի լուր մա-
տուցեալ դեսպանացն՝ բազմեալ էր և հիւ-
պատոս 'ի Թիւրոան աթոռակին, ապա
պատասխանի մեծապէս մարդասիրութբ̃:
Իսկ Մարիոս առ երի աթոռոյն անմռունչ
կայր. սակայն և յանհամբոյր կերպարա-
նէն անժպիտ դիմացն և 'ի խեթ հայե-
ցուածոյն երևէր՝ եթէ իսկ և իսկ յապա-
ժոյժ արեանց շարել շաղախել զքաղաքն:
Այսպէս յարուցեալք դէմ եդեալ գնային
'ի քաղաքն կոյս. Կիննաս մտանէր պարառ-
եալ յիւրոցն Թիկնապահացն. այլ Մա-
րիոս զանգիտեալ կալեալ առ դրունս, վասն
զի առնէր զանձն հեզանելով և ցասմամբ, և
յօրինացն արգելեալ մտանել 'ի հայրե-
նիսն. որպէս եթէ աքսորք ինչ իւր եղեն
նմա 'ի ժամանակին, այսպէս և արժան էր
արգելոք՝ առնէր՝ երկրորդ ձայնով զաւա-
ջինն ընջել որով և տարագրեցաւն. Իբրու
որ ճշգրիտ աւանդապահն գոլով օրինացն՝
այնպէս մնայր 'ի քաղաքն արտաքս: Ոյր ա-
զատագ և զժողովուրդն ատեալ խնդրէր 'ի
հրապարակն անդր. այլ մինչև երից կամ
չորից ցեղիցն զքուէարկութիւն արկեալ, 'ի բաց
դատարրուածոյն մերկացեալ և զերկրա-
նութիւն վտարանդութեանն, խաբեաց յա-
ռաջ՝ շուրջ թիկնապահս առնելով այրուն-
տիր 'ի ծառայից խմբելոց՝ որոց և անուն
կարգայր Բարդեաննս: Անդ նոքա զխաղա-

կաւորն 'ի գործ առեալ, առր 'ի վերայ՝ կոտորէին բազում որեար 'ի ձայն հրամանին Մարիոսի, և բազում դարձեալ յանկնարկի առնէին. մինչև և զԱնքարիոս աւագ 'ի Սինկղիտոսէն և զօրավար՝ ընդ առաջ եկեալ Մարիոսի, զի ոչ կարդաց զնա, խողխողէին առ ոտս նորա. և այսպէս այս անբարբառ լռութիւն նորա և ոչ տալ ողջոյն՝ որոց մատչէինն, էր նոցա նշան 'ի մահ վարելոյ անդէն 'ի փողոցին. որպէս զի և բարեկամքն ինքեանն գլխովին յայնժամ 'ի մեծ արհաւիրս մատչէին համբուրել ողջունել զնա ։

Եւ այսպէս յամբառ կոտորածէն յագեցաւ Կիննաս, այլ ոչ և Մարիոս. նա օրքան զօր ծարաւէր և ևս աննուէր 'ի սրտմտութեան իւրում. 'ի մահ վարէր առհասարակ զորոց և զուղնայքեայ ունէր կասկած ։ Անդանօր ամենայն ճանապարհք և քաղաքք լի էին հետամուտ խնդրակօք փախստեայ մարդկանն և զօրելոցն. և յայն աղէտսն յայս յանդիմանն երևէր՝ եթէ 'ի դէպս ձախողակս հասարակաց չէին հիւրընկալութեանն հաւատք և բարեկամութեանն. իբրև նուազունք յոյժ գտան յայնժամ՝ որ չեղեն մատնօղ ապաւինելոցն իւրեանց ։ Ոյր ազգաւ և սքանչելի յոյժ գտան 'ի ժամուն ծառայք Կոռնուտոսին. որ 'ի տան զիւրեանց տէրն թաքուցեալ՝ խակ արտաքոյ խեղդ 'ի պարանոցի հանեալ 'ի կախաղան զմի ոք յամբաւից անտի խողխողելոցն, և մատանի ոսկի 'ի մատն եդեալ նորա,

ցուցանէին զնա այնպէս Թիկնապահացն Մարիոսի. և առա գեղեցիկ զարդու պաճուճեալ զզինակն՝ երրու սեպհական զօրեանց տեառն՝ այնպէս առեալ Թաղէին զնա. և խնայեաց և ոչ ոք զըանն. և Կոռնուտոս այնպէս 'ի ձեռն ծառայիցն ապրեալ՝ չոգաւ ապա 'ի Գաղղիա։

Անդ և ինքն Մարկոս Անտոնիոս հռետորն բազում դիպեալ բարեկամի, այլ 'ի չար բախտէն ձախողակի մերձակեցաւ ելից։ Քանզի առ որում փախուցեալ կայր, այր գռեհիկ ռամիկ և աղքատ՝ խնդրեաց ընդ բաւականի ձեռինն մեծապէս հիւրընկալութիւն 'ի ներքս բերել ապագամեծար Հռոմայեցւոյն՝ զոր ժողովեաց. առաքէր զմանուկ իւր առ պանդոկապետն որ մերձ կայր, առնուլ գինի։ Իսկ մանուկն առաւել իմն խուզիւ ճաշակս առեալ զգինւոյն զոր ետ պանդոկապետն և խնդրեալ զառաւել անոյշն, հարցանէր այրն՝ հեմ չառնուլ զնորն և զհասարակն (որպէս սովորն էր), և զպատճառն խնդրէ և զծանրագինն։ Մանուկն անկեղծաբար ետ պատասխանի, և անպատրուակ իբրև ծանօթի առն և ընտանւոյ ասէր, խնջոյս առնել տեառն իւրոյ Մարկոսի Անտոնիոսի՝ որ զօղեալ կայ առ նմա։ Իսկ պանդոկապետն այր ամբարիշտ և չար, անդէն 'ի մեկնել մանկանն՝ ձեպով առ Մարիոս ընթացեալ՝ մինչդեռ նա յընթրիս բազմեալ կայր, 'ի ներքս մտեալ ասէր՝ անշուշտ զԱնտոնիոս 'ի ձեռս տալ նմա։ Իբրև ասէն, 'ի լուր բանին՝ ձայնիւ մե-

ծառ. Մարիոսի առ. խնդրեն ծառի զծառի հարկանել, և մարթէր մի ևս յարուցեալ յընթրեացն ինքնին երթալ ուր կայր Անտոնիոս. այլ արգելեալ 'ի բարեկամացն՝ արձակէր զԱննիոս և զօրականս ընդ նմա, պատուէր տուեալ վաղվաղակի բերել առ ինքն զգլուխն Անտոնիոսի:

Հասեալ նոցա 'ի տունն՝ անդ 'ի կողմն գլխանն ոտնակառ էր Աննիոս, և զօրականք 'ի վեր ընդ սանդուղսն ելեալք 'ի սենեակն Անտոնիոսի և տեսեալ զնա՝ այր ընկերի իւրում տայրէր սպանանել զնա, զի և ոք 'ի նոցանէն յանձն չառնոյր զբանն. այնչափ իմն էին նազելաբանութիւնքն և շնորհք Անտոնիոսի՝ իբրև արդարև Յուշկապարիկ. զի և 'ի բանալ բերանոյն և աղերսել զնոսա մի յոգի հարկանել զնա, ժամեցաւ և ոչ ոք ոչ համիլ միայն 'ի նա՝ այլ և ոչ յերես հայել նորա. այլ այնպէս ակնկորեալք առ հասարակ նոքա՝ յարտասուս հասանէին: Իսկ իբրև այնպէս յերկարէին ինքն, ինքնին Աննիոս ելեալ 'ի վեր՝ տեսանէ զԱնտոնիոս յատենաբանել, և զզօրականն անդ կացեալ պակուցեալս և ամօթս 'ի լուր բանիցն. յիշոցս նոցա տուեալ՝ ինքնին յառաջ մատեալ կտրէր 'ի բաց զգլուխն Անտոնիոսի:

Իսկ և Կատղոս Լուտատիոս՝ այն որ ընդ Մարիոսի հիւպատոս կացեալ էր և ընդ նմա 'ի վերայ Կիմբրացւոց յաղթանակեալ էր, իրադդսած եղեալ՝ ելեալ աղաչաւորացն վասն փրկութեան նորա ոչինչ այլ պա-

տառապանօք առնէր Մարիոս, բայց զայն՝ ե-թէ "Մեռանել անշուշտ պարտի", ա-ռեալ փակեաց զինքն 'ի փոքրիկ յարկի, և վառեալ ածուխս շատ՝ անդէն հեղձամղ-ձուկ լինէր։ Իսկ զգլխակոճս զսպանելոցն դնէր արկեալ անկրլուխ 'ի փողոցս քաղա-քին և առաւթոսր կոխեալ, քան 'ի կարեկ-ցութիւն շարժել անցանելեացն՝ առաւել ես լի արհաւրօք էին առհասարակ զզուա-նի հարեալք վասն անձանց իւրեանց։ Իսկ որ մեծապէս 'ի ցասումն վառեաց զժողո-վուրդն, անսպասելիս պատգամոտել Բար-դեանցն այնոցիկ. որ 'ի տունս մտեալք խողխողեալ զտանուտեարս, առաւարեցու-ցանէին զորդիսն և լլկէին զամուսնակնայսն, և լրբենիք և աւերասանք յափշտակէին և յարիւն շաղախէին. մինչև Կիննաս և Սեր-տորիոս միաբանեալք՝ անկեալ 'ի վերայ նոցա 'ի քնանակին զիշերի մինչդեռ 'ի քուն կային, առհասարակ զամենեսեան ընդ-սուր հանէին։

Զայսու ժամանակաւ՝ իբրու որ հողմն փոփոխեալ ահագին մրրկին՝ 'ի կողմանց կողմանց լուրք հասին, զի Սիւղղաս զՄի-հրդատեանն վճարեալ մարտ և 'ի բուռն անդրէն զգաւառսն արկեալ՝ ստուար զօրու դիմեալ գայ 'ի Հռոմ քաղաք։ Ցայսմանէ առայս վայր մի դուլ լինէր անպատում չա-րեացն, ժամ 'ի ժամէ դէտակն կալեալք մարդիկ պատերազմի։ Այլ Մարիոս կար-գեալ հիւպատոս եօթներորդ անգամ, և եկեալ 'ի հրապարակ անդր 'ի կաղանդսն

Յունուարի 'ի սկիզբն տարւոյն, 'ի նմին իսկ աւուր տայր գահավէժ խորտականել զՍեքստոս Լուկիլիոս: Այլ Կիննայայ և Սերտորիոսի և ողջոյն քաղաքին թուեցան այն իրք նշանակ մեծ աղէտիցն՝ որ առ գուրս հասեալ իցեն նոցա:

Բայց Մարիոս վատեալ պարտասեալ յայնժամ յաշխատութեանցն, և իբրու որ յալէտանիջ հոգոցն ողեալալ և նկուն, ո՛չ ևս քաջալերէր յանձն իւր. զմտաւ ածեալ զմարտ պատերազմին որ առաջոյ, և զնորալուր զնոցանեան, և զվերջ վտանգին, զմեծ զարհաւիրսն՝ որոց և ինքնին ճշգրիտ 'ի վերայ կացեալ էր, զդողանս հարեալ երկնչէր: Եւ զայն ևս յուշ ածէր, զի ո՛չ ընդ հոկտաւիոսի 'ի կռիւ մատուցեալ է կամ ընդ Մերուլայայ՝ զօրավարաց խուժանի անկարգ հրոսակին, այլ որ գիտեալ գայ՝ էր ինքնին Սիւղղաս. յորմէ այն ինչ վտարանդի փախեաւ 'ի հայրենեացն, և որ զՄիհրդատն զկնովին յայնժամ վանեալ՝ յԵւքսինեանն Պոնտոս ամփոփեաց: 'Ի խորհուրդս յայս ծփեալ յուզեալ և յե֊շատակ ևս բերեալ զբազմաժամանակեայ աղէտիցն, և զվտարանդութեանն, և զփախըստեանն, և զվտանգացն, յորժամ այսր անդր երերեալ հալածեցաւ ընդ ծով և ընդ ցամաք, 'ի մեծ տագնապ տարակուսի անկանէր այրն. այլ և յարհաւրաց անտի գիշերայնոյն և յանրջական երազոցն խռովականաց թուէր իմն նմա զօրհանապազ ազդել ուրումն, եթէ՝ Քանզի առիւծուն

ն բազմականն եղոյ՝ ահաբեկ էին որք։ Այլ քան զի նա 'ի վեր քան զամենայն երկուցեալ զանզգուշեր 'ի ազնուութենէն, բնաւ իսկ անկեղեցուցեալ յայնժամ 'ի գինեարբուս՝ զժպատեհ խեղոյն հասակին. խնդրէր օրինակ զայն՝ քում անձին մերձենալ և յոգեւանեղ խորհրդոցն զերծանել։

Ապա 'ի վերջէ հասեալ անդր 'ի ծովէ հրեշտակ մի և հանկարծ բերեալ զգանակլին մօտելոյ, անդրէն միաբանգամ զահէ զգողանի հարկանէր Մարիոս. և ապա կէս մի յարհաւրաց հանդերձելոցն, կէս մի խոնջ և նկուն յառաջիկայ աղէտիցն՝ այնչափ իմն վատթարեցաւ, զի և 'ի գուշնակեալ թագրոյ անկանէր նա 'ի խօթութիւն կշտացուցոյն, ըստ որում գրէ ինքնին Պոսիդոնիոս իմաստասէր. այն որ ասէ՝ 'ի տուն Մարիոսի մտեալ խօսել ընդ նմա մինչդեռ նա խօթ անկեալ կայր՝ յաղագս որոց ինքն դեսպանութեամբ եկեալ էր։ Այլ Գայիոս ոմն Պիսոն այր պատմաբան պատմէ մեզ, եթէ Մարիոս ճեմ առեալ յետ ընթրեաց ընդ բարեկամացն՝ զբանիւք անկանէր յաղագս նահատակութեանցն իւրոց և արկածիցն անդուստ 'ի վերուստ առեալ զբանն. և յետ ոճով պատմելոյն զամենայնն գխմակ գխմակ զբարեացն և զչարեացն, յաւելոյր ասել. Չէ առն հանճարեղի՝ բաղդին այլ ևս հաւատալ զանձն։ Ապա համբուրելու գրկեալ զորս ընդ իւրն էին, և ընկողմանեալ 'ի մահճին՝ յետ եօթն աւուրց մեռանէր։

Եւ ասեն՝ եթէ բուռն պատուասիրութիւն նորա նշաւակեալ առաւել 'ի խօթութեանն՝ անկեալ 'ի խելացնորութիւն ահագին. որով և զինքն գլխովին կարծեալ զօրավար 'ի Միհրդատեան մարտին, այնպէս իբրու որ 'ի կռուին ինքնին նահատակեալ՝ որպէս առժամն էր, զազգ ազգ շարժման զմարմնոյն յանձին բերէր, դոչիւն արձակեալ բարձր և տայր աղաղակ բարձեալ զխրախուսն և զանվեհեր յաղթութեանն. այնչափ իմն սաստիկ և բուռն ցանկութիւն նահատակութեանցն այնոցիկ հեղձամղձուկ առնէր զնա, վառեալ 'ի նախանձաւոր ըղձից զօրավարութեանն ։ Ուստի և կեցեալ ամս եօթանասուն, և առաջին 'ի մարդիկ՝ ինքն կացեալ 'ի հիւպատոսութեան բարձին եօթն անգամ, և իւր տուն չինեալ և հարստութիւն ամբաւ կուտեալ՝ բազմաց արքայից բաւական, 'ի վերայ այսր և ողբայր և գանգատէր բախտին, իբրու որ մեռանել այնպէս աղքատ, և մինչև 'ի գլուխ տարեալ զիղձս փափաքանացն ։

Այլազգագոյնս 'ի ներքս եբեր օրինակ Պղատոն 'ի մերձենալ մահուն. շնորհս տունէր իւրումն Քաջին և գեղեցիկ Բախտին. մի՝ զի մարդ ծնաւ. և միւս ևս՝ զի Յոյն ծնաւ և ոչ բարբարոս, և ո՛չ անբան բնութեամբ ծնաւ նա պաձար. առ այսոքիկ՝ զի և ժամանակակից ծնաւ ինքն Սոկրատեայ ։

Եւ Ճշգրտեն ևս՝ եթէ և Անտիպատրոս Տարսոնացի մերձ եղեալ 'ի մահ, յուշ իւր

ածեալ զամենայն բարեբաստութիւնս, ոչ մոռանայր և զյաջողակ զիւր նաւարկութիւն ՚ի տանէ յԱթէնս. իբրու շնորհս մեծ վարկուցեալ զբնաւ իւր յաջողութիւնս զգեղեցիկ բաղդին՝ ցանկ անմոռաց կալեալ ՚ի գանձարանի ուշոյն, քան զոր չէք մարդոյ անդրժելի ևս ամբարանոց ՚ի պահեստ բարեացն՝ յորս վայելեաց. բայց որք անյուշքն էցեն և անհանճարք, այնպիսիք ընդ ժամանակին ՚ի մոռացօնս և զամենայն բարիս իւրեանց դարձուցանեն. ուստի և ոչինչ յուշի կալեալք, իբրև միշտ անբաժք ՚ի բարեաց և լի յուսովք, ակնկառոյցք դառնան ՚ի հանդերձեալն և զառաջիկայէն չէ ինչ նոցա փոյթ. և թէպէտ և առաջինն խափանեսցի ՚ի բախտէն, և վերջինն անդրժելի կայցէ, ՚ի վերայ այսր՝ զառաջիկայ զբախտն նոցա յանձանց ՚ի բաց վարել ընտանորեցան՝ իբրու օտարոտի իմն, և յերազացեալք անրջաբանեն զանյայտից հանդերձելոց. և կարէ յիրաւունս պատահէ դոցա, քանզի զհետ կըրթեալք կուտել յարտաքնոցն բարեաց՝ մինչև բազմոց նոցա և հաստատութիւն գործեալ ՚ի ձեռն իմաստութեան բանից և հրահանգաց, երբէք նոցա զանյագութիւն զոգւոյն լնուլ ոչ ունին։

Արդ մեռաւ Մարիոս յեօթն և տասներորդի աւուր եօթներորդի հիւպատոսութեանն. և անդէն ցնծութիւն մեծ և քաջալերութիւն զգեցաւ Հռոմ, իբրու որ զերծ զինքն կարծեաց յաննուէր բռնա-

ւորութենէն. սակայն յետ աւուրց սակաւուց զբռնաւոր ծերն գործաւ հայեցաւ փոխեալ և երիտասարդացեալ աշխոյժ. այնչափ իմն չարաշուք և անագորոյն էին կիրք որդւոյ նորա պատանւոյն Մարիոսի, որ 'ի մահ վարեաց լաւ և քաջ և ականաւոր մարդիկ: Սա այս՝ արիական ցուցեալ զանձն և դիմագրաւ նահատակ ընդդէմ թշնամեաց, զառաջինն անուն կարդային նմա՝ Որդի Արեսի. այլ ապա վաղվաղակի յարդեանց անտի իւրոց զհակառակն 'ի ներքս բերեալ, անուն կոչեցին նմա՝ Որդի Աստղկան: Ապա 'ի վերջէ պատեալ պաշարեալ սորա 'ի Պրենեստա 'ի Սիւղղայէ, յետ բազում անմխլատառակ հնարից փրկութեան անձինն՝ յառնուլ անդ քաղաքին անձնողորմելի գտեալ, անձին առնէր [5]:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Ըստ որում Կասսիոս Լոնգինոս, և Աւրեղէոս, և Սկաւրոս, և Կեպիոն, և Գնէոս Մանղիոս։

2. Քանզի կարգեցաւ նա Հիւպատոս, մինչդեռ չէր և ոչ երեսնից ամաց. և ըստ օրինացն՝ պարտէր լինել ամաց քառասուն և երկուց։

3. Փափաքելի էր տալ Պլուտարքեայ ծանօթս մեզ յաղագս պղնձի Ցլուն այնորիկ՝ Նուիրական առ բարբարոսն։ Սակայն և ուրեք երբէք չգտանի ինչ պատմութիւն վասն Նորա։

4. Ցանկալի էր ունել 'ի ձեռին և ըզվարսն Մետեղեայ զաւագ առն՝ արձանագրեալ 'ի Ճարտար և 'ի քաջահրահանգ գրչէն Պլուտարքոսի։ Սակայն և այս Վարք մի է 'ի կորուսելոցն Պլուտարքեայ։

5. Մի է 'ի Զուգակշռութեանցն կորուսելոց Պլուտարքեայ՝ և Պիւռոսինն և Գայիոսի Մարիոսի։ Եւ զուգակշռութիւն սոցա գտեալ յայլ Թարգմանութիւնս, է Տափէի մատենագրի Գաղղիացւոյ։

# ՊԼՈՒՏԱՐՔԵԱՑ

## ԶՈՒԳԱԿՇԻՌՔ

## ԼԻՒՍԱՆԴՐԵԱՑ

ԵՒ

## ՍԻՒՂՂԱՅԻ

# ԼԻՒՍԱՆԴՐՈՍ

ԱԿԱՆԹԻԱՑԻՈՑ գանձուն 'ի Դեղ-փիս՝ վերտառութիւն է այսպիսի. Բրա-սիդաս և Ականթիոյք յԱթենացւոց: Վասն որոյ և զոր անդ 'ի ներքս 'ի յարկին տա-գուրան կանգնեալ կայ՝ զքարեղէն ան-դրին, բազումք Բրասիդեայ կարծեն լի-նել. սակայն Լիւսանդրեայ է. քանզի և ճշգրիտ 'ի դէմս բերէ զտիպ նորա զերկայ-նագէս հերացն՝ ըստ վաղնջուց սովորու-թեանն, և զգեղեցիկ նորա զերկայն մօ-րուացն: Քանզի ոչ (որպէս ոմանք ասեն) եթէ յորժամ Արգոսացիք յետ մեծի հա-րուածոյն 'ի սուգ համակեալ՝ գերծին զհերս. իսկ անդուստ ներհակաբար Սպար-տացիք ցնծացեալք 'ի գեղեցիկ նահատա-կութիւնն՝ երկայնեալ ձգեցին գէսս: Եւ ոչ դարձեալ՝ յորժամ Բաքքիադա-ցիք փախուցեալք 'ի Կորնթոսէ 'ի Լակե-

դեմոն, հիքացեալք և անդեղեայք այն-պէս 'ի գերծուլ գլխոց նոցա, պատուա-սիրեցին յայնժամ Լակեդեմոնացիք գի-տաւոր լինել։ Այլ է սա մի 'ի կարգաց անտի Լիւկուրգեայ. զորմէ պատմեն՝ ա-սել, եթէ գեղք քաջավայելուչ ևս յար-դարեն զգեղանիսն, և ահաւորագոյն՝ զան-դեղեայսն։

Եւ պատմեն՝ եթէ Արիստոկղիտոս հայր Լիւսանդրեայ չէր յարքունի տանէ, սա-կայն զարմ ունէր զՀերակղիդեանց։ Եւ սնաւ Լիւսանդրոս յաղքատութեան. և էր նա առաւել քան զամենեսեան աւան-դապահ հայրենատուր կարգաց և քաջ և կորովի. և 'ի վերոյ էր նա ամենայն բերկ-րանաց, բայց յորոց 'ի գեղեցիկ նահատա-կութեանցն իցեն բերկրանք և պատուոյ շուք. քանզի 'ի Սպարտիա չէ ամօթ պա-տանեացն այն բերկրանք։ Քանզի և կամին իսկ նոքա մանկանց իւրեանց անդստին յա-ռաջին տիոցն ունել կիրս զփառաց, զի ցաւեսցի նոցա պարսաւ և անարգանք, և խնդասցեն 'ի գովութիւնս և 'ի վեր վա-զեսցեն քան զանձինս. իսկ որ յայսմանիկ անզգայացեալ է, առ անարգս ունին նո-քա զայնպիսիսն՝ իբրու որ յոյլ իցէ յա-ռաքինութիւն անդր և պղերգ։

Արդ անդուլ այն պատուասիրութիւն Լիւսանդրեայ վեհագոյն այլոց լինել, էր անդստին 'ի Լակոնացի դաստիարակութէ անտի նորա. յորում և ոչ առդատանելի արդեօք իցէ բնոյս բարուց նորա։ Սակայն

Թուի թէ առաւել ինն քան զՍպարտա-
կանսն բոյս բարուց՝ էր նա սպասաւորկու ա-
րանց աւագաց և Նկուն 'ի պերճանալ նո-
ցա՝ 'ի շահ օգտի անձինն. յորում և հաս-
տատեն իսկ ոմանք մասն ոչ դուզնաքեայ՝
ճշգրիտ առաքինութեան զքաղաքականին։
Իսկ Արիստոտէլ՝ ուր զաւագս 'ի մարդկա-
նէ մելամաղձոտս ցուցանէ 'ի բոյս բարուցն,
որպէս զՍոկրատէս և զՊղատոն և զՀերա-
կլէս, պատմէ եթէ և ինքնին Լիւսանդրոս՝
թէպէտ և ոչ անդէն՝ սակայն բարգաւա-
ճեալ 'ի տիսն, անկաւ 'ի մելամաղձս։ Իսկ
որ 'ի վեր քան զամենայն հրաշացոյց զնա,
զի քաջաբար տարեալ աղքատութեանն և
երբէք յոչնչից շպարտեալ և կամ կաշա-
ռեալ՝ հարստութեամբ և հարստասիրու-
թեամբ ելից զհայրենիսն. սակայն և ըստ
հիանալ ընդ ընչեղութիւնն՝ մթերս ամ-
բառ զոսկւոյ և զարծաթոյ կուտեալ 'ի նա
յետ Աստիկեան մարտին, և անձին չպա-
հեալ և ոչ դրամակշիռ մի։ Առ այս՝ և
Դիոնեսիոս բռնաւոր առաքեալ առ դըս-
տերս նորա պատմուճանս սիկիլիացիս մե-
ծագինս, չէառ յանձն. ասէր զանգիտել՝
գուցէ 'ի պատմուճանաց անտի անզե-
ղեայք առաւել երևեսցին դստերքն։ Սա-
կայն և յետ սակաւուց ինքն դեսպան դը-
նացեալ յիւրմէ քաղաքէն առ բռնա-
ւորն, և առաքեալ նորա առ Լիւսանդրոս
պատմուճանս. կրկին՝ ընտրել զհաճոյն և
տանել առ դուստրն, ետ պատասխանի.
Արդեօք լաւ ես ընտրեսցէ դուստրն. և ա-

ուեալ զերկոսին ևս միանգամայն՝ մեկնեցաւ 'ի նմանէ։

Իսկ յայնժամ Պեղոպոննիսեան մարտին յերկարաձգեալ, մինչդեռ կարծէին այնպէս՝ յետ հարուածոյն Աթենացւոց 'ի Սիկիլիա՝ անդէն տարամերժեալ նոցա 'ի ծովէն վայրիկ մի և սպառ նկուն լինել, դարձ յայնժամ Աղկիբիադէս արարեալ յաքսորանացն և 'ի գլուխ կացեալ, յաջողեցաւ և զօրացոյց զԱթենացւոց ծակատ ընդդէմ Լակեդեմոնացւոցն յառաջարել 'ի նաւամարտի։ Զահի հարեալ նոցա և միւսանգամ դրդեալ 'ի կռիւ՝ որում քաջի զօրավարի պէտք էին և սաստիկ ևս հանդերձանաց, առեալ արձակեցին զԼիւսանդրոս 'ի զօրավարութիւն ծովուն։ Հասեալ նորա յԵփեսոս՝ թէպէտ և բարեկամ իւր գտանէր զքաղաքն և կուսակից Լակեդեմոնացւոցն, սակայն և ողորմ պատահեալ վիճակի. և վայրիկ մի ևս 'ի բարբարոսութիւն կրթեալ ըստ պարսիկ բարոյիցն՝ կենցաղակից ընդ ազգին գոլով ընդ այնմիկ. քանզի և շուրջանակի սահմանակից է Լիւդիոյ. և բազում անգամ ևս նաւոց էր Եփեսոս զօրավարաց արքային՝ ժամանակս բազումս դեգերեալ 'ի նմա։

Բայց Լիւսանդրոս բանակ հարեալ անդանօր, ետ հրաման անդր գալ 'ի կողմանց կողմանց վաճառաշահ նաւուց. և նաւակայս ևս հաստատեալ 'ի նմա վասն եռաթիոցն, առնոյր ժողովէր 'ի նաւահանգիստս նորա զվաճառականսն և յորդեաց

եղեց զհրապարակ նորա ձեռնակերտ ճար-տարութեամբք, և զտունկս և զարուեստս ամենայն 'ի շահ օգտից. զի և յայնց ժա-մանակաց հետէ այն քաղաք 'ի ձեռն Լիւ-սանդրեայ հանդերձեցաւ 'ի նոյն մեծու-թիւն հրաշակերտութեան՝ յորում այսօր տեսանեմք զնա ։

Ապա լուր առեալ՝ եթէ Կիւրոս որդի արքային եկեալ է 'ի Սարդիս, չոքաւ առ նա և ամբաստան լինէր զՏիսափեռնեայ. զի հրաման առեալ օգնել Լակեդեմոնացւոց և վանել զԱթենացիսն 'ի ծովէ, յուլա-ցաւ 'ի գործն և դանդաղանօք գնաց ընդ Աղկիբիադեայ. և զեան եւ ած 'ի վերայ նաւահանգիստն՝ պաշար դոյզն պատրաստե-լով նոմա։ Էր իսկ Կիւրոս ինքնին հեշտա-լուր յամբաստանութիւնս Տիսափեռնեայ, զի այր չար էր նա, և դժկամակս բերէր ընդ նմա Կիւրոս։ Արդ 'ի պատճառաց աս-տի և յիւրոց հրապուրիցն յինքն զոգի պա-տանւոյն յանկուցեալ Լիւսանդրոս և 'ի սպասարկու քաղաքավարութենէն, և եւս քաջալերէր զնա 'ի մարտն։ Իսկ 'ի մեկնել 'ի նմանէ, կոչէր զնա Կիւրոս 'ի սեղան իւր, և աղաչէր մի՛ զանց առնել զխրոխս, այլ ազատօրէն խնդրել զոր կամի, և հա-ւատարմացուցանէր առնուլ. Եւ պատաս-խանի Լիւսանդրոս. “Եւ քանզի մտեր-մութիւն զայդ 'ի դէմս բերես ով Կիւրոս, աղաչեմ զի նաւարակիտ մի յաւելցես 'ի ռոճիկ նաւաստեացն. զի կալցեն դոքա նաւարակիտս չորս փոխանակ երից“։ Խըն-

գացեալ Կիւրոս 'ի պատուականութիւն-սան, տայր նմա ընկեր մի Դարեհից. յորոց նա բաշխեալ նաւաստեաց նաւքարակեաց մի աւելի, վայրիկ մի ևս այնուհետև Թափուր կացուցանէր նա զնաւս Թշնամեաց. քանզի բազումք 'ի խուժանէ նաւացն եղեալ գը-նային՝ առ որս աւելի տային զվարձն. և որք անդէն մնային մեծապէս զժգոհեալք և խռովայոյզք՝ զօրհանապազ միշտ 'ի վե-րայ ածէին զօրավարացն: Թէպէտ և այս-պէս ցանկեաց յուսեաց զԹշնամիսն և վնաս հասոյց նոցա, ոչինչ համարձակեցաւ 'ի մէջ գալ առ ահին Աղկիբիադեայ. զի ձեռներէց հզօր էր նա և քաջ, և նաւք բազումք ևս էին նորա. և ցայնվայր յամե-նայն 'ի մարտս անպարտելի եկաց նա 'ի ծովու և 'ի ցամաքի:

Իսկ իբրև Աղկիբիադէս 'ի Սամոսէ ան-ցեալ 'ի Փոկէա և զբանակին հոգ 'ի ձեռս տայր Անտիոքեայ ղեկավարին, սա ուղըն-հար եղեալ Լիւսանդրեայ, և նահատա-կեալ եռաթիւք երկու մինչև 'ի նաւա-հանգիստ անդր Եփեսացւոց, անցանէր լրբութեամբ՝ 'ի քրքիջ և յաղաղակ քե-րեալ առ նաւուքն որ անդ խարսխեալ կային: Սրտմտեալ Լիւսանդրեայ՝ յառաջ վարեալ նախ սակաւս յիւրոց նաւացն ըն-հետ պնդեցաւ նորա. իբրև Անտիոքոս օգ-նութիւն յիւրոցն գոռանէր, խաղացոյց և ինքն այլ ևս նաւս ընդդէմ նորա. և 'ի կռիւ եղեալք՝ յաղթական լինէր Լիւսան-դրոս, և հասեալ կալեալ եռաթիւս հնգե-

Այս աղագաւ և անդստին իսկ դժգոհեալ էին նոքա ընդ գալուստ Կալլիկրատիդեայ փոխանակ Լիւսանդրոսին 'ի զօրավարութիւն ծովուն. և ոչ դարձեալ՝ յորժամ և զփորձ առին զառնն իբրև ըղլաւագունի և զարդարոյ առաւել քան զամենայն մարդ, սիրեցին ինչ նոքա զառաջնորդութիւն նորա զպարզ և զդորեան և զանկեղծ. սակայն և հիացեալ սքանչանային ընդ առաքինութիւն առն, իբրու ընդ գեղ արձանի դրոշմելոյ 'ի տիպ դիւցազին. իսկ ըղձակալք էին մտերմութեան սիրոյն Լիւսանդրեայ առ բարեկամսն, և խնդրէին զշահ օգտին ընդ ձեռամբ նորա. որպէս զի և 'ի մտանել նորա 'ի նաւ՝ ստտաքել սրտառուչ յարտասուս ցնդեցան. բայց և ինքն դուն գործէր ևս քան զևս 'ի բաց 'ի Կալլիկրատիդեայ սարտուցանել զնոսա. առ այս՝ և 'ի դրամոց անտի Կիւրոսին վասն նաւատորմացն՝ անդրէն զմնացորդն դարձուցանէր 'ի Սարդի. և ասէր՝ զի թէ Կալլիկրատիդեայ հաճոյ իցէ՝ անդր առաքեսցէ 'ի խնդրել, և ինքնին հնարեսցի շահել զզօրականսն:

Իսկ յուղի անկանել անդ իւրում մեկայութիւն դնէր առաջի Կալլիկրատիդեայ, բանակ մի աւագիկ 'ի նորա ձեռս աւանդել՝ որ տիրացեալ իսկ է ծովուն: Իսկ Կալլիկրատիդէս ընդ վայր հարեալ զխորոխտապանծ զբանսն, եւ պատասխանի. "Եւ առ ի՞նչ դու ոչ թողեալ զՍամոս 'ի ձախակողմն, և շուրջ նաւեալ 'ի

Միղետոսս, անդանօր յիմ՛ ձեռս աւանդես զեռաւսթիւդ. քանզի չէք մեր արդեօք երկիւղ 'ի թշնամեացն որ անդ 'ի Սամոս՝ 'ի քերել մեր առ նոքօք, եթէ արդարև ծովուն տիրացեալ իցեմք": Առ այս պատասխանի տուեալ Լիւսանդրոս, եթէ զօրավարութիւն նաւացն ոչ ևս է յիւր ձեռս՝ այլ 'ի նորայն, աստ և նաւեաց 'ի Պելոպոննէսոս. և եթող անդ զԿալլիկրատիդէս 'ի մեծ յանձկութիւն և 'ի վարանս. զի և չէր իսկ նորա դրամ բերեալ 'ի տանէ, և ոչ դարձեալ հանդարտէր 'ի քաղաքաց անտի պահանջել դրամս, քանզի վշտահարս և անկածս տեսանէր զնոսա:

Ապա յանհնարս մտեալ՝ երթեալ դեգերէր և նա առ դրունս և թախանձ արկանէր զօրավարաց արքային իբրու զԼիւսանդրոս, սակայն և չէր ինչ նա անդատին 'ի բնութենէն յաջողեալ 'ի նոյն. իբրու որ պարզ մեծակեալ բարոյից և լի՛ ազնուական և առաքամեծար խորհրդովք, և հաստատեալ ևս էր՝ եթէ Հելլենացւոց հարուածք առ 'ի Հելլենացւոց՝ արդեօք վայելուչ ևս իցեն քան զապաստարկու կերպս ողոքանաց 'ի դրունս խժդժիցն. որ թէպէտ և ընչիւք յօրացեալք, չունիին նոքա ինչ մի 'ի բարեաց: Այլ սակայն և նեղեալ 'ի չքաւորութենէն չոգաւ 'ի Լիւդիա. անդէն դէմ եդեալ 'ի տուն Կիւրոսի, ասէր առ դռնապանսն ազդ առնել արքային, զի Կալլիկրատիդէս զօրավար նաւացն Հելլենաց եկեալ է խօսել ընդ նմա: Ըստ պա-

պատասխանի մի ումն 'ի նոցանէ, եթէ "Այլ չէք՝ ով հիւրդ՝ այժմ պատրաստումն կերու-ափ. քանզի 'ի զինուորսու կայ": Իսկ Կալ-լիկրատիդէս պարզ մտօք ասէր այսպէս. "Այլ չէք վատ 'ի բանիդ. կացէք ես առա տդատեալ նմա մինչև արբցէ": 'Ի բանից անտի թուեալ իմն նա այր չինական և անհրահանգ, յոյնչափ զնա քերեցին բար-բարոսքն. և նա անդի տուեալ մեկնեցաւ:

Այսպէս երկրորդ անգամ գնացեալ անդր, և ոչ յայնժամ մուծեալ 'ի ներքս, ցա-սուցեալ դարձաւ յԵփեսոս և նզովս բա-զում արձակէր ընդդէմ աւագնոցն, որք նկունք՝ 'ի նախատինս բարբարոսացն՝ ոտըն-հարս և բարձրայօնս ուսուցին զնոսա ընչա-սիրութեամբն. և երդուեալ կոչէր՝ որոց մերձն կային, զի առաջին 'ի հասանել իւ-րում 'ի Սպարտա՝ զամենայն հնարս հնա-րեսցի հաշտեցուցանել ընդ միմեանս զհել-լենացիս, և ահագինս ընդդէմ բարբարո-սացն յարդարել զնոսա. զի դադարեսցին նոքա խնդրել զօգնութիւն նոցա ընդդէմ իւրեանց իսկ անձանց: Այլ Կալլիկրատի-դէս՝ որ միտս այսպէս յանձին բերէր ար-դարև արժանի Լակեդեմոնիոյ, և որ յար-դարութեան մասին և 'ի մեծանձնութեան և 'ի քաջութեան մրցէր ընդ հոյակապեացն և ընդ առաջացն Հելլենացւոց, յետ սա-կաւուց 'ի պարտութիւն մատնեալ 'ի նա-ւամարտին յԱրգինուսաս, անդ անկանէր մեռեալ:

Իսկ յետ այնորիկ իբրև 'ի վատթարն

նկրտէին երբեք, դեսպանս արձակեալ նիզա-կակիցք 'ի Սպարտիա խնդրէին զօրավար զԼիւսանդրոս, և վկայութիւն դնէին ընդ նորա ձեռնարկն արիագոյնս և մտադիւրա-գոյնս նաւահատակել. զնոյն և Կիւրոս առա-ջեաց և խնդրէր։ Այլ քանզի յօրինացն արգելեալ էր՝ զիշխանութիւն զայն մի տալ երկիցս նմին առն, և կամեցեալ ևս Սպարտացւոցն հաճել զնիզակակիցսն, զա-նուն զօրավարի տային յայնժամ Արակո-սի ումեմն, և արձակեցին ընդ և զԼիւ-սանդրոս 'ի վերին երեսս իբրև փոխանակ զօրավարի, այլ 'ի ներքոյ էր և պատարուն զամենայն իշխանութիւն ետուն նմա։ Որք և գալստեանն 'ի վաղնջուց իսկ անձկա-ցեալ էին բազումք 'ի քաղաքականն որե-րոյն և յառաջագոյն, ակնկալեալ 'ի նորա ձեռն զօրաւոր ևս տապալել զտէրութիւն ռամկին. այլ որոց միանգամ սիրելի էր հրամանատարութիւն առաջնորդաց պարզ և անկեղծաւոր և մեծանձնեայ, նոցուն Լիւսանդրոս առ Կալլիկրատիդեաւ թուէր նենգամիտ այր և խաբուսիկ. որ և շատ ինչ 'ի մարտին մրցանս՝ գունեալ դաւով 'ի գլուխ տանէր, և զիրաւացին՝ 'ի պատճառս օգտին մեծացուցանէր. քանզի 'ի պիտա-նին և եթ ակնկառոյց էր՝ իբրև 'ի գեղե-ցիկն և 'ի լաւն, և հաստատեալ ևս էր՝ ե-թէ ճշմարտութիւնն ըստ բնութեան ոչ ինչ լաւագոյն քան զստութիւնն իցէ. այլ զյարգ զերկաքանչիւրոցն առեալ սահմա-նէր առ 'ի մեծաշահ օգտից նոցա. և որք

միանգամ զդաւադիր մարտն դժպատեհս ատէին զարմին Հերակլեայ, նա ծիծաղեալ ասէր. “Քանզի ուր առիւծենին չհասանէ, անդ պա՛րտ է զաղուեսենին կարել”:

Եւ պատմեն՝ եթէ և 'ի Միղետոս օրինակ զայն վարեցաւ. քանզի իբրև 'ի կարծեացն զառածեալ բարեկամք նորա և հիւրք՝ որոց միանգամ ինքն խոստացեալ իսկ էր զօրավիգն լինել 'ի նուաճութիւն ռամկին և 'ի վանել զթշնամիսն, եկեալ նոքա հաշտեցան ընդ նոսա, նա ինքն 'ի վերին երեսս՝ հաճ և հաւան բանին ցուցանէր զանձն և զօրավիգն հաշտութեանն, այլ 'ի ծածուկ անգոսնէր զնոսա և թշնամանէր և դրդէր ևս յառնել ընդդէմ ռամկին. այլ աստ լուր առեալ ամբոխից շփոթից՝ ինքնին վաղվաղակի մտեալ 'ի քաղաք անդր՝ խիստ և սաստուկ կշտամբէր զնորակրօն նորանէր մարդիկն, և սաստիկ ևս սպառնայր պատուհաս. և զհակառակ կողմն քաջալերէր կալ յանդորրու և մի ինչ զանգիտել 'ի մերձ կալ նորա:

Զայս օրինակ կեղծաւորեալ պատրուակ 'ի վերայ ածէր. քանզի կամէր եթէ կուսակիցք ռամկին և ձոխքն 'ի նոսա մի փախիցեն, այլ 'ի քաղաքին մնացեալք 'ի մահ վարեսցին, որպէս և եղև իսկ. քանզի անդ առհասարակ խողխողեցան՝ որ միանգամ հաւատս ընծայեցին նմա: Առ այս և Անդրոկղիդէս աւանդէ մեզ զբան մի զԼիւսանդրեայ. յորմէ և քաջայայտ իսկ՝ զի հեշտին զերդմանէր նա երդմամբքն. քան-

զի խաբէր (որպէս ասեն) զմանկունս 'ի մէդախաղն խաբել, և յերդմունս՝ զմարդիկ. նմանեաւ 'ի բանին՝ Պողիկրատեայ Սամոսացւոյ, սակայն յոյժ դժպատեհս՝ ինքն զօրավար՝ զնմանութիւն բերէր զբռնաւորին։ Եւ այս՝ և ոչ Լակոնացւոյ առն է գնալ այնպէս ընդ աստուածոցն՝ որպէս ընդ թշնամեացն, նա առաւել ևս թշնամանօք. քանզի մարդ որ միջնորդաւ երդմանն խաբէ և պատրէ, յայտ առնէ եթէ երկնչի ուրեմն 'ի թշնամւոյն, իսկ յաստուծոյ ոչ, այլ և արհամարհէ ևս։

Արդ Կիւրոս առ ինքն զԼիւսանդրոս կոչեաւ 'ի Սարդէ, շատ ինչ տայր նմա և շատ ևս խոստանայր. և երիտասարդական աշխուժիւք մեծարութիւն 'ի ներքս բերէր նմա. և վստահ ևս առնէր՝ 'ի զլանալ նմա հօրն՝ ինքն յիւրմէ տանէն մատուցանել նմա. և ասէր ևս՝ եթէ 'ի նուազել ամենայնին, տալ ձուլել զգլխոյին և զիւր գահն զոսկւոյ և զարծաթոյ՝ յորում բազմեալ իրաւաբանէր։ Իսկ 'ի մեկնել Կիւրոսի գնալ առ հայրն 'ի Մարս, իշխանութիւն տայր Լիւսանդրեայ հանել հարկս 'ի քաղաքաց, և բնաւ իսկ 'ի նա զտէրութիւն իւր ապաստան առնէր. այլա ողջագուրեալ զնա՝ աղաչէր մի 'ի նաւամարտ մտել ընդ Աթենացւոց մինչև 'ի դարձ նորա. և ասէր՝ դարձ առնել անդրէն բազում նաւուք 'ի Փիւնիկոյ և 'ի Կիլիկիոյ, և անկանէր յուղի։

Իսկ Լիւսանդրոս ոչինչ ձեռնհաս 'ի

նաւամարտին զուգաթիւ զաւսմբարտակօքն, պատրաստեալ և ոչ անգործ կամեցեալ նստել այնչափ նաւուքն՝ յառաջ վարեալ ածիրէր 'ի վերայ իմն Կղզեաց. յաւարի առնոյր զԵգինա և զՍաղամինէ. ապա իջեալ յԱտտիկէ և անդ ողջունեալ զԱգիս (քանզի եկն էջ ասա առ նա 'ի Տեկեղեայ յանդիման ցուցանել բանակի զաւրացքին՝ որ անդ մերձ կայր՝ զծովակալանն. իբրու որ 'ի վերայ ծովուն տիրացեալ իցէ առաւել քան ըղխորհուրդ կամացն). ապա խուճապեալ ընդ կղզիս տեղւոյ ասայր յԱսիա յԱթենացւոցն՝ որ հետամտեալ էին նորա. և անդահաղան ամայի զՀելլեսպոնտոս գտեալ. խաղաց դիմեաց 'ի վերայ Լամփսակեցւոց. կռուէր 'ի ծովէն, միանգամայն և տայր Թորակեայ անդուստ վանել հարկանել զպատուարս պարսպացն 'ի ցամաքէն. և բռնութեամբ կալեալ զքաղաքն, տայր զնա յաւար զօրականին։

Իսկ Աթենացւոց նաւատորմիղ հարիւր և ութսուն եռաւթից այն իմն հասեալ յԵղէոյն Քերսոնէսեան, լուր առեալ զառմանն Լամփսակեայ՝ անցեալ վաղվաղակի 'ի Սեստոս և ժողովեալ պաշար, քերեալ առ ափամբ խաղաղին մինչև յԵգոս գետ 'ի հանդիպոյ Թշնամեացն՝ որ դեռևս նաւակայեալ միայն առ Լամփսակաւ։ Եւ անդ բազում էին զօրավարք Աթենացւոց. էր 'ի նոսա և Փիլոկղէս, այն որ երբեմն հաւանեցոյց զժողովուրդն առնել վճիռ կտրել, զաջ բութն զգերուցն պա-

մինչև կարի իմն խրախուսեալ Աթենացւոց՝ արհամարհել զթշնամեօքն, իբրու որք առ ահին այնպէս տեղի տուեալ խուսեն և ամփոփ զմիմեամբք կայցեն ։

Բայց յայնժամ Աղկիբիադէս՝ որ ընդ զօրականօքն իւրում կայր 'ի Քեռռոնեսոն, եկն ձիաւորեալ 'ի բանակ անդր և մեղադիր լինէր զօրավարացն Աթենացւոց, զի չարեաւ նոքա և վտանգաւ այնպէս բանակ հարեալ կան յափունս դժուարամատոյցս և բացօթեայս. և զի՝ և մեծապէս վրիպակ գործեցին նոքա 'ի բացեայ գնալովն 'ի Սեստեայ, ուստի էր լինել նոցա զպէտս իւրեանց. և ասէր ես՝ ձեպով 'ի նաւահանգիստ անդր և 'ի Սեստոս քերել նոցա, և 'ի բացեայ կալ 'ի թշնամեացն՝ որ պատրաստեալ կան անկանել 'ի վերայ նոցա զօրավարեալ 'ի միապետ զօրավարէ, և որ ճշգրտագոյնս դոքա զամենայնն 'ի գլուխ տարցեն անվրէպ 'ի տալ նշանի ։ Սակայն ոչ լուան նոքա բանիցն նորա. և անդ Տիւդևս թշնամանօք ևս առնէր պատասխանի, եթէ արդ այլք ոմանք զօրավարեն բանակին, և ոչ Աղկիբիադէս ։ Ապա խիթացեալ Աղկիբիադէս ընդ մատնութիւն ինչ առ 'ի նոցանէ, մեկնեցաւ 'ի բաց ։

Իսկ յաւուրն հինգերորդի յառաջ խաղացեալ Աթենացւոց և անդրէն վերջանեալք ըստ սովորութեանն, և անփոյթ ք ամենեքին արհամարհեալ զԼակեդեմոնացւովքն, անդ Լիւսանդրոս արձակէր զհետ նոցա զնաւակսն՝ պատուէր տուեալ նա֊

ւապետացն առաջ առաջ դառնալ յետս՝ յլուսեալ զէջս Աթենացւոց 'ի ցամաք անդր, և 'ի հասարակ ուղղոյն ամբառնալ նշան յառաջակողմանէն վահան պղնձի՝ զի յառաջ ինքն զնաւատորմիղն վարեսցէ. եւ զպատուէրն, և ինքն ընթացեալ նաւան յայսկոյս յայնկոյս ձեպէր զզեկավարսն և զնաւապետս իշխանսն, կազմ տանել զամենայնն 'ի գեղեցիկ կարգին, և 'ի տալ նշանին՝ կամակարութեամբ յարձակել ընդդէմ թշնամեացն: Իբրև 'ի նաւակաց անտի ամբարձաւ վահանն, Լիսանդրոս յառաջ նաւէն նշան տուեալ 'ի ձայն փողոյ, յառաջ ամենայն նաւքն խաղային. միանգամայն և անդուստ 'ի ցամաքէն զօրականք յարձակեցան 'ի ծովափն 'ի հըրուանդան անդր: Իսկ անդանօր անջրպետ երկուց ցամաքացն է հնգետասան ասպարիսաց. և անդէն փոյթ ընդ փոյթ 'ի ժիրաժիր քաջութեան թիավարացն հատեալ անցանէին զմիջոցն: Բայց Կոնոն զօրավար Աթենացւոց առաջին յափանց անտի տեսեալ զյարձակումն նաւուց՝ խուճապեցաւ. ձայն բարձեալ աղաղակէր առ իւրսն ամբառնալ յեռաթիւն. և մեծապէս տագնապեալ այլոյն 'ի մօտալուտ չարեացն, ըզկէսս գոչէր կարդայր, և զկէսս ողոքէր, և զկէսս զարձեալ բռնի և սաստիկ ստիպէր ելանել 'ի նաւսն, սակայն և մնավաստակ. քանզի առ հասարակ նոքա այսր անդր ցանեալ ցրուեալք 'ի ցամաքին՝ իբրու որք ակն ինչ չունէին հրոսակին այնմիկ, ափուե֊

ցան զեղեռնել ընդ հրապարակս, և թափառել ընդ գաւառն, և հանգչել 'ի մըրանս, և պատրաստել ճաշս. և ընաւ իսկ յանհմտութենէ անտի զօրավարացն ոչ պատրաստեցան նոքա՝ որ յառաջոյ:

Եւ այնպէս 'ի վերայ անկեալ նոցա Լակեդեմոնացւոցն ձայնիւ մեծաւ և սաստիկ թափով, անդանօր Կոնոնն մազապուր ձողոպրէր հանդերձ ութ նաւուք փախստեայ 'ի Կիպրոս առ Եւագորաս: Իսկ Պեղոպոննեսացիք 'ի վերայ անկեալ այլոց նաւուց, հասեալ կալան զամենայն, և հարեալ զաղխէին՝ յորս միանգամ ամբառնալ ձգնէին Աթենացիք. և դիապատառ առ նաւուքն անկանէին զօրականք՝ որք անզէնք և անկարգ ամբոխիւ դիմեցին յօգնութիւն նոցա. իսկ փախստեայքն ընդ ցամաք տարապաստ անկան 'ի թշնամեացն՝ որ իջին 'ի ծովեզրն: Այսպէս Լիսանդրոս 'ի գերութիւն վարեալ ոգիս երիս հազար հանդերձ զօրավարօքն, կալաւ միանգամայն զամենայն զնաւսն՝ բաց 'ի նաւէն անուն Պարալոս և բաց յորոց փախեան ընդ Կոնոնիւ: Եւ յաւարի զնաւակն հարեալ և զհետ իւր աղխաղխեալ զնաւսն՝ այնպէս դարձ առնէ 'ի Լամփսակոն 'ի ձայն սրնգի և յերգս յաղթական նուագաց. և այնպէս հեշտին 'ի գլուխ տարեալ նահատակութիւն մեծ, և 'ի մի ժամ ժողովեալ զերկայնագոյն ժամանակին և զբազմադիմակ և 'ի վեր քան զմիտս լի՛ արկածիւք յառաջինսն, և ապա յետ բերուց փոփոխո-

թեանց մաքառկացն և մարտիցն և յետ ան-
կանելոյ զօրավարաց բազմաց՝ որչափ ինչ
ոչ անկան յառաջին 'ի մարտսն Ելլադայ,
ապա 'ի գլուխ ելանէր 'ի գեղեցիկ հմտու-
թենէ միոյ առն. որ աղագաւ և կէսք աս-
տուածեան իմն կարծեցին զերացն պատա-
հումն: Ըլին էին և որք ասէին՝ 'ի խաղալ
անդ Լիւսանդրեայ 'ի նաւահանգստէն,
Դիոսկուրեացն յայնժամ փայլատակեալ
երևել խուրեանց աստեղքն աստի և անտի
նաւուն նորա առ ղեկօքն: Եւ կէսք դար-
ձեալ՝ որ ասեն եթէ և վէմն ինքնին վայր
անկեալ յայնժամ՝ նշանակ լեալ իցէ հա-
րուածոյն այնմիկ: Քանզի վայրանկեալ
համեցաւ յայնժամ (որպէս բազմաց կար-
ծիք եղեն) յերկնից անտի վէմ ահագին
'ի յԵգոս գետ. զոր և ցայսօր ցուցանեն
Քեռռոնեսացիք, զոր և պատուեն նոքա:
Բայց պատմեն՝ նախապատուել լինել
Անաքսագորայ, եթէ 'ի մարմնոց անտի
առ կայացելոց յերկինս՝ հատոր մի 'ի վայր
հոսել հանդերձեալ իցէ 'ի ցնցմանէ ի-
մեմնէ կամ 'ի ծփանաց. քանզի և ասէր
իսկ Անաքսագորաս՝ եթէ յաստեղաց անտի
և ոչ մին չէ այժմ 'ի կայանին՝ յորում
յառաջադոյն հաստեցաւ. և թէ՝ հաստե-
ցան նոքա 'ի քարեղէն նիւթոյ և 'ի թանձր.
և զի՝ փայլատակեն նոքա 'ի ցոլացմանէ
անտի և 'ի բեկմանէ եթերին. և զի՝ բռնա-
բար նոքա ձգեալ արգելան անդ 'ի բար-
ձունս յուժգին թափոյ պտուտոյն. ըստ
որում և 'ի սկզբան անդ արգելան նոքա

վայրանկանել, յորժամ նիւթք ցրուեալք և ծանունք զատան 'ի բոլորէն: Այլ հաւանական ես քան զայդ լինել արդեօք կարծել նմանց, եթէ աստեղք պարայածեալք' չեն ինչ հետք և քերածք եթերական հրոյն, որ յօդած այն ինչ վառեալ և չիջանիցի. և ոչ դարձեալ բորբոքումն ինչ օդոյդ' որ առ զեղման նիւթոյդ ցայտեսցէ և ալասցի 'ի վերին գաւառն. այլ են նոքա հաստումն և անկումն երկնաւոր մարմնոյն, որք իբրև 'ի մեղկելոյ ուժոյ պտուտիցն' 'ի ցնցմանէ իմեմնէ 'ի վայր հոսեն ոչ միշտ 'ի շէն երկիր, այլ բազում անգամ արտաքոյ նորա 'ի լայնածաւալ ծովդ. ուստի և անծանօթ մնան մեզ: Բայց Անաքսագորայ վկայէ և Դամակոս, որ յիւրում մատենին յաղագս Բարեպաշտութեան' պատմէ, եթէ մինչև վայրանկեալ վիմին այնորիկ' երևէր յերկինս անդուլ զաւուրս եօթանասուն և հինգ հրեղէն մարմին ահագին' իբրու ամպ բոցաւորեալ ոչ ինչ նստեղակալ, այլ այսր անդր գնայուն յել և էջս իմն ընդհատ բուռն շարժմանց. զի և մնացուն հրատեսակք նիւթոյն որ 'ի ծփանաց անտի և յանկարծ դարձադարձից հերձատէր, 'ի կողմանս կողմանս յածեալք թափառէին փայլատակեալք' իբրև զահամբժեալ աստեղքդ: Իսկ իբրև այն մարմին 'ի վայր հոսէր, և 'ի տեղի առալ երկիւղի սքանչելեացն' յայն վայր դիմեցին զաւառացիքն, ոչ ինչ անդ դտանէին հուր, և ոչ հետս ինչ զմեծի բոցոյն այնո-

ըսկ, այլ տեսին անդամնոր վայրանկեալ վէմ ահագին, սակայն և ոչինչ ամենևին համեմատեալ մեծութեան հրատիպ պա-րունակին:

Այլ անշուշտ Դամակոսին առասանոր բարեմոյն և ներողամիտ ունկնդրաց պէտք իցեն։ Այս եթէ ճշմարիտ իցէ պատմու-թիւնդ, իբրև սուտք ապա նշաւակեսցին նոքա՝ որ հաստատեն եթէ 'ի բարձանց ինչ լերանց կործեալ վէմդ այդ՝ 'ի բռնութենէ հողմոց և մրրկաց նախ 'ի վեր առեալ փո-թորկեալ յօդս, և ապա թողացեալ թա-փոյն՝ վայրանկեալ հոսէր. զի այդպէս՝ ճն և ճն ուրեմն երևեալն յայնժամ զաւուրս բազումս չիցէ հուր ճշմարիտ. և 'ի շիջա-նել և յանհետանալն՝ ոչինչ յուղեալ ի-ցեն օդքդ, և բուռն հողմով և մրրկաւ աստ 'ի խոնարհ ձգեալ զվէմդ։ Սակայն և զննութիւն բանիդ՝ այլում մատենագրու-թեան թողլի է:

Իսկ իբրև դատակնիք մահու երից հա-զարաց գերւոյն Աթենացւոց դայր 'ի ժո-ղովոյն, Լիւսանդրոս կոչեալ զառաջեաւ զՓիլոկղէս զօրավար Աթենացւոց, հարցա-նէր՝ յի՞նչ պատուհաս դատապարտել նմա անձամբ զանձն՝ զի խորհուրդ ետ նա իւ-րոց քաղաքացեացն զնոյն դատակնիք ընդ-դէմ այլոցն Հելլենացւոց. իսկ Փիլոկղէս ոչինչ սրտաբեկ յառաջիկայ կիրսն, ետ պատասխանի. Մի ամբաստան լինել զա-բանիցն՝ որոց չիք դատաւոր 'ի միջի. այլ թէ գոլով նա յաղթական՝ կատարեսցէ զոր

միանգամ կալեալ հանդերձեալ էր՝ 'ի յաղթիլ խորում: Ասաց, և լուացեալ և արկեալ զանձամբ քղամիդ շքեղ, այնպէս գնայր յառաջոյ խորոց Աթենացւոցն 'ի տեղի պատուհասին, որպէս պատմէ Թէոփրաստոս:

Յետ այնորիկ նաւեալ Լիւսանդրոս 'ի քաղաքս, հրաման տայր որոց միանգամ պատահէր յԱթենացւոց անտի, անդր տալ և գնալ յԱթէնս. իբրու ոչ ներել՝ արտաքոյ գտեալ զնոսա: Այսպէս առհասարակ վարէր 'ի քաղաքս անդր. խնդրէր ովալ լուկ տառապանս արտաք արտաք ածել 'ի վերայ քաղաքին. զի մի յամբարուն յուսացեալք՝ հանդարտեսցեն պաշարմանն, և մինչև անձնատուրք լեալ՝ աշխատութիւն հատուսցեն: Այսպէս զռամկապետութիւն 'ի միջոյ բարձեալ և զայլ ևս վարչութիւնս զքաղաքաց, թողոյր յամենայն 'ի քաղաքին քաղաքապետ մի Լակեդեմոնացի և և տասն ևս իշխանս այլընտիր յընկերութեանցն՝ զոր 'ի նոսա հաստատեալ էր. և զայս գործեալ նորա 'ի թշնամեացն քաղաքս և 'ի դաշնաւորացն, տակաւ յառաջ վարէր՝ իբրև տիրանալ ողջոյն Յելլադայ: Քանզի ոչ ըստ կամաց աւագորերոյն և ճոխիցն կարգէր նա զիշխանսն, այլ ըստ կամս նոցուն ընկերութեանցն և հիւրոցն իւրոց, պապաստան 'ի նոսա աւանելով զհօգս իւրացն և իշխանութիւն նոցա տալով բարձից և պատուհասից: Այսպէս և ինքն խառն 'ի սպանութիւնս բազումս և գործակից 'ի վանել

զթշնամիս բարեկամացն, տայր Հելլենացւոց ճաշակս ճաշակել զդժպհի իշխանութեանն Լակեդեմոնացւոց։ Եւ թուի թէ Թէոպոմպոս կատակերգակ անհանճարաբար նմանեցուցանէ զԼակեդեմոնացիս վանատուր կանանցն, որ յետ ճաշակս տալոյ Հելլենացւոց զհամեղաճաշակ ըմպելւոյն զազատութեանն, ապա քացախ մատուցանէին յարբումն։ Քանզի ներհակաբար նոցա անդէն 'ի սկզբանն ետուն ճաշակել զդառնն. զի եւ ոչ զիրսն ապաստան առնէր Լիւսանդրոս յիշխանութիւն ժողովրդոցն, այլ 'ի ձեռս սակաւուց ժպիրհ արանց եւ խռովարարաց տայր զքաղաքսն։ Եւ ոչ շատ ինչ ժամանակ ծախեալ յայսոսիկ, եւ կանուխ տուեալ 'ի Լակեդեմոնիա լուր զչարոյն իւրոյ հանդերձ երկերիւր նաւուք, ապա մօտ յԱտտիկէ գայր միաբանայր ընդ արքայիցն Ագիսայ եւ Պաւսանիայ, իբրու իսկ եւ իսկ հասանել առնել զքաղաքն։

Բայց քաջութեամբ զդէմ կալեալ Աթենացւոցն, անդրէն միւսանգամ անցանէր նաւուքն յԱսիա, եւ տապալէր նոյնպէս առհասարակ յամենայն քաղաքսն զազգ ազգ վարչութեանց քաղաքաց. եւ հաստատէր զտասնպետութիւնն՝ 'ի մահ վարեալ եւ վտարանդի արարեալ զբազումս։ Եւ 'ի բաց հանեալ զամենայն բնակիչսն Սամոսի, տայր զքաղաքն 'ի ձեռս վտարանդեալոցն. եւ հանեալ զՍեստոս 'ի ձեռաց Աթենացւոց, չթողոյր եւ անդ զբնա-

կանոնունդ բնակիչսն, այլ իւրոց դեկավարացն եւ հրամանատարացն տայր զքաղաքսն եւ զբաշխս գանձոյն ։ Եւ ապա այս առաջին գործ նորա, որում զդէմ դարձան Լակեդեմոնացիք եւ դարձուցին զՍեստացիս 'ի գաւառն իւրեանց ։ Բայց որ 'ի նախատակութեանց անուն Լիւսանդրեայ հաճոյական գտան առհասարակ Հելլենացւոց, զի անդրէն միւսանգամ յետ յամայր ժամանակաց ետ նա Եգինացւոցն ունել զքաղաքն իւրեանց. եւ Մեղիացւոց եւ Սկիոնէացւոց հաստատել միւսանգամ 'ի կայս իւրեանց, վանեալ անտի զԱթենացիսն եւ տուեալ զնոսա դարձուցանել առ տեարս զքաղաքսն ։

Ապա լուր առեալ Լիւսանդրոս՝ զի Աթենացիք 'ի տառապանս սովու պաշարեալ կան, ձեպով նաւեալ 'ի Պիրէոս՝ 'ի նեղ արկանէր զքաղաքն անձնատուր լինել, պայմանօք դաշանց ըստ իւրոց կամացն ։ Եւ եթէ Լակեդեմոնացւոց լսեմք, նոքա ասեն՝ գրել Լիւսանդրեայ առ Պարէտս այսչափ ինչ. “Առաւ աթէնք“. եւ Պարետացն պատասխանի գրել առ նա, եթէ “Շատ է առնուլն“ ։ Սակայն հիւսուածոյ է բանն՝ առ 'ի գեղեցիկ պատուակ ածել իրացն ։ Բայց ճշգրիտ սահմանն Պարետացն էր այսպիսի ։ “Այս է վճիռ սահմանին իշխանացն Լակեդեմոնացւոց ։ Հիմն 'ի վեր քանդեսջիք զՊիրէոս եւ զերկայնաձիգ ըղպատուարսն ։ Արտաքս ելջիք յայլ ամենայն քաղաքաց, եւ զտեղի կալջիք 'ի սեպ_

հականն դատաւորի։ Զայս արարեալ՝ կալցես խաղաղութիւն, տացես զախտոյն, և թոյլ տացես դարձի փախստէիցն։ Իսկ յաղագս բազմութեան նաւացն, կալցես զբուանք որչափ արժան իցէ"։ Եւ հաւանեցան Աթենացիքն ընդ արձանագրութիւն սահմանին խորհրդոյն Թերամենեայ որդւոյն Անկոնեայ։ Եւ ասեն՝ եթէ հարցեալ յայնժամ Լիւսանդրոս 'ի հաւատորէ ումեմնէ պատանւոյ՝ անուն Կղէոմենէս, զիա՞րդ իշխեն Լիւսանդրեայ առնել և ասել իրս իմն հակառակ Թեմիստոկղեայ՝ թոյլ տուեալ Լակեդեմոնացւոց տապալել ըզպատուարսն, զոր կանգնեաց նա ընդդէմ նոցա. եւ պատասխանի Լիւսանդրոս. "Այլ ես ինքնին ո՛վ պատանի դու, ոչ ընդդէմ ինչ գործեմ Թեմիստոկղեայ. զի զայդ պատուարդ կանգնեաց նա 'ի փրկութիւն քաղաքացեացն, և մեք դարձեալ 'ի փրկութիւն նոցա տապալեմք զդա։ Ապա եթէ պատուարքդ ինքնին յերջանկութիւն իցեն քաղաքաց, էր արդեօք անպարիսպն Սպարտիոյ հէգ և թշուառական լինել քան զամենայն քաղաքս"։

Ապա Լիւսանդրոս զբուանք կալեալ զամենայն զնաւսն՝ բայց յերկոտասանից, և տիրացեալ պարսպացն Աթենացւոց 'ի վեշտասաներորդի աւուր Մունիքիոն ամսոյն (յորում աւուր նոքա յաղթելն վանեցին զբարբարոսս 'ի Նաւամարտին Սաղամինոյ), անդէն խորհուրդ հաստատէր փոխել շըրջել և անդ զքաղաքին կարգ։ Այլ մեծա-

պէս զժգմնեալ Աթենացւոց ընդ բանն և զդէմ դարձեալ, աղաչեաց նա առ ժողովուրդն և ասէր, եթէ զրժեալ քաղաքին պայմանաց դաշինն՝ կանգուն աւազին գերուս կան պարտաւորքդ, թէպէտ և ժամանակեալ աւուրքդ անցեալ իցեն. ոմն աղաղաւ և ինքն յառաջնի ժողովոյ այլ խորհուրդ հաստատեսցէ վասն նոցա, զի լուծին նոքա զդաշինն: Եւ ասեն ոմանք՝ եթէ յառաջեան ժողովոյ նիզակակցացն յայնմ ժամ խորհուրդ կալեալ՝ առհասարակ զԱթենացիսն գերի վարել պատուերազմի. և ասեն ևս՝ եթէ յայնժամ և Թեբայեցին Եղիանթոս Թեսաղացի եղև հիմնայատակ զքաղաքն քանդել և զգաւառն ամայի կարգել յարօտս խաշինն: Սակայն ապա գումարեալ զօրավարացն յախուռմբս կոչնոց, և անդանօր Փոկէացի ումն այր երգեալ զքերթուածն զԵղեկտրայ զԵւրիպիդեայն՝ զԴասաերգութեանն, որոյ սկիզբն.

Ագամեմնոնին ով օրիորդ

Եղեկտրէ,

Հասեալ գամ 'ի քո գեղջուկն

'ի դաւիթ.

Ամէն առհասարակ խանդաղատեալք՝ դըժպատեհ յոյժ համարեցան հիմն 'ի վեր ըն-համբաւաւորն զայն առնել քաղաք և զմայր հոյակապ արերոյն:

Բայց Լիսանդրոս՝ յորոց 'ի կամս ապաստան եղեն Աթենացիք, ածեալ 'ի քաղաքէն վարձակս բազումս սրնգահարս, և ընդ նոսա խմբեալ և զօրս 'ի բանակէն,

'ի ձայն նուագարանաց քանդէր յատակէր զպարիսպսն և 'ի հուր տայէր զեռանաւթիսն. և անդուստ նիզակակիցք բոլորիւք պսակեալք առն կատարեցին ցնծութեամբ՝ զօրն զայն սկիզբն վարկուցեալ խաղաղութեան ազատութեանն : Այլ ոչ միութամբ փոխէր եղծանէր և զկարգ քաղաքին. և հաստատէր կարգէր վարիչս երեսուն 'ի քաղաքին, և տասն՝ 'ի Պիրէա, և դնէր մի զօրական 'ի դղեկին, և ամրապահ իշխան տայր զԿալլիբիոս զայր Սպարտացի : Սա այս Կալլիբիոս ամբարձեալ երբեմն զգաւազան իւր հարկանել զԱւտոլիւկոս զատէկալն, (որ առաջադասու քերթեալ Քսենոփոն զհացկերոյթն), կալեալ ըմբիշն զոլորքացն նորա և 'ի վեր ամբարձեալ զգետնէր զնա . որ աղաղակաւ ոչինչ ցասմնայր Լիւսանդրոս, նա և նշաւակեաց զԿալլիբիոս, և ասէր . Ո՛չ գիտէ Կալլիբիոս, զի 'ի վերայ ազատաց իշխես : Բայց յետ սակաւուց երեսունքն 'ի մահ դատեցին զԱւտոլիւկոս՝ շնորհս արարեալ Կալլիբիոսի :

Զայսոսիկ 'ի գլուխ տարեալ Լիւսանդրոս, ելեալ ապա նաւէր 'ի Թրակիա . և ողջոյն զյաւելուած դրամոցն և միանգամայն զամենայն զպարգեւսն և զպսակսն՝ զոր առառ, (և այլոց քաջ շատ ինչ էին, զի և բազումք ընծայաբերք լինէին նմա իբրու աւագամեծար առն և իշխանին Եղլադայ), առաքեալ զամենայնն յղէր 'ի Լակեդեմոնիա 'ի ձեռն Գիլիպպոսի՝ որ զօրավար եկաց 'ի Սիկիլիա : Սա այս Գիլիպպոս՝ որպէս ա–

սեն՝ խոռեաց 'ի ներքուստ զկարան քրձոցն, և 'ի միոյ միոյ հաներալ արտաքս շատ ինչ՝ արծաթ, կարեաց միւսանգամ․ ոչ գիտացեալ զի 'ի մէջն մի քրձոյն կայր և տոմսակ համարոյ արծաթոյն ։ Հասեալ 'ի Սպարտիա, թաղեաց՝ զոր խորեացն՝ 'ի ներքոյ կղմինտրաց յարկին, և առեալ զքսուրձսն յանձն առնէր Պարետոացն և ցուցանէր նո զկնիքն ։ Իսկ բացեալ նոցա զքսուրձսն և 'ի հաշիւ զարծաթն բերեալ, և զգտին զուգակշիռ չգտեալ տոմսակին, վարանեցան Պարետոք ։ Անդանօր մի ոմն 'ի ծառայիցն Գիլիպպոսի 'ի վեր հանէր, առեղծուածինն խօսեալ՝ այսպէս, եթէ 'ի ներքոյ Կերամիկոսին կան արդէօք բուք բազումք ։ Քանզի առ այնու ժամանակօքն՝ որպէս երևի՝ դահեկանք շատք հատեալ էին՝ պատկեր ունելով զբուոյ 'ի շնորհս Աթենացւոց 1 ։

Ապա զգործ զայս գործեալ Գիլիպպոս անարգ և անփառունակ՝ յետ առաջնոց իւրոց գեղեցիկ նահատակութեանցն, ինքնին նա վտարանդի գնայր 'ի Լակեդեմոնիոյ ։ Այլ քաջուշիմքն Սպարտացւոց՝ և 'ի գիպուածոյ աստի յայտմանէ ոչ խուն ինչ խիթացեալ 'ի հրապուրեաց արծաթոյն, (որ և զլաւորեարն գիտաց այնպէս վանել), խօսեալ անձնամնէին զԼիւսանդրոս և բողոք նա ունէին առաջի Պարետոացն, եթէ յետս դարձուցանել արժան է ոսկոյն զարծաթն զայն և զոսկին՝ իբրու որ ժանտախտ ճարակիչ և մահահոտ իցէ բանն ։ Այլ Պարետոք յատենի 'ի մէջ բերեալ զայս

խորհուրդ, անդ Սկիրաֆիդաս՝ որպէս Թէոպոմպոս ասէ, կամ թէ Փլոգիդէս՝ որպէս Եփորոս, առ աջն առնէր զասահմանն՝ եթէ չէ պարտ զահեկան զոսկւոյ և զարծաթոյ ընդունել 'ի քաղաքն, այլ վարել զվաղընջուցն և զհայրենատուրն։ Եւ էր այս զահեկան երկաթի հրաշէկ մխեալ 'ի քացախ, և ոչինչ պիտանի 'ի ձեռակերտ կանագործ, այլ 'ի մխելոյ անտի զուլ և բութ ամենևին։ Առ այս՝ էր այն և ծանրակշիռ և դժուարաբառնալի, և բազմակոյտ նորա՝ յոյժ դիւրագնի։ Եւ թերևս հասարակ այնպիսի ինչ էին և ամենայն զահեկանք վաղնջուց, վարելով փոխան այնոցիկ դրոշելիկս իմն երկաթի՝ ուրեք և պղնձի. ուստի և ցայսօր սովորութիւն է կոչել Ցօբէլս զմանր զահեկանսն՝ որ բազում յոյժ զատանեն. կոչել և Դրաքմայ՝ զօբէլս վեց, քանզի այնչափ թուով ըմբռնեալ զբաւէ բուռն մարդոյ 2։

Բայց Լիւսանդրեայ բարեկամքն ընդդէմ դարձեալ սահմանեին, և զուն գործեալ օգնով չափ ունել զդրամն զայն 'ի քաղաքին, եսուն սահմանել՝ վարել զայն դրամն 'ի հասարակաց պէտսն ևեթ. և որ միանգամ ըմբռնեսցի ունել առանձինն յայնպիսեաց անտի, մահու դատապարտեսցի։ Որպէս եթէ Լիւկուրգոս ինքնին զանգիտեալ իցէ 'ի դրամոց այտի և ոչ մանաւանդ յարծաթսիրութենէն. և այն զի ընչաքաղցութիւնդ ոչ այնչափ նուաղէր արգելլով զառանձնակի ստացուածն դոցա,

արար Լիւսանդրոս և կանգնեաց 'ի տաճարին Դելփեայ պատկեր մի իւր պղնձի, և միոյ միոյ 'ի նաւապետացն. առ այս՝ և աստեղս կրկին ոսկւոյ՝ Դիոսկուրեանցն, որք առաջ անհետացան յառաջ քան ըզԼեւքտրեան մարտն. և 'ի գանձու անդ Բրասիդեայ և Ականթիացւոց կայր Եռաթի մի ճարտարեալ յոսկւոյ և 'ի փղոսկրէ՝ երկկանգուն երկայնութեամբ, զոր Կիւրոս կրտսերն առաքեաց առ Լիւսանդրոս առ 'ի յաղթանակ։ Այլ Աղեքսանդրիդէս Դեղփացի պատմէ՝ անդանօր յաւանդ եդեալ Լիւսանդրեայ և քանքար մի արծաթոյ և մնաս յիսուն և երկու, դարձեալ և ստատերս մետասան. այլ դորա բանք 'ի մատենիդ չեն միաբան ընդ այլոցն, որ միաբան հաստատեն զաղքատութիւն զառնն։

Իսկ յայնժամ ձոխ և հարուստ Լիւսանդրոս առաւել քան զամենայն Հելլենացիս՝ որ յառաջ քան զինքն, թուէր թէ պերճաբար 'ի վեր վարել քան զկար անձինն. քանզի նախ՝ (որպէս Դուրիս պատմէ) Հելլենացւոց քաղաքք կանգնեցին նմա սեղանս իբրև աստուծոյ և յաղէին նմա զոհս. և նմա առաջին առին զերգս նուագաց, յորոց և միոյն զսկիզբն յիշատակեն այսպիսի.

« Զհոյակապն զՀելլադայ զԶօրավարն՝
Որ 'ի լայնասահմանն Սպարտոյ,
երգեսցուք.
Բամբէ Պէյան նուագաց »։

Առ այս և վճիռ ետուն Սամոսացիք, զի տօնքն՝ որոց նախ անուն կարդային Հե-րեանք, յորջորջեալ կոչեցին Լիւսան-դրեանք: Իսկ ինքն Լիւսանդրոս ցանգ ու-նէր առ իւր զՔերիլոս քերթող, զի քեր-թուածովքն նա շուք յաւելցէ իւրոց նա-հատակութեանցն: Բայց յայնժամ Ան-տիղոքոս տողս սակաւ քերթեալ 'ի գովու-թիւն նորա, այնչափ իմն ցնծացաւ Լիւ-սանդրոս՝ զի լցեալ արծաթով զարտա-խուրակ իւր պարգևեաց նմա: Իսկ Անտի-մաքոս Կողոփոնեցի և Նիկերատոս ոմն Հերակլեացի՝ այր զարամբք ելեալ 'ի քեր-թածս ներբողից նորա, Նիկերատոսին տայր Լիւսանդրոս զպսակն. ընդ որ մեծապէս սրտնեալ Անտիմաքոս՝ խանգարեալ աղար-տէր զքերթածն իւր: Այր աղագաւ Պղա-տոն 'ի ժամանակին յայնմիկ գեռևս պա-տանի, և հիացեալ էր ընդ քաջութիւն քերթողականին Անտիմաքեայ, տեսեալ զդառնութիւն նորա և զվեշտն՝ մխիթար 'ի ներքս մատուցանէր նմա և ասէր, եթէ՝ Տգիտութիւն որոց ոչն հասկանան, աղէտք զուգահաւասար են կուրաց՝ որ ոչն տեսա-նեն: Իսկ քնարահարն Արիստոն զվեց նուագ տարեալ յաղթանակ 'ի մրցանս Պիւթեան խաղուցն, 'ի շնորհել Լիւսան-դրեայ՝ խոստումն կռէր նմա, զի 'ի միւ-սանգամ ևս յաղթութեանն հռչակ հար-ցէ զանձնէն՝ եթէ Լիւսանդրեայ յորե-րոյն իցէ, կամ թէ ծառայ իսկ նորա:

Բայց զպատուասիրութիւն զայս Լիւ-

առանդրեայ դժկամակս բերէին միայն առըք ռամիկք և քաղաքակիցք. սակայն ընդ պա-տուասիրութեանն արդէր ապա 'ի բա-րոյսն 'ի սպասաւորութեանց անտի նորա՝ և ամ-բարտաւանութիւն և գոռոզ պերճութիւն. մինչև 'ի պատուել և 'ի պատուհասել դար-ձեալ՝ էր նա 'ի դերեւցիկ չափաւորութենէն անբաւ։ Իսկ մրցանակք բարեկամացն նո-րա և մտերմաց էին տէրութիւնք իշխա-նականք 'ի վերայ քաղաքաց և իշխանութիւնք բռնաւորք. իսկ սրտմտութեան բարկու-թեան նորա յագուրդ՝ էր մահ զգլխովին ատելեաց նորա, որք և անձողորմելիք էին 'ի ձեռաց նորա։

Բայց յետ այսորիկ զանգիտեալ Լիւ-սանդրոս՝ եթէ զերծանիցեն 'ի ձեռաց զօր-խաւորք Միղեսացւոցն, և կամեցեալ եւս առաւելքս հանել զղօղեալսն, երդուեալ կայր ոչինչ վնասել նոցա. իբրև հաւատս ըն-ծայեցին և յերևան ելին, առեալ մատնէր զնոսա 'ի ձեռս ռամկապետականացն 'ի խողխողումն. և էին նոքա առհասարակ ոչինչ պակաս քան զութ հարիւր։ Այլ և 'ի քաղաքս մահուանք ամբաւք ժողովր-դականացն սպրդեցան առ 'ի նմանէ, կըր-թեալ 'ի նոյն ոչ յիւրոց միայն առանձինն պատճառաց, այլ հաճէր զբարեկամսն ա-մենայն ուրեք, և գործակից էր 'ի նոյն զթշնամութիւնս և զընչաքաղցութիւնս նոցա. ուստի և հռչակեցաւ յոյժ Ետէոկ-ղէս Լակեդեմոնացի յասել անդ իւրում, եթէ “ Ոչինչ հանդուրժեսցէ Ելլադա բե-

րեւ Լիւսանդրոսս երկուս“ ։ Զնոյն իմաստ պատմէ Թէոփոմպոսս՝ ասել Արքիտադամեայ և վասն Ագիսիլաւոսեայ. այլ որ դժոխեմերին էր յԱգիսիլաւոսէ՝ էր նորա ժողովրդութիւն և զբօսանքն և յամառութիւնն մեծ. իսկ Լիւսանդրեայ խստամբերութիւն բարոյիցն անհազին յարգարէր և անհամբոյր զտէրութիւն նորա։

Արդ Լակեդեմոնացիք այլոց ոմանց խեթին և բողոքման երեւս ինչ չարարեալ, իբրև անդուստ և փարնաբազ գրեալ 'ի Լիւսանդրեայ՝ յամբաստանել զաւտուն նորա, առաքեալ 'ի Սպարտա առ ամբաստանս զնմանէ, պատմեալ Պարետացն տային ձերբակալ առնել զմի 'ի բարեկամաց անտի նորա՝ անուն Թորակէս՝ որ և ընդ նմա զօրավար կացեալ էր. և զի առ առանձինն իւր առացեալ ունէր արծաթ, դատակնիք մահու ածին 'ի վերայ նորա. ապա և առ Լիւսանդրոս առեալ յղեցին Սկիւտաղաս մի՝ հրաման տուեալ յառնել գալ առ նոսա ։ Իսկ Սկիւտաղադ այսպէս ոն ինչ է ։ Յորժամ Պարէտք հրամանատար զդք նաւուց կամ զօրավար բանակի արձակել հանդերձեալ իցեն, կազմեն պատրաստեն գլանս երկուս 'ի փայտէ զուգահաւասար յերկայնութեան և 'ի թանձրութեան՝ հաւասարաչափք ճշգրտեալ ամենևին ընդ միմեանս. ապա զմին 'ի նոցանէ պահեն առ իւրեանս, և զմիւսն տան առն՝ զոր արձակեն. և գլանացն անուն կարգան նոքա Սկիւտաղաս ։ Արդ 'ի կամել Պարետացն

գաղտնելիս ինչ մեծ ազդ առնել, պատրաստեն մատեան իբրու երկայն փոկ և նեղ, և պատատեն զայն զգլանաւն՝ որ առ նոսա՝ կոչի ամենեկին. և համեմատ ամփածածուկ բոլորեն 'ի նա զմատեանն: Իբրև զայս առնեն, առեալ զգիրն զոր կամին 'ի մատեան անդր՝ պատատեալ 'ի գլանին. ապա կատարեալ զգիրն բառնան 'ի բաց զմատեանն և առաքեն առանց գլանին ըղգլխոյն առ զօրավար անդր: Իսկ նա ընկալեալ զգիրն՝ ոչինչ բաւական է ճշգրիտ 'ի վերայ կալ գրելոցն, քանզի անկեցք միմեանց են տառքն և այսր անդր ցանեալ կան. սակայն և զգլանին զայն՝ որ առ իւր՝ 'ի բուռն կալեալ, շուրջ զնովաւ պատէ զհատած մատեաննին՝ կարգ 'ի կարգ գործելով զպարոյրն ըստ յառաջագոյն կազմութեան՝ մինչև երկրորդ տառիցն զհետ գալ առաջնոցն. և այնպէս շրջանաւ յածեալ զաչն՝ միահետ շարի գրուածոյն հասանէ 'ի վերայ կայ: Այլ և զմատեանն գրեալ՝ կոչեն նոքա Սկիւտաղա յանուն գլանին. ըստ որում և չափեալն իր ընդունիցաւ կոչել զանուամբ չափողին:

Արդ Սկիւտաղա այսպիսի հասեալ առ Լիւսանդրոս 'ի Հելլեսպոնտոս՝ ուր էր նա յայնժամ, 'ի մեծ տագնապ պաշարեցաւ այրն. և յոյժ երկուցեալ յամբաստանութեանցն Փառնաբազայ, հնարս հնարեցաւ երթեալ խօսել ընդ նմա և 'ի հաշտ ածել զնա: Խօսէր և աղաչէր զնա այլ նամակ տալ առ իշխանսն Սպարտոյ վասն նորա.

վկայութիւն գնել՝ իբրու հարստահարու-
թեան և ոչ մի կրեալ առ 'ի նմանէ և բո-
ղոք և ոչ մի ունել վասն նորա. ոչինչ միա-
եղեալ Լիսանդրոս 'ի պահուն, եթէ՝
(որպէս սովորութիւն է ասել) Կրետա-
ցայր ինքն ընդ Կրետացւոյն Փառնաբազայ։
Քանզի խոստացեալ նմա Փառնաբազայ ա-
նել զխնդիրն, յանդիման առաջի նորա
գրեաց նամակ որպէս և խնդրէրն. այլ
կազմ և պատրաստ ունելով նա այլ նա-
մակ տարօրինակ՝ զոր 'ի ծածուկ գրեալ իսկ
էր, 'ի հարկանել անդ կնքոյն՝ հնարիմաց
զաղտնութեամբ 'ի ներքս արկեցոյց զայն,
զի և չէին ամենևին տարբերեալք նամակա-
նքն. և առեալ զայն տայր զաղտնի 'ի ձեռս
Լիսանդրեայ։ Որոյ գնացեալ 'ի Լակե-
դեմոն, և ըստ սովորութեանն երթեալ
յատեանն, տայր Պարետացն զնամականին
Փառնաբազայ. կարծէր արդարանալ շատ
ինչ 'ի յանցանաց անտի ամբաստանու-
թեանն. քանզի էր Փառնաբազ յոյժ սի-
րելի Լակեդեմոնացւոց, իբրու որ յամե-
նայն զօրավարս առաջին 'ի մարտին յայն-
միկ յոյժ հակամիտեցաւ առ նոսա։ Իսկ
Պարէտք ընթերցեալ զնամականին, ցու-
ցանէին Լիսանդրեայ. նա 'ի միտս եկեալ
յայնժամ եթէ ոչ Ոդիսևս միայն իցէ
խորամանկ, ամբոխեցաւ խռովեցաւ յոյժ
'ի յոգին, և զայրագին մեկնեցաւ 'ի վայ-
րացն։ Այսպս յետ սակաւ աւուրց միւսան-
գամ յանդիման եկեալ Պարետացն, ասէր.
երթալ պարտ է նմա 'ի տաճար անդր Ամ-

ոչ յուղարկեալ յԱթենացիսն, մեղ դնէին Պաւսանեայ, իբրու որ 'ի սանձէ ազատութեանն զերծեալ զբանակն՝ մեծանգամ ետ նմա խեռնել և տուահանել. Իսկ անդրուստ Լիւսանդրոս համբաւ ժառանգէր անձին զաւագ տան, զի 'ի քաղաքականութեան իւրում անկեալ էր 'ի գործն, ոչ ոք 'ի զայլս հանձնել և ոչ զարձեալ 'ի ցոյցս ինչ, այլ յօգուտ Սպարտոյ։ Այլ այս՝ էր Լիւսանդրոս և հզօր և կորովի 'ի խօսս, և սաստիկ և ահաւոր առ դիմակացարձան։ Քանզի էր երբեմն՝ 'ի մէջ եկեալ Արգոսացւոցն վասն սահմանաց և քաջացեալ նոքա 'ի նէրքս բերել յիւրեանց կողմն փաստս բանականս առաւել քան զԼակեդեմոնացւոցն, ցուցեալ նա նոցա զսուսերն՝ ասէր. «Որ զայդ ունի՝ քաջապէս նա 'ի պայքար մտցէ վասն սահմանաց երկրին»։ Այլ այս՝ և երբեմն յասենի արեք խաւսեալ առ նա Մեգարացի ոմն այր կարի ազատօրէն, ասէր Լիւսանդրոս. «Քոց բանից ում հիւրդ, պէտք են քաղաքի»։ Իսկ յորժամ և Բիովտացիքն դեռ ևս վարանեալք՝ յոր կոյս դառնայ. հարցանէր Լիւսանդրոս, եթէ՝ ընդ Երկիր նոցա անցանել նմա պարտ իցէ կանգնոցն, եթէ թեքեալ նիզակօք։ Եւ յորժամ ընդվզեալ Կորնթացիքն, մերձեցաւ նա 'ի պարիսպս նոցա՝ և անդ Լակեդեմոնացիքն զանդգնաէին 'ի յարձակել, տեսեալ նորա յայնժամ նապաստակ մի վազել զխրամօքն, ասէր. «Ո՞չ ամօթ իցէ երկնչել ձեզ

'ի Թշնամեաց անտի, յորոց 'ի պատերազմին առ վստահութեան նոցա դադարեն նապաստակք":

Իսկ յետ այնորիկ մեռանելոյ արքային Ագիսայ, Թողոյր եղբայր մի նոր Ագեսիղայոս անուն. և որդի մի կարծեալ՝ անուամբ Լեւոտիքիդէս: Արդ Լիւսանդրոս սիրող Ագեսիղեայ՝ դրդեաց զնա իշխել արքայութեանն իբրև հարազատ զարմին Հերակլեայ. իսկ անդ Լեւոտիքիդէս համբաւեալ իսկն էր որդի գոլ Աղկիբիադեայ, այն՝ որ 'ի վտարանդել իւրում եկեալ 'ի Սպարտիա, գաղտագողի եմուտ առ Տիմէա կին Ագիսայ: Իսկ Ագիս՝ որպէս ասեն՝ ստուգեալ 'ի ժամանակէն՝ զի ոչ 'ի նմանէն էր յղութիւնն, զանց առնէր զԼեւոտիքիդեաւ. և յայտնի իսկ զամենայն աւուրս կենաց իւրոց իբրև անհարազատ ծանեաւ զնա: Այլ 'ի հիւանդանալն Ագիսայ և տարեալ յՀերէան. և մերձ եղեալ 'ի մեռանել, 'ի Թախանձելոյ անտի պատանեկին և բարեկամացն, յայտ առնէր զնա առաջի բազմաց Լակեդեմոնացւոց իբրև իւր որդի. և աղաչեալ նա զորս շուրջն կային՝ վկայել զնոյն առաջի Լակեդեմոնացւոց, ինքն անդէն մեռանէր:

Արդ նոքա Թէպէտ և զնոյն վկայեալ 'ի կողմն Լեւոտիքիդեայ, 'ի վերայ այսր՝ զօրանայր Ագեսիղայոս՝ քանզի էր իսկ նա այր հոյակապ և ականաւոր. առ այս՝ զի և Լիւսանդրոս գործակից էր նորա. սակայն վնասակար էր նմա Դիոպիթէս այր հռա-

չափաւոր հարցանէ, որ գուշակութիւն պատասխանի այսպիսի 'ի ներքս եբեր 'ի կաղութիւն անդր Ագեսիղայոսի.

Ո՛վ դու Սպարտացի՝ թէպէտ մեծապանծ՝
ոտթուն կաց համբուն,
Մի՛ ըզքեզ ողջոտն՝ հարեալ ջախեսցէ
կաղ Արքայութիւն։
Զի յանկայք անձք անձկութիւնք անկարծք
ըզքեզ պատեսցեն,
Եւ ըզքեզ մարտից մարդասպանաց ալիք
յուզեալ ծփեսցեն։

Արդ անդ բազումք հակամիտեալ յայս պատասխանս եւ 'ի կողմն եղեալ Լէովտիքիդեայ, սակայն Լիւսանդրոս՝ եթէ ոչինչ ուղղապէս եւ Ճշգրիտ Դիոպիթէս 'ի վերայ կացեալ է գուշակութեանն. քանզի գիտէ չէ՛ ինչ ընդ հակառակս՝ առն կաղի թագկապել 'ի վերայ Լակեդեմոնացւոց. այլ թէ՝ կաղ յայնժամ լինիցի արքայութիւնն, յորժամ խառն ընդ Հերակլեանց թագկապեսցեն անհարազատք եւ խառնածինք։ 'Ի բանից առաւ Լիւսանդրեայ, դարձեալ եւ 'ի մեծ աւագութենէ առն եւ 'ի զօրութենէն՝ հաճեալ հաւանեցին Լակեդեմոնացիք, եւ թագ կապեցաւ Ագեսիղայոս։

Ապա անդէն վաղվաղակի սադրէր նմա Լիւսանդրոս խաղալ դիմել մարտ պատերազմի յարդարել յԱսիա, յոյս տայր եդեալ նմա վանել զՊարսս եւ 'ի մեծ բարձրութիւն հասանել. առ այս՝ եւ գրէր առ

բարեկամին Ափացիս՝ խնդրել զԱգեսի-
ղայոս 'ի Լակեդեմոնացւոց 'ի զօրավարս
ընդդէմ բարբարոսացն ։ Նորա լուեալ դե-
սպանս արձակէին 'ի Լակեդեմոնիա՝ աղա-
չել վասն բանին այնորիկ, զոր և ինքնին
Ագեսիղայոս 'ի ձեռս բերեալ գործակցու-
թեամբն Լիւսանդրեայ, թուի թէ ոչ պա-
կաս ընծայեաց շուք նմա՝ քան զարքայու-
թիւնն ինքնին գլխովին ։ Սակայն որ միան-
գամ փառասէրն գիւղեցան բուսոյ բա-
րուց, թէպէտ և անպիտանք չիցեն նոքա
յառաջնորդութիւն անդր, ամենին նոքա ոչ
դուզնաքեայ խոչ և խութ 'ի գեղեցիկ նա-
հատակութիւնն, այն է՝ խէթ նախան-
ձուն նոցա առ զուգափառ բարձակիցս ․
համարեալ իբրև հակառակորդս ոմանս
յառաջինութեան զայնոսիկ՝ զորս նիզա-
կակիցս մանաւանդ առնուլ մարթ էր նո-
ցա 'ի զօրավիգն առաքինութեան ։

Արդ Ագեսիղայոս կարգեաց եդ զԼիւ-
սանդրոս առաջ 'ի մէջ երեսուն խորհրդա-
կանացն, իբրու զնա առաւել քան զամե-
նայն բարեկամն ունելով իւր աջակից ։
Իբրև հասին եկին նոքա յԱսիա, որ անդ
մարդիկն՝ մտերմութիւն և ոչ մի ունելով
ընդ Ագեսիղեայ, դուն ուրեք կենակից
կենցաղակից եղեալք ընդ նմա, իսկ ան-
դուստ մտերիմք Լիւսանդրեայ իբրու որ
ժամանակս ձիգս յառաջագոյն ընտանակից
լեալ էր նոցա, ստէպ դեգերեալք առ
դուրս նորա՝ ընդ նմա շրջէին ․ բարեկամք
սպասս հարեալ նմա, և կեղակարծք՝ զան-

գիտեալք 'ի նմանէ. 'ի դէպ եկեալ ճըշ-դրիտ՝ որ ինչ միանգամ բնաւորեցաւ յՈղ-բերգութիւնս տեսարանաց առ դերա-սանսն, յորս է զի՝ որ զդեսպաննեն կամ զսպասաւորի զդէմսն բերէ, որդոյ առա-ւել երեւի և բարձրերէց, իսկ որ զգաւազանն ինքնին կրէ զարքունի և զպսակն, նա մե-նացեալ անբարբառ կայ. սոյնպէս և յայն-ժամ առ Լիւսանդրեայ խորհրդականի էր համբուն շուք արքայութեանն. իսկ Ագե-սիղեայ անուն լոկ արքայի մնացեալ՝ մերկ և թափուր յամենայն տէրութենէ։ Արդ արժան էր արդեօք համ գնել դժպհի փառաւորութեանն Լիւսանդրեայ և առ-նուլ ածել զնա յերկրորդ բարձ աւագու-թեանն. սակայն և Ագեսիղայոսի դժպա-տեհ էր զլխովին ոմնհար խոտել վասն փառացն զայր այնպիսի առաջ՝ բարեգործ և բարեկամ։ Քանզի առաջին՝ պատճառս և ոչ մի և ժամ տայր նմա Ագեսիղայոս գեղեցիկ նահատակութեանց. և ոչ դար-ձեալ ստախկանութիւն յիւր ինչ. իսկ երկ-րորդ անգամ՝ որոց միանգամ Լիւսան-դրոս զօրավիգն էր, նա այնպիսեացն պար-գևէր և ոչինչ. ունայն յետս արձակեալ և ոչ զռամկացն անգամ և զմինըքորացն տուեալ նոցա. և այնպէս տակաւ նուա-զեալ վատէր տէրութիւնն Լիւսանդրեայ։

Այպա տեսեալ Լիւսանդրոս զմնաւ իսկ վատթարել զիւրաց իւրոց, և զի՝ և խնամա-կալութիւն իւր 'ի վերայ բարեկամացն վնասակար էր նոցա, տեղի տայր այնու-

հեռուն և աղաչէր նա զնոսա՝ մի նա յայդ ե-լեալ շուք դնել նմա, այլ գնալ կենակից կենցաղակից արքային լինել, և որոց միանգամ բաւական էին յայնժամ զօրավիգն կալ պատուադրաց իւրեանց։ Զայս լուեալ թագաւորքն՝ թէպէտ և ոչ նա ներղէին զնոսա 'ի գործս իւրեանց, սակայն և ոչինչ դատապարեցան 'ի սովորական պատուոցն 'ի նեղքս բերել նմա. նա և առաւել նա շրջեալք ընդ նմա 'ի ձեռնս և յասպարէզս ըմբշաց, 'ի խօր առաւել խոցէին զԱգեսիղայոս՝ որ խանդաղատայր զփառս նորա. որպէս զի և բազմաց 'ի սովորական զօրականնէն 'ի ձեռս առեալ Ագեսիղայոս զառաջնորդութիւն մեծամեծ իրաց և զանուանութիւնս քաղաքաց, Լիսանդրեայ տայր 'ի ձեռս զգործ մսաբաշխութեան. ուստի և իբրև ամնհար Յոնիացւոցն լինելով ասէր. «Գնասցեն արդ նոքա, և խնամ մսաբաշխին պաղատս հարցեն»։

Այս բարուք թուեցաւ յայնժամ Լիսանդրեայ գնալ երեւել և խօսել ընդ Ագեսիղայոսի։ Եւ եղեն նոցա բանք ընդ միմեանս սուղ և լակոնացի։ Ասէ Լիսանդրոս. «Անշուշտ դու ծով Ագեսիղայէ՝ գիտես իսկ քաջ նուաստացուցանել զբարեկամս»։ Եւ պատասխանի Ագեսիղայոս. «Եւ կարի իսկ քաջ, 'ի խնդրել նոցա մեծանալ քան զիս. իսկ որք միանգամ՝ զիմ աէրութիւն խնդրեն բարգաւաճ առնել, բաժանորդք այնմիկ իրաւապէս լինիցին»։ Կրկնեաց Լիսանդրոս.

« Այլ Թերևս պատմեցաւ քեզ՝ ով Ագե-
սիղայէ՝ աւելի ինչ քան զոր իմ գործեալ
իցէ. ուստի և աղաչեմ զքեզ՝ և վասն օ-
տարաց մարդկանն որ 'ի մեզ ակնկառոյցք
են, բարձ մի տացես ինձ 'ի զօրավարու-
Թեանդ. ուրանօր կարծեցես՝ դժպհի
քեզ նուազ լինել ինձ, իսկ պիտանի ա-
ռաւել »: Իսկ յետ զրուցացս առաքեցաւ
Լիւսանդրոս 'ի Հելլեսպոնտոս իբրև փո-
խանակ զօրավարի. ուրանօր Թէպէտ և
սրտմտեալ ընդդէմ Ագեսիղայոսի՝ համօ-
րէն 'ի գլուխ տանէր զամենայնն ըստ կար-
գի պաշտամանն. և անդ Միթրիդատէս
պարսիկ այր քաջ որոյ և էին իսկ զօրա-
կանք ընդ ձեռամբ՝ 'ի դժտութիւն բե-
րեալ ընդ Փառնաբազայ, եւ նմա վտա-
րանջել Լիւսանդրոս, և առեալ ածէր
զնա առ Ագեսիղայոս: Այլա գործ և ոչ
մի այլ 'ի ձեռս տուեալ նմա 'ի մարտին
յայնմիկ, յետ սակաւուց ելեալ նաւէր 'ի
Սպարտիա անշուք. ցասուցեալ ընդդէմ
Ագեսիղայոսի և ոխերիմ ատելութեամբ
յոյժ ընդդէմ քաղաքին, հաստատեալ 'ի
միտս յայնժամ անդանդաղ բան 'ի գործ
ածանել՝ որչափ ինչ միանգամ նա 'ի վաղըն-
ջուց իսկ էր մտաբերեալ փոխել շրջել
զկրօն՝ օրինակ զայս: 'Ի սերընդոց անտի
Հերակլեայ՝ որ խառնեցան ընդ Դովրեանց
և դարձան ապա 'ի Պեղոպոննիսոս, զարմն
յոգնաթիւ և ականաւոր երևելի էր յայն-
ժամ 'ի Լակեդեմոնիա. սակայն և ոչ հա-
սարակ ամենեքեան բաժանորդք էին ար-

ուսոյց եւ նոցա 'ի բերան ճառ մի զԿղէո֊
նեայ Ալիկառնասացւոյ վասն բանիս այսո֊
րիկ։ Այլ ապա 'ի միտս եկեալ՝ եթէ մեծի
և նորասքանչ փոփոխութեան իրացն պէտք
իցեն արդեօք արձակ արձակ և անվանելի
ձեռին, յերեւան հանեալ՝ ըստ որում յող֊
բերգակ Տեսարանին բնաւորեցաւ՝ Մեն֊
քենայ մի յանդգնման քաղաքացեացն, հնա֊
րիմաց խորհրդով. քերթեաց պատգամս իմն
և գուշակութիւնս. իբրու եթէ ոչինչ յա֊
ջողեսցի օգտել ինչ 'ի ճարտարախօսութէ֊
անն Կղէոնինեայ, մինչչեւ նորակրօնաւոր
արհաւրօք ամամբք յաստուածակոյս կող֊
մանէնն ահաբեկ զնոսա արարեալ և ամո֊
քեալ՝ հեշտալուր ապա ասացելոցն առ 'ի
նմանէ լինիցին։ Արդ պատմէ մեզ Եփո֊
րոս, եթէ փորձ փորձեալ նա կաշառել
զԴիւթիս, ապա զառածանել հրապուրել
և զԴոդոնիդաս 'ի ձեռն Փերեկլեայ, և
ոչինչ յաջողեալ անցանէ գնայ ինքն 'ի
տաճար անդր Ամոնին՝ անդանօր 'ի բանի
առնել զհարցուկսն զայնոսիկ՝ մթերս ոսկ֊
ւոյ 'ի ներքս մատուցանելով նոցա. իսկ
նոքա ոտամնեալք ընդ բանն՝ արձակեն արս
'ի Լակեդեմոնիա ամբաստանս զԼիւսան֊
դրեայ. իսկ նորա արձակեալ յամբաստա֊
նութեանցն՝ ասէին յայնժամ հրեշտակքն
Լիբիոյ 'ի մեկնել իւրեանց. "Այլ մեք
դատաստան լաւ եւս դատեսցուք ո՞վ Սպար֊
տացիք՝ 'ի գալ ձեր 'ի Լիբիա բնակել ընդ
մեզ". քանզի և գոյր իսկ վաղնջուց գու֊
շակութիւն՝ անցանել անդր Լակեդեմո֊

նացոց 'ի բնակութիւն։ Այլ ողջոյն զնիւթեալ և զխորամանկեալ զհնարս նորա, որ չէր ինչ արդեօք 'ի սկզբանց անտի յառաջ շարժեալ 'ի դուզնաքեայ և 'ի հասարակ, այլ մանաւանդ իբրև Առաջարկութիւն իմն զՈւսումնականին՝ յեցեալ 'ի հիմունս բազումս և մեծամեծս՝ 'ի ձեռն դժուարակընճիռն առմանց թևակոխէր յեզրակացութիւն անդր, զայդ մեք ոճով աստուածին արձանագրեսցուք՝ առն ուրումն զհետ երթեալ պատմաբանի և իմաստասիրի։

Կին ոմն էր 'ի Պոնտոս՝ զհամբաւ հարեալ իբրև որ յղացեալ յԱպողոնէն իցէ։ Բազումք (որպէս և արժան և իրաւ էր) ոչինչ հաւատային. իսկ կէսք՝ ընծայեցին հաւատս. զի և 'ի ծնանել անդ մանկանն՝ բազում մարդիկ և 'ի հոյակապից եւս իմաստով պատկառ կացին ննդեան և դաստիարակութեան նորա. և անուն նմա 'ի պատճառէ իմեմնէ՝ եդաւ Սիղենոս։ Արդ զսկիզբն զայս առեալ Լիւսանդրոս, այլա և զայլն ամենայն առ 'ի յինքենէ նիւթէր մեքենայէր. էին էին նորա գործակիցք յայս առանցիկ ոչ սակաւք և յականաւորաց, որք և անշուշտ իբրև ճշմարիտ կարծեցուցանէին զճառս ծննդեան մանկանն։ Առ այս և հռչակ հարկանէին նոքա ընդ Սպարտիա և այլ բանս եկեալ 'ի Դեղփեայ, իբրու եթէ 'ի պահեստի կայցեն անդանօր 'ի քրմաց պատգամք յոյժ վաղնջուց 'ի մատեանս գաղտնածածուկս՝ անհասելք և անմատոյցք. բայց թէ՝ յետ յամայր ժա-

մանակաց զհնացեալ անդր ոմն այր Ապող-նածին և հաւաստիս ճշգրիտ 'ի ներքս բե-րեալ զծննդեանն իւրոյ առաջի տախտակա-նաց մատենիցն, առցէ անտի զտախտակս զպատգամացն զայնոցիկ ։

Զայս օրինակ հանդերձեալ կազմեալ իրացն, սպասող էր այնուհետև Սիլենոսի՝ իբրև Ապողոնի զաւակ երթալ խնդրել զպատգամսն. և անդանօր քահանայիցն զաշնաւորաց բանիւն՝ քննութեամբ ճշգրտիւ գործել և հարցումն առնել նմա և գննել ճշգրիւ զճառս ծննդեանն նորա. և այսպ հաւանեալք՝ 'ի ներքս նմա զՄատեանսն մատուցանել իբրև որդւոյն Ապողոնի, որ և առեալ յայնժամ վերծանեսցէ նա ա-ռաջի բազմաց զուշակութիւնս 'ի նմա, և յաւէտ իմն՝ որ աղագաւ նիւթեցաւ այն ամենայն՝ զբանս արքայութեանն Սպար-տոյ. և զլուխ բանիւն՝ ասասցէ, եթէ լա-ւագոյն են և քան՝ զիւրեանց արքայս ըն-տրեալ կարգեսցեն Սպարտացիք 'ի քաջաց քաղաքացեաց ։

Արդ յորժամ հասեալ Սիլենոսի և եկեալ հասեալ լինել և ինքն զգործ պաշ-տամանն իւրոյ, 'ի դերևս եղանէր Լիւսան-դրոս, և տեսարանն յանկարծ գործոյն չժա-մանէր. քանզի 'ի դերասանից անտի ոմն և 'ի գործակցաց վատասրտեալ՝ իբրև ձեռն 'ի գործ պարտ էր առնել, զանդգիտեաց և խոյս ետ 'ի վայրացն ։ Այլ սակայն առ կենդանութեամբն Լիւսանդրեայ ոչ նշա-նակեցաւ նենգն, այլ յետ մահուն. և

մեռաւ նա՝ մինչեւ Ագեսիղեայ դարձ առա-քեալ յԱսիոյ՝ 'ի մարտի պատերազմին Բիովտական կամ թէ մանաւանդ լինելն պա-տաղեցուցեալ 'ի նոյն զԵլլադա. քանզի և այլազգագոյնս պատմեն զբանն. և կէսք մեղ-դնեն վասն այնր Լիւսանդրեայ, և կէսք՝ Թեբայեցւոց. իսկ և կէսք այլք՝ հասարակ գործեն զմեղն. կշտամբեալ զԹեբայե-ցիսն՝ զի ցիր և ցան կացուցին յԱւլիդէ զզոհսն. և զի՝ 'ի կաշառառուեալ լինել Ան-դրոկղիդեայ և Ամփիթեայ յարքայէն Պարս-կաց՝ զինեալ անկան 'ի վերայ Փոկեացւոց և յաւարի առին զգաւառ նոցա, զի զՀել-լենականն գրգռեսցեն մարտ 'ի վերայ Լա-կեդեմոնացւոց։

Իսկ յաղագս Լիւսանդրոսին, ասեն՝ եթէ ցասեաւ նա զի Թեբայեցիք միայն յայնժամ պահանջէին զտասանորդն յաւա-րածէ պատերազմին. այլ անդ առհասա-րակ այլք 'ի նիզակակցացն լռիկ համբե-րեալ կային. և զի՝ բողոք կալան նոքա վասն զրամոյն՝ զոր առաքեաց նա 'ի Սպար-տիա. և առաւել քան զամենայն՝ զի առ-աջին նոքա ձեռն ետուն յազատութեան անդր Աթենացւոց ընդդէմ բռնաւորացն երեսնից՝ զոր կարգեաց եդ Լիւսանդրոս. յորոց և 'ի շնորհս հասարակաց եւս գործեալ զնոսա՝ վճիռ ետուն Լակեդե-մոնացիք, զի առհասարակ փախստեայք յԱթենայ ձերբակալք ածցին միան-գամ անդր 'ի կողմանց կողմանց, և զինա-դարձք ածելեացն՝ երբև Թշնամիք համա-

րեացին. սակայն անդուստ և Թեբայեցիք ընդ հակառակս եռուն վճռոյ, արդարև վայելուչ և հանդունաստիք նահատակութեացն Հերակլեայ և Դիոնիսեայ, հրամանն տուեալ՝ զի ամենայն տուն և ամենայն քաղաք Բիովտիոյ բաց կայցէ առաջի ամենայն Աթենացւոցն ապաւինելոց 'ի նոսա. և որ ձեռն չտայցէ փախստէին 'ի նեղութեան նորա՝ քանքար մի տուժեսցի. և եթէ այր ոք այր զէնս բարձեալ ընդդէմ բռնաւորացն Աթենայ՝ անցցէ ընդ Բիովտիա, անդ այր այր Թեբայեցի կեղծառարեացի ոչ տեսանել ինչ և ոչ լսել ինչ։ Եւ ոչ վճիռ լոկ եռուն նոքա զմարդասիրութեանցս և որ արդարև արժանիք Ելլադայ, այլ և արդիւնացուցին. յորժամ անդ Թրասիբուղոս և նիզակակիցք նորա խաղացեալք հասանել ունել զՓիւղս, չու արարին 'ի Թեբայէ՝ դործակիցք նոցա Թեբայեցիք լինելով տուեալ նոցա զէնս և դրամս և ձեռնտու եղեալ գաղտապար նահատակութեան գործոյն։

Արդ այսոքիկ էին պատճառք ցասմանն Լիւսանդրեայ ընդդէմ Թեբայեցւոց. այն՝ որ անդստին 'ի բուսոյ բարուցն անհամբերի 'ի սրտմտութեան խլրում, ապա և 'ի մելամաղձէ ծերութեան տուեալ եւ ժանտացեալ, դրդեաց վառեաց զՊարէտան արձակել ընդդէմ նոցա գունդ զօրականին, և ինքն զօրավար չու առնէր խաղալ 'ի վերայ։ Բայց և Պաւսանիաս արքայ առաքեցաւ անդր համգերձ զօրու, յարձակել 'ի



Բիւզանդիա մեծապէս շըջանաւ ընդ Կիլթերոնիւէ. Իսկ Լիւսանդրոս տուեալ զնոցա խաղայր անցեալ ընդ Փոկէացիս. և առնոյր նա յայնժամ զքաղաքն Որքոմենեացւոց՝ ինքնին անձնատուր առ նա. և յարձակեալ 'ի Լեբադիա՝ քանդէր աւերէր զնա: Այլ տայր նամականի առ Պաւսանիաս՝ գալ 'ի Պղատէոյ միանալ ընդ իւր յԱղիարդիոն, ուր ինքնին նա 'ի ծագել աւուրն եկեալ հասցէ յանդիման պարըսպաց նորա. այլ Թղթաբեր հրեշտակին 'ի ձեռս անկեալ լրտեսացն Թշնամեաց, ածառ նամականին առ Թեբայեցիս, որք և պատրաստան զքաղաքն արարեալ 'ի ձեռս Աթենացւոց նիզակակցացն, ինքեանք յուղի անկեալ յառաջին պահ գիշերոյն՝ փոքր մի կանուխ քան զԼիւսանդրոս ժամանեցին յԱղիարդիոն, և կէսք 'ի նոցանէն զնացեալ մտանէին 'ի քաղաք անդր: Իսկ Լիւսանդրոս զառաջինն համառօտեաց մնալ Պաւսանեայ՝ զատեղի կալեալ իւրով զնդաւն 'ի վերայ բլրոյ, այլ ապա յառաջեալ աւուրն ոչ ևս համբերեաց. առեալ զզէնսն և խրախոյս նիզակակցացն բարձեալ, խաղայր ձիգ փաղանգաւն 'ի պատուար անդր: Իսկ որ միանգամ արտաքոյ մնացեալն էին Թեբայեցիք, 'ի ձախոյ զքաղաքն ունելով խաղային զնայլին անկանել 'ի վերջ Թշնամեացն առ աղբերբն՝ որում անուն կարդան Կիսսուսա 3, յորում և առասպելեն՝ դայեկացն Դիոնիսեայ լուանալ զտղայն 'ի ծննդեանն, զինեգոյն զո֊

րով Ջրոյն և ականակիտ և քաղցր յար-
բուժին։ Եւ անդ վայր մի 'ի բացեայ բու-
սանին Հէրք և Թիւրակք կրետացիք, զոր
Աղիարտացիք իբրև հաւատոյս 'ի ներքս բե-
րեն անդանօր բնակութեանն Ռադաման-
թեայ, և ցուցանեն ևս զգերեզմանն՝ զոր
նոքա կարդան՝ Ալէա. և է ևս անդանօր
մօտ և շիրիմ Աղկմենեայ. քանզի 'ի նմին
վայրի՝ որպէս ասեն՝ թաղեցաւ նա, հար-
նացեալ ընդ Ռադամանթեայ յետ մա-
հուն Ամփիտրիւոնեայ։

Իսկ և Թեբայեցիք որ կանուխ մտին 'ի
քաղաքն անդր, կազմ և վառեալք 'ի միա-
սին ընդ քաղաքացեացն՝ զտեղի առեալ
կային. իբրև զմտել Լիւսանդրեայ յակն
արկին 'ի պարիսպ անդր հանդերձ առաջին
նահատակօքն, յանկարծակի յեղակար-
ծումն զդրունսն բացեալ և մոլեգին 'ի վե-
րայ անկեալ՝ անդէն դիաթաւալ կացու-
ցանէին միանգամայն և զԼիւսանդրոս և
զհարցուկն՝ որ ընդ նմա, և զայլ ևս նուա-
զունս թուով. քանզի բազմութիւն նոցա
'ի խուճապ տագնապի զօրս արձակեալ
փախստեայք գնային 'ի փաղանգ անդր.
այլ Թեբայեցիք ոչինչ վատացեալք՝ զհետ
մտեալ քաջաբար վանէին առհասարակ 'ի
վերայ բլրոյն, տապաստ արկեալ 'ի նոցա-
նէ ոգիս հազար։ Անդ անկանէին և 'ի Թե-
բայեցւոց արք երեքհարիւր, նահատա-
կեալք յանդուգն մարտ դնել կռուել 'ի
դժուարս և յամուրս վայրաց. և էին սոքա
դո՛դ ստգտեալք ոմանք 'ի կուսակցութիւն

անդր Սպարտացւոց. ուր աղաղակաւ և ջանիւ զձախողակ կարծիսն քերել յանձանց՝ այնպէս մխեցան 'ի կշիռ զօդիս եդեալք, մինչև հուսկ ուրեմն անկան գլխապատառ։

Լուր առ Պաւսանիաս հասեալ ձախողակ մարտին՝ 'ի խաղալ անդ նորա 'ի Պղատէոյ 'ի Թեսպիա, անդէն կարգ առեալ խաղայր գնդէր 'ի վերայ Ալիարտիոնի. ուր և եկեալ հասանէր Տրասիբուղոս 'ի Թեբայէ՝ ածեալ ընդ իւր զԱթենացիսն։ Անդանօր կամեցեալ Պաւսանիաս զօրս առնել մարտին և առնուլ զդիականսն, արք հին աւուրց Սպարտացւոց զժկամակեալք զայրանային՝ և մատուցեալ ինքնին առ արքայն վկայութիւն դնէին չառնուլ յինքեանս զԼիսանդրոս 'ի զօրս մարտին, այլ մարտ դնել կռուել առ դիականմբն. եթէ յաղթականք եղցեն՝ շքով այնպէս զերեզմանի տացեն զնա. ապ եթէ յաղթեսցին, շուք յաւելցի նոցա՝ գլխապատառ այնպէս անկեալ ընդ իւրեանց զօրավարին։ Թէպէտ և զայս բանս խօսեցան անդ ծերքն, սակայն Պաւսանիաս՝ զի դժնդակ էր մարտիւ վանել զԹեբայեցիսն այն ինչ յաղթականս, և զԼիսանդրեայ դիականն մօտ պարսպին անկեալ՝ դժուարին ուրեմն էր առնուլ մարտիւն 'ի ձեռս բերել՝ թէպէտ և յաղթականք իւրքն իցեն, առեալ արձակեաց քարոզ, և դադար առեալ մարտին վերջոտնեցոյց զզօրն։ Անցեալք ապա ըստ սահմանս Բիովտիոյ, իբրև մխեցան յերկիր բարեկամացն և նիզակակցացն

Պանոպացւոց, անդ Թաղեցին զԼիւսանդրոս. ուր և այժմ անուանի շիրիմ նորա առ ճանապարհաւն՝ որ հանէ 'ի Դելփեաց 'ի Քերոնէիա։

Իսկ մինչդեռ անդէն բանակեալ կային զօրքն, պատմեն՝ եթէ այր Փոկեցացի 'ի պատմել խօսում ընկերին որ չէր ընդ նոսա՝ ընդմարտոն, ասէր եթէ թշնամիք անկան 'ի վերայ նոցա՝ յորժամ Լիւսանդրոս վաղեալ անցեալ էր ընդ Ոպլիտաւ. զարմացեալ ընկերին, անդ ոմն Սպարտացի բարեկամ Լիւսանդրեայ՝ հարցանէր զի՞նչ Ոպլիտէդ լիցի. զի անծանօթ էր նմա անունն. եւ պատասխանի, “ Ոպլիտէ կայ 'ի նմին վայրի, ուր 'ի թշնամեացն տապաստ անկան մերին նահատակք. քանզի Ոպլիտէ կոչեն զվտակն՝ որ մերձ կայ քաղաքին ”։ Զայս լուեալ Սպարտացւոյն՝ հարաւ յարտասուս, և ասէր՝ անշուշտ ուրեմն անխուսափելի է մարդոյ օրահաս մահուն. քանզի և էր իսկ վասն Լիւսանդրեայ պատգամ այսպիսի.

“ Քեզ ասեմ, զգոյշ կաց 'ի գերահնչական
Ոպլիտեայ,
Եւ 'ի հողածին Վիշապէն՝ որ քեզն
դարանի ”։

Իսկ կէսք ասեն՝ եթէ Ոպլիտէ ոչ գնայ մերձ Ալիարտեայ, այլ է նա ուղխ 'ի Կորոնէիա որ խառնեալ 'ի գետոն Փլիարոսն, 'ի միասին անցանէ առ երի քաղաքին այնմիկ. և որ Ոպլիա երբեմն կոչէր, և այժմ Իսոմանտոս։ Իսկ Լիւսանդրեայ սպանողն

էր այր Աղեքսանդրացի Նէղքորոս անուն , դրուագ ունելով 'ի վահանին զվիշապ , և զայն Թուի՝ անձնարկի առնել պատգամին : Եւ պատմեն ևս՝ եթէ և Թեբայեցւոց ինքնին՝ վասն մի յետոյ քան զՊեղոպոննիսեան մարտն՝ առաւ պատգամ յԻսմենեւոն վասն Դեղեան պատերազմին. և վասն Աղիարտեան կռուոյն՝ զոր կռուեցան երեսուն ամօք յետոյ . և էր պատգամն օրինակ զայս .

" Զգոյշ լեր 'ի սահմանէ գայլոյն ,
Դու որ գարանեալ կաս 'ի ցանկս .
Եւ յՈրկաղեան բլրոյն , զոր աղուէս
երբէք ոչ Թողու " :

Սահման կոչեաց զշրջակայ վայրն Դեղիոնի , ուր սահմանակից Ատտիկոյ է Բիովտիա . և Որխադեան Բլուր , զայն վայր՝ զոր այժմ անուանեալ կոչեն Ալոպեկոս այն է՝ Աղուէս , և կայ նա յԱղեարտոն կոյս՝ որ հայի յԵլիկոնա :

Զայս օրինակ աղաս 'ի մահ վարեալ Լիւսանդրոս , այնչափ իմն 'ի խոր խոցեցան զառաջինն Լակեդեմոնացիք , զի և մահու դատակնիք 'ի վերայ ածին Պաւսանիաս արքային . այլ նա յանդիման չեկեալ ատենին՝ յարեաւ փախեաւ 'ի Տեգիա . և անդ ողոքաւոր Աթենասայ անցուցանէր ըզկեանս իւր 'ի տաճարին նորա : Բայց աղքատուԹն Լիւսանդրեայ յերևան եկեալ յետ մահուն նորա , շքեղ ևս գործեաց զառաքինութիւն նորա . այն՝ որ մԹերս բազում արծաԹոյ ընդ ձեռամբ կալեալ,

և այնչափ զօրութիւն և բազմաց քաղաքաց իշխանութիւն, և տէրութիւն մեծ, ոչինչ խնդրեաց օգտակարաւ լինել և ընչաւէտութեամբ զտունն իւր փառաւոր առնել՝ ըստ որում արձանագրեաց Թէոպոմպոս. որում հաւատս առնել է ընծայել 'ի գովել նորա, քան 'ի պարսաւել. քանզի սիրելի յոյժ է առնն՝ պարսաւն քան զգովութիւն:

Իսկ յետ այնորիկ՝ որպէս պատմէ մեզ Եփորոս՝ հակառակութիւն յուզեալ 'ի Լակեդեմոնիա ընդ նիզակակցացն, պէտք եղեն երթալ արտաքս հանել Գիկոս իմն, զոր առ իւր ունէր Լիւսանդրոս: Գնայր ապա Ագեսիղայոս 'ի տուն նորա և գտեալ անդ զմատեանն՝ յորում արձանագրեալ կայր ճառն յաղագս Քաղաքականութեան, յայտ արարեալ եթէ յԵւրիտոննեաց և յԱգիսոնեաց 'ի բաց զարքայութիւնն առնուլ պարտ է և հասարակ զԹագն գործել լաւ և քաջ որերոյն, յայնժամ Ագեսիղայոս վազէր ընթանայր ցուցանել զայն ճառն յանդիման քաղաքացեացն և ճշգրիտ նոյա իմացուցանել զԼիւսանդրոս, զի՞նչ քաղաքացի 'ի ծածուկ կացեալ իցէ նորա: Բայց Լակրատիդաս յայնժամ այր զգօն և ուշիմ՝ որ և Նախաթոռ Պարետայն 'ի ժամուն, արգել և ասէր. քան զԼիւսանդրոս հանել 'ի հողոյ՝ արժան է մանաւանդ զայն ճառ՝ հողոյ տալ ընդ նմա. զի և է իսկ այն ճառ յոյժ համոզակեր հնարիմաց և չարարուեստ նիւթեալ: Արդ Թէպէտ և

բանն 'ի վեր եւ, բարձում շուք պատուոյ եւ տուն Լիսանդրեայ 'ի մահուն նորա. և որք միանգամ զգանձս նորա 'ի հայրանութիւն խնդրեալն էին, և ապա յետ մահուն զաղքատութիւնն ծանուցեալ զԼիսանդրեայ՝ հրաժեշտ ետուն, պատուհաս կրեցին. Իբրու որք յառաջն ընչաւէտ կարծեալ զայրն՝ սպասաւորկուք եղեն, ապա յաղքատութեն արդար և լաւ գիտացեալ զայրն՝ ուծացան 'ի նմանէ։ Քանզի և էր իսկ 'ի Սպարտիա պատուհաս 'ի վերայ ամուրեաց և անապան ամուսնացելոց և չարեաւ ամուսնացելոց. և վերջինս պատուհասին առաւել ևս 'ի ներքոյ կային, որք միանգամ ընդ լաւաց և ընտանեաց՝ գնացեալ խնամութիւն ածէին ընդ ընչեղսն։

Այրդ որչափ ինչ 'ի ձեռս՝ պատմեցաք մեք աւանդիկ վասն Լիսանդրեայ։

---

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Կերամիկոս ասելով ծառայէն՝ որ է տեղի մի յԱթէնս, կամէր նշանակել զԿերա-միկոսն, զոր Հ'ելլենք կոչեն՝ Κεραμὶς:

2. Քանզի յն. Δράσσω կամ Δράττω. է ըմբռնել, ունել:

3. Մօտ յԱղեքսանդրիոն՝ աղբիւր մի ասէ և Պաւսանիաս, անուն Թիլփիոսա. և Ստրա-բոն՝ Թիլփոսա: Բայց Կիտաուսա՝ միայն սեպհական Պլուտարքեայ է:



# ՍԻՒՂՂԱ

ԼԵՒԿԻՈՍ Կոռնելիոս Սիւղղաս էր ըստ զարմին 'ի պատրկաց անտի, իբրու 'ի քաղքազարմից ումանց։ Իսկ 'ի նախնեաց անտի նորա ասեն զՀռուփինոս կացեալ հիւպատոս, այլ սմա քան 'ի շքոյ փառացն՝ առաւել ականաւոր լինել յանփառունակ անարգութենէն։ Քանզի ըմբռնեցաւ՝ ունել անձին արծաթոյ հատելոյ լտերս առաւել քան զտասն, որ արգելեալ իսկ էր յօրինացն. ույր ազգաւ և 'ի ծերակուտէն 'ի բաց անկաւ։ Եւ առ 'ի նմանէն սերեալքն միշտ հեքաբար կեցին. և Սիւղղաս ինքնին սնաւ 'ի հայրենի ժառանգութեանն ոչինչ հարուստ։

Մինչդեռ տակաւին պատանեակ՝ բնակէր 'ի տան օտարի վարձ տուեալ դուզնաքեայ, որպէս և յերեսս ապա հարկանէին նմա 'ի բարգաւաճել նորա առաւել քան

զարժանն. քանզի փքացեալ իմն նորա և մեծապանծ եղեալ յետ արշաւանին 'ի Լիբիա, պատմեն ասել առ նա ուրումն պարկեշտի առն և լաւի. "Ու զիա՞րդ իցես դու երբեք այր լաւ, որ ոչինչ հօր քո թողեալ քեզ, այդչափ ինչ քո ժառանգեալ է ստացիկ": Քանզի թէպէտ և քաղաքավարութիւն կենաց չէր 'ի մէջի յայնժամ ճշգրիտ և անխառն, այլ 'ի վատթարն նկրտեալ էին և զգրգանաց շուայլութեան զհետ կրթեալ էին, 'ի վերայ այսր և հաստարապէս խոտեալ էին և ընչիցն վատնողք և որք աղքատութեան իւրեանց նախնեացն պատկառ ո՛չ կային: Իսկ իբրև զօրացաւ, նա և հաստահարուստ եղեալ բազում մարդիկ 'ի մահ վարէր, ոմն յազատագրելոց անտի՝ զորմէ կարծէին թաքուցանել զմի ոք 'ի վտարանդեացն, և հանգերձեալ էին գահավէժ ընդ պարսպաց առնել զնա, յերեսս հարկանէր և նա Սիւղղայի՝ իբրու ընդ նմա շատ ժամանակ բնակակից լեալ 'ի նմին յարկի՝ ուր տային վարձ, ինքն երկուս հազարս դրամոց վասն վերին դստիկոնին, և Սիւղղաս երիս հազարս վասն ներքնոյն. զի և երկոցուն նոցա կեանք հազար դրամօք չափ միայն տարբերեալ էին, որ արժեն երկերիւր և յիսուն դրամանկշիռս ատտիկեցիս: Արդ զայսոսիկ պատմեն յաղագս առաջին բաղդին Սիւղղայի:

Իսկ զհասակ երեսաց նորա և կերպարան մարմնոյն քաջ իսկ տեսանել ուստեք 'ի

դրօշմեալս անդրեաց նորա։ Իսկ նորա աչք 'ի դոյն կապուտակի՝ խոժոռ և խեթ, և առաւել ևս ահագնահայեաց 'ի գունոյ անտի երեսացն՝ յորմէ բոցանայր շառագնութիւն անհամբոյր պիսակացեալ խայտ 'ի ալքատակէ. ուստի և ասեն զնորա անունն մակդիր լինել գունոյն, և 'ի խեղկատակաց ումն յԱթէնս ծանակեալ վասն այնորիկ զնա՝ յասել իւրում. " Թութ սեաւ է Սիւղղաս ալեւրաթաթաւ "։ Եւ այսպէս ոչինչ անճահ իցէ արդեօք 'ի նշանաց աստի իմանալ զբոյս բարուց զառնն. զոր և ասեն անդադար 'ի բնութենէն այնչափ իմն հակամիտեալ 'ի խեղկատակութիւն, զի դոլով պատանի՝ մինչև փառս ինչ անձին ժառանգեալ, էր միշտ կենակից միմոսաց և ծաղրածուաց, և զամենայն անժուժկալութիւն անկրթութեան ընդ նոսա. և ապա իբրև 'ի ծայրն եհաս աւագութեան, հանապազօր առեալ ընդ իւր 'ի թատերաց անտի որեար լկտի և լիրբ, կայր ընդ նոսա 'ի գինարբուս. և անդ այր զարամբ եղանէին աստեղ հեգնութիւնս զազիրս և խեղկատակութիւնս. գործ նա գործեալ դժպատեհ ալեացն, և անարժան աւագութեան բարձին, անփոյթ արարեալ շատ ինչ 'ի կարևորացն գործոց։ Վասնզի 'ի բազմականի անդ մարթ չէր խօսել ընդ Սիւղղայի վասն կարևորացն. և թէպէտ և զայլ ժամանակն այր խոժոռ էր նա և աննուէր և առ 'ի դար հայէր, շրջէր նա անդէն յայր այլ 'ի միսել իւրում 'ի բաժակս և 'ի բազմականս ընդ

ուսոյ առաջնորդակացն Նումիդացւոց, 'առնուլ արձանակերտ զնոսա հարուստ պարգեօք և պատահաւորան զնդառ։ Այլ Բոկքոս 'ի վաղըն Ջուց խուկ առեալս և զանդղիակէր եա 'ի Ցուպուրթեայ տներայն. ոսկի և յայնժամ՝ յառաջաբերեալ առ նա Ցուպարթեայ յետ պատերազմաւորութեանն՝ ներնդ լսելեայ նմա, կոչէր առ ինքն զՍիւղղաս. կամէր մանաւանդ 'ի Սիւղղայէ՝ քան յիւրմէ ձեռբակալ լինել առ ներոյն և մատնել 'ի ձեռս թշնամեաց։ Իսկ Սիւղղաս 'ի վեր զգանն հանեալ առ Մարիոս, առնուլ ընդ իւր զունդ սակաւաձեռն՝ չոգաւ զինմարգուս 'ի մեծ վտանգ. վստահ 'ի խոստացուածն եղեալ՝ որ և առկարեոր ազգականին ուխտադրուած էր. եւ զանձն 'ի նորա ձեռս, զի դոյլ ոք կալցէ։ Իսկ անդ Բոկքոս զերկուսին կալեալ ընդ ձեռամբ, ուխտադրուած կամ առ մին լինել կամ առ միւսն՝ շատ ինչ ծփեալ 'ի կրկէին տարակոյս, ապա հաստատեաց 'ի գլուխ տանել զառաջին նիւթեալն, և առեալ տայր 'ի ձեռս Սիւղղայի զՅուգուրթաս։

Այլ որ յաղթանակեաց 'ի վերայ նորա՝ էր ինքնին Մարիոս. սակայն շուք փառացն՝ զոր 'ի մախանացն առ Մարիոս ընծայեցին Սիւղղայի նորա յանդ հանեալ զեղեցիկ զնահատակութիւնն, տանջէր 'ի ներքոյ զՄարիոս։ Քանզի Սիւղղաս՝ որ անդըրուին մեծապանծ և ժողովրդ մեծարեալ բարոյից, և որ այն ինչ յանուանց կենացն արգոյ գտանէր առաջին քաղաքայնոցն, այն

չափ իմն պատուատրեալ հպարտացաւ, զի և 'ի մատանին իւր քանդակեալ ճշգրտապէս զգործն, և զնոյն մատանի հանապազօր տանէր : Եւ էր 'ի նմա տպաւորեալ ինքնին Բոկքոս՝ իբրու 'ի ձեռս տալ Սիւղղայի զՅուգուրթա, և Սիւղղայի առնուլ զնա :

Արդ այս բանք 'ի սրտմտութիւն դրդէին զՄարիոս. սակայն և այնպէս՝ իբրու ոչ ինչ դեռ ևս այնչափ նախանձելի լեալ Սիւղղայի՝ վարէր զնա 'ի պէտս զինուորութեանն. և յերկրորդում հիւպատոսութեան իւրում կարգեաց ևս զնա երեսփոխան. և յերրորդումն դարձեալ՝ 'ի հազարապետ. և 'ի նորա ձեռն գործ բազում գեղեցիկ 'ի գլուխ տանէր մեծապէս շահու : Քանզի եղեալ երեսփոխան, ձերբակալ արար նա զԿոպիլլոս զօրավար Տեքտոսագացւոց. և եղեալ հազարապետ՝ ամոքեաց զՄարսացիս ժողովուրդ մեծ և յոգնաթիւ՝ բարեկամ և նիզակակից լինել Հռոմայեցւոց : Բայց յետ այնորիկ իրազգած եղեալ՝ զի դժուարաբառնալի է ինքն Մարիոսին, որ և ոչինչ մտադիւրագոյնս պատճառս 'ի ներքս ընծայէր նմա գեղեցիկ նախատակութեանց, նա խոյս և խութ ևս արկանէր բարգաւաճելոյն նորա, ողջոյն անձնատուր լինէր 'ի Կատուղոս հոմիչխան Մարիոսի՝ այր լաւ, թէպէտ և սակաւ մի յոյլ 'ի մարտս : Արդ 'ի նա ապաստան արարեալ Կատուղոս գործս մեծամեծս և կարևորս, յոյժ զհամբաւ հարեալ զօրացաւ Սիւղղաս. և 'ի կռուին կոտորեաց նա զբազումս 'ի բար-

բռրոսաց յԱլպեանսն։ Այսպէս պաշար ամ-բարոյն պակասեալ, յանձն իւր առնոյր Սիւղղաս զհոգ իրացն և կուտեաց նա կե-րակուր առլիաւ, զի և 'ի յաւելուածոյն 'ի ներքս մատուցին կատղեանք զօրացն Մա-րիոսի. ուր աղագաւ՝ որպէս ասէ Սիւղ-ղաս՝ առաւել եւս ատէր Մարիոս։

Արդ սոցուն խէթ 'ի դուզնաքէից սա-տի դրդեալ և յանտիական սկզբանց, և վա-ռեալ գրգռեալ ապա յապաժոյժ արեանց քաղաքին, և յամբոխս անհաշտելիս, 'ի տէրութիւն իմն բռնաւոր, և 'ի վեր 'ի վայր գործել զամենայն, քան զի իսկ 'ի դէմս եբեր զհանճար զիմաստութեանն Եւրիպիդեայ և զճշգրիտ ծանօթութիւն նորա զչարեացն՝ որ գան 'ի վերայ քաղաքաց. 'ի խրատել անդ նորա 'ի բաց փախչել 'ի փառասիրու-թենէ՝ իբրև 'ի ժանտաժուտն Ոգւոյ և 'ի մահահամբոյր առ հասարակ՝ որոց միան-գամ մերձ ունիցին զնա։ Այլ Սիւղղաս կար-ծեալ՝ եթէ շուք զինուորութեանն չմա-նեցէ զբռնամբ և զքաղաքականն ձգել, անդէն մեկնեալ 'ի բանակէն և պարապեալ ուշով 'ի պաշտամունս ժողովրդեանն, զհետ կրթէր զօրավարութեան քաղաքին, այլ վրիպեցաւ։ Եւ ապա նա զպատճառն 'ի ժողովուրդ անդր հանեալ, ասէր՝ եթէ գի-տելով չափ նորա զմեծապէս զիւր բարեկա-մութիւն ընդ Բոկքոսի, և ակն ունելով զի եթէ մինչև զօրավարեալ՝ զամբարտաւա-տութիւնն զանձամբ առնուցու, որսորդու-թիւնս արդեօք պայծառս զբարակաց 'ի

հանդէս տացէ և գազանամարտութիւնս զգազանացն Լիբիոյ. այնորիկ աղագաւ զայլս ընտրեցին յայն աւագութիւն՝ զի զնա ստիպեսցեն լինել ամբարապետ ։ Այլ թուի յառաջակայիցն քաջիկ խելամուտ լինել Սիւղղայի, զի ոչ զբունն խոստովանեցաւ՝ յոյր սակս մերժեցաւ յայնժամ . քանզի յետ տարւոյն կալաւ նա զզօրավարութիւնն՝ յինքն զժողովուրդն յանկուցանելով կէս մի սպասարկութեամբն , և կէս մի արծաթովն ։ Ուստի և յաւագութեան անդ բարձին էր երբեմն 'ի սրտմտութիւն բրդեալ՝ ասէր առ Կեսար , փարել ընդդէմ նորա ինքն սեպհական իշխանութեամբ . ծիծաղեցաւ Կեսար և ասէ . " Եւ կարծե՞ս յիրաւունս սեպհական քո կարծես դու զաւագութիւնդ , քանզի զնոյն գնեցեր զդա " ։

Իսկ յետ զօրավարութեանն առաքեցաւ նա 'ի Կապադովկիա ։ Որ 'ի վերոյ համբաւն՝ պատճառս արշաւանին ունէր զհաստատել Արիոբարզանայ . այլ 'ի ներքոյ՝ էր ինքնին նուաճութիւնն Միհրդատայ . այն որ նիւթեալ մեծամեծս մեքենայէր, և ծաւալէր ձգէր տէրութիւն յաւելեալ անձին և իշխանութիւն ոչինչ պակաս քան զոր ունէրն ։ Ապա Սիւղղաս ոչ տարաւ զունդ յիւրոց անտի առեալ խաղացոյց , այլ գործի 'ի ձեռն առեալ զնիզակակիցսն մտադիւր նահատակեալ ընդ նմա , և զբազումս 'ի Կապադովկացւոց և բազմագոյն ևս 'ի Հայոց՝ որ 'ի թիկունս եկեալ էին՝ տապաստ արկեալ վանէ զԳորդիոս , և

նստուցանէր Թագաւոր զԱրիստոբուզան ։ Բայց 'ի գեղեցկել նորա առ Եփրատաւ, դայլր խօսել ընդ նմա Ոտոբազոս Պարթև՝ հրեշտակ Արշակայ արքային. Թէպէտ և երբէք յառաջ ժամանակաւ բան ինչ չէր երկոց ազգաց ընդ միմեանս. և այս դարձեալ 'ի բախտ մեծ Սիւղղայի, առ որ առաջին 'ի Հռոմայեցւոց եկին հասին Պարթևք՝ դաշնաւոր լինել և նիզակակիցք։ Եւ պատմեն՝ հրամայեալ յայնժամ Սիւղղայի աթոռս երիս, մի Արիստոբուզանայ, և մի Ոտոբազեայ, և մի վասն իւր. այնպէս ունելն զնէր Պարթևին՝ բազմեալ ինքն ընդ մէջ երկոցունց ։ Ո՛յր աղագաւ ապա և Պարթևաց արքայն 'ի մահ մատնէր զՈտոբազոս՝ զի հանդուրժեաց բանին։ Բայց և զՍիւղղաս գիտոմին կէսք 'ի գովութիւն առնուին, զի այնպէս կերպարան պերճ յանձին եպեր առհամարհոտ բարբարոսաց. իսկ կէսք իբրև խրոխտ առաւել և փառամոլ եպերեցին զնա ։ Եւ պատմեն՝ եթէ անդ Քաղկիդացի ոմն այր 'ի գնդէն Ոտոբազեայ՝ ակնկառոյց 'ի Սիւղղաս և մտադիր շարժմանց ոգւոյն և մարմնոյն, և զխառնս պատկերին զննիչ ո՛չ 'ի վերին երեսս՝ այլ ըստ կանոնաց արուեստին, և 'ի վերայ կացեալ բուսոյ բարուցն, ասաց. Հարկ ուրեմն է առնդ այդմիկ լինել մեծ յոյժ. և զարմանայր եա՝ զի չև նորա լեալ է առաջին 'ի մարդիկ ։

Այլա դարձ արարեալ Սիւղղայի, ամբաստան զնմանէ կայր Կենսորինոս՝ զի կուտեաց նա ընդդէմ օրինաց՝ մթերս

ընչից 'ի բարեկամ և 'ի դաշնաւոր արքայէ. սակայն երեւս չարարեալ յատենի՝ ըսե-ցուցին զամբաստանութիւնն ։ Բայց անգուստ կագն ընդ նա և ընդ Մարիոս անդրէն միանգամ բորբոքէր՝ շնչեալ առ 'ի պատուասիրութենէն Բոկքոսի . Քանզի սա 'ի հաճոյս ժողովրդեանն Հռովմայ և Սիւղղայի առեալ նուիրեաց պատկերս 'ի Կապիտողիոն յաղթանակաբերս . և առ երի նոցա եդ և պատկեր ոսկւոյ 'ի տալ իւր Սիւղղայի 'ի ձեռս զՅուգուրթաս ։ Ցասուեալ Մարիոս և չհանդուրժեալ և գոռացեալ էր եւս եղև 'ի միջոյ զզրօշեալսն զայն բառնալ . իսկ անդուստ և կուսակիցք զկողմն զօրացուցեալ զՍիւղղայի , փոքր միւս եւս 'ի 'ի հերձուածոյ անտի 'ի հուր առ հասարակ դատէր քաղաքն . այլ սանձէր զաղմուկն մարտ պատերազմի նիզակակցացն . անդստին 'ի վաղ ժամանակաց ծխեալ , և յայնժամ սաստիկս բորբոքեալ՝ բոցանայր ընդդէմ քաղաքին ։ Այպա յայս մարտ պատերազմի 'ի մեծ և 'ի բազմադիմակ , և աղէտից ամբաւից և ահագին արկածից վտանգաւորեր Հռովմայ , ոչինչ գործ քաջութեան 'ի ներքս բերեալ Մարիոս , յայս արար զի առաքինութեանց մարտից պէտք են միանգամայն և կորովութեան անդամոցն և ուժոյն ։ Իսկ յայնժամ Սիւղղաս բազում. նահատակութիւնս ցուցեալ մեծամեծս , զհամբաւ հարկանէր իւրև զօրավար մեծ առ քաղաքացիսն , և զօրավար մեծ եւս առ բարեկամսն , և զօրավար յոյժ բարեբաս-

տեսել առ Թշնամիսն ։ Սակայն ոչ նոյն դէպք Տիմոթեայ որդւոյն Կոնոնի պատահեցին և Սիւղղայի. քանզի Տիմոթեայ Թշնամիքն բնաւ իսկ զգեղեցիկ նահատակութիւնս նորա ընծայեալ բախտին, ածեալ նկարեցին զնա 'ի ննջակի 'ի քուն, և առ նմա զբախտն՝ որ ցանցապատ ուռկաններ զքաղաքս. զայրացեալ նորա և 'ի խոր խոցեալ՝ իբրու որ տղայոյն 'ի փառաց մրցանացն կապտեցեն զնա բանիւն, զարձ նորա երբեմն ասացեալ 'ի զինուորութենէն՝ յորում մեծապէս առաքինացաւ, ասէր այսպէս առ ժողովուրդն. “ Չիք արդեօք՝ արք աթենացիք՝ բաժին բախտին 'ի նահատակութեանս ,, ։

Այլ վասն Տիմոթեայ՝ որ այսպէս պանծայր՝ ասեն վրէժխնդիր լինել նմա դիցուհւոյն, զի և գործ մի փառաւոր ոչինչ այնուհետև 'ի ներքս բերէր Տիմոթէոս. և նորին ձախողակս գնացեալ իրք և 'ի Թշնամութիւն ևս բերեալ ընդ ժողովրդեան, հուսկ ուրեմն տարագիր ելանէր 'ի քաղաքէն ։ Իսկ Սիւղղաս ինքնին ոչ միայն խընդայր լսել զօժանդակել իւր առ 'ի բախտէն, այլ և 'ի շուք մրցանացն և առ 'ի զիւր զօրավիգն հաւատարիմ գործել յաստուածակոյս կողմանէն, ինքնին զայնոսիկ բախտին ընծայէր. կամ առ 'ի պարծանս, կամ թէ անշուշտ այնպէս կրթեալ յաստուածակողմն անդր ։ Քանզի և 'ի Ցիշատակագիրս իւր ինքնին արձանագրէ, եթէ 'ի գործոց անտի իւրոց ոչ ուշով գործեալքն, այլ որք յեղակարծս, գեղեցիկ ևս յաջողեցանն նմա ։

Իսկ յայլ ինչ բարոյսն բազմադիմական էր նա և տարօրինակ. շատ ինչ յափշտակէր ունէր, և շատ ևս տայր ընծայէր. շուք դնէր դժպատեհս, դարձեալ և ոտնհար լինէր. պատիւ հարկանէր՝ որոց միանգամ ինքն պէտս ունէր. և անարգէր վայրենանայր՝ առ որս կարօտեալ ինչ էին նմա. զի և դժուարին էր համօրէն 'ի վերայ կալ բնութեան սորա, խիզախ արդեօք և հպարտ, եթէ մարդավարի իցէ և շնորհող: Քանզի և յանհաստատութենէ անտի նորա 'ի պատուհասել, է զի զատականիք դժնդակ 'ի վերայ ածելով դուզնաքեայ յանցանաց, և է դարձեալ մեծաց քարուականաց հեզաբար տարեալ, է զի հեշտաբար անմքեալ յանքներելի յանցաւորութիւնս, և է դարձեալ խուռն և փոքրոգի խակութեանց պատուհաս տուեալ մահու և ընչիցն զրաւելոյ. յայսպիսեաց ապա դատաւորեցէ ոք թերևս եթէ նա անդատին 'ի բնութենէն դոլով ցասկոտ և անհամբոյր, կամակար սանձէր զանհնուէր զխերան ըստ դէպ ժամանականին: Որպէս և 'ի նիզակակցաց մարտին՝ յորժամ նորա զօրականք բրօք և բռնաքարօք տապանին զայր երևելի զինուր երկափոխան և զօրավար կացեալ՝ Ալբինոս անուն, զանց արար և պատուհաս չածէր մեծի յանցանացն. այլ կերպարան պերճ յանձին բերեալ ասէր այսպէս, եթէ նորին առաւել արդեօք յօժարամիտք եւս լինիցին նորա զօրականք 'ի մարտ և խնամոք տառապել 'ի նահատակութիւնս և 'ի մեր-

ցանս՝ քերել յանձանց քաղցրութեամբ իւր-եանց զկեղտն զայն:

Եւ ոչ դարձեալ երեւս ինչ առնէր իւ-րոց ամբաստանութեանցն, այլ զնոսա ածեալ նկրան առնել ապաւինել զՄարիոս, և ան-սեալ ևս զձեռնարկել մարտին ընդդէմ Նոլա-կանացն, և զհետ կրթեալ զզօրավարու-թեան ընդդէմ Միհրդատայ, առաջս և շուք հարկանէր իւրում զօրականին. և ա-պա անցեալ 'ի քաղաք անդր՝ ամաց յիսնից կարգեցաւ հիւպատոս 'ի միասին ընդ Կուինտոսի Պոմպէոսի. առ այս՝ և հարսա-նիս հոյակապս առնու նա՝ կին ածեալ զԿե-կիլիա դուստր Մետեղղոսի քահանայապե-տին. ուր աղաղակս ցուցս շատ նուագաց յերգ առին խառնիճաղանճն ընդդէմ նո-րա, և բազումք ևս յաւագաց եպերէին զհարսանիսն զայն, անարժան կնոջն՝ որպէս առէ Տիտոս (Լիվիոս)՝ համարեալ զայրն, զոր հիւպատեան իսկ բարձին համարէին արժանի: Այլ նա ոչ զսա միայն յայն-ժամ ած 'ի կին, այլ առաջին 'ի պատա-նեկութեանն ած զԻլիա, յորմէ ծնաւ նմա դստրիկ մի. և երկրորդ՝ զԷլիա, և եր-րորդ՝ զԿլիլիա, զոր և արձակեաց յիւրմէն իբրու որ ամուլ իցէ, սակայն շուք եդեալ նմա և շատ գովեալ զնա և ընծայս ևս 'ի ձեռս առեալ նմա. և յետ սակաւ աւուրց ամուսնացեալ ընդ Մետելլեայ, թուեցաւ ինձ՝ եթէ մեղ ամլութեան կարկատեալ զԿլիլիայ՝ արձակեաց զի կին ածցէ զՄե-տելլիա: Բայց զՄետելլիա 'ի շուք մեծապէս

պատուոյ կալաւ հանապազ Սիւղղաս, զի և ժողովուրդք Հռովմայ 'ի խնդրել դարձուցանել զվտարանդիսն 'ի հերձուածոյն Մարիոսի՝ որոց ընդդէմ դարձաւ Սիւղղաս, ապաշաւորք մատեան 'ի բարեխօսութիւն Մետելլեայ: Եւ թուի թէ և ընդ Աթենացիս խոստիւ գնաց Սիւղղաս յառնուլ քաղաքին. զի 'ի պարապաց անտի այպանել նոցա զՄետելլիա՝ թշնամանս արձակեցին 'ի նա: Այլ վասն այսոցիկ զկնի ուրեմն:

Իսկ յայնժամ Սիւղղաս դուզնաքեայ զհիւպատոսութիւնն համարեալ առ հանդերձելովքն՝ որոց տարփայր, վառէր մեծաւ ցանկութեամբ 'ի մարտն Միհրդատեան. այլ էր նմա նախանձաւոր և խոչ ընդ ոտն Մարիոս. այն՝ որ 'ի խօլական և 'ի սանձակոտոր կրից փառացն և պատուոյն, կի՛րք անծերանալիք, թէպէտ և այր ծանրացանդաղ մարմնով և առ ծերութեանն այն ինչ հրաժեշտ 'ի զօրավարութենէ տուեալ այլոց արշաւանաց, 'ի վերայ այսր և յայնժամ կրթէր տարփմամբ 'ի մարտս տարաշխարհս և յանկոյս ծովուն: Ապա Սիւղղաս 'ի գործ ինչ իւր յայնժամ մեկնեալ 'ի բանակն, նա առ տնին նիւթէր մեքենայէր զմահահոտ հերձուածն՝ վտանգաբեր Հռովմայ որչափ ինչ ո՛չ մնասեցին զնա ամենայն մարտք պատերազմաց. զոր և կանուխ անդ 'ի Քաղաց ոմն՝ նշանօք ազդեաց: Քանզի հուր հարեալ ինքնին 'ի տիգարոսն 'ի կրելիս դրօշակաց, հազիւ ուրեմն շիջանէր: Առ այս՝ և ագռաւք երեք

ածեալ յառաջ զձագս խարբանց՝ գեղա-ռեկին, և զմիացորդն տանէին 'ի բոյն անդր։ Դարձեալ և մկունք կրծեալ զոսկրն նուի-րական 'ի մեհենին, և աւելածուքն ըմբռ-նեալ 'ի ծուղակի զքածն, և անդանօր ցկնեալ նա հինգ, եկեր զերիսն։ Այլ նշանն բնա-ւից մեհագոյն, զի յանամպրոպ օդոցն 'ի պարզ և 'ի յստակ՝ ձայն փողոյ հնչեաց ուժգնակի և եղերաձայն, զի և առ հա-սարակ պակուցեալք զդողանի հարան ընդ-աստակութիւնն։

Իսկ անդուստ Տիւրրենացւոց մեղասանքն այդ առնէին՝ 'ի հրէշից անտի ակնարկել փոփոխութեան մարդկան յազգ այլ, և տիեզերաց նորոգութեան. և ասէին՝ զայն ազգս յաշխարհի ութ թուով, աննմանս միմեանց կենօք և բարոյիւք. և միում միում 'ի նոցանէն թիւ ժամանակաց սահմանեալ յաստուածուստ, որ կատարեսցի 'ի շրջան մեծի տարւոյն. և 'ի սպառուած միոյն և 'ի սկիզբն միւսոյն, նշան սքանչելի շարժի յեր-կրէ կամ յերկնից, ուստի և այսոցիկ հոգա-ծուքն և խելամուտքն յայտնի տեսանեն ծնանել մարդկան՝ այլօրինակս և այլա-բարոյս. որոց և նուազ կամ առաւել խնա-մածուք են դիքն՝ քան առաջնոցն. քանզի 'ի փոփոխել ազգացս այսոցիկ, նա և այլ իրք՝ ըստ նոցա բանին՝ մեծապէս նորոգին. և գուշակաց արուեստն 'ի միում անդ յազ-գի շուք առաւել տարցի, օժանդակեալ 'ի նախաքարոզ բանից՝ 'ի տալ անդ դից կա-նուխ նշանս յստակահայեաց զհանդերձե-

լոցն. իսկ 'ի միւսումն՝ հեքեացեալ գոգն, գուշակութիւնս առնելով բազում անգամ վայրապարապ, և նշանս ունելով ունայնս և աղօտահայեաց գործիս ճշմարտութեան զհանդերձելոցն: Այդ օրինակ զայս Տիւրրենացւոց քաջ միապաւանքդ կցկցէին և քան զայլս գերազանցեալքն 'ի գիտութեան: Իսկ մինչդեռ ծերակոյտն խորհուրդ հարցեալ վասն այսոցիկ յըղձից և 'ի գուշակաց, և գեգերեալ կային 'ի տաճարին Ենիւոնեայ, անդուստ ճնճղուկ մի 'ի ներքս թռուցեալ առաջի ամենեցուն՝ բարձեալ 'ի կտուցն ճպուռն՝ արկանէր 'ի վայր զկէս նորա, և զաւելլն առեալ՝ թռանէր անդրէն: Այսպ յայտմանէ գուշակեցին հրաշագէտքն աղմուկ շփոթից և հերձուած մեծ ընդ ընչեղս և ընդ քաղաքական ամբոխ և ընդ չինական. քանզի վերջինքդ ձայնարձակք են իբրև ճպուռն, և առաջինքդ՝ մեննացեալք են յագարակս:

Այդ՝ յայնժամ Մարիոս յինքն ձգեալ յանկուցանէր զՍուլպիկիոս, այր եղեռնաւոր յոյժ. զի և խնդրեացի երբէք ո՛չ՝ քան զո՞ ոք 'ի մարդկանէ նա ապիրատ եւս իցէ. այլ թէ յե՞մ իմիք նա յապիրատութեան մեհագոյն անձին իւր իցէ: Այնչափ իմն առհասարակ մթերեալ կային յայրն անագորոյն կիրք, և յանգգնութիւն ժպիրհ, և ագահութիւն ընչաքաղց. և անքննաբար խորհրդով և յայրատագոյնս անկղխանայր յամենայն վատթարութիւն և յամենայն անզգամութիւն. և աշխարհաւ 'ի

վաճառ հանեալ զքաղաքացի կարգ պճնուած-մայ առաջին ազատագրելոց և վարձուորաց տանց, Թուեր հաշուեր զգլխս վաճառուածն 'ի տրամադիր մի եղեալ 'ի հրապարակի ։ Իսկն նորա Թիկնապահք երկքհազար, և համապազ պարաւեալ ունէր բազմութիւն զպատանեաց ասպետաց, որոց և անուն կարգայր՝ Դերանինկղիոսս. և օրէնս հաստատեալ՝ ըստ ուրուք 'ի ծերակուտէն ոչ պարտել առաւել քան զդրամանկիոս երկու հազար, ինքն ապա յետ մահուանն եԹող պարտս երից հարիւրոց բիւրուց ։ Սա այս այր դղրդեալ և հրապուրեալ 'ի Մարիոսէ ընդդէմ խուժանին, և 'ի բուռն կալեալ զամենայնն բռնութեամբ և 'ի սուր, արժանագրեաց օրէնս բազում անպարիս. ընդ որս և զզօրավարութեանն Մարիոսի 'ի մարտն Միհրդատեան. որ ազապաւ վճիռ զչարաթանայն տուեալ հիւպատոսացն, ինքն իւրոյ հրոսակին հորդան տուեալ ընդդէմ նոցա, մինչդեռ անդ եկեղեցացեալ կային առ տաճարին Դիոսկուրեանցն՝ սպան զքազում. ընդ որս զպատանեակ որդի Պոմպէոսի հիւպատոսին 'ի հրապարակի։

Այլ Պոմպէոս խոյս տուեալ փախեաւ. իսկ Սիւղղաս վանեալ մինչև 'ի ներքս 'ի տունն Մարիոսի, ստիպեցաւ ելանել արտաքս և լուծանել զչարաթուն ։ Ուստի և Սուլպիկիոս 'ի բաց 'ի հիւպատոսութենէն առնէր զՊոմպէոս, այլ ոչ և զՍիւղղաս, և միայն զզօրավարութիւն մարտին Միհրդատայ առեալ 'ի նմանէ՝ դարձուցանէր 'ի

Մարիոսի · սակայն անդէն արձակէր և հազա-
րապետս զօրականօքն 'ի Նոլայ՝ առնուլ 'ի նոցա
ձեռս զզօրն և յանձն առնել Մարիոսի ։
Սակայն քան զնոսա անձապարեալ Սիւղ-
ղաս 'ի բանակն անդր, զօրականքն 'ի լուր բա-
նին քարկոծ զհազարապետսն արարեալ,
անդրուստ և Մարիոս 'ի քաղաքին 'ի մահ
վարէր զբարեկամսն Սիւղղայի և զինչս նո-
ցա · և ապա անդ էր տեսանել՝ զի կէսք
ամենայն փախուցեալ լքեալք՝ 'ի բանակացն չու-
առնէին 'ի քաղաքն, և կէսք դարձեալ 'ի
քաղաքէն՝ 'ի բանակն · և Սենեկլիտոսն
ինքնին յիշխանութենէն կապեալ՝ դէտ
ակն ունէր հրամանացն առ 'ի Մարիոսէ
և 'ի Սուլպիկեայ ։

Արդ լուր առեալ զի դիմեալ խաղայ
Սիւղղաս ընդդէմ քաղաքին, առեալ ար-
ձակեաց առ նա երկուս ոմանս 'ի զօրա-
վարաց զԲրուտոս և զՍերվիլիոս արգելուլ
զչուն նորա · իսկ նոքա յաւակնագոյնս
իմն սկսան խօսել ընդ Սիւղղայի, առատա-
նայէին զօրականքն 'ի վերայ իւրեանց սպան-
նել զնոսա, սակայն առեալ և ջարդեալ
զդաւազանս նոցա և զծիրանիս պատմու-
ճանսն 'ի բաց 'ի Թիկանցն կորզեալ, և շատ
ինչ Թշնամանս մեծամեծս 'ի վերայ ա-
ծեալ, այնպէս արձակէին յետս ։ Իսկ նո-
քա այնպէս խայտառակ կապտեալ 'ի նշա-
նակաց զօրավարութեանն, անդ մեծապէս
վհատութիւն առնէին զտեսանողսն · և քաջ
խոկ անդարմանելի էր այնուհետև հեր-
ձուածն և անվանելի ։ Մարիոս հետամուտ

ողջոյն 'ի պատրաստութիւն մարտին, անդուստ և Սիւղղաս խաղայր գայր 'ի Դոդոնայէ ողջ վեց լեգէոնախումբ զօրու՝ համդերձ իշխանակցաւն ։ Եւ Թեսպեա և զօրականն վառեալ դէպ ուղիղ խաղալ 'ի քաղաքն անդր, վարանէր Սիւղղաս զանդիմանեալ 'ի ծառալուս վտանգէն ։

Այլա զոհ զոհեալ, անդանօր հարցուկն Պոստումիոս բարեգուշակ հմայից 'ի վերայ կացեալ՝ զերկոսին պձեռան կարկառեալ առ Սիւղղաս առիպէր զնա, կապել զինքն և 'ի գիտահող ունել մինչև 'ի վճար մարտին . յանձն առնոյր պատուհաս վերջին՝ թէ ոչ վաղվաղակի բարեաւ վճարեսցի ամենայնիւ։ Առ այս դարձեալ և պատմեն՝ և նմին իսկ Սիւղղայի յանուրջս երևել դիցուհւոյն՝ որում շուք դնեն Հռոմայեցիք . այլ զնորա պաշտօնն 'ի Կապադովկացւոց անտի ուսան նոքա, եթէ Լուսին իցէ այդ, եթէ Աթենաս, կամ թէ Ենիուոն . և թուէր՝ 'ի վերայ կացեալ նորա դիցուհւոյն տալ նմա 'ի ձեռս շանթ, և մի մի զանուն կարդացեալ զթշնամեացն, հրաման տալ շանթահար 'ի նոսա լինել . և թուէր այնպէս շանթահար տապաստ անկանել նոցա, և ապա աներևոյթ լինել։ Որք արագաւ և քաջալերս առեալ Սիւղղաս յերևմանէն, և պատմեալ զայն յառաւօտուն իշխանակցին, ելեալ խաղայր բանակաւն 'ի Հռոմ ։

Հասեալ մօտ 'ի Պիկենեա ընդ առաջ եղեն նմա դեսպանք, աղաչէին մի այնպէս ձեպով և կշիռ յարձակել 'ի քաղաքն անդր .

քանզի և Սինկղիտոսն ինքնին պատրաստ է շնորհել նմա զարդարն և զվայելուչն։ Նա եցոյց հաւանել նոցա և խոստացաւ նա անդէն բանակ հարկանել, և հրաման տայր զօրագլխացն ըստ սովորութեանն չափել զվայր բանակհարութեանցն. մինչև աներկմիտ հաւատով դարձան յետս դեսպանքն։ Իբրև նոքա մեկնեցան, անդէն և ինքն գունդ հատանէր 'ի ձեռն Լեւկիոսի Բասիլեայ և Գայիոսի Մոմմիոսի, և նոքօք հասեալ ունէր 'ի վերայ միոյ 'ի դրացն և պարսպացն շուրջանակի զՆեկիւլինեան բլրոյն. և ինքն խաղայր զկնի տագնապաւ։ Այլ Բասիլլոս հորդան տուեալ խուռնքն 'ի մէջ քաղաքին յառաջադէմ ունել գրաւել, անդ խուժանն յոգնաթիւ անդէն՝ ընդդէմ նորա 'ի բարձանց անտի հոսեալ աղիւսակղմինդրացն վէրգս, սանձէին զհրոսն և ընկրկէին 'ի պարիսպ անդր։

Յայն շտապ տագնապի 'ի վերայ հասեալ և Սիւղղաս և զգործն զայն տեսեալ, ձայն բարձեալ գոչէր հրձիգ 'ի տունսն լինել. և առեալ ջահ ինքն առաջի ընթանայր ամենեցուն, և հրաման տայր աղեղնաւորացն փքինս արտաշէկս աղեղնաւորել 'ի վերայ տանեացն. այնպէս իմն բերեալ 'ի կիրս անխորհուրդս, և մոլեգինս սրտմտեալ 'ի ժամուն, զի և բաց 'ի թշնամեաց տեսանէր և ոչինչ. և անխտրաբար և անկարեկիր անձամբ միանգամայն 'ի բարեկամսն, 'ի մերձաւորս, յընտանիսն, յայս կոյս յայն կոյս վառէր և հուր հարկանէր, ոչինչ որո-

չէր զանմեղս 'ի պատրաստութեանց : Իսկ յայն-ժամ Մարիոս վանեալ ընկրկեալ մինչև 'ի մեհեան անդր Երկրի , քարոզ կարդայց զազատութեան ծառայիցն' որ միանգամ մարտ եղեալ կռուեսցին . այլ 'ի վերջէ նեղեալ 'ի թշնամեացն' խոյս տուեալ եկանէր 'ի քաղաքէն :

Իբրև այս այսպէս կատարեցաւ , խումբեալ յետ այնորիկ Սիւղղաս զծերակոյտն, տայր դատակնիք ածել մահու 'ի վերայ Մարիոսի և սակաւուց ումանց , ընդ որս և Սուղպիկեայ ժողովրդապետի. որոյ մահն և դաւաճանել լինէր յայնժամ ումն 'ի ծառայից. տայր նա Սիւղղաս ազատութիւն ծառային, այլ գահավէժ ընդ պարեխս առնէր զնա : Ապա սակ բազում արծաթոյ հրապարակէր 'ի սպանութեն Մարիոսի. այլ ոչ մարդասիրապէս ինչ և ոչ դարձեալ քաղաքական հանճարով զնոյն Սիւղղաս 'ի բանին ընդդէմ ; առն . այն' յոյր ձեռս վայրիկ մի յառաջ անկեալ 'ի տուն նորա ապաւինեցաւ և արձակեցաւ խաղաղութեամբ. որ թէ երբէք զնա արձակեալ յայնժամ չէր Մարիոսի, և տուեալ նա էր Սուղպիկեայ սպանանել զնա, ինքն յառաջադէմ կացեալ էր յամենայնին. սակայն այնպէս ներողամիտ գտեալ առ նա, չետես ապա զդարձ փոխարինին' յետ սակաւ աւուրց 'ի նոյն ըմբռնեալ վտանգ : Եւ յայնմանէ Սիւղղաս 'ի խոր խոցեաց զծերակոյտն 'ի ծածուկ . սակայն յայտնի խուժան ամբոխին 'ի դէմս երեր նմա զատելութիւն և զվրէժխնդրութիւն . յորժամ

անդամոր Նոննիոս քեռորդին Սիւղղայի և Սերվիոս՝ որ 'ի Թեկնածուս զնա ունելով Թեկնածին զաւագութեան բարձից, մերժեալ խառեցան 'ի ժողովրդոց. և ընտրեցան ընդ նոցա մարդիկն՝ որոց շուք պատուոյն դժոխըմբերելի Թուէր Սիւղղայի։

Այլ ինքն Սիւղղաս կեղծաւորեցաւ խնդալ, զի այնպէս յիւր ձեռն առեալ են ժողովուրդք առնել զհաճոյս. առ այս՝ և յանձնել զատելութիւն խուժանին առ նա՝ ընտրեալ կարգէր 'ի հիւպատոս զԼեւկիոս Կիննաս 'ի հակառակ հերձուածոյն. առեալ նմա նախ վկայութիւն գնել նզովից չար և երդմամբ՝ զի բարեկամ և նիզակակից կայցէ իրաց իւրոց։ Այսպէս ելեալ Կիննաս 'ի Կապիտոլիոն, կալեալ քար 'ի ձեռին երդնոյր և նզովս ևս կարդայր անձին, զի եթէ նա չկայցէ միշտ հաստատուն բարեկամութեամբ ընդ Սիւղղայի, տարադէմ ձգեսցի նա 'ի քաղաքէն՝ զոր օրինակ ձգէ նա զքարն 'ի ձեռաց. ասաց և արկ 'ի գետին զքարն՝ առաջի ոչ սակաւուց մարդկան։ Ա՛յն ինչ զհիւպատոսութիւնն 'ի բուռն արկեալ, պատրաստեցաւ շարժել շրջել զկարգ իրացն՝ և ամբաստանութիւն ևս կազմեաց յատենի ընդդէմ Սիւղղայի, և տայր Վիրգինիոսի ժողովրդապետի ամբաստան կալ զնմանէ։

Բայց Սիւղղաս ողջոյն հրաժարական տուեալ նմա և ատենակալացն, ել և յուղի անկաւ ընդդէմ Միհրդատայ։ Եւ պատմեն՝ եթէ յաւուրսն յորս զհանդէս նա-

ւացն խաղացուցանէր Սիւղղաս յԻտալիոյ , նշանք ևս բազումք աստուածային երևեցան Միհրդատայ՝ որ գեգերեալ կայր յայնժամ ՚ի Պերգամոն ։ Քանզի և Յաղթութեան պսակաբեր ՚ի Պերգամացւոց իջեալ ՚ի բարձանց գործեօք ոմամբք ՚ի պսակել զՄիհրդատ, հասեալ մօտ ՚ի գլուխն՝ անդ խորտակէր, և պսակն ինքնին անկեալ ՚ի գետին ՚ի մէջ Թատերին ողջոյն ջախջախէր ։ Եւ ապա այս դէպ արհաւիրս ՚ի ժողովուրդն արկանէր և սրտաբեկ զՄիհրդատ առնէր . Թէպէտ և ՚ի ժամուն յառաջադէմ յոյժ էին իրք առն արտաքոյ ակնկալութեան նորա ։ Քանզի զԱսիա ՚ի ձեռաց հանեալ Հռոմայեցւոց, և զԲիւթանիա և զԿապադովկիա յարքայից նոցա , ինքն դադարեալ նստէր ՚ի Պերգամոն . մթերս ընչից և տէրութիւնս և բռնաւորութիւնս բաշխէր բարեկամացն ։ Եւ անդ յորդւոցն նորա՝ մին Թագ կալեալ զվաղնջուցն՝ նստէր յանդորրու ՚ի Պոնտոս և ՚ի Բոսփորոն, մինչև յանապատ անդր Մէոտիդեայ ։

Եւ միւս ոմն զարմեալ՝ այն էր Արիարաթէս՝ զօրու ծանու ընդ բազում արկանէր զԹրակիա և զՄակեդոնիա . անդուստ և զօրավարք նորա ստուար գնդաւ հասեալ նուաճէին և զայլ ևս գաւառս. և էր ՚ի ներքս ՚ի նոսա աւագ Արքեղայոս ինքնին՝ որ նաւուք հասեալ տիրացեալ էր ողջոյն ծովուն, և ընդ լծով ծառայութեան կացուցեալ զԿիւկլադեան կղզիսն, և որչափ ինչ ՚ի ներքս ՚ի Մալէա , մինչև և զԵւբէա ինքնին գլխո-

վքն. և խաղացեալ յԱթենայ՝ որ նստոյն էր պատերազմին, տապաստամբեցուցանէր 'ի Հռոմայեցւոց զամենայն ժողովուրդս Եղլադայ մինչև 'ի Թեսաղիա. սակայն և խոչ ընդ ոտն գտանէր նա առ Քերոնինեաւ: Քանզի անդ նմա ընդառաջ ելանէր Բրետտիոս Սուրրաս երեսփոխան Սենտիոսի զօրավարի Մակեդոնիոյ և այր երևելի քաջութեամբ և իմաստութեամբ: Սա այս Բրետտիոս ամենայն զօրութեամբ զդէմ կալեալ Արքեղայոսի, այն՝ որ իբրև հեղեղ յորդեալ սաստիկ՝ այնպէս խաղայր հորդան տայր ընդ մէջ Բիովտիոյ. և յերիս կռիւս 'ի պարտութիւն մատնեալ զնա առ Քերոնինեաւ, վանեաց ընկրկեաց զնա միւսանգամ 'ի ծով անդր:

Այլ հրաման առ նա հասեալ 'ի ձեռն Լեւկիոսի Լեւկուղղոսի տեղի տալ Սիւղղայի՝ որ առ դուրս կայր, և 'ի նա պատատանչ զմարտն առնել ըստ սահմանի վճռոյն, անդէն փութապէս լքեալ նա զԲիովտիա, դառնայր յետս առ Սենտիոս. թէպէտ և ամենայնին՝ որ առ նովաւ՝ գեղեցիկս յաջողեալ էր 'ի վեր քան զյոյս ակնկալութեանն. և Եղլադա ինքնին մտադիւրագոյնս հակամիտեալ էր 'ի փոփոխութիւն անդր վասն քաջութեան և լաւութեան առն: Այս ինչ աւադիկ նահատակութիւնք գործոցն Բրետտիոսի:

Իսկ յայնժամ առ Սիւղղաս գային հասանէին դեսպանութիւնք հրաւիրակք նմա առ հասարակ 'ի քաղաքաց, բայց յԱթե-

նայ՝ որ 'ի հարկի հնազանդութեան կայր յայնժամ Արիստիոնի բռնաւորի։ Ուստի և արագ, արագ խաղաց նա ընդդէմ նորա ազգօրէն բանակաւն, և պատնեալ և զՊիրէոս՝ պաշարումն ածէր նմա. զամենայն հնարս հնարէր և զամենայն մարտ յարդարէր առնուլ զնա. և եթէ նորա անդանօր դեգերեալ էր ոչ բաւական ժամանակ՝ անշուշտ 'ի բուռն զքաղաքն՝ որ 'ի վերոյ՝ արկանէր անվտանգ. քանզի և յոգնիս ապաստան կայր քաղաքն ամրեալ 'ի կարեւորացն։ Սակայն նա շտապեցաւ դառնալ 'ի Հռոմ՝ խրթացեալ 'ի նորութեանց քաղաքին. փութայր արագէր դիմագրաւ 'ի վտանգս բազումս և 'ի բազմադէմ մրցմունս և 'ի ծախս մեծամեծս՝ վճար տալ մարտի պատերազմին. յառում՝ Թող զայլ հանդերձանսն՝ 'ի գործս վատատակոց մեքենայիցն միայն աշխատէր հանապազօր զոյգ ջորեաց բեռ մի։ Իսկ պակասեալ նմա նիւթ փայտի, քանզի շատք 'ի գործոցն ջախջախեալք խորտակէին 'ի ծանրութենէ, և շատք ևս հրդեհակէզ անկուլ 'ի թշնամեացն լինէին՝ ապա Սիւղղաս ձեռն արկանէր և 'ի նուիրական մայրիսն. և հատ նա կորեաց զԱկադեմիա՝ վայր անտառախիտ նուաճել քան զամենայն բուրաստանս, և զԼիւկիոն։

Եւ քանզի դրամոց բազմաց պէտք էին նմա 'ի գործն, ձեռն արկանէր և 'ի նուիրական անմատոյց գանձսն Եղլադայ, ածեալ բերեալ յԵպիդաւրոսէ և յՈղիմպիոյ կարասի գեղեցիկ յոյժ և պատուա-

կամն՝ որ անդ 'ի ձօն կախեալ կային դիցն ։ Գրեաց և 'ի Դեղփիս առ Ամփիկտիոնացիսն, եթէ՝ լաւ ևս է որ անդ գանձուցն Ապողոնի տանել առ ինքն . զի կամ յանդորրու աւանդել պահեսցին առ նմա, կամ թէ ոչ գործածեսցէ անդրէն զնշխարսն, եթէ վարեսցէ ինչ 'ի պէտս ։ Իսկ առեալ արձակեր անդր զԿափիս Փոկեցի զոմն 'ի բարեկամացն՝ հրամայէ առեալ յանձն առնել զամենայնն կշռով ։ Գնացեալ գնաց Կափիս 'ի Դեղփիս, սակայն և ոչինչ ժամեցաւ մերձենալ 'ի նուիրականսն . և անդ յանդիման Ամփիկտիոնացն կայր նա և լայր զասանապէս, զի ըմբռնեցաւ 'ի հարկին յայնմ։ Յայնժամ և յասել անդ ոմանց առ նա, եթէ և քնարի հարկանել լսելի եղև նոցա յարքունեաց զարքերոցն, նա՝ կամ զի հաւատոյր հաւատս ընծայեալ բանին, կամ զի ապաստարկու դիցն և երկիւղած զՍիւղղաս ինքնին գործեսցէ, առեալ գրեաց առ նա զբանն։ Իսկ Սիւղղաս յինչեաց քերթեալ զնա, պատասխանի առնէր զարմացեալ՝ զի Կափիս ինքնին խելամուտ չէ զի երգ նուագաց ոչ ցասուցելոյ ուրուք է, այլ ուրախացելոյ . և պատուիրէր նմա համարձակ առնուլ զգանձն, իբրու եթէ հաճեալ դիցն՝ ինքնին նոցա տալ նմա 'ի ձեռս ։

Եւ այնպէս ապա զայլն ամենայն առեալ յղէին առ Սիւղղաս՝ զանխուլ 'ի ժողովրդեանն Հելլենացւոց, բայց 'ի սակաւէն արծաթի՝ որ դեռ ևս կայր անդ 'ի պարգևաց անտի Թագաւորացն . զոր և ոչ

Ջորեացն կարգացեալ ողջ ձգել տանել, զի մեծ էր յոյժ և ծանր, առեալ խորտակէին զնա Անտիոքացիքն: Եւ յայնժամ զհամբաւի հարեալ բանին, յաւէր անդ անձանց բերէին Հելլենացիք մերթ զՓիլադելփոս և զՄանիոս Ակիւլիոս, և մերթ զՊաւղոս Եմիլիոս. յորոց վերջինդ վանեալ յԵլլադայ զԱնտիոքոս, և առաջինքդ 'ի պարտութիւն զարքայն մատնեալ զՄակեդոնացւոց, ոչ անձնապահ միայն 'ի տաճարացն լինէին Հելլենաց, այլ և ընծայաբերք ևս լինէին նոցա և շատ ինչ շուք յաւելուին 'ի նոսա: Եւ յայնժամ արքայ այդոքիկ երկու զօրավարքն ըստ օրինացն 'ի գլուխ կացեալ զօրականին՝ պարկեշտ և հրամանատար անմռունչ իւրեանց զօրավարացն, առ այս՝ և արքայականին նոքա վեճակեալ ոգւոյ. առկայն և այնուհետև աննաճոյճք 'ի ծախս և ժուժկալք՝ ծախս միայն առնէին չափաւորս և պարկեշտս, քան զահն առ 'ի թշնամեաց՝ անարգագոյն ևս համարեալ զշնթել զօրականին:

Իսկ զօրավարք այնր ժամանակի ամբարձեալք յաւագութիւն զօրութեանն և բռնութեանն, և քան ընդդէմ թշնամեացն՝ առաւել ընդդէմ միմեանց պէտս ունելով զինուց, ստիպեցան 'ի զօրավարութեան իւրեանց փայփայել զխուժանն. ուստի և 'ի գրգանս զօրականին ծախեցին, զորոց գնեալ զվստահս նոցա. և այնուհետև ողջոյն զիւրեանց հայրենիսն զործեցին վաճառկան, և զանձինս՝ ծառայս արանց չարաց,

առ 'ի տկարանալ 'ի վերայ լուացն: Եւ այդոքիկ տարագիր վանեցին զՄարիոս, և անդրէն միւսանգամ առեալ զնա խաղացուցին ընդդէմ Սիւղղայի. այդոքիկ զԿիննաս սպանող եղին Հոկտաւիոսի, և զՖիմբրիաս՝ Փլակկոսի: Եւ առաջ այս անկարգութիւնք յաւէտ իմն սկիզբն կալան առ 'ի Սիւղղայէ. այն՝ որ առ 'ի կաշառաբերել յինքն յանկուցանել զօտարին զօրականն, առատաձեռնէր յիւրսն և շռայլէր. որպէս զի և այնպէս հրապուրեալ զայլսն 'ի կիրս մատնոտուս, և զիւրսն դարձեալ վատթարեալ անժուժկալութեամբ, պէտք այնուհետև եղեն նմա մթերից դրամոց՝ մանաւանդ 'ի պաշարմանն յայնմիկ:

Քանզի և վառեալ իսկ էր նա 'ի բուռն 'ի սանձակոտոր կրից ունել ըմբռնել զԱթէնս. կամ զի 'ի պատուասիրութենէ իմեմնէ դրդեալ կռուել մրցել՝ մարտ ըստուերամարտ ընդդէմ վաղնջուց փառացն քաղաքին, կամ զի 'ի սրտմտութեան բրդեալ էր առ 'ի հեգնութեանց անտի և 'ի խեղկատակութեանց՝ մերթ ընդ մերթ 'ի պարսպաց այպանօք և յայրատագոյնս արձակեալ ընդդէմ նորա և ընդդէմ Մետելլեայ՝ յԱրիստիոնէ բռնաւորէն. մարդ՝ որ ոգւոյն նորա մթերք ամենայն անառակութեան և անագորոյն կրից, և լրումն ախտից և ապականութեանց՝ չար ևս քան զՄիհրդատայ, որ 'ի նմա սպրդեալ իսկ էին: Եւ քաղաք՝ այն որ յամբաւից մարտից և 'ի բազում տէրութեանց բռնաւորաց և յայնչափ շփո-

Թիւց ամբոխից՝ անդ 'ի Նախնումն ճողո– պրեալ յանդորր եղանէր, իսկ յայնժամ 'ի մարդոյ այսմ իբրու 'ի մահահամբոյրն խօլթութենէ՝ յոդւոց պարզել ապաստան եղև . և ուր յայնժամ 'ի քաղաքին հազար դրամանկշռոյ վաճառէր գլուխ ցորենոյն , և մարդիկն անդանօր խոտ ճարակէին զՊար– թենեանն՝ բուսեալ շուրջ զդղեկաւն , և մորթ կրծէին զկօշկացն և զտիկոցն՝ եռա– ցուցեալ 'ի ջուր , ինքն համապաղօր ան– գուլ պարապէր 'ի գինեբրուս և 'ի զբօ– սանս , տանհար թշնամեաց լինելով և ծաղրս զնոքօք առնելով :

Առ այս և յանցանել յայնժամ. Նաւա– րական կանթեղի դիցուհւոյն 'ի պակասել իւղոյն , ոչինչ փոյթ եղև նմա : Դարձեալ և առ մեծ քրմանուհին , որ կէս չափ ցորե– նոյ խնդրեաց 'ի նմանէ , նա կէս չափ պղպե– ղի առաքեաց առ նա : Դարձեալ՝ և նետա– ընկեց լինելով այնպէս յառաջոյ իւրմէ վարէր փարատէր զծերակոյտն և զքահա– նայսն՝ որ մատեան առ նա ողոքաւոր 'ի գութ խանդաղատանաց վասն քաղաքին՝ հաշտութիւն խօսել ընդ Սիւղղայի : Իսկ ապա անդադան ուրեմն մատուցեալ՝ առեալ առաքէր զերկուս և զերիս ոմանս 'ի խրախ– ճանակից զօրաւորաց՝ խնդրել հաշտութի : Բայց արդէն այնուհետև իբրև գնացեալ խրն– դրէին և ոչ մի յօգտակարացն , և կացեալ մեծամեծս կատորէին՝ պանծացեալք ընդ Թէսէոս և ընդ Եւմոլպոս , և ընդ գործս նահատակութեան ընդդէմ Մարաց , եւ

յայնժամ պատասխանի Սիւղղաս և ասէ. «Գնացէք 'ի բաց ով երանելիքդ դուք, առ բերեալ ընդ ձեզ և զբանսդ զայդոսիկ. չեմ ես աստ առաքեալ յԱթէնս 'ի Հռոմայեցւոց ուսուցանել վարժիւք, այլ առ 'ի նկուն զապստամբս առնել»:

Եւ ասեն՝ եթէ յայնժամ լուեալ ումանց խօսել ընդ միմեանս ծերունեաց ումանց Աթենացւոց 'ի Կերամիկոն և գանգատել զբռնաւորէն, իբրև ոչ բարւոք պահպանողութեան եղեալ պարսպին մօտ 'ի վայրն Եպտաքալկոն, ընդ որ միայն հեշտին իցէ թշնամեացն ելանել 'ի վեր, անդէն յուռնկն Սիւղղայի հասանէին բանքն. Նա ոչինչ անհոգացեալ՝ ինքնին գայր գիշերի 'ի վայր անդր դիւրաւունկ. և մինչ զննեալ, պատրաստեցաւ յարձակել: Եւ ապա ինքն Սիւղղաս պատմէ մեզ յիւր Յիշատակարանսն, եթէ առաջին նահատակեալ ել 'ի պարիսպ անդր Մարկոս Տէյոս. և նմա ընդդէմ դարձեալ մի ոմն 'ի թըշնամեաց անտի, նա գազանացեալ զօրութեամբ զվաղակաւորն իջուցեալ 'ի գլխանոց առն, խորտակէր սուրն. սակայն և այնպէս ոչինչ տեղի տուեալ՝ անդէն անդրրդուելի կայր մնայր: Եւ այնպէս յայնմ կողմանէ՝ ըստ բանի ծերունեացն՝ առնոյր քաղաքն:

Ապա Սիւղղաս քանդեալ զպարիսպն և հիմնայատակ արարեալ զվայրն՝ որ ընդ դուռն Պիրէոնեան և ընդ Նուիրականն, մտանէր 'ի քաղաքն 'ի հասարակ գիշերի,

արկեալ արհաւիրս մեծամեծս 'ի գոչիւն ձայնի բազմախուռն փողոց և եղջերաց, և 'ի շռինդն ահագին աղաղակի առ հասարակ զօրականին, և տայր արձակ արձակ աւար հարկանել և 'ի մահ վարել. և անդ սուսերամերկք վաղէին ընթանային ողջոյն ընդ փողոցս քաղաքին։ Այլ զթիւ համարոյ սպանելոցն ճշգրիտ ոչ գիտացաք. սակայն և այսօր 'ի վայրաց անտի՝ յոր վայր ընթանայր գնայր յայնժամ ճապաղիք արեանցն՝ է մեզ գուշակել զբազմակոյտ անկելոցն։ Քանզի բաց 'ի խողխողելոց անտի 'ի կողմանս կողմանս քաղաքին, ապաժոյժ սպանելոցն անդէն 'ի հրապարակին հեղեղեալ ողողեաց առ հասարակ զկերամիկոն վայրն 'ի ներքս Դիպիւլեայ. և պատմեն եւս բազումք՝ եթէ ըստ դրունսն յորդեալ ողողեաց և զբուրաստանսն։

Այդ թէպէտ և այնպէս բազումք յոյժ էին սպանեալքն, ոչինչ պակաս էին և որք անդ զիւրովին երթային առ ցասս սրոց փառն հայրենեացն ապառ ապուռ աւերածոյն. և տայր այս բնաւ խակ սրտատռուչ արտաքնեկ առնէր և զլաւ որեալն. զի և ոչ ինչ ակնկալեալ միայն առ 'ի Սիւղլայէ մարդասիրութեան և շնորհու։ Սակայն անդ կէս մի 'ի պաղատանացն Միդեայ և Կալլիփոնեայ՝ որ վտարանդիք լեալ էին յԱթենայ և յայնժամ ողջագոյք առ ոտս անկան Սիւղլայի, և կէս մի 'ի բարեխօսել առ հասարակ խորհրդականացն Նիպականացոց, յորդեալ նա 'ի վրիժուցն և 'ի ներքոյ

ևս առեալ զհինսն Աթենացւոց՝ ածէր՝ 'ի շնորհս սակաւուցն՝ ներումն տայր բազմաց, և 'ի պատճառս մեռելոց՝ գութ ածել կենդանեաց: Իսկ 'ի նոյն Յիշատակարանսն իւր պատմէ իսկ ինքն, առնուլ նախ զԱթէնս 'ի կաղանդսն Մարտի, որ օր անկանի յամսագլուխն Անթեստերիոնի ամսոյն, յորում աւուր և բազում ինչ կատարէին Աթենացիք 'ի յիշատակ վնասուն և ամայութեանցն 'ի տեղատարափ անձրևաց, զի և կարծեն իսկ՝ յայն աւուրսն մեծի այն ջրհեղեղին պատահել:

Իսկ յայնժամ յառնուլ քաղաքին փախուցեալ բռնաւորին ապաւինեալ 'ի գղեակն, և պատեալ պաշարէր նա 'ի Կուրիոնէ, որում յանձն եղեալ էր գործն: Անդանօր հարուստ մի ընդդէմ կացեալ նորա, ապա ստիպեալ 'ի ծարաւոյն, անձնատուր 'ի թշնամիսն լինէր. յայնժամ և յեղակարծումն աստուածեան երևէր նշան. քանզի 'ի նմին իսկ աւուր և 'ի ժամու՝ յորում ձերբակալ գերի վարեցաւ բռնաւորն, անդէն արագ արագ 'ի պարզ և 'ի յստակ օդոյ գումարեալ ամպոց՝ տեղատարափ տեղայր անձրևաց, զի և առհասարակ ջրապարպատ զգղեակն ողողեաց. Ապա յետ սակաւուց հասանէր ունէր Սիւղղաս և զՊիրէոն, և շատ ինչ 'ի նմա 'ի հուր դատէր. ընդ որս և զՓիլոնեանն զինարան՝ գործ հրաշակերտ:

'Ի ժամանակին յայնմիկ Տաքսիլէս զօրավար Միհրդատայ իջեալ 'ի Թրակիոյ և

ի Մակեդոնիոյ տասն բիւր հետեւակօք, և բիւր մի այրուձիով, և յիսնաւոր գերանդեաւքն քառաձիովք, կոչէր առ յինքն զԱրքեղայոս, որ գեռ եւս խարսխեալ զնաւսն կայր առ Մունիքեաւ. ոչ ուրեք տայր 'ի ծովէն, և ոչ զարձեալ ժտէր ինչ 'ի վէճ ընդ հռոմայեցւոց գալ. այլ ժամավաճառ գեղգեղէր՝ խնդրէր հատանել 'ի նոցանէ զկերակուրն: Որում խելամուտ Սիւղղաս եղեալ լաւ եւս քան զնա, չու առնեալ բանակին՝ գնայր յամուռ վայրաց անտի, որ և ոչ 'ի խաղաղութեան ժամանակի բաւական չէին վայրքն 'ի դարման զօրուն, և եկեալ անցանէր 'ի Բիովտիա: Թուէր իմն այնպէս բազմաց՝ ձախողակի խորհել Սիւղղայի, լքեալ զԱտտիկէ՝ վայր անկոխ և դժպհի այրուձիոյն, և մխջամուխ 'ի դիւրս և 'ի դաշտավայրս եղեալ Բիովտիոյ, գիտելով չափ զբարբարոսացն ոյժ զամենայն 'ի կառսն և յայրուձի. այլ՝ որպէս ասացի՝ 'ի սովոյն փախուցեալ և 'ի կարօտութենէն՝ դիմադրաւէր մանաւանդ 'ի վտանգ մարտին: Առ այս և զանգիտէր խիթայր նա վասն Որտեսիոսին՝ այր քաջավարժ 'ի զինուորութեան և նահատակ. որում զարանեալ Թեսալին բարբարոսք յանձուկսն անդր՝ 'ի բերել ածել նորա առ Սիւղղաս զօր 'ի Թեսաղիոյ: Այս վասն այսոցիկ պատճառաց բանակ 'ի Բիովտիա հարկանէր Սիւղղաս:

Այլ յայնժամ Կափի՝ մերն հայրենակից՝ վրէպ 'ի յուսոյն զբարբարոսացն կացու-

ցեալ, ածէր բերէր զՈրտենսիոս ընդ այլ ճանապարհ 'ի կողմանէ անտի Պառնասեայ մինչև մերձ 'ի Տիտորա. այս Տիտորա չէր յայնժամ քաղաք մեծ՝ որպէս այսօր, այլ աւան մի 'ի վերայ անմատոյց ժայռի, յոր 'ի նախնումն փոկէացիք փախուցեալք 'ի Քսերքսեայ՝ ամփոփեալք ապրեցան: Անդ բանակ հարեալ Որտենսիոս, զցերեկ վանեալ ընկրկեալ զթշնամիսն, և զցայգ իջեալ ընդ գժուարս վայրաց 'ի Պատրոնիդէ՝ եկն եհաս առ Սիւղղաս, որ ընդ առաջ գայր բանակաւն: Ապա խմբեալք 'ի միասին, հասին կալան զբլուրն որ ամբարձեալ կայ 'ի միջոցի Ելատիքեան դաշտացն. բլուր արգաւանդ և շուրջ անտառախիտ, և ջուր առ ստամբն՝ որում անուն կարդան Փիլոբէոտոն. և Սիւղղաս ինքնին մեծապէս գովէ զերկրին պատուականութիւն և զդիրսն:

Անդանօր բանակ հարեալ նոցա, յերեւան այնուհետև ելանէր բարբարոսացն սակաւութիւն դնդին Հռոմայեցւոց, իբրև էր նոցա այրուձի հազար և հինգհարիւր, և հետևակազօր պակաս քան զհնգետասան հազար. ուստի և բուռն ածէին շարժէին զԱրքեղայոս զօրագլուխքն՝ ձեռնամուխ 'ի մարտն լինել: Ապա 'ի կարգի ըզզօրն ամենայն ձգեալ երկայնեալ՝ լցին նոքա առհասարակ զդաշտն այրուձիով և կառօք և վահանօք և ասպարօք. անդ և ոչ օդք ինքնին հանդուրժեալ բերէին զձայն խառնաձայն աղաղակին և զշփոթն ամբաւ խուժանին 'ի խուռն դիմել հրոսակին և

կարգել 'ի ճակատ մարտին: Նա այս՝ և նոցա փառօք լի կազմած պատրաստութեանն չքեղ և բազմահանդերձ՝ մեծապէս արհամարհէր արկանէր. քանզի 'ի նշուլից զինուց գեղեցիկ վառելոցն յոսկի և յարծաթ, և 'ի գունեան դիմակ դիմակ նարօտից մեղացի հանդերձիցն և սկիւթացի, նա և 'ի փայլուն պղնձեաց և յերկաթոյ՝ 'ի շարժել շողալ առհասարակ զօրականին, խառն 'ի փայլակնացայտ նշուլից ահագին բոցք հատանէին. որպէս զի և Հռոմայեցիք սրտաբեկ փակեալք 'ի ղակշին, և Սիւղղաս ինքնին քաջալեր բանիւքն ոչինչ ամենեւին բաւական զերկիւղն բառնալ, և կամ 'ի կռիւն երբէք խրախուսել՝ յորմէ անդի տուեալ խուսէին արհամարհօք լի, ապա և ինքն զանդի առեալ դադարէր. Թէպէտ և դժոխոմբերս՝ սակայն կայր և տեսանէր և լսէր զճոխաբար պարծանս և զտանհար ձաղել ծանակել զզինդին բարբարոսաց. բայց և չահ մեծապէս եղև նմա դադարել անդէն: Քանզի յետ այնորիկ արհամարհեալ զնոսա բարբարոսացն, քակեալ 'ի կարգէ զաստուորութեանն, (իբրու որ և ոչ զայլ ժամանակն՝ այնչափ ինչ հլուք ընաւորեցան նոքա բազմութեան իւրեանց զօրապետացն), և նուաղութեք 'ի նոցանէն միացեալք 'ի բանակին, բազումք այն էին որ հետամուտ 'ի կողոպուտ և յամբարս պաշարոց՝ տարադէմ 'ի բանակէն և աւուրց բազմաց ճանապարհ՝ վարատեալ գնացին:

Իբրեւ ասեն՝ եթէ քանդեցին նոքա յայնժամ զքաղաքն Գանտալեացւոց, եւ յաւարի առնուլին զՀերապետացւոցն, եւ կապուտ կողոպուտ Թողին նոքա զմեհեան դուշակութեանցն, թէպէտ եւ 'ի զօրագլխացն չէր հրաման։ Ոչինչ համբուրժէր բերէր Սիւղղաս, եւ 'ի խոր եւս խոցեցաւ այնպէս ակն յանդիմանն զաւերած տեսեալ զքաղաքացն. ոյր ատաղաճաւ եւ երբէք գուլ եւ գաղար չտայր զօրականին. աշխատէր առաջնորդէր 'ի գործ սաստիկ աշխատութեան՝ առնուլ զարձուցանել զԿեփիսոս գետն 'ի վայրից իւրոց, խորամս հատանել, եւ փոսս խորել, եւ զօգնս քաղէր զզօրականսն. ինքն ստիպան 'ի վերայ կացեալ՝ պատուհաս աններելի 'ի վերայ ածէր յուլացելոցն. որպէս զի 'ի քրտնաջան գործոյն տաղտկացեալք՝ յօժարեսցեն 'ի կռիւն, որ եւ եղեւ իսկ։

Քանզի յաւուրն երրորդի՝ անցեալ Սիւղղաս տեսանել զգործն, բողոք բարձեալ զօրականին աղաչէին առնուլ խաղացուցանել զնոսա ընդդէմ Թշնամեացն. ասէ Սիւղղաս, Թախանձելդ ոչ յօժարելոցն է 'ի կռիւ, այլ յուլացելոցն յաշխատութենէն. եւ մատնանիշ արարեալ նոցա զվայրն՝ որ 'ի նախնումն գոլեալ Պարապոտամեացւոց, քաջալերէր զնոսա. զի թէ արդարեւ յօժարեալք առ 'ի մարտն իցեն, առեալք զէնս՝ խաղասցեն անդր 'ի վեր։ Իսկ աւերակ յայնժամ գոլով քաղաքին, էր անդ վայրն ամայացեալ բլուր խորն զքարակոյտ գերեկաց, զատուցեալ

յԵտրիդեան լեռնէն անջրպետութեամբ Ասոպոս գետոյն, որ գնացեալ առ ստորոտովն և խառնեալ ընդ Կեփիսեայ, և անդպրնդթաց եղեալ՝ ամուր և անխառ զբլուրն գործէ 'ի բանակետղ։ Ուստի և տեսեալ Սիւղղայ՝ զի զօրականք թշնամիք պղնձապատք փութային խաղալին անդր, ինքն աճապարեաց կալնուլ զվայրն թեթեւընթաց զօրականաւն։ Այլ անդուստ վանեալ ընդ կրկեալ Արքեղայոս, երթեալ դէմ եդեալ խաղայր 'ի Քերոնիա՝ անդ Քերոնիացիք զինուորեալք առ Սիւղղայի մատուցեալ աղաչէին, մի 'ի ձեռս թողուլ թշնամեացն զքաղաքն իւրեանց։ Իսկ Սիւղղաս ձեպով առեալ զԳաբինիոս զօրավար արձակէր անդր հանդերձ Լէգէոնիւն, և թոյլ ևս տայր Քերոնիացւոցն խաղալ 'ի նոյն. առ քաջ թէպէտ և կամեցան՝ ոչ կարացին ժամանել Գաբինիոսի. այնչափ իմն քաջացաւ այլն և քան զինդրեալն աճապարեաց տալ փրկութիւն։ Այլ Յոբաս ասէ, ոչ Գաբինիոս էր, այլ Երիկիոս. որ զինչ և իցէ՝ մերն քաղաք յայնժամ փրկեալ ապրեցաւ 'ի մօտալուտ 'ի մեծ վտանգէն։

Բայց յայնժամ 'ի Լեբադիայ և 'ի Տրոփոնիոսէ գային հասանէին առ Հռոմայեցիս լուրք բարիք և գուշակութիւնք յաղթութեան. ոյց աղագաւ բազում ինչ պատմեն գաւառացիք։ Այլ որչափ ինչ ինքնին Սիւղղաս արձանագրէ 'ի տասներորդումն իւրոց Յիշատակարանաց, Կուինտոս Տիտոս այր երևելի 'ի վաճառականս

Ելլադայ՝ եկն առ նա յետ յաղթութեան Քերոնեական կռուոյն, և ազդ նմա առնէր զՏրոփոնեայ գուշակութիւնն, իբրու որ յետ սակաւուց հասանէ նմա այլ յաղթա-րել մարտ և առնել զյաղթութիւնն 'ի նմին վայրի ։ Եւ զկնի սորա ապա և յիւրմէ զօ-րականէն՝ Սալվինիոս անուն՝ գայր պատ-մել նմա 'ի դիմաց աստուծոյն՝ եթէ զի՞նչ ելք լիցին իրացն յԻտալիա ։ Եւ երկաքան-չիւր նոքա միաբան զնոյն ասէին վասն դի-ցական ձայնին, իբրու տեսանել նոցա գեղ և զմեծութիւն հանգուցանողին Ողիւմպեանն Արամազդայն ։

Ապա Սիւղղաս անցեալ ընդ Ասոս և յառաջ խաղացեալ մինչև յԵտիւղիոն, բանակ հարկանէր մօտ Արքեղայոսի. որ ամրացեալ կայր ընդ մէջ Ետիղիոնեայ և Ակոնտեայ՝ մօտ 'ի վայրն որ անուանեալ կոչի Ասսի. և զբանակետղ նոցա ցայսօր յանուանէն կարդան Արքեղայոս ։ Իսկ Սիւղղաս որ մի նստեալ անդէն, կարգէ զՄուրենաս և ընդ նմա Լէգէոնն մի և եր-կուս ևս 'ի գնդաց նեղել զԹշնամիսն՝ որ 'ի շփոթս էին. և ինքն 'ի զոհել գնայր յա-փունան Կեփիսեայ. և կատարեալ զզոհն՝ խաղայր գնայր 'ի Քերոնեիա առնուլ ան-տի զզօրականն և զննել դիտել զվայրն Թուրիոն անուն, զոր հասեալ կալեալ էին Թշնամիքն ։

Իսկ է Թուրիոն կատար դժուարակոխ և ամբարձեալ ապառաժ սոճիաձև լեառն. վասն որոյ և Հելլենացիքս անուան կարդամք

նմա՝ Օրթօփագոս, այն է՝ Ուղղապետրձ. իսկ առ ոտամբն գնայ ջուր Մորիոնի, և է ան-ցանօր մեհեան Թուրիոնեանն Ապողոնի: Եւ անուն զայս կալան դիքն առ 'ի Թու-րեայ 'ի մօրէն Քերոնիսի. զորմէ պատմեն՝ ածել զապլթական մի ընտակաւոր 'ի Քերով-նիա: Իսկ կէսք ասեն՝ եթէ կոչի տուեալ 'ի Փիւլթեայ առաջնորդ Կադմոսի՝ երևե-ցաւ նմա 'ի նմին վայրի, յորմէ և տեղին կոչեցաւ այնպէս. քանզի Փիւնիկեցիք Թուրը ասեն զկովն:

Մերձ 'ի Քերոնիա եղեալ Սիւղղաս, անդ հազարապետն գնդի քաղաքին զայր ընդ առաջ նմա հանդերձ զնդաւն վառե-լով, բերեալ նմա պսակ դափնենի: Մինչ-դեռ զպսակն առեալ Սիւղղայի՝ մեծապէս մարդասիրութեամբ ժողովէր զզօրականն և խրախոյս կարդայր 'ի կռիւն, առաջի նո-րա եկեալ երկուք ոմանք Քերոնացւոց՝ Ոմոլիքոս և Անաքսիդամոս, խոստանին կռուեմն՝ զունդ սակաւաձեռն առեալ 'ի նմանէ խաղալ գնալ վանել 'ի Թուրիոնէ՝ որ անդ զթշնամիսն. քանզի և էր իսկ անդ ուղի գողուղի 'ի բարբարոսացն, որ 'ի Պե-տրոմքեայ անցեալ առ երի Մուսայոնի՝ ա-ծէ 'ի Թուրիոն 'ի վերայ նոցա. և անդուստ հեշտաւ նոքա անկեալ 'ի վերայ թշնամ-ւոյն՝ քարաձիգ լինիցին 'ի բարձանց կամ թէ 'ի վայր ընկրկեսցեն զնոսա 'ի դաշտ անդր: Ցայնժամ և Գաբինիոս վկայութի տուեալ քաջութեան և հաւատարմութե արանցն երկոցուն, հրամայէ տալ Սիւղ-

դաս պատրաստել 'ի գործն, և յինքն ան-դէն կարգէր կազմէր զփաղանգն և առեալ զայրուձին բաշխէր այր 'ի թևսն երկոսին. յինքն առնոյր զաջոյ թևն, և զձախոյն ըն-ծայէր Մուրենեայ:

Իսկ Գաղբոս և Որտեսիոս երեսփոխանք նորա վերջապահ կային համօրէն կազմ գնդովք, զտեղի առեալք 'ի վերայ բարձանց զգուշութեանն՝ մի 'ի ներքս փակել 'ի թշնամեաց անտի: Քանզի և էր իսկ տեսա-նել զպատրաստութիւն թշնամեացն զբա-տուար այրուձիոյ և զթեթևազէն հետևա-կացն՝ թէ իմն կազմել քաջամուր և շուտ, դառնալ և երկայն շրջանաւ պատել փա-կել զհոռոմայեցիսն: Իսկ յայնմ պահու Քերոնիացիք երկոքին առեալք 'ի Սիւղ-ղայէ զԷրիկկիոս 'ի զօրագլուխ, գաղտաքար զանխուլ պարայածեալք մինչև 'ի վերայ կատարէն Թուրիոնի, անդանօր տեսան նո-քա 'ի բարձունսն. յորմէ աղմուկ շփոթեց 'ի բարբարոսն հարեալ, 'ի փախուստ խու-ձապէին, և շատք ևս 'ի միմեանց սատա-կէին. քանզի ո՛չ կացեալք յականանի, և ընդ զառ 'ի թափն խուձապեալք՝ գային անկանէին 'ի վերայ իւրեանց նիզակացն. և այր ընդ ընկեր հարեալք և բախեալք՝ զահավէժ ընդ պարեխս առնէին, մինչդեռ անդուստ 'ի վերայ թշնամին վանէր ընկըր-կէր և հարկանէր խոցէր զմերկան. որպէս զի և երեք հազարք անդանօր 'ի Թուրիոն տապաստ անկան:

Իսկ 'ի փախստէիցն կէսք 'ի սուր մաշե-

ցան Մուրճնեայ, որ յայնժամ կարգեալ խաղաղր ընդդէմ նոցա. և կէսք վանեալք 'ի բանակ անդր իւրեանց և անկեալք այնպէս խառնիխուռն հրոսիւ 'ի մէջ փաղանգին, արհաւրօք և խռովութեամբք մեծապէս լցին զնա. և շատ ևս ժամանակաձգաւ արարեալ անդանօր զզօրագլուխսն, զեան մեծապէս լինէր. քանզի յայնժամ շատապաւ Սիւղղաս յառաջ վարեալ 'ի խուձապել նոցա, և սրավարեալ ընդ անջրպետ ճակատուցն, ոչինչ կարացին բարբարոսքն 'ի գործ զգերանդազէն կառսն վարել բռնութեամբ. (քանզի այն կառք յերկայնասահման վազից բնաւորեցան թափ և ոյժ առնուլ սաստկութեամբ). ապա եթէ 'ի կարճոյ իցէ ասպարիսին՝ անազդոյք են և վատեալք, իբրու նետք ռատուցեալք յանկորով աղեղանց, զոր և յայնժամ կրեցին բարբարոսք. քանզի առաջին նոցա կառք անկեալ 'ի թափոյ առեալ շարժմանն և նկուն բաղխեալ, անդ ծակս կայթից և քերիչ ծայրու բարձեալ հռոմայեցիք և 'ի բաց ընկրկեալ զնոսա, այնպէս իբրու եթէ կառընթացից ումանց կրկսաց 'ի զնէին կացեալ իցեն՝ ձայն տային և այլոց կառաց։

Ապա յետ այնորիկ յերկոցունց ևս կողմանց 'ի կռիւ խառնեալ հետևակազօրք, յայնժամ բարբարոսք յառաջ ձգէին զերկայն գայխոնսն, գուն գործեալ կուռ ասպարափակ զիւրեանց փաղանգն պահել 'ի կարգի. իսկ հռոմայեցիք 'ի բաց զգեղարդունսն ձգեալ և զսուսերսն մերկա-

ցեալ, նորքօք վաճառեալ զդէմ գառնայեն զայլխառնացն՝ առաջ առաջ խառնել ըղ-մարտն զայրագին ըն բարկութեամբ. քան-զի և կարգեալ զատուորեալ նոքա յանկն արկեն 'ի Տաճկաստան բաղբատոսաց հնդե-տասան հազարս 'ի ծառայից՝ զոր 'ի Հռո-մայեցւոց առեալ 'ի գինուորութիւն յան-դուցին զօրավարք արքային՝ ազատութիւն քարոզեալ նոցա, և 'ի մէջ ապստամբէն վառելոցն յապահովեալ զնոսա ։ Եւ պատ-մեն՝ եթէ անդամոր մի ոմն 'ի հարիւրապետ-տացն Հռոմայեցւոց հեղձեալ զնոսա ա-սէր, եթէ "'Ի կռոնոսեան տօնին՝ միայն տեսեալ է իմ ազատութեան հաղորդս զծառայս" ։ Եւ քանզի խումբ ծառայիցն 'ի խորս անդ խոխ առ խոխ ամփածածուկ կայր, ոչինչ այնպէս նհանջեալ ընկրկեցան 'ի սաստուարագունդ հետևակէ թշնամեացն. և զի՝ և հակառակ բուռն բարուց իւրեանց մեծապէս խրախուսեալք կային յանկա-ծանր. սակայն և անդուստ արդ նընկեցք և պարսաւորք Հռոմայեցւոց 'ի վերջապահ զնդէն՝ անդուլ և կուռ արձակմամբք խռով հարեալ 'ի նոսա, ստիպէին դառ-նալ ընդ կրունկն ։

Իսկ յայնժամ և Արքեղայոս շրջան ա-ջոյ թևին տուեալ 'ի ներքս զթշնամիսն փակել, անդ Որոնտեսոս առ Տեալ տաղնա-պէն խաղայր իւրովք զնդօքն պատել պա-շարել զնա 'ի կողմանէն. այլ անդէն Ար-քեղայոս այրուձի երկու հազար հատեալ յեւրմէն ընդդէմ Որոնտեսեայ, նա զանդի-

տեալ՝ վերջոանէր տեղի տայր 'ի կողմն ըն-
րեն, տակաւ որոշեալ յիւրմէ բանակէն և
'ի վտանգ եւ անկեալ պաշարման: Լուր
առ Սիւղլամ հասեալ, առեալ անդէն զզօ-
րականն զաւրոյ թեւին՝ որ չև էր 'ի կռիւ
խառնեալ՝ խաղայր ձնդէր ձեռն տալ Որ-
տեսիոսին: Բայց Արքեղայոս քաջ խոհ
յեղանեալ յամբառնալ փոշւոյն երագզգած
եղեալ, թողեալ անդէն զՈրտեսիոս՝ խա-
ղայր դիմէր 'ի վայր անդր ուստի Սիւղլամ
մեկնեալն էր. անդ ունէր հասանել ունել
զաւրոյ թեւն զայն առանց զօրավարի: 'Ի նմին
պահու և Տաքսիլղէս երրորդ պղնձասպա-
րաւք անկանէր 'ի վերայ Մուրենեայ. որ-
պէս զի և յերկոցուն եւ կողմանց ձայն ա-
ղաղակին բարձրացեալ և լերանցն անդրէն
կրկնեալ, յայնմ մեծի տագնապի կայր
վարանէր Սիւղլամ՝ ուր 'ի նոցանէն ձեռն
տալ օգնականութեան: Այս հասա-
տեալ դառնալ յիւր կարգն, արձակէր
զՈրտեսիոս 'ի թիկունս Մուրենեայ չո-
րից գնդօք, և ինքն զկնի փութեալ զհին-
գերորդն՝ փութայր յաջոյ թև անդր, որ
ինքնին միայնակ մարտ հաւասարապատմարտ ե-
դեալ կռուէր ընդ Արքեղայոսի. ապա
յերևել Սիւղլամի յաղթական եղեալ և
'ի փախուստ զթշնամիսն ձնդեալ՝ զհետ
մտեալ վանէին մինչև 'ի գետ անդր և 'ի
լեառն Ակոնտիոն:

Բայց Սիւղլամ ոչինչ անհոգացեալ և
զմերձ վտանգին Մուրենեայ, խաղայր դի-
մէր առ նմա ձեռն. և իբրև զնա եւ զատա-

նէր յաղթական, այնուհետև հետամուտ յայնմ կողմանէ փախստէիցն լինէր 'ի միասին ընդ նմա։ Անդանօր տապաստ անկանէին 'ի դաշտին բազումք 'ի բարբարոսացն, և բազմագոյնք ևս դարձեալ 'ի սուր մաշեցան 'ի խուճապել նոցա 'ի պատնէշ անդր. զի և յայնչափ բիւրաւորաց մարդկանն ոգիք միայն բիւր մի ապրեցան անկեալ 'ի Քաղկիդէ։ Իսկ 'ի կողմանէ Հռոմայեցւոց՝ պատմէ Սիւղղաս՝ պակասել միայն չորեքտասան զինուորաց. և 'ի նոցանէ դարձեալ երկուցն գալ հասանել ընդ երեկս։ Որոյ աղագաւ և նա զիւր ախոյեանն առեալ նուիրեաց Արեայ և Յաղթութեանն և Աստղկանն. զի այնպէս գեղեցիկ 'ի գլուխ տարաւ զմարտն՝ օժանդակեալ միանգամայն 'ի բախտէն և 'ի հանճարոյն և 'ի քաջութենէն։

Այս առեալ ախոյեան մի կանգնէր վասն յաղթութեան դաշտային մարտին, ուր զառաջինն տեղի տուեալ վերջանէր Արքեղայոս մինչև 'ի վտակն Մոլեայ. և միւս ևս 'ի կատարի անդ Թուրիոնի, ուր պատեալ պաշարեցան բարբարոսք. և յախոյենին յայնմիկ հելլենացի գրովք նշանակեալ կան երկու քաջարիք՝ Ոմողիքոս և Անաքսիդամոս։ Եւ կատարէր 'ի Թեբէ հանդէս նուագաց յաղթութեանն՝ մօտ յաղբիւր Եդիպեան շինեալ հանդիսարան. և էին դատաւորք նուագացն Հելլենացիք հրաւիրեալք յայլոց քաղաքաց. քանզի թշնամութիւն անհաշտ էր նորա ընդ Թե-

բայեցւոց, յորոց և 'ի բաց եհան նա զկէս երկրին նոցա, և նուիրեաց Պիւթեայ և Ողիմպեայ. հրաման տուեալ՝ զի 'ի պտղոց երկրին տացի դիցն երկուց արծաթն զոր եհան նա ։

Յետ այսորիկ լուր առեալ Սիւղղաս՝ զի Փլակկոս 'ի հակառակ հերձուածոյն կարգեալ հիւպատոս, խաղայր անցանէր ըստուար բանակաւ ընդ Յոնիա. 'ի վերին երեսս իբրև ընդդէմ Միհրդատայ, այլ 'ի ներքոյ՝ ընդդէմ իւր ։ Զու արար խաղաց գնաց և ինքն 'ի Թեսաղիա՝ իբրու ընդ առաջ նորա ։ Հասեալ մերձ 'ի Մելիտեա քաղաք, 'ի կողմանց կողմանց դուժկանք հասանէին, բօթ զայս բերէին՝ եթէ ըզվայրան զոր եթող գնաց՝ յաւարի էառ այլ բանակ արքային ոչինչ պակաս քան զառաջինն ։ Քանզի Դորիւղայոս եկեալ հասեալ 'ի Քաղկիդէ բազմութեամբ նաւաց յոյժ, ածեալ բերեալ բանակ ութ բիւրուց արանց քաջամարտկաց և այրընտիր զօրուն Միհրդատայ, յանկարծակի հորդան տայր 'ի Բիովտիա և ընդ իւր և ըզգաւառն նուաճէր. խնդրէր միանգամ 'ի կռիւ մարտի գրգռել զՍիւղղաս, ոչինչ անսացեալ Արքեղայոսի՝ որ խնդրէր խափանել զմարտն. և առեալ հռչակ հարկանէր վասն առաջին մարտին՝ իբրու 'ի մատնութենէ իմեքէ անշուշտ այնչափ բիւրաւորաց մարդկանն 'ի մահ վարել ։ Այլ Սիւղղաս վաղվաղակի դարձեալ յետս, քաջ իսկ խելամուտ առնէր զնա՝ եթէ այր

ղջօն է Արքեղայոս, և 'ի փորձոյ անտի իւր-
մէ համօրէն 'ի վերայ եկաց զօրութեանն Հռոմայեցւոց։ Ասաց և խելամտեցոյց, որպէս զի և ինքնին Դորիւղայոս 'ի մէջ դուռնաքերայ եկեալ ընդ Սիւղղայի մօտ 'ի Տիւփոսխոն, ապա ինքն առաջին խորհուրդ տայր մի՛ վաղվաղակի մարտիւ վճարել, այլ ժամանակաձգու եղեալ այնպէս տակաւ և տուգանօք սպառել վատնել զթշնամիսն։

Սակայն և զԱրքեղայոս ինքնին յայնժամ խրախուսեալ քաջալերէր վաշտն մերձակայ Որքոմենեայ՝ յորում բանակեալ էին․ զի էր իսկ ինքնին վայրն յոյժ դիպան 'ի կռիւ մարտի բազմութեան այրուձիոյն։ Քանզի և քան զամենայն դաշտագետինս Բիովտիոյ գեղեցիկ առաւել և ընդարձակատարր բնաւորեցաւ վայրն՝ որ 'ի քաղաքէ անտի Որքոմենացւոց երկայնեալ ձգի ողջ հարթհաւասար և անմայրի մինչև 'ի ճահիճսն, յորս հոսեալ խառնի Մելաս գետ՝ որ բղխէ ընթանայ առ քաղաքաւն շատաջուր, զի և միայն 'ի գետս առհասարակ Եղլադայ նաւագնաց է նա անդստին յականէն։ Բայց ապա աճէ յորդէ յարևադարձն ամարայնոյ իբրև զՆեղղոս, և տունկս յառաջ բերէ հանգունատիպս Նեղոսին․ այլ անպտուղք են տարայն և փոքուք։ Չեն սորա ընթացքն բացաձիգք, այլ շատ ինչ վաղվաղակի գնայ անհետանայ 'ի ճահիճս անմշուշս և կնիւնաքերս․ և մասն մի ևս ոչ շատ՝ հոսէ խառնի ընդ Կեփիսեայ, մօտ 'ի վայրն՝ ուր ա-

ստապաղէս ճահիճն բերէ եղեգնախիտ որնգայց ։

Այդ բանակք երկոքին հարեալք մօտ միմեանց, զանգի առեալ կայր յանդորրու Արքեղայոս. այլ Սիւղղաս տայր փոյթ և խրամս հատանել աստ և անդ, զի մինչդեռ նոքա զայրուձին կացուցէ ՚ի հարթայատակ դաշտաց անտի, և վարեալ վանեսցէ ՚ի ճահճին։ Չհանդուրժեալ բարբարոսացն՝ իբրև թոյլ ՚ի զօրավարացն լինէր նոցա, արձակ արձակ բուռն զօրութեամբ դիմեալք՝ ոչ զխրամահատսն միայն վարատեալ փարատէին, այլ և խուռն սաստիկ հարեալ ՚ի փախուստ դարձուցին ըզբազումս ՚ի զօրականէն՝ որ անդ կարգեալ կացեալ կային։ Իսկ Սիւղղաս ՚ի վայր յերիվարէն վաղեալ, և բուռն զդրօշակէն հարեալ՝ ՚ի խուռն փախստէիցն ինքն խաղայր դիմէր ՚ի թշնամիս անդր. ձայն բարձեալ գոչէր. "Ինձ ո՛վ Հռոմայեցիք գեղեցիկ է աստէն տապաստ անկանել. այլ դուք՝ եթէ երբէք հարցցեն ցձեզ ո՛ւր զձեր՚ն լքէք ինքնակալ, յիշեցջիք ասել՝ յՈրքոմենոն"։

Ասաց, և յետս փախստեայքն դարձան. և ՚ի թիկունս ևս հասեալ նոցա գունդք երկու յաջոյ թևոյն, խաղայր յառաջ հանդերձ նոքօք, և ընդ կրունկն զթըշնամիսն դարձուցանէր։ Ապա վայր մի զզօրսն ժողովեալ՝ և ճաշ առեալ, անդրէն միւսանգամ ձեռն արկանէր ՚ի խրամսն պատել փակել զբարբարոսսն. կրկին և

նոքա խաղացին ընդդէմ գեղեցիկ կարգաւ քան զառաջինն ։ Անդ Դիոգինէս որդի կնոջ Արքեղայոսի քաջապէս արութեամբ նահատակեալ 'ի թեւն աջոյ, տապաստ անկանէր ։ Իսկ աղեղնաւորքն՝ 'ի տագնապել հռոմայեցւոց՝ ոչ բաւելով թիկնադարձոյց լինել, կուռ անդստին նետս և փքինս 'ի ձեռաց արձակեալք՝ այնպէս իբրու սուսերօք ոմամբք հարկանէին զհռոմայեցիսն. և ապա ուրեմն փակեալք 'ի զակիշ անդր իւրեանց, 'ի խոր խոցեալ ցաւագին զգիչերն անցուցանէին առ 'ի բազմութենէ վիրաւորացն և անկելոցն ։

Բայց 'ի գալ աւուրն անդրէն միւսանգամ առեալ Սիւղղաս խաղացուցանէր զիւրսն 'ի պատնէշ անդր նոցա կատարել զկորամսն ։ Անդանօր բազումք 'ի նոցանէն արտաքս վազեալք իբրու 'ի կռիւ մարտի, խառնեցաւ նա ընդ նոսա և անդէն 'ի փախուստ դարձուցանէր. և ապա 'ի նոցա տագնապ երկիւղին ոչ ոք այնուհետև քաջալերեալ անդէն զանեղի առնուլ, ինքն հասանէր տիրանայր 'ի վերայ բանակին նոցա. և այնպէս լնոյր զեղոյր նա զճահիճսն յապաժոյժ արեանց և զլիճն դիականբք անկելոցն. որպէս և մինչև ցայսօր ժամանակի՝ յորմէ հետէ ամք երկերիւր են մարտին այնորիկ՝ գտանին անդանօր թաղեալք 'ի տիղս տղմոյն աղեղունք բազումք բարբարոսացն և սաղաւարտք և սուսերք և պատենաբեկք երկաթիք ։ Արդ որ ինչ դէպք և նահատակութիւնք առ Քերոնիեաւ և

Որքոմենեաւ, առեն օրինակ զայս պատահեալ յայնժամ։

Իսկ անդ 'ի Հռոմ անիրաւութեանք և բռնութեանք հարստահարեալք 'ի Կիննայէ և 'ի Կարբոնէ արք աւագք 'ի քաղաքին, բազումք 'ի նոցանէն խոյս տուեալք 'ի բռնաւորութենէն, իբրու յանդորր նաւահանգիստ եկեալ ապաւինեցան 'ի բանակին Սիւղղայի. ուստի և 'ի սուղ ժամանակի խումբ իմն սինկղիտոսին խմբեցաւ առ նմա։ Այլ և ինքնին Մետելլա մազապուր ճողոպրեալ գաղտ հանդերձ որդւովքն գայր հասանէր առ նա, գոյժ բերեալ զի ապարանք նորա և դաստակերտք հուրբ դատեցան 'ի թշնամեացն, և աղաչէր աղերսէր 'ի թիկունս հասանել մնացելոցն 'ի տան։ Վարանեցաւ Սիւղղաս. ոչ զմշտատես հայրենիսն հանդուրժէր անփոյթ առնել, և ոչ դարձեալ զայնպիսի մեծ նահատակութիւն զՄիհրդատեանն անվճար թողուլ և անդէն տալ։ Մինչդեռ յայն վարանման ծփայր, գայր հասանէր առ նա վաճառական ոմն այր Դեղիացի Արքեղայոս անուն, ասել նմա խորհուրդս գաղտնիս 'ի դիմաց անուն Արքեղայոսի զօրավարի արքային՝ յուսով բարեաց։ Յոյժ խնդաց Սիւղղաս, զի և ինքնին փութացաւ կենակից խօսակից ընդ զօրավարին լինել. և եկեալ գնայր առ ափամբ ծովուն 'ի Դեղիոն, ուրանօր կայ մեհեան Ապողոնի։

Ապա սկիզբն արարեալ խօսել Արքեղայոս՝ թելադիր լինէր Սիւղղայի թողուլ

զԱսիա և զՊոնտոս և նաւել զնաւ'ի մարտ պատերազմին Հռովմայ. և 'ի ներքս ընծայէր նմա 'ի դիմաց արքային մեծերս ընծայից և նաւս եռաթեւոց և զօրական որչափ և կամեսցի: Իսկ Սիւղղաս յորդոր և հրապոյր խառնէր նմա՝ մի ինչ այլ երևս Միհրդատայ առնել, այլ ինքնին փոխանակ նորա թագ կապեալ, դաշն ընդ Հռոմայեցիս կռել, և տալ նոցա զնաւսն: Իսկ յայն հրապոյր քամահէր խորշէր Արքելայոս ընդ մեծ մատնութիւնն, կրկնեաց Սիւղղաս և ասէ. "Դու ո՞վ Արքելայէ, Կապադովկացի գոլով և ծառայ (կամ թէ բարեկամ՝ եթէ այնպէս կամք իցեն) խուժադուժ արքայի, ոչինչ հանդուրժես գործ մի գործել անբարի և գժպատեհ՝ բազմաց շահուց քեզ օգտաբեր. և ժամն ես զմատնութենէ խօսել ընդ իս ընդ զօրավարի Հռոմայեցւոց և Սիւղղայս ինքնին զլխովին: Իսկ ո՞չ այն Արքելայոսն իցես դու, որ փախուցեալ ապրեցար 'ի Քերովնեայ սակաւ արամբք՝ 'ի քոց երկոտասան բիւրուց անտի. և որ զաւուրս երկուս դողեալ թաքեար 'ի ներքս 'ի ճահիճսն Որքոմենացւոց. և որ զարգելս անապատ կարգեցեր զԲիովտիա 'ի բազմակոյտ դիականցն անկելոց":

'Ի բանից աստի 'ի խոնարհութիւն փոխեալ Արքելայոս, կայր ողոքէր զՍիւղղաս դառնալ 'ի մարտէն և 'ի հաշտութիւն գալ ընդ Միհրդատայ: Հաւանեցաւ Սիւղղաս, և պայմանք դաշինն հաստատեցան օրինակ

դայս: Թողուլ Միհրդատայ զԱսիա եւ ըզ-Պափղագոնիա, եւ զի տացէ 'ի ձեռս Նիկո-մեդեայ զԲիւթանիա, եւ Արիոբարզանեսին` զԿապադովկիա. եւ տալ Հռոմայեցւոց քանքարս երկու հազար, եւ պատրաստել նոցա նաւս եօթանասուն պղնձավառս` ա-մենայն կազմածովքն: Բայց եւ Սիւղղայի յանդորրու կացուցանել Միհրդատայ ող-ջոյն զարքայութիւն նորա, եւ վճռաւ զնա նիզակակից առնել Հռովմայեցւոց:

Ջայս եղեալ պայման, դառնայր Սիւղ-ղաս եւ խաղայր ընդ Թեսաղիա եւ ընդ Մա-կեդոնիա 'ի կողմն Հելլեսպոնտոսի, ա-ծեալ ընդ իւր զԱրքեղայոս` որում եւ մե-ծապէս գնէր շուք: Այլ Արքեղայոս ան-կեալ 'ի խօթութիւն դժուարին մերձ 'ի Լարիսաէ, անդ զտեղի առեալ Սիւղղաս` խնամով դարման տանէր նմա, իբրու ար-դարեւ որ 'ի զօրավարաց անտի իւրոց իցէ այլն եւ 'ի համահարզից: Բայց այս բանք առաւերածս իմն ածէին քերթողեան նա-հատակութեան նորա, իբրու որ ոչինչ ա-նարատութեանք անդանօր նահատակեալ իցէ. մանաւանդ զի 'ի դարձուցանել Սիւղ-ղայի առ Միհրդատ զամենայն զբարեկամս նորա զգերեալսն, տայր դեղամահ կորու-սանել միայն զըռնաւորն Արիստոնէ զդըժ-նեալն ընդ Արքեղայոսի. առ այս` զի եւ ընծավար դեսպանոյ յայնժամ բերէր մի յեւ-ալեայ տայր Կապադովկացւոյն այնմիկ, եւ բարեկամ եւ նիզակակից Հռոմայեցւոց հռչակեաց զնա: Այլ վասն բանիս այ-

տորին՝ 'ինքնին Սիւղաս յիւր խել Յեշա-
տակագրյան տանէ պատասխանի։

Բայց 'ի գեգերել նորա անդ գայրն հասանէին առ նա գեսպանք 'ի Միհրդատայ, հրեշտակութիւն բերեալ՝ եթէ բնախակ զպայմանս դաշինն յանձն առեալ տաքայի, խնդրէ՝ մի 'ի բաց 'ի նմանէն հանել զՊափղագոնիա. զնոյն և յաղագս նաւացն չէ ինչ հաւան. արտմեցաւ Սիւղղաս և ասէ. "Զի՞նչ լսեն բանքդ։ Պնդեալ ուրեմն է Միհրդատ ունել զՊափղագոնիա և զլանայ զնաւսն։ Միհրդատ այն՝ զոր եսն կարծէի երկիրպագանել ինձ, զի թողի նմա զաջոյ ձեռն նորա, որով 'ի հռոմայեցւոց բիւրաւորս 'ի մահ վարեաց դա։ Բայց արդ ձայն այլ արձակեսցէ դա, յանցանել խմուլ յԱսիա։ Արդ կացեալ նորա այժմ 'ի Պերգամոն, յարդարեսցէ ըստ կամի զմարտն՝ զոր ոչն եաես"։ Զահի հարեալ դեսպանացն, կային անմռունչ. այլ Արքեղայոս յողղք անկեալ Սիւղղայի՝ ամոքէր զարտմտութիւն բարկութեանն կալեալ զաջոյն և յարտասուս ցնդեալ։ Ապա ածէր հաւանեցուցանէր թոյլ նմա տալ ինքնին երթալ առ Միհրդատ և հաստատել զհաշտութիւնն ըստ պայմանին. յոր թէ երբէք չյաջողեսցի, անձին արասցէ։

Յայնժամ Սիւղղաս արձակեալ զԱրքեղայոս, ինքն հորդան տայր 'ի Մեդիկէ. և անդ յաւարի առեալ և քանդեալ բազում ինչ, դառնայր 'ի Մակեդոնիա. և մերձ 'ի Փիլիպպէ՝ անդ գտանէր զԱրքե-

ղայոս, և խմանայր զյաջողել զերացն. և զի՝ և Միհրդատ ինքնին խնդրէ անհրաժեշտ խօսել ընդ նմա ։ Իսկ պատճառ բանին էր Փիմբրիաս, այն որ սպանեալ զՖլակկոս հիւպատոս որ 'ի հակառակ հերձուածոյն, և հարուածս 'ի վերայ ածեալ զօրավարացն Միհրդատայ, դիմեալ խաղայր ընդդէմ նորա. յորմէ զահի հարեալ Միհրդատ հաստատեցաւ 'ի միտս բարեկամութիւն ընդ Սիւղղայի հաստատել։ Ապա եկեալ նոքա 'ի միասին 'ի Դարդանոն 'ի գաւառին Տրովադայ, էին ընդ Միհրդատայ ցռկանաւք երկերիւր, և բանակ զօրու ցամաքին երկուց բիւրուց հետևակաց և վեց հազար այրուձիոյ, և բազմութիւն յոյժ գերանդաւորէն կառաց. իսկ ընդ Սիւղղայի էին միայն գումարք չորք, և այրուձի երկերիւր ։

Անդ ընդառաջ նորա եղեալ Միհրդատ և կարկառեալ առ նա զաջն, հարցանէր Սիւղղաս՝ եթէ արդեօք ընդ պայմանաց դաշինն Արքեղայոսի կամք իցեն նմա վեճար առնել մարտին. իբրև լուռ կայր արքայն, յաւել Սիւղղաս. "Այլ կարօտելոցն ինքնին պարտ է առաջին խօսել, իսկ յաղթականացն շատ է գլխովին լռելն"։ Ապա Միհրդատ առեալ 'ի խօսել 'ի չքմեղս անձինն, կէս մի զդիպան պատճառէր 'ի մարտին յայնմիկ, և կէս մի զհռոմայեցիսն ստգտանէր ։ Կրկնեաց յայնժամ Սիւղղաս. "Իմ իսկ 'ի վաղնջուց լուեալ է յայլոցն բերանոյ, և զարդ ես ինքն ճշգրիտ ուսանեմ, զի ես իսկ դու Միհրդատ

ճարտարախօս հզօր, որում և 'ի գործա-
կիրառս և յանկիրառս ոչ պակասեն գե-
ղապաճոյճք բանից": Եւ 'ի դէմս բերեալ
նմա զգործս չարութեան նորա և քաջ խոկ
յաղթահարեալ զնա, հարցանէր միւսան-
գամ՝ կայցէ՞ նա 'ի պայմանս դաշինն Ար-
քեղայոսի. իբրև պատասխանի արար Այո,
անդ Սիւղղաս մարդասիրաբար ողջոյն տայր
նմա, և զձեռան զպարանոցաւն ածեալ՝
համբուրէր զնա: Ապա անդանօր կոչեալ
զարքայս կրկին զԱրիոբարզան և զՆիկոմի-
դէս՝ հաշտեցուցանէր զնոսա ընդ Միհրը-
դատայ: Յայնժամ Միհրդատ տուեալ
նաւս եօթանասուն և աղեղնաւորս հինգ-
հարիւր՝ ելեալ նաւէր 'ի Պոնտոս:

Բայց Սիւղղաս տեսեալ զզօրականն
դժկամակս բերեալ ընդ հաշտութիւնն,
( քանզի և դժոխըմբերելի յոյժ երևէր
նոցա, զի որ 'ի թագաւորս ոխերիմ Հռո-
մայեցւոց, յորոց և բիւրս հնգետասան 'ի
մահ վարեաց նա յԱսիա 'ի միում աւուր,
արձակեցաւ այնպէս խաղաղութեամբ, ա-
ռեալ ընդ իւր մթերս ընչից և զաւարն Ա-
սիոյ, զոր գողութեամբք և հարստահարու-
թեամբք չարչարեաց ամս չորս ). ապա
Սիւղղաս 'ի չքմեղս իւր ցուցանէր զօրակա-
նին, եթէ ինքնին առանձին չէ՞ր նա բաւա-
կան մարտ դնել կռուել ընդ Փիմբրիայ
և ընդ Միհրդատայ՝ 'ի դաշնաւորել նոցա
ընդդէմ նորա: Այսց՝ և չու արար խաղայր
ընդդէմ Փիմբրիայ որ բանակեալ կայր
'ի Թիւատիր. և ինքն բանակ հարեալ մօտ

պատմեն՝ եթէ զայն Մատենադարան տա-րեալ նա 'ի Հռոմ, անդ Տիւրաննիոն Գրա-մատիկոս շատ ինչ հաւաքեալ քաղեաց 'ի նմանէ. յորմէ ապա 'ի ձեռս եկեալ Ծա-խագոյն զհաւաստր մատենիցն Անդրոնի-կոս Հռոդացի, 'ի լոյս ընծայեաց արձա-նագրեաց զՑուցակսն՝ որ յածին այժմ: Այլ արդեօք հինգն Ճեմականաց երկեան տաւն-ձին արք շնորհաբանք և բանաստեղք. բայց ոչ զբռաւանք արկեին նոքա 'ի մատենից անտի Արիստոտելի և Թէոփրաստեայ, ոչ շատ ինչ և ոչ դարձեալ Ճշգրիտս. քանզի 'ի պատճառս ժառանգին Նելեայ Սկեպսացւոյ նի՝ որում զայն մատեանսն թողեալ էր Թէոփրաստոս, 'ի ձեռս անկան նոքա անի-մաստասէր մարդկանն և անուսից: Այլ մինչդեռ յԱթէնս գեգերեալ կայր Սիւղ-ղաս, ցաւ Թմբրութեան ծանրատաղ-տուկ անկանէր յոտսն Սիւղղայի, զոր Թո-Թոլէլ ոտնաառութեան՝ կոչէ Ստրաբոն:

Որ աղագաւ նաւեաց նա յԱյդիպսան և անդ գարմանէր 'ի ջերմուկսն, պարա-պեալ և զբօսեալ հանապազօր ընդ Դիո-նիսեան բանդագուշելոցն: Եւ էր երբեմն զգնալ նմա առ ծովափամբն, և անդ 'ի ձկնորսաց ածել նմա ձկունս գեղեցիկս յոյժ. զուարճացեալ Սիւղղաս 'ի պար-գևն, հարցեալ և լուեալ եթէ յԱղէաց-ւոց անտի են արքն, ասէ Սիւղղաս. "Եւ իցէ՞ ոք դեռ ևս կենդանի յԱղէացւոց". քանզի յետ Որքոմենեան մարտին՝ զհետ մտեալ նա քանդեաց քաղաքս երիս զԲիոտ-

Իսկ հանդերձեալ անցանել ընդ ծով՝ խիլթայր նա, եթէ 'ի ժամանել զօրականին յԻտալիա՝ օժանեալք ցրուեսցին նոքա ընդ քաղաքս իւրեանց. այլ նոքա երդուեան կացին միշտ կալ ընդ նմա, առ այս՝ և ոչ ըստ կամս անձանց չարիս անցուցանել ընդ Իտալիա: Այլս և տեսեալ զնա կարօտեալ դրամոյ, այր այր սակ արկեալ 'ի ներքս մատուցին նմա իւրաքանչիւր ըստ զօրին. այլ նա չէառ յանձն ; և գովեալ զնոսա և քաջալերեալ եւս 'ի լաւութիւն անդր, անցանէր գնայր՝ որպէս ասէ իսկ ինքն՝ 'ի դիմի հարեալ հնգետասան զօրապետաց թշնամեաց, որ զօրավար կային չորեքհարիւր և յիսուն գնդաց. յայտնապէս ցուցեալ նմա դից նշանս երևելիս զգեղեցիկ ելից: Քանզի զոհ զոհեալ նորա անդէն 'ի հասանել իւրում 'ի Տարենտոն, տեսաւ 'ի լերդին տպաւորութիւն պսակի դափնեայ և փնջազարդ կրկին՝ կախեալ: Եւ վայր մի յառաջ քան զանցան տեսանէին 'ի տուընջեան պահու 'ի Կամպանիա մօտ 'ի լեառն Եփէոն նոխազք երկու յաղթք՝ խեթկել ոգորել ընդ միմեանս և մրցել և զմիմեամբք ելանել հանդերձ ըստ օրինակի պատեկռուացող. այլ ցնորք դիտմամբն էր երևութացեալն, որ սակաւ երթայր և ամբառնայր յերկրէ, սփռէր ցնդէր աստ անդ ընդ օդոյ՝ հանդոյն ստուերապատկեր պարունականաց, և անհետանայր յաչաց:

Այսպէս յետ սակաւուց 'ի նմին իսկ վայրի խաղացեալ հասեալ անդր պատահէին Մա-

րիոս եւ Նորբանոս հիւպատոս ստուարաւոր բա-նակաւ ընդդէմ Սիւղղայի, նա կարգ եւ ոչ մի տուեալ զօրականին կամ գասաւորու-թեան բաշխ, առհասարակ կամակար նա-հատակեալ նոցա՝ անդէն 'ի փախուստ զթշնամին դարձուցանէր. եւ 'ի նեղն ըղ-Նորբանոս արկեալ՝ վանեալ փակէր զնա 'ի քաղաքն Կապուա, տապաստ արկեալ ո-գիս եօթն հազար։ Եւ այս 'ի յաղթու-թենէ առաւ յայտնանէ՝ ասէ իսկ ինքն՝ ոչ ցրուեցաւ 'ի նմանէ ամբոխն ընդ քաղաքս. այլ եկաց մնաց ընդ նմա, եւ ուժգին եւս ատ-նէին զթշնամեացն բազմութեամբ։ Պատ-մէ դարձեալ՝ եթէ անդ 'ի Սիլվիոն յան-դիման եղ նմա 'ի ծառայից ումն Պոնտոսի մարգարէացեալ, եւ ասէր զանձնէն իբրու 'ի դիմաց եկեալ Ենիոնեաց այց առնել նմա, զի թէպէտ եւ յաղթական ինքն ելցէ 'ի կը-ռուէն, սակայն թէ չփութայ՝ 'ի հուր դա-տեալ կապետոլիոն. որ եւ եղեւ իսկ յա-ւուր յորում գուշակեաց այրն, եւ էր այն յաւուր քան զմի Նոնոսիցն Կինտիլիո-նի, որում անուն կարգան այժմ՝ Յուլիս։

Առ այս դարձեալ եւ Մարկոս Լեւկող-ղոս մի 'ի զօրագլխացն Սիւղղայի ճակա-տեալ մօտ 'ի Փիդենտիա վեշտասան գնդօք ընդդէմ յիսնից գնդաց թշնամեացն, թէ-պէտ եւ անմէհեր 'ի զուարթամիտ քաջու-թիւն զօրականին, այլ բազմադասքն ան-զէնք պատահեալ 'ի ժամուն, դանդաղէր վարանեալ 'ի կռուն։ Մինչդեռ նա յայս մտախորհ, անդուստ սիւք հանդարտ շըն-

չուեալ 'ի մերձաւոր մարգարոտ դաշտէն, ածէր թափէր 'ի բանակ անդր Լեւկողդոսի՝ ծաղկանց բարդս բարդս, և ցանեալ սփռեալ ծաղկունք այսր անդր եկին դադարեցան 'ի վերայ ասպարաց և սաղաւարտաց, որպէս զի և իբրև պսակաւորք ոմանք յանդիմաման Թշնամւոյն երևեցան առ հասարակ զօրականք: Յորմէ և մեծապէս խրախուսեալ նոքա և խառնեալք 'ի կռուն՝ տարան յաղթութիւն, տապաստ արկեալ 'ի Թշնամեաց ոգիս բիւր մի և ութ հազար, և հասեալ կալան զբանակն: Սա այս Լեւկողդոս էր եղբայր միւսոյն Լեւկողդոսի, այն որ առաջ եհար խորտակեաց զՄիհըրդատ և զՏիգրան:

Բայց Սիւղղայի տեսեալ՝ զի դեռևս շուրջ զնովաւ պաշարեալ կան Թշնամիք և սաստիկ ստուար բանակօք, տեսեալ և զիւր նուազութիւնն, խորամանկ խորհրդով հրաւիրէր նա 'ի հաշտութիւն խաղաղութեան զՍկիպիոն՝ մի 'ի հիւպատոսաց անտի. ընկալեալ նորա զհրաւէրն, շատք ապա խըմբէին ատեանք խորհրդոյ և բանագնացք ըննէին ընդ միմեանս. այլ Սիւղղաս պատճառս բազումս բաղբաղեալ և անջրպետս 'ի մէջ արկեալ՝ երկայնել ձգել զելս իրացն, ժամ տուեալ զօրականին իւրոյ՝ որ կիրթք ևս էին իբրու զիւրեանց զօրավարին 'ի դաւ և յամենայն հրամայողս պղտորս. յինքն զզօրականն Սկիպիոնի յանդուգանէր 'ի խեղդս շրթանց և 'ի կաշառս: Քանզի աղրդեալ մնեալ նոցա 'ի ղակէշ անդր

որ նման մեծաց աղէտից գուժաւորք լիցէ։ Ուստի և Սիւղղաս պատրաստեալ յոյժ էր 'ի կռիւն, և առաջէր կոչէր զԴոլոբէլլա բացագոյնս բանակեալ՝ գալ միանալ ընդ նմա։ Իսկ Թշնամիք պահ արկեալ ուղւոյն և կրճիմն գործեալ, զօրականք Սիւղղայի զդէմ դարձեալ բանային ճանապարհ. և յայն գործ ապա այնչափ վստահացան նոքա՝ մինչև յոյժ պարտաւել նոցա. առ այս դարձեալ և տեղատարափ անձրևաց յայնժամ մեծապէս տագնապէր զնոսա։ Ոյր աղագաւ և գնդապետք առաջի եկեալ Սիւղղայի՝ աղաչէին գեգերել 'ի մարտն. ցուցանէին զզօրականսն վատեալ յաշխատութենէն և յորսայս անկեալ 'ի վերայ առապարացն։ Իբրև յակամայս Սիւղղաս հաւանեցաւ բանին, հրաման տայր բանակ հարկանել. իբրև սկիզբն արարին շերտաւորս փակել և փոս հատանել 'ի հանդիպոյ բանակին, անդուստ Մարիոս խաղայր անկանէր 'ի վերայ խրոխտ և խիզախ՝ յերիվար աշտանակեալ՝ 'ի գլուխ զօրականին, իբրու միանգամայն հատանել որսալ զնոսա յաղմկին նոցա, և հեշտին վանել վարատել զնոսա։ Բայց անդ Քաջն 'ի գլուխ զանդրջաբանութիւնն հանեալ կատարէր Սիւղղայի։ Քանզի 'ի սրտմտութիւն բարկութեան վառեալ զօրականին, թողեալ զգործ աշխատութեան, և 'ի վերայ դարաւանդաց խրամոցն զաշտէսն հարեալ, և ձգեալ սուսերս՝ ձայն տուեալք խրախուսեցին. յարձակեցան հարան 'ի դիմի, և

տատանել խառնեցան 'ի գուռն. որոց և ոչ շատ ինչ զդէմ կալեալ Թշնամեացն՝ 'ի փախուստ դառնային, հարուածս առեալ մեծամեծս: Իսկ Մարկոս խուճապեալ 'ի Գրենեսոսն, անդ զզօրսն զատանելը փակեալ. բայց 'ի բարձանց անտի պարսն մի խաղացուցեալ՝ առեալ ածէր նա զմիջոցն; և այնպէս քարշեցաւ 'ի վեր ընդ պարսպաւոյն: Այլ կէսք ասեն՝ ընդ որս և Փենեստէլլաս՝ եթէ Մարկոս և ոչ զգայց ինչ մարտին այնորիկ. այլ քանզի խոնջեալ յոյժ էր 'ի տքնութեանցն և յաշխատութեանցն, տուեալ զնշան մարտին՝ ինքն գնացեալ գետնախշտի ընկողմանէր ընդ հովանեաւ միով, և 'ի քուն Թանձրութեան մնեալ՝ հազիւ ուրեմն սթափէր ապա յետ հարուածոյն, մինչդեռ անդ 'ի փախուստ են վաղվաղակին իւրն զօրականք: Իսկ յայնժամ ասէ իսկ ինքն Սիւղղաս՝ զօրականս քսան և երկու միայն անկեալ յիւրոցն. իսկ 'ի Թշնամեացն՝ քսան հազար, և գերի՝ ութ հազար.

Ոչինչ պակաս քաջութեամբ վճարեցան ելք և 'ի ձեռս զօրավարացն իւրոց Պոմպէի և Կրասոսի և Մետեղղոսի և Սերվիլիոսի. քանզի և սոքա զեանս և ոչ մի տարեալ կամ թէ դուզնաքեայ ինչ, հարին խորտակեցին բանակս յաղթս զԹշնամեաց. որպէս զի և Կարբոնն ինքնին՝ մեծապէս Թիկնածու հակառակ կողմանն՝ փախուցեալ գիշերադիմաց 'ի բանակէն նաւեալ անցանէր 'ի Լիբիա:

Այլ 'ի վերջին մարտի պատերազմի ըզՍամնիտացւոյն Տեղեսինոս, այն՝ որ իբրև զօտեմարտ դադարեալ 'ի հանգստի՝ 'ի վէգ գայր ընդ պարտասելոց ուժեղն, գոգցես զգետնեալ տապալէր զնա Սիւղղաս առ դրունս Հռովմայ։ Սա այս Տեղեսինոս խմբեալ բազմաձեռն գնդով զօրականի ընդ Լամպոնիոսի Լեւկանոսի, խաղայր հապճեպ 'ի Պրենեստոն յանդորր հանել ըզՄարիոս՝ որ անդ պաշարեալ կայր. բայց լուր առեալ զյարձակմանն Սիւղղայի և զՊոմպէի 'ի վերայ իւր յառաջոյ և 'ի Թիկանց, և յերկոցունց կողմանց միանգամայն 'ի ներքս փակեալ, անդ քաջամարտիկ այրն և քաջահմուտ 'ի մեծամեծ մարտիցն՝ զոր մղեաց, յարուցեալ գիշերի չու առնէր ամենայն բանակաւն 'ի Հռոմ կոյս. և անդ վայրիկ մի ևս՝ անպահապան գտեալ զքաղաքն՝ հորդան տայր 'ի ներքս։ Անդանօր զտեղի առեալ տասն ասպարիսաւ հեռի 'ի Կոլլինեան դրացն՝ օթագայէր հանդէպ քաղաքին յանձնապաստան մեծապէս խնդացեալ յուսովն՝ զի այնպէս հնարիմաց խորհրդով խաղ արար զկրկին զօրավարսն։ Իսկ 'ի ծագել առաւօտն, այրուձի ընդդէմ յարձակեալ նորա 'ի պատանեաց անտի Հռովմայ 'ի հոյակապ որերոյն, նա զբազումս 'ի նոցանէն դիտապաստ արկանէր՝ ընդ որս և զԿղաւդիոս զԱպպիոս պատանի տոհմիկ և կորովի։ Ուստի և 'ի պահուն՝ մինչ այս մինչ այն իբրև շփոթն ահագին հարեալ 'ի քաղաքին, գուժայր

ճչոցք կանանցն, և այսր անդր վարատեալ վազէր առհասարակ խուժան ամբոխին՝ իբրու որ բռնութեամբ առեալ իցէ քաղաքին, անդուստ առաջին յանկն արկանէին զԲայլլոս մտրակ 'ի կուշտ վեց հարիւր այրուձիով հասեալ 'ի կողմանէն Սիւղղայի. անդանօր վայր մի զկայ առեալ Բաւլոս՝ մինչև 'ի քրտանէն զովանալ երիվարացն, անդէն ապա կազմէր պատրաստէր անկանել 'ի վերայ թշնամեացն: Յայնժամ պահու 'ի վերայ հասանէր և ինքնին Սիւղղաս. հալածեալ տագնապաւ ճաշ տուեալ առաջնոցն, առեալ կարգէր 'ի ճակատ մարտի: Անդ աղերս առաջի արկեալ նորա Դոլաբելլաս և Տուրկուատոս վայր մի հանդարտել, և մի յոգնեալ զօրականին ձեռն տալ 'ի վտանգ վերջին, իբրու որ ոչ ընդ Կարբոնիւ և ընդ Մարիոսի մարտս դնել կռուել հանդերձեալ իցէ, այլ ընդ Սամնիացւոց և ընդ Լեւկանացւոց՝ ազգ ոխերիմ Հռովմայ և գոռ մարտիկ, 'ի բաց մերժեաց՝ հրաման տայր Սիւղղաս նշան փողել հրոսակին և գռոյթ տալ, թէպէտ և օրն կարճառեալ մօտ 'ի ժամ տասներորդ:

Հա՛պա անդանօր բուռն և սաստիկ մարտին եղելոյ՝ որպիսի ոչ երբէք, յաղթական փառօք մեծաւ ելանէր Կրասսոս 'ի թեւն աջոյ. այլ ձախոյն հարեալ վատթարեալ, անդէն Սիւղղաս 'ի ձի աշտանակեալ ձերմակ՝ փութառող գոռութեան և օդապարիկ, շահատակեալ դիմէր 'ի թիկունս օգնականութեան. յորմէ երկուք ոմանք

'ի Թշնամեացն ծանուցեալ զնա՝ ձօձեալ կշիռ զնիզականն արձակէին : Նա ոչինչ միա եղեալ, որ առ նմա ապաստանեալն իրաղդած վտանգին՝ մտրակեալ զերիվարն և յառաջադէմ վազ տուեալ՝ անցուցանէր զԹափ նիզականացն, մինչև մօտ յաղի երիվարին քերեալ տիղմն՝ գնայր և վարսէր 'ի գետոյն : Եւ ասեն՝ ունել Սիւղղայի առ իւր դրօշեալ փոքրիկ զԱպողոնի յոսկւոյ՝ առեալ 'ի Դելփիսեայ, և ցանգ տանել 'ի ծոցի յամենայն 'ի մարտս . իսկ յայնժամ 'ի մեծի տագնապին համբոյրս ետ տալ դրօշելոյն, և ասել այսպէս . « Ո՞վ Պիւթեանդ Ապողոն, որ 'ի մարտս բազմադէմ՝ հոյակապ և մեծ զերջանիկն զՍիւղղա Կոռնելեան գործեցեր, ածեալ բերցես դու զնա առ դրունս իւրոց հայրենեացն՝ անդ առաջի լքանել զնա և անփառունակ 'ի կորուստ մատնել զնա հանդերձ քաղաքացւովքն » : Զայս օրինակ նա յայնժամ՝ որպէս ասեն՝ աղաղակեալ զանձն 'ի դիւն յայն՝ գնայր շուրջ վազէր 'ի մէջ զօրականին . կիսոցն աղէրս արկանէր, և կիսոցն սպառնայր 'ի վերայ կայէր, և զկէսս դարձեալ անդէն առկայացուցանէր, զի մի 'ի փախուստ մատներեսցեն : Սակայն 'ի վերջէ հարեալ խորտակեալ ձախոյ Թեւոյն, և ինքն դարձեալ խառն ընդ փախստէիցն դիմեալ ապաւինէր 'ի ղակէիշ անդր, զբազումս կորուսեալ յիւրոց բարեկամացն և յականաւոր մարդկանէն : Ոչինչ նուազունք անդանօր և յարոց ըստ քաղաքն ելեալ էին 'ի զնեն կըռ-

ուոյն, անկանէին առաթուր. զի և վասն
քաղաքէն յայնժամ վճարեալ իսկ էր, և
դէպ լինէր յայնժամ և պաշարումինն եւս
բառնալ 'ի Մարիոսէ. քանզի և շատք 'ի
փախստէիցն վտարանեալք հասեալք մինչև
անդր՝ թելադիր լինէին Ոփեղեայ Ղուկրե-
տիոսի՝ որ 'ի վերայ կայր պաշարմանն, չու
առնել վաղվաղակի. խրրու եթէ վասն
Սիւղղայի վճարեալ իցէ, և քաղաքն դըլ-
խովին թշնամեոյն 'ի բուռն անկեալ իցէ։

Բայց յայնժամ 'ի խոր գիշերին գային
հասանէին 'ի բանակ անդր Սիւղղայի հրեշ-
տակք 'ի Կրասոսէ. խնդրէին կերակուր
վասն Կրասոսի և զօրականին. քանզի 'ի
պարտութիւն նոքա զթշնամիսն մատնեալ՝
հետամուտ վանեցին զնոսա մինչև յԱն-
տեմնա, և անդանօր բանակեալ նստին։
Զայն լուեալ Սիւղղաս, և զի և 'ի թշնա-
մեացն բազմագոյնք տապաստ անկան, յա-
ռաւօտուն պահու ելեալ երթայր ինքնին
յԱնտեմնա։ Անդանօր առ նա պատգա-
մաւորք հասանէին և յերից հազարաց թըշ-
նամեաց՝ խնդրել արձակուրդ։ Նա խոս-
տումն կնքեաց նոցա յանդորր հանել զնո-
սա, եթէ մինս 'ի վերայ հասուցեալ այ-
լոց թշնամեացն՝ այնպէս առ նա յարու-
ցեալ եկեսցեն։ Նոքա հաւատս ընծայ-
եալ նմա, անկանէին ապա 'ի վերայ այ-
լոց, և անդ բազումք սատակեցան 'ի մի-
մեանց։ Ապա Սիւղղաս խմբեալ առ հասա-
րակ զնոսա, և զայլսն ևս որք միանգամ
կենդանիք մնացեալ էին՝ թուով վեց հա-

ղար, և 'ի կրկէս ամփոփեալ զնոսա, ինքն խմբէր զծերակոյտն 'ի մեհեան անդր Ենիւոնի: Իսկ 'ի պահուն յորում հրապարակախօս լինէր նա, անդուստ մարդիկն՝ որոց յանձն եղեալ էր՝ սուր 'ի վերայ եդեալ կոտորէին զվեց հազարսն: Անդ ապա ահագին շռինդն յուզեալ վայից և գուժից և աղաղակի այնչափ մարդկանն խողխողելոց յանձուկ 'ի վայրին, ահաբեկ արտալթափ լինէր սինկղիտոսն. այլ ինքն Սիւղղաս անվրդով և 'ի կերպարան դիմացն անդրդուելի, ասէր ուշ ունել նոցա իւրոց բանիցն. մի ինչ խռովել հոգալ՝ որ ինչ արտաքոյ կատարի, զի 'ի նորայն հրամանաց խրատին անզգամք 'ի մարդկանէ: Յայնժամ ապա և 'ի կարծ թանձրամտաց ոք Հռոմայեցւոց և 'ի խօթապատացն հասատի 'ի վերայ կայր, զի զլուծ բռնաւորութեանն ոչ եթէ սասանեցուցին ինչ յանձանց, այլ միայն փոխեցին:.

Արդ՝ Մարիոս անդատին 'ի սկզբանէն խիստ և անհամբոյր, ոչինչ փոխեցաւ ապա 'ի բարգաւաճել իւրում յաւագութեան և 'ի զօրութեան, նա և ևս ժանտացաւ յանհնուէր բարոյսն: Իսկ Սիւղղաս՝ որ չափաւոր իմն և քաղաքական ընտաւորեցաւ դէմս յանձին բերել յառաջին բախտին, և առաջնորդ կարծեցուցանէր իմն զանձն թիկնածու աւագանւոյն և ժողովրդասէր, առ այս դարձեալ՝ և 'ի մանկական տիոցն բարեմոյն կացեալ և ծաղրասէր, և կարեկիր անձն և դորովական, և յարտասուս

հեշտօքն. իսկ առաւ ահագինս փոփոխեալ՝ տայր առաւ իրաւացի սոգիւս 'ի վերայ աճել աւագութեանց բարձից, իբրու որք ժամանացուցանել բնաւորեցան զառաջին բարեսահմութիւն ոգւոցն, և խելայեղս գործել և փքուռոյցս և անապօրինս: Իսկ թէ այս շարժումն ինչ իցէ և փոփոխութիւն բնութեանն արդեօք առ 'ի բախտէն յառաջ եկեալ, կամ թէ մանաւանդ որոկակից զանխուլ չարութեանն առակումն 'ի մեծի աւագութեանն, այլում մատենագրութեան թողլի է 'ի սահմանել:

Իսկ յետ այսորիկ Սիւղղաս զհետ կըրթեալ 'ի կոտորած մարդկանն, և զփակամբք լցեալ զքաղաքն՝ անթիւ և անսահման. քանզի անդ և բազումք՝ որք չունէին ինչ բանընդ Սիւղղայի, 'ի մահ վարէին 'ի շնորհս իւրոցն առ թշնամութեան ինչ. և յայնժամ անգուսա պատանի ոմն Գայիոս Մետեղղոս անուն համարձակեալ հարցանէր զՍիւղղաս 'ի Աինկղիտոսին. Իսկ ո՞ր սահման աղէտիցն իցէ. ցո՞ր վայր յառաջ եւս խաղացէ, և ե՞րբ արդեօք ակն կալցեն դուլ իրացն լինել. “Քանզի մեք ինքնին՝ ասէր պատանին՝ ոչ բարեխօս եմք ինչ վասն որոց քո 'ի մտի եդեալ է 'ի կորուսանել, այլ աներկմիտս միայն գործել՝ զորս քո սահմանեալ է 'ի կեցուցանել”: Առ այս պատասխանի տայր Սիւղղաս, եթէ և ոչ ինքնին գիտէ տակաւին՝ զորս ապրեցուցանելն հանդերձեալ իցէ: Կրկնեաց Մետեղղոս. “Գոնեա ուրեմն յայտնեսցես մեզ զորս

պատուհասել հանդերձեալ իցես ": Տայր պատասխանի Սիւղղաս՝ առնել զբանն : Այլ կէսք ասեն՝ եթէ զվերջինդ ոչ Մետեղղոս խնդրեաց, այլ Ափիդիոս ոմն 'ի մարդելուզաց անտի Սիւղղայի :

Արդ անդէն վաղվաղակի Սիւղղաս առեալ տարագիր գրէր ութսուն այր 'ի քաղաքացեաց անտի, առանց խորհրդոյ աւագանւոյն : Առհասարակ յայնժամ ապրանեալք, նա օր մի հանդարտեալ՝ վտարանդի գրէր և այլ ևս երկերիւր և քսան. ապա և յերրորդում նուագին՝ նոյնչափ : Եւ հրապարակախօս եղեալ ասէր՝ վտարանդի գրել առհասարակ զամենեսեան՝ զորս յուշ էած. և որք յայնժամ մոռացօնք են նմա՝ գրեսցէ յորժամ յիշեսցէ : Առ այս՝ և որ միանգամ ժողովեալ ապրեցուսցէ 'ի տարագրելոց անտի, դատակնիք մահու վասն մարդասիրութեանն ած 'ի վերայ մարդոյն. չեթող 'ի բաց ոչ զեղբայր, ոչ զորդի, ոչ զծնողս : Իսկ որ սպանցէ 'ի նոցանէ, վարձ սահմանեաց մարդոյն երկուց քանքարաց, թէպէտ և 'ի ծառայից ոք սպանցէ զտէրն կամ յորդւոց ոք զհայրն : Իսկ որ առաւել քան զամենայն անիրաւութեամբ լի, զի և զորդիս տարագրելոցն և զթոռունս վատանուն քարոզեաց, և զամենեցուն զգոյսն յարքունիսն գրաւեաց :

Առ այսոքիւք և ոչ Հռոմմայ միայն քաղաքացիք տարագիր գրեցան, այլ և յամենայն իսկ քաղաքացն Իտալիոյ : Չեկաց դից մեհեան՝ անշաղախ յարենէ, չեկաց

երդ Նուկիրական՝ վանատուր հիւրոցն, չե–
ղև տուն հայրենի՝ ապաւէն փրկութեան.
անկան դիտապաստ՝ ընդ ապաժոյժ եկլին
առհասարակ արք 'ի ծոցս կանանց, և որ–
դիք 'ի գիրկս մարց: Իսկ որ յամբաւ կոտո–
րածին տապաստ անկան յաւելութեանն
սակս և 'ի Թշնամութեանն, նուաղունք էին
առ որովք միանգամ 'ի սպանող վարեցան
'ի պատճառս արարոց իւրեանց. զի և մար–
դախոշոշքն ինքնին տային վկայութիւն,
եթէ "Մահ մարդոյդ այդմիկ առթեաց
իւրն գեղեցիկ դաստակերտ. և սմա դը–
րախտն պարտիզին նորա, և միւսոյդ դար–
ձեալ՝ իւրն ջերմուկք ջրոցն": Իսկ յայն–
ժամ և Կուինտոս Ակուեղիոս աւագ՝ որ
ձեռնամուխ ինչ չէր 'ի գործ և անբաժ
զինքն կարծէր 'ի կռւոյ անտի. բայց զի ախ–
տակից կարեկից էր մշտատեսիցն, երթեալ
երբեմն 'ի հրապարակ անդր և կացեալ վեր–
ծանէր 'ի պնակին զհամար տարագրելոցն.
և զինքն ևս տեսեալ 'ի համարին, վայեաց
այրն, "Եղո՜ւկ եմ ես, և զիս ինքնին իմ
կալուած որ յԱլբանոն՝ հալածէ աւա–
դիկ". Ապա վայր մի յառաջ քայլեալ 'ի
փողոցին, անդ խողխողեալ 'ի հետամտիցն՝
անկանէր տապաստ: 'Ի նմին պահու և Մա–
րիոս ինքնին 'ի ձեռս անկեալ՝ երթայր
զիւրովի:

Յետ այնորիկ Սիւլղաս գնացեալ 'ի Պրե–
նեստոն, զառաջինն 'ի քնին առեալ պա–
տուհաս 'ի վերայ ածէր քաղաքացւոցն.
այլ ապա՝ իբրու անպարապացեալ 'ի քըն–

նել, խմբեալ 'ի մի վայր անխտրաբար՝ հռոմայն տայր առհասարակ ընդ սուր հանել, և էին նոքա բիւր մի և երկու հազար. միայն ապրեցուցանէր զայրն՝ առ որում հիւր ընկալեալն էր. իսկ այն այր՝ ազնուական մտածութեամբ լի՛ կայր և ասէր, շնորհս ինչ զանձին փրկութեան երբէք նա ոչ ունել առն՝ որ սատակիչ հայրենեացն իցէ. զայս ասաց՝ և խառնեցաւ և ինքն մահակից լինել եղբարցն։

Իսկ որ առաւել քան զամենայն զժպատեհ է օտար, դէպքն Լեւկիոսի Կատիլինեայ։ Սա այս այր՝ մինչև յայտնեալ յայնժամ ելից իրացն՝ սպանեալ զիւր եղբայրն, գիմեաց ապա առ Սիւղղաս աղաչէր վտարանդի գրել զսպանեալն՝ իբրու եթէ կենդանի դեռ ևս իցէ. և գրեցաւ այնպէս։ Որ աղագաւ և Կատիլինա՝ հաճել զՍիւղղաս՝ չոգաւ և սպանանէր զՄարկոս զոմն Մարիոս 'ի հակառակ հերձուածոյն, և ըզգլուխն առեալ բերէր առ Սիւղղաս՝ որ բազմեալ կայր 'ի հրապարակին. և գնացեալ 'ի մերձաւոր մկրտարանն Ապողոնի՝ անդ լուանայր զձեռսն։

Բայց Սիւղղաս մահուամբ գործեալ զայսոսիկ, առ այսոքիւք և վիշտս այլ մեծապէս հասուցանէր մարդկանն։ Քանզի և իշխանապետ անձամբ զանձն համբաւեաց. աւագութիւն խափանեալ յամաց հարիւր և քսանից, զոր և անդրէն նորոգեաց։ Եւ վճռաւ տուաւ նմա անպատուհաս արձակուրդ՝ որչափ ինչ միանգամ գործեաց յա-

առաջնագոյն ․ իսկ և որ յառաջոյ՝ իշխանու-
թիւն տուեալ նմա ծայրաւէր, սպանանել,
յարքունիս գրաւել, գետոյն բաշխել, շի-
նել և քանդել, և բառնալ և պարգևել
ազատութիւնս, որում և կամք իցեն նմա ։
Իսկ 'ի պարգևել իւրում զզօրաւոր գոյսն,
այնպէս իմն յաւակնագոյնս գնայր և ձո-
խաբար իշխանութեանն բազմեալ յիւրում
բեմին, զի և քան զզօրութիւն՝ առաւել ևս
դժոխականութեանցն էին ձիրք պարգևաց նորա ․
պարգևեալ կանանց դեղանեաց, և քնա-
րահարաց նուագածուաց, և միմոսաց խեղ-
կատակաց, և չարաց ազատապրելոց՝ զատա-
ցուածս կալուածոց ժողովրդեանն և ըղ-
հարկս քաղաքաց ։ Եւ կիսոյ գործեալ տայր
ածել կին՝ յակամայս հարանցն ․ իսկ և
յինքն կամեցեալ յանգուցանել զմեծն
Գոմնենոս, տայր նմա արձակել 'ի բաց զկին
իւր ․ և ինքն ընծայէր նմա զԵմիլիա ըղ-
դուստր Մետեղեայ կնոջ իւրոյ և զԱկա-
բանին, 'ի բաց հանեալ զնա 'ի յղութեան
նորա 'ի Մագնոսէ Գլաբրիոնեայ՝ որում
հարանացեալն իսկ էր ․ այլ Եմիլիա մեռա-
նէր 'ի ծննդեանն առ Գոմնենոսի ։

Իսկ յայնժամ Թեկն զհիւպատոսու-
թեան ածեալ Լուկրետիոս Ոփելլաս, այն
որ պաշարեալ պահեաց զՄարիոս, արգել
նմա Սիւղղաս ։ Այլ սա իբրև թիկունս 'ի
խուժանէն գտեալ Լուկրետիոս՝ չոքաւ ան-
ձամբ 'ի հրապարակ անդր 'ի ձեռս բերել
զհինգերորդն, անդուստ Սիւղղաս զմի 'ի հարիւ-
րապետացն արձակեալ՝ տայր սպանանել

զնա, ընդ որ բազմեալ յիւրում բեմին 'ի տաճարին Դիոսկուրեանց, և 'ի դիտարանէն 'ի զնին եզելոցն կացեալ։ Ապա ձերբակալ զհարիւրապետն տարեալ և ածեալ զառաջեաւ բեմին նորա, նա լռեցուցեալ զաղմուկն, ասէր՝ ինքնին հրաման տուեալ բանին, և պատուիրէր Թողուլ 'ի բաց զհարիւրապետն։

Այլ էր նորա յաղթանակին հանդէս չքեղ զգլխովին 'ի բազմակատար աւարացն անտի արքունեաց և 'ի նոր և 'ի չքնաղ։ Բայց զարդ մեծապէս և հանդիսարան գեղեցիկ 'ի նմա՝ էին խումբք արանց վտարանդելոցն։ Քանզի 'ի հոյակապից անտի և 'ի ձոխից քաղաքին նորա զհետ գնային պսակաւորք, կարդային զՍիւղլաս իւրեանց փրկիչ և հայր, իբրու որք 'ի ձեռն նորա միւսանգամ ածան 'ի հայրենիսն և անդրէն ժառանգեցին իւրաքանչիւր զկանայս իւրեանց և զմանկունս։

Իսկ յետ այնորիկ խմբեալ եկեղեցի մեծ, և ինքնին անդանօր զհամար տուեալ զիւրոց նահատակութեանցն, ոչինչ պակաս ճշգրտիւ և խնամով 'ի Թիւ արկանէր զամենայն զգեղեցիկ բախտին բերմունսն, 'ի նոյն և զամենայն զքաջութեան զիւրոց մըրցանացն. և 'ի վերջէ հրաման տայր Բարեբախտ զինքն վերաձայնել, զի և զայն յայտ առնէ անունդ՝ Φῆλιξ։ Իսկ 'ի գրել իւրում ինչ առ Հելլենացիս և 'ի պատասախանի առնել, ինքնին իւր անուն կարդայ Ἐπαφρόδιτος, իբրու՝ Աստղկասէր։ Առ այս

և յախոյեանս՝ զոր ունիցի այժմ առ մեզ, այսպէս արձանագրեալ կայ. Լուկիոս Կոռ-նէլիոս Սիւղղաս Էփափրոդիտոս: Դարձեալ առ այս՝ և երկուորեակս ծնեալ նմա Մե-տելլեա՝ արու և էգ, արուին անուն դնէր՝ Փաւստոս. և իգին՝ Փաւստա. քանզի զբա-րեբաղդն և զգուարթն կոչեն Հռոմայեցիք՝ Ֆաւստոմ: Եւ այնչափ առաւել վստահ էր նա 'ի դէպեցիկ բախտն իւր, քան 'ի նահատակութիւնս մրցանացն, որպէս զի և յետ այնչափ մարդկան 'ի մահ վարելոյ, և նորոգութեանց այնչափ և մեծամեծս 'ի քա-ղաքին հասանելոյ, ոչինչ զանգիտեաց 'ի բաց զիշխանապետութիւնն դնել, և ողջոյն 'ի կամս ժողովրդեանն տալ ատենին զընտրու-թիւնն առնել զհիւպատոսացն՝ յորում և մերձակեցաւ իսկ ոչ ինքն. և գնայր շրջէր նա այնուհետև 'ի հրապարակին իբրև զմի 'ի ռամկականաց. և անվեհեր զանձն առա-ջի ընծայէր՝ որ ոք միանգամ արանեալ ընդ-նմա՝ համար ինչ զիրաց 'ի նմանէ պա-հանջէր.:

Արդ յայնժամ ընդ հակառակս խոր-հրդոյն իւրոյ ընտրեալ 'ի հիւպատոս Մար-կոս Լեպիդոս՝ այր ժպիրհ և իւր ոխերիմ, ոչ զի Լեպիդոս ինքնին արժանի ինչ էր բարձին, այլ զի ժողովրդեան զմիտս կամե-ցաւ հաճել զՊոմպէին, որ յոյժ ջանայր վասն Լեպիդեայ. տեսեալ ապա Սիւղղա զՊոմպէոս յանձն զուարճացեալ ընդ յաղ-թութիւնն, կոչեալ զնա առ ինքն՝ ասէր. " Բա՛րէ քանի՜օն գեղեցիկ է՝ ո՛վ պատանեակ

գու, այդ քո քաղաքական հնարիմացու֊
թիւն 'ի տալ քում անուանել հիւպատոս
զԼեպիդոս նախ քան զԿատուղոս. զայժ
խօթամիտն այր, նախ քան զայրն լաւ քան
զամենեսեան: Ժամ է քեզ արդ մի տալ
քուն աչաց, զի հզօր առաւել ընդդէմ քո
զքոյին գործեցեր հակառակորդ": Եւ ար֊
դեօք մարգարէացաւ Սիւղղաս. քանզի ան֊
դէն արագ արագ խեռ և ստահակ եւս սո֊
վորեալ Լեպիդոս, 'ի վէճ կաքաւէր ընդ֊
դէմ Պոմպէի:

Իսկ յետ այնորիկ զտասանորդն յամե֊
նայն գոյից իւրոց նուիրեալ Սիւղղաս Հե֊
րակլի, կազմէր պատրաստէր ժողովրդեան
խնճոյս մեծահացս. և հանդերձանք պատ֊
րաստութեանն այնչափ իմն առաւացեալ
քան զպէտսն, զի և զօր ամենայն շատ ինչ
ապառ՝ առեալ ամային 'ի գետ անդր. և
նստեալ ըմպէին զինի հին ամաց քառա֊
նից և առաւել: Իսկ յայն խրախուճան ա֊
ւուրց բազմաց՝ մեռանէր Մետելլա 'ի խօ֊
թութենէ. և քանզի քահանայք արգելին
Սիւղղայի գնալ առ նա, և արգելուին զար֊
ձեալ պղծել զտուն իւր 'ի սգահանդերձ
աշխարս, նա գրեալ զապահարզանն և
յղեալ առ նա, եւ հրաման բառնալ տա֊
նել զնա յայլ տուն, մինչդեռ տակաւին
կենդանի էր, օրինապահ եղեալ յայնմ բա֊
նապաշտութեանն. սակայն և օրինազանց
լինէր յիւր իսկ օրէնսն որ յաղագս չա֊
փաւորութեան ծախուց յուղարկաւորու֊
թեանն, ծախս արարեալ 'ի նմա անչափս.

ւորս ։ Զնոյն և օրինազանց լինէր նա և յիւ֊
րում իսկ սահմանին՝ որ յաղագս բազմա֊
ծախս ընթրեացն ․ քանզի խնդրէր ամոքել
զիւրեւ անձկութեանց սրտին 'ի գինեբ֊
րուաց անօթ և 'ի խնճոյից՝ գրգանօք լի և
խեղկատակութեամբք ։

Ապա յետ ամսոց սակաւուց հանդեր֊
ձեցաւ և թատր մենամարտից ․ իսկ 'ի ժա֊
մանակին չէ գոլով ուրոյն զատուցեալ ան֊
դիք , այլ 'ի տեսարանին խառն 'ի խառնն
կային 'ի միասին արք և կանայք ․ ըստ դի֊
պաց անդանօր մօտ Սիւղղայի նստէր 'ի կա֊
նանց ոմն չքնաղագեղ և քաջազարմ ։ Սա
էր դուստր Մեսաղեայ քոյր Որտենսիոսի
հռետորի՝ Վաղերիա անուն , այն ինչ յայն֊
ժամ արձակեալ յառնէն ։ Սա լռելի մերձեալ
անդանօր մօտեալ առ Սիւղղաս 'ի թիկանց
կուսէն և մխեալ ձեռն և կորզեալ մազ մի
'ի պատմուճանէն նորա , անդրէն դար֊
ձեալ նստէր 'ի տեղի իւր ։ Հայեցեալ 'ի նա
Սիւղղաս և զարմացեալ , ասէ կինն ․ « Մի
ինչ քեզ ինքնակալդ դու , ծանր թուեսցի
բանդ ․ խնդրեմ և ես ինքնին հաղորդ֊
որդ վայր մի լինել գեղեցիկ բախտիդ » ։
Ո՛չ առանց ուրախութեան լսէր Սիւղղաս
զբանն ․ և քա՛ջ իսկ անդէն մերկանայր
մարմաջել նորա ․ քանզի առաքեաց վաղվա֊
ղակի հարցանել զնորա զանունն և զազգն
և զկեանսն ․ և յետ այնորիկ տայս աչաւկա֊
քաւ լինէին նոքա առ միմեանս , և ստէպ
այր ընդ ընկեր հայէր 'ի դէմսն , և մերթ
ընդ մերթ ժպիտս ծնանէին 'ի նոսա ․ իսկ

'ի վերջէ և պայմանս և դաշն կռւէին զհարսանեաց ։ Եւ ապա թերևս 'ի բանին յայնմիկ անբամբաս կայցէ կինն, սակայն Սիւղղաս թէպէտ և կին ածեալ պարկեշտ և տոհմիկ, այլ ոչ դրդեցաւ նա 'ի նոյն՝ 'ի պարկեշտ և 'ի գեղեցիկ պատճառաց. քանզի մխասեալ անկաւ թակարթեցաւ իբրև պատանեակ յարատ հայեցուածոյ անտի և 'ի պչրանացն, և յորոց զազիրք և լկտի բնաւորեցան հրապոյրք կնոց ։ Այլ թէպէտ և կալաւ նա զնա 'ի տուն իւր, սակայն և այնպէս յաւերժանայր նա ընդ կանանց միմոսից և ընդ քնարահարաց, և ընդ խեղկատակաց մարդկան, ընկողմանեալ 'ի վերայ անկողնոց 'ի տուէ և քամեալ ընդ նոսա զանապակն ։ Քանզի և սոքա էին յայնժամ մեծապէս զօրացեալք առ նմա, Ռոսկիոս կատակերգակ, և Սորիքս միմոսապետ, և Մետրոբիոս՝ ճևացեալ վարձակ, զոր և՝ թէպէտև անցեալ զառոյգութեամբ՝ ջանդ սիրել վկայէր Սիւղղաս ։

Յորմէ ապա և խօթութիւն անկանէր 'ի Սիւղղաս զառաջինն 'ի դոյզն պատճառաց շարժեալ, ընդ բազում ժամանակ զանխուլ 'ի նմանէ՝ գոյացեալ յախտնդիս նորա խաղաւարտ. յորմէ տորեալ մարմինն՝ եռայր առհասարակ յորդունս իւն ոջլոց անհնարին. մինչ զի թէպէտ և զգայգ և զցերեկ քթուէր ողջոյն, անբաւդգաւ յորդութեամբ քան զքթուեալսն եռայրն անդրէն. ոյք ապազաւ և հանդերձքն առհասարակ և բաղանիք և կոնք և կերակուրք նո_

րա անգամ՝ լի էին զազրատուովքն. այն-չափ իմն անհատ առողան որդանցն ելանէր եռայր: Ուստի և բազում անգամ նա յա-ւուրն մտեալ ՚ի ջուր լուանալ և մաքրել զմարմինն, օգտէր և ոչինչ. քանզի արագ-արագ անդրէն առորել մարմնոյն նորա՝ յա-մենայն զարմանոց ապստամբ էր, և յոքնա-խուռն եռալ զեռալ զազրատեացն՝ արտա-քոյ էր ամենայն մաքրութեան նորա: Եւ պատմեն՝ եթէ յորդնեռաց ախտէ աստի յայսմանէ մեռաւ առ նախնեօքն Ակաստոս Պելեան. և առ մերձնովքս՝ Աղկմանէս տա-ղասաց, և Փերեկիւդէս աստուածաբան. և Կալլիսթենէս Ողինթացի՝ արգելեալ ՚ի պահեստի. առ այսոքիւք և Մուկիոս օ-րէնսգէտ: Եւ եթէ յիշատակել կամք ի-ցեն՝ և զորս ո՛չ գործեալ ինչ բարի, սա-կայն և այնպէս հռչակեալք գտան, ասեն՝ եթէ և այն փախստեայն՝ Եւնոս անուն՝ որ գրգռեաց ՚ի Սիկիլիա զմարդան ծառայ-ից, ձերբակալ ածեալ ՚ի Հռոմ՝ մեռաւ յախտէ յայսմանէ:

Արդ Սիւղղաս ո՛չ նախազգացած միայն ե-ղև մահուն, այլ և գող գրեաց ևս զայն: Քանզի երկու աւուրբք յառաջ քան ըզ-մահն՝ կատարեաց զարձանագրութիւն ըզ-քսաներորդ երկրորդ զիւրոյ Յիշատակա-րանացն. ուր և ասէ՝ նախապատում նմա եղեալ Քաղդեայցն՝ յետ երջանիկ կենացն մեռանել նմա ՚ի լրումն գեղեցիկ բաղդից իւրոց: Պատմէ և զայս՝ եթէ և որդին նո-րա՝ այն որ վայր մի յառաջ քան զՄետել-

լա մեռեալ էր՝ երևեալ նմա յանուրջս 'ի հանդերձ անպաճոյճ՝ աղաչէր զնա 'ի բաց այնուհետև կալ 'ի հոգոց, և ընդ իւր յառնել գնալ առ մայր իւր Մետելլա, անդանօր ընդ նմա անզբօս կալ յանդորրու:

Սակայն և այնպէս չեկաց նա յետս 'ի հասարակաց գործոցն. քանզի և տասն աւուրբ նախ քան զմահն՝ համոզեալ լռեցոյց զաղմուկ ամբոխին զԴիկարքացւոց՝ ուր էր նա յայնժամ, և օրէնս ևս արձանագրեաց նոցա վարել նովաւ: Առ այս՝ և աւուրբ յառաջ քան զմահն՝ լուր առեալ զի Գրանիոս յաւագաց անտի ոչ հատուցանէր հասարակաց զպարտսն և կայր դեգերէր մինչև մեռցի նա, առաքեալ Սիւղլաս կոչեաց զայրն և մուծեալ զնա 'ի սենեակ իւր՝ հրաման տայր ծառայից իւրոց շուրջ պատել և հեղձամահ կորուսանել զնա: Եւ անդանօր մինչդեռ 'ի հրամայել իւրում Սիւղղաս սաստկութեամբ անհնարին ձայն բառնայր և թափ ուժգին տայր մարմնոյն, պատառեալ պայթէր նորա խաղաւարտ պալարոյն, և ժայթքեաց ինքն արիւն շատ: Ապա խապառ նուաղեալ՝ այնպէս 'ի վերջէ անկանէր մեռեալ՝ 'ի տառապանս իմն անհնարինս անցուցեալ զգիշերն. Թողեալ մանկունս երկուս մանրիկս առ 'ի Մետելլեայ: Իսկ Վալերիա յետ մահուն նորա ծնեալ դուստր մի, կոչէր զնա Պոստումա. քանզի և յայս անուն կոչեն Հռոմայեցիք զծնեալսն յետ մահու հարցն:

Բայց յայնժամ բազումք դիմեալ չո-քան առ Լեպիդոս, և խորհուրդ հաստա-տէին ընդ նմա արգելուլ խափանել զխա-կան զյուղարկաւորութիւնն ըստ օրինացն: Այլ Պոմպէոս՝ Թէպէտ և ունել ունէր նա բողոք բառնալ զՍիւղլայէ (իբրու որ յա-մենայն իսկ 'ի բարեկամացն՝ նմա միայնոյ մո-ռացօնք եղեն 'ի կտակին նորա), համայն և այնպէս՝ զկէսս յինքն որսացեալ ողոքա-ւոր բանիւք, և զկէսս՝ սպառնալեօք, ա-ռեալ ածէր զդիակն 'ի Հռոմ, և յանդոր-րու զհանդէս Թաղմանն կացուցեալ, և շուք ևս յայնժամ ընծայէր նմա: Եւ ասեն՝ կա-նանց յայնժամ այնչափ առատ բերել նմա 'ի խնկեղենաց, զի և բայց յորոց ածան անդր երկերիւր և քսան սակառի, գործեալ և դրօշեալ յաղթ քանդակեցաւ 'ի տիպ ճըշ-գրտեալ Սիւղլայի, և միւս ևս այլ՝ 'ի տիպ զաւազանակրին, երկոքին միանգամայն 'ի պատուական Լիբանանէ և 'ի կինամոնէ: Իսկ օր հանդիսի Թաղմանն ողջ ամպապատ հանդիպեալ և ժամ 'ի ժամէ անձրևաց յերկնից ակն կալեալ, հազիւ ուրեմն յին-ներորդ ժամուն բառնային զդիակն. և 'ի վերայ եդեալ խարուկին՝ հողմն ուժգին շնչեալ 'ի ներքս՝ մեծ բորբոքեաց բոց, մին-չև այրեցաւ ողջոյն մարմինն. իսկ անձիւնա-ցեալ գոգցես խարուկին և անցեալ կրակն, յետ այնորիկ առատ տեղատարափ տեղայր անձրևաց և տևեաց մինչև ցայգ. ուստի և թուէր այնպէս՝ գեղեցիկ բաղդին նորա 'ի միասին յաւերժանալ ընդ մարմնոյն նորա:

Եւ կայ նորա շիրիմ յԱրեսեան դաշտի. և ասեն՝ եթէ ինքնին զիւր վերտառութիւնն եթող Սիղղաս անդ արձանագրեալ. և գը-րուի բանին՝ այսպիսի ինչ է. “Ո՛չ ՚ի բարեկամաց ոք յաղթեաց նմա ՚ի բարեգործելն, և ո՛չ ՚ի թշնամեաց ոք՝ ՚ի չարագործելն”։

# ԶՈՒԳԱԿՇՌՈՒԹԻՒՆ

# ԼԻՒՍԱՆԴՐԵԱՅ ԵՒ ՍԻՒՂՂԱՅԻ

ԵՒ արդ՝ անցեալ մեր և ընդ արձանագրութիւն վարուց սորա, եկեսցուք այժմ 'ի զուգակշռութիւնն: Եւ քանզի յանձանց իւրեանց սկիզբն բարգաւաճութեան առին նոքա լինել մեծք և աւագք, այս հասարակ է երկոցուն նոցա:

Բայց առանձին այս է Լիւսանդրեայ, զի ըստ կամաց քաղաքայնոցն և ըստ քաջախոհութեան նոցա էառ նա զանձամբ զիշխանութիւնն. և հարստահարեաց նա և ոչ զոք ընդդէմ կամաց նոցա, և ոչ բռնացաւ ինչ նա ընդդէմ օրինաց: Այլ սակայն Եւ յաղմուկս հերձուածոց՝ պատուի անձին որ-ոյ ն՛ այր եղեռնաւոր: Ըստ որում և 'ի Հռոմ յայնժամ մերթ սա և մերթ նա ամբառնայր 'ի տէրութիւն: Չէ ինչ ապա զարմանալ, եթէ յայնժամ և Սիւղղաս ինքնին

տիրացաւ, յորժամ Գլաւկոսք և Սատուրնինոսք տարադիր վտարէին զՄետեղղոս 'ի քաղաքէն. յորժամ յատեանս ժողովոց 'ի սպանող վարէին որդիք հիւպատոսաց, և յորժամ վարձկան եղեն զօրականք, և ոսկւոյ և արծաթոյ սակս՝ գէն առնուին. և յորժամ դարձեալ 'ի սուր և 'ի հուր սահմանեալ կարգէին օրէնք, և բռնութիւն 'ի վերայ կայր դիմադարձից: Արդ մեղ չդընեմ առն՝ որ յայն սահման իրացն քաջացաւ վեհ լինել. այլ զայն ասեմ՝ եթէ լաւութեան և առաքինութեան մարդոյն նշանակ չէ բարձրերեց կալ յայնպիսումն ապականեալ քաղաքի:

Ուր յայնժամ Լիւսանդրոս 'ի շահատակութիւնս մեծամեծս արձակեալ 'ի Սպարտայ՝ որ մեծ էր 'ի ժամուն վարչութիւնն զեղեցկի օրինացն և ծայրագոյն խոնարհութեանն, համարեցաւ նա անշուշտ լաւ քան զլաւսն և առաջին քան զառաջինսն: Ուստի և մին անդ առէր 'ի ձեռս յանձնեալ քաղաքայինոյն զիշխանութիւնն, ընտէր միասանգամ առնոյր զանձանս. քանզի և կայր մնայր 'ի նմա անդրժելի շուք առաքինութեանն՝ որով և ցանդ առաջադնայր: Իսկ միւսն՝ միանգամ զօրավար ընտրեալ բանակին, եկաց մնաց 'ի զինուորութեանն առնս տասն ամնշուլ. առնելով անձամբ զանձն մերթ հիւպատոս, և մերթ փոխանակ հիւպատոսի, և մերթ իշխանատեր, և կացեալ միշտ բռնաւոր:

Եւ արդեօք և Լիւսանդրոս խնդրէին՝ որ-

պէս ասացաք՝ դուն գործեաց փոփոխել զկարգ քաղաքին իւրոյ, սակայն հեզաբար և օրինացն պատկառ կալով առաւել քան զՍիւղղաս. քանզի ամօք 'ի վաղ արկեալ և ոչ զէնս, և ո՛չ դարձեալ տապալեալ քան-դեալ զամենայնն միանգամայն՝ իբրև զնա. այլ խնդրէր մանաւանդ լաւագունին ըն-ծայել կարգի զընտրութիւն Թագաւո-րացն: Եւ Թուէր ինձ արդեօք գործն ըստ բնութեանն իրաւացի, քաջընտիր առն 'ի քաջին՝ Թագ կապել քաղաքին՝ որ ո՛չ յազ-նուականութենէն, այլ յառաքինութե-նէ անտի իւրմէ ակրացեալ էր 'ի վերայ Եղ-լադայ: Քանզի զօրօրինակ որսորդ խնդրէ ո՛չ զքարակինն, այլ զքարակն ինքնին, և ասպականին խնդրէ ձի, և ո՛չ զձիոյն, (զի զխա՞րդ այս՝ եթէ ջորի յանկարծ ծնանիցի 'ի ձիոյն), այսպէս և քաղաքագէտ քաջ մեծապէս սխալեսցէ, եթէ յընտրութեան Թագաւորի ո՛չ խնդրեսցէ ո՞ այն ոք իցէ, այլ Թէ յորմէ՞ զարմէ իցէ: Նա՛ և ինքնին Սպարտացիք 'ի բաց զտէրութիւնն հանին յոմանց յարքայից անտի իւրեանց, իբրու-այն որ ոչ արքայավայել ունէին կեանս, այլ դժպհիք էին և անպիտանք. իբրև ան-փառունակ է մոլութիւնն՝ Թէպէտ և զքա-ջազարմութիւնն մերձ ունիցի. և փառա-ւոր է առաքինութիւնն՝ ոչ 'ի պայծառու-Թենէ զարմին, այլ ինքնին գլխովին:

Բայց հարստահարութիւնս՝ յերկոցուն նոցա մին գործեաց 'ի շնորհս բարեկա-մացն, և միւսն՝ ընդդէմ բարեկամացն:

Քանզի անշուշտ Լիւսանդրոս շատ ինչ յանցեաւ 'ի շնորհս մտերմացն և բարեկամացն, և հաստատեաց բազումս 'ի վերայ ած 'ի բարգաւաճել զնոսա, և 'ի բռնաւորութիւն առնուլ տանել զնոսա։ Իսկ Սիւղղաս 'ի մանկանցն դրդեալ՝ թեւակոխեաց 'ի բաց 'ի Պոմպէոսէն հանել և 'ի Դոլաբելլայ զզօրավարութիւնն՝ զոր ինքնին տուեալ էր նոցա. 'ի նմանէ զքանակի ցամաքին, և 'ի սմանէ՝ զծովուն։ Եւ հրամանն եւս տայր անկնյանդիմանն իւր խաղխաղել զԼուկրետիոս Ոփելլիաս, որ յետ բազում և մեծամեծ արդասեացն զհիւպատոսութեան զհետ կրթէր. արհաւիրս և սարսափս արկանելով առհասարակ յամենեսեան, զի և զկարեւոր բարեկամսն 'ի մահ մատնէր։

Իսկ գրգասիրութիւն երկոցուն նոցա և ընչաքաղցութիւն, զմիոյն մեզ 'ի դէմս բերէ զոգին արքենի, և զմիւսոյն՝ բռնաւորական։ Քանզի մին 'ի մեծի բարձին և յաւագութեանն ոչինչ արդեօք յանժուժկալութիւն հատաւ և 'ի մեղկութիւն անտիոքեան. այլ անձնապահ լինէր առաւել քան զամենայն մարդ 'ի սովորականն առածէն. եթէ Առ տնին Առիւծունք, և 'ի բացի Աղուէսունք։ Այնպէս իմն պարկեշտ միշտ և հրահանգ և արդարև լակոնացի՝ զանձն 'ի ներքս ընծայէր 'ի քաղաքավարութեան իւրում։ Իսկ միւսն երբէք ոչ սանձեաց զցանկութիւնն. ոչ երբև աղքատանի յաղքատութեան իւրում, և ոչ երբև հին աւուրց 'ի ծերութեանն. այլ յար

ձանձրացրել անդ իւրում օրէնս քաղաքայ-նոցն վասն ամուսնութեանց և ժուժկա-լութեան, ինքն՝ ըստ որում Սալուստիոսն ասէ՝ պարապէր 'ի տռփանս և 'ի շնութիւնս :

Յորմէ և կապտեաց կեղեքեաց նա զքա-ղաքն 'ի դրամոց, և մուրհակ գործեաց զնա · զի և պէտք եղեն նմա արծաթոյ վաճառել քաղաքաց նիզակակցացն և բարեկամացն՝ զազատութիւնն և զինքնուրոյն օրէնսն · Թէպէտ և զօր ամենայն յաղթութիւնս գրա-ւէր և 'ի վաճառ հանէր զտունս բազմահա-րուստս և զմեծամեծս · իսկ զոր ինքն վատ-նէր ծախէր իւրոց շնթողացն, անսահման էր : Քանզի և զո՞ր արդեօք զեղեցիկ կարգ և անառակութիւն համարիցիս ունել երբեք առն՝ յընկերշակութիւնս զինեբրուաց նո-րա և 'ի տալ բաշխել շնորհս և պարգևս սի-րելեաց իւրոց, առն՝ որ էր երբեմն զի 'ի հրապարակի յամբոխին՝ որ շուրջ էին զնո-վաւ՝ 'ի վաճառ հանեալ մթերս ինչ գոյ-ից, հրաման տայր 'ի ձայն մունետկին տալ զայն միում ումեք 'ի բարեկամացն ում-պէտ գնոյ · իսկ անդուստ այլ ումն աճե-ցուցեալ զգինն, և մունետկին քարոզեալ զաճումն, անդանօր Սիւղղաս դժգմնեալ ասէր · " Դժնդակ են ինձ կիրքդ՝ ո՛ բարե-կամք քաղաքացիք · և բռնան է ինձ՝ եթէ չիցէ ինձ թոյլ յիմ աւարն առնել՝ զոր կամիմ " :

Իսկ Լիւսանդրոս առեալ արձակէր քա-ղաքացեացն ընդ այլ ինչ իրաց և զպար-գևսն զիւր առանձին : Զոր և գովեմ իսկ

բաղդ է, սակայն և հաւանեսցի եմ՝ զի այն դէպք պատահեցան նմա 'ի մերձակայ խորհրդոյն, զի չեկաց մնաց մեծի բանակի արքային՝ որ վայրիկ մի ևս գայր ժամանել 'ի Գիլանոյ. այլ տարաժամու առ զայրոյթ արտին և պատուականութեանն դրդեցաւ ընդդէմ պատուարացն, ուստի 'ի զուրս յեղակարծումն յարձակեալք առք սինլքորք և ամբարիշտք, այնպէս վայրապար դիտապաստ արկին զնա. առ 'ի մահ առեալ զվէրսն, ոչ արդարև իբրու զԿղէոմբրոտոսն 'ի Լեւքտրա՝ ընդդէմ դարձեալ բռնութեան թշնամեացն. և ոչ իբրու զԿիւրոս, և ոչ իբրև զԷպամինոնդաս՝ առկայացուցեալ զվերջանել զիւրոցն և յանդորրու զյաղթութիւնն կացուցեալ. որ և առհասարակ ըղմահ մեռան զզօրավարաց և զարքայից. այլ Լիւսանդրոս՝ իբրու եթէ զինուոր դուզնաքեայ ոք իցէ և կարապետ զօրու՝ դիմադրաւեալ 'ի մահ անխորհուրդս և անխառուճանակ, քաջ իսկ իրաւացոյց զհինան Սպարտացւոց. զի մեծապէս համձարով անձնապահ լինէին նոքա մարտ դնել կռուել ընդդէմ պարսպաց. որպէսոր և առն աւագի և յոյժ քաջի դէպ լինի վայրապար վէրս առնուլ և անկանել ոչ 'ի սուսկական միայն զօրականէ, այլ և 'ի տղայոյ, այլ և 'ի կնոջէ. ըստ որում և Աքիլլեայ՝ պատմեն մեռանել 'ի ձեռաց Պարիսեայ առ դրունսն:

Բայց թէ քանիցն Սիւղղաս տարաւ յաղթութիւնս 'ի ճակատամարտս, և բիւրաւորս քանի՞ տապաստ արկ 'ի թշնամեաց,

ոչինչ հեշտին ընդ թիւ արկցէ զք։ Եղեկեցա-
նս հասեալ կալլու և զհռոմ ինքնին, և
ամրացաւ 'ի վերայ Պիրէոնին Աթենա-
ցւոց՝ ոչ սով արկանելով իբրու Լիսանդ-
րոս, այլ 'ի բազում մարտս և 'ի մեծա-
մեծս վանեալ զԱրքեղայոս 'ի ցամաքէ, և
վտարեալ 'ի ծով անդր։ Առ այսոքիւք՝ և
մեծապէս էր քաջութեան զօրավարացն թըշ-
նամեաց. քանզի և առ ոսմիղէսս և վայրա-
պար ինչ գրեմ ես մարտ դնել նաւամարտաւ
ընդդէմ Անտիոքեայ զեկավարին Ալկի-
բիադեայ, և կաշառել որսալ զՓիլոկլէս
զհռետոր խուժանին Աթենայ, Այր անա-
րգ՝ որ սուր զլեզուն ունէր սրեալ. զորս և
ոչ Միհրդատ արժանի համարեցաւ 'ի նշխա-
ձգել միում ումեք 'ի ձիադարմանն ծա-
ռայիցն. և ոչ ինքնին Մարիոս միում ու-
մեք յիւրոց վարոցաւորացն։ Իսկ յաւագաց
անուանի նախաթոռից, 'ի հիւպատոսացն,
'ի զօրավարացն, 'ի ժողովրդապետացն, որ
մարտ եդեալ կռուեցան ընդ Սիւղղայի,
ո՞ ոք ապաքէն՝ 'ի բաց զայլսն թողեալ՝ ա-
հագին 'ի Հռովմայեցիս առաւել քան ըզ-
Մարիոս, կամ ո՞ ոք 'ի թագաւորս հա-
տահարուստ առաւել քան զՄիհրդատ,
կամ ո՞ ոք քաջամարտիկ յԻտալացիս՝ ա-
ռաւել քան զԼամպոնիոս և զՏեղեսինոս։
Սակայն և այնպէս վանեալ հալածեաց
Սիւղղաս զառաջինսն, և նկուն արար զերկ-
րորդն, և 'ի մահ վարեաց զվերջինսն։

Այլ որ ըստ իս յոյժ գերազանցեալ է
քան զասացեալսդ, զի Լիսանդրոս զամե-

նոյնն գեղեցիկ ՚ի գլուխ տարաւ խորոցն նըզակակցութեամբ ։ Իսկ Սիւղղաս փախստեայ և նկուն ՚ի հակառակ հերձուածոյն, յորժամ և նորա կլինն փախստեայ անկանէր և տունն քանդեալ տապալէր, և բարեկամքն ՚ի սպանդ վարէին, ինքն մարտ ՚ի Բիթիւնիա յարդարեալ ընդդէմ թագաւորաց ամբաւից, և ՚ի կշիռ զանձն վասն հայրենեաց եդեալ, յաղթեաց և ախոյեանս կանգնեաց ։

Բայց և առ Միհրդատ ինքնին, որ զանձն դաշնաւոր ՚ի ներքս մատուցանէր, և զօրս ընդդէմ թշնամեացն նմա առաջի ընծայէր, նա ոչինչ համբոյր և ամոք երևեցաւ առ նա․ այլ և ոչ խօսել անգամ կամեցաւ ընդ նմա, և ոչ զաջն անգամ կարկառել առ նա, մինչև լուեալ առ ՚ի նմանէ՝ ՚ի բաց զԱսիա թողուլ, և զնաւսն տալ, և վերջոտնել յարքայութեանցն Բիթիւնիոյ և Կապադովկիոյ ։ Որպէս զի և ոչինչ նահատակութիւն ևս գեղեցիկ քան զայն և մեծ ևս մտածութեանց տիպար, թուի թէ, նահատակեցաւ երբեք Սիւղղաս․ քանզի նախամեծար զհասարակացն՝ խորումն կարգելով սեպհական օգտին, և զոր օրինակ քաջք և հարուստք ՚ի բարակաց բնաւորեցան գործել, ոչ թողլով զխածեալն և ըզկալեալն, մինչև ախոյեանին իսպառ պարտութիւն խոստովանեալ, ապա յետ այնորիկ ելեալ գնայր զվրէժ խնդրել խորոց առանձին տուգանացն ։

Իսկ ՚ի վերջէ՝ և օրինակն ինքնին գլխո-

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Յն. Σάτυρος ։ Թողեալ զառաւանցիկան քերթողաց՝ յայս անուն կոչեն խառնակերպարան և մարդաձև գազանս, ըստ որում առաւելագոյն յազգս կապկաց. որպէս Եզեքօ, և որ ՚ի սակի նորա. զորս և այլ և այլ կոչեն ժողովուրդք իւրաքանչիւր. և Ռամիկն մեր՝ Գիշերվան Ամիրայ են. և Գիրք մեր՝ Հաւհաւ վայրաց, և Շնկնձիթ, և Արալեզ, և Վարդապայն Քաղ, և Նհանգ, և Պայն, և Պարիկ, և Յուշկապարիկ, և Համբարու. են։

---

# ՊԼՈՒՏԱՐՔԵԱՑ

## ԶՈՒԳԱԿՇԻՌՔ

## ԿԻՄՈՎՆԻ

ԵՒ

## ԼՈՒԿՈՒՂՂՈՍԻ

# ԿԻՄՈՎՆ

ՊԵՐԻՊՈԼՏԱՍ գուշակն ածեալ 'ի Թեսաղիոյ 'ի Բիովտիա զՈփելտաս արքայ և զժողովուրդս նորա, զարմն տեւնաւոր թողոյր անդ ընդ ժամանակս հարուստ։ Որք և բազմազոյն մասամբ բնակեցան 'ի Քերովնիա, առաջին քաղաք՝ զոր հասեալ կալան նոքա վանեալ անտի զբարբարոսն։ Արդ բազումք 'ի զարմէ անտի՝ անդստին 'ի բնութենէ քաջամարտիկ հանդիպեալք և արիականք, տապաստ անկան յարշաւանս անդ Մարաց և 'ի Գաղատացւոց մարտս՝ դիմագրաւք ոչինչ խնայեալք յանձինս։ Եւ մնաց միայն մանուկ մի որբ Դամոնիձն անուն, և մականայնէին զնա Պերիպոլտաս։ Եւ էր այս Դամոնիձն գեղով մարմնոյն և ոգւոյն հանճարով յոյժ գերազանցեալ քան զորս առ իւրովք ժամանակօքն պատանիս, թէպէտ և անհրահանգ 'ի բարս

Դիւր եղեւ յայն աւուրս Ղեւկիոսի Լուկուղղոսի անցանել ընդ այն բանակաւն՝ յարշաւանս ուրեք արձակեալ. և անդէն զկայ առեալ և հաւաստի քննութիւն 'ի վերայ ածեալ եղելոց պատմութեանցն, ոչ անյանց միայն զտանէր զքաղաքն, այլ հարստահարեալ ևս. ուստի առեալ նոր և զօրս անդ էին զօրականք, յուղի անկանէր։ Իսկ յայնժամ Դամոնին աւազակեալ ասպատակաւ յաղագս վարէր զգաւառն շուրջանակի. և առ դուրս ևս հասեալ քաղաքին՝ անդ քաղաքացիքն հնարիմաց խորամանկեալ հրեշտակութեամբք և վճռովք յինքեանս յանկուցանէին զնա։ Իսկ իբրև եկն եմուտ 'ի քաղաքն անդր, ըմբշապետ կարգեալ կացուցին զնա. և ապա յօծանել նորա 'ի քրտնարանին, 'ի վերայ հասեալ սպանանէին զնա։ Բայց երևոյթս ուրուականաց երևեալ անդ հարթուստ ժամանակ, և ձայն կոծոյ լսելի եղեալ (որչափ ինչ պատմեն մերն հարք), առեալ խցանէին զդուրս քրտնարանին. և մինչև ցայսօր ժամանակի մերձակայ բնակիչք նեղոյն թուին իմն տեսանել անդանօր խռովականս, և ձայնս լսել արհաւրաց։ Իսկ սերունքն 'ի նմին զարմէ (քանզի և բազումք են տակաւին, մանաւանդ 'ի Սաւկրի Փոկկեայ՝ որ առաւելութիւն կալեան զԷոլացւոց), անուանեալ կոչեցան Ասոլոէնք, այս է՝ Ձանձրախաւարեալք. քանզի Դամոնին 'ի գնալ խորամ 'ի սպանանել, մրեցաւ 'ի ձանձրախաւարեմ՝ զոր Ասոլոէն կոչեն։

Իսկ յետ այնորիկ Որքոմենացիք 'ի դըժ-
տութիւն եկեալ ընդ Քերոնիացւոց սահ-
մանակցաց իւրեանց, կաշառեցին արծա-
Թոյ դատախազ մի Հռոմայեցի. որ և ամ-
բաստան կացեալ ողջոյն զքաղաքէն իբրու
սպանողի ուրուք մարդոյ՝ այնպէս քարշէր զնա
'ի դատաստան վասն սպանութեանցն Դա-
մոնի: Եւ էր դատ ատենաստանութեանն
առաջի զօրավարին Մակեդոնիոյ, քանզի
չև ևս զօրավարս յԵլլադա առաքէին Հռո-
մայեցիք. իսկ որ անդ Ջատագովք մեծին
քաղաքին, վկայութիւն 'ի ներքս բերէին
զԼուկուղղոսին: Որ աղագաւ ինքնին զօ-
րավարն գրեալ առ Լուկուղղոս, վկայէր
նա ճշմարտութեանն. և այսպէս քաղաքն
'ի վերջինսն վտանգեալ՝ արձակեցաւ յա-
պատութիւն. յորս սակս և Քերոնիացիք
ազատացեալք՝ պատկեր 'ի քարէ կանգնէին
Լուկուղղոսի 'ի հրապարակի անդ մօտ առ
Դիոնեսիոս: Բայց մեք հաւանեալ եմք,
եԹէ որ յայնժամ երախտագիտուԹիւնն
առ Լուկուղղոս՝ ձգեալ տարածեցի և 'ի
մեզ ինքեանս որ կեամքս աւադին՝ Թէպէտ
և զկնի 'ի դարս բազումս 1:

Վասն որոյ և հաստատեալ մեր՝ եԹէ
քան զկենդանագիր դիմաց և կերպարանի
մարմնոյն նորա, ճշգրիտ ևս իցէ և գեղե-
ցիկ յոյժ տիպ պատկերի բուսոյ բարուց
նորա և քաղաքավարութեանն, մեք ինք-
նին յարձանագրել առա զզուգակշիռ զայս
վարսն, բուռն հարցուք պատմել զնահա-
տակութիւնս գործոց զաւագ առնն, և ճըշ-

մարտութեամբ 'ի ներքս ընծայել. քանզի և յիշատակ նորա շատ իցէ 'ի դարձ փոխարինելին։ Եւ արդեօք և ոչ նա ինքնին 'ի պատճառս անկեղծաւոր վկայութեան իւրոյ, կամեսցի ինչ 'ի դարձ փոխարինի կեղծ պատմութիւն և սնոտիպապատուաստ՝ զվարուց իւրոց։ Քանզի զոր օրինակ մեք ինքնին խնդրեմք՝ զի նկարիչք կենդանագիրք գեղանեացն և հոյակապիցն՝ բիծ փոքրիկ դժպատեհ գտեալ 'ի նոսա, մի ողջոյն զանց արասցեն, և մի դարձեալ ողջ ճշգրտիւ 'ի դէմս բերցեն, (քանզի վերջինդ տգեղութիւն ածէ, և առաջինդ՝ աննմանութիւն դիմաց), սոյնպէս և դժուարին գոլով, նա և յանհնարիցն թերևս, զայր ոք այր 'ի ներքս բերել բնաւ իսկ անբիծ 'ի վարս և անստգիւտ, արժան է 'ի գեղեցիկ նահատակութիւնս նորա զճշմարտութիւնն ճըշգրիտ 'ի ներքս տալ՝ իբրու ողջ նմանութի առնն. իսկ զյանցանս կամ զբիծս, յորս կամ 'ի կրից ինչ դրդեալ կամ թէ 'ի քաղաքականութէ իմեքէ հարկեալ՝ 'ի գործս իւր գթեալ իցէ, քան մոլութիւնս ողնկակեցս՝ առնել խակութիւնս առաքինութեան համարեալ զայդոսիկ. չէ արժան այնպէս մանր և ճշգութեամբ համբաւել 'ի պատմութեանն. այլ պատկառդէտակն 'ի մարդկայնոցս կալեալ բնութիւն, որ ոչն երբեք բնաւորեցաւ գործել ծայրալըր բարի, կամ վարս ընծայել անբամբաս յառաքինութիւն անդր։

Այս մտախորհ եղեալ, ընդ Կիմոնինն

թողցուք այժմ ասել, որոց և ոչ դժուարին իցէ խելամուտ ապա լինել 'ի պատմութենէ անտի նոցա ։

Կիմոնի հայր եկաց Միլտիադէս, և մայր Եգեսիպիլէ՝ Թրակացի ազգաւ դուստր արքային Ողորոսի․ ըստ որում քերթածքն պատմեն Արքեղայոսի և Մելանթեայ՝ առձանագրեալք 'ի շուք Կիմոնի ։ Ուստի և Թուկիդիդէս պատմագրաւն 'ի զարմէն Կիմոնի՝ հայր ունէր Ողորոս՝ անուան համանուն նախնւոյն այնորիկ, և ժառանգէր 'ի Թրակիա զհանս ոսկւոյ․ և ասեն՝ եթէ ըսպանեալ նա 'ի Սկապտէ յանտառին, և է այն շէն փոքրիկ Թրակիոյ․ այլ շիրիմ նորա՝ քանզի նշխարք նորա տարան յԱտտիկէ՝ կայ 'ի գերեզմանս անդ Կիմոնեանց՝ մօտ առ Եղպինիկեայն քեռն Կիմոնի։ Բայց Թուկիդիդէս էր յԱքերդուսեան ժողովրդոց, և Միլտիադէս՝ 'ի Լակիադեան ։ Արդ Միլտիադէս դատաւկնիք առեալ տուգանաց յիսուն քանքարաց, և ձերբակալ եղեալ 'ի հատուցանել, անդէն 'ի բանդին մեռանէր ։ Իսկ Կիմոն յայնժամ կարի պատանեակ որք մնացեալ հանդերձ քերբն՝ օրիորդ տականին և անայր, զառաջին ժամանակն վատանուն համբաւէր 'ի քաղաքին․ և շատ բամբասանէին զնա իբրև ցոփ և գինեմոլ, իբրու համաբարոյ միւսումն Կիմոնի հաւուն իւրոյ․ զոր և վասն խօթամտութեանն ասեն մակաձայնեալ Քօալէմօս, այն է՝ Ապուշ ։

Իսկ Ստեսիմբրոտոս Թասոսացի ծնեալ

առ ժամանակօքն Կիմոնի, ասէ՝ եթէ ոչ յերաժշտականին վարժեցաւ նա, և ոչ յայլ ինչ մարդս ազատականս՝ որովք վարէին յայնժամ Հելլենացիքն ։ և թէ՝ անբաւ գլխովին էր նա յատտիկեան ուշիմութենէն և 'ի շնորհացն ․ սակայն և քաջավարութիւն յանձին բարձեալ բերէր կարի, ազնուական և անկեղծաւոր, և բոյս բարուց լակոնացի առաւել ․ “ Պարզ, անպաճոյճ ․ այլ մեծամեծ նահատակութեց ատամնջական ” ․ իբրու արդարև զՀերակլեան զԵւրիպիդեայ ․ քանզի և զայսոսիկ է մեզ ուսանել վասն առնն յարձանագրութեանց անտի Ստեսիմբրոտեայ ։

Մինչդեռ տակաւին պատանի էր, բամբասեցաւ՝ իբրու մտանել առ քոյրն ․ և առդեօք ասեն զԵղպինիկէ ոչ լինել 'ի պարկեշտից ոք, այլ մեղանչել և ընդ Պողիգնովտոսի նկարչի ։ Ուստի և ասեն եթէ 'ի նկարել առ զՏրովադուհիս 'ի սրահին՝ զոր յայնժամ անուանէին Պէսիանակտիոն, և այժմ՝ Պեկիլէ, ճշգրտեալ իցէ զդէմսն Լաւոդիկեայ 'ի տիպ Եղպինիկեայ ։ Բայց Պողիգնովտոս չէր 'ի վարձկանաց անտի արուեստաւորաց ․ և ոչ զվարձեալ արծաթոյ աշխատէր նա 'ի նկարեն սրահին, այլ ձրի՝ պատուասիրեալ վասն քաղաքին, որպէս գրեն պատմաբանք և Մելանթիոս ինքնին քերթողն, որ ասէ այսպէս ․ “Նա իւրովք զարդարեաց ծախուք զաստուածոցն տաճարս և զԿեկրոպեանն հրապարակ 'ի կենդանագրութիւնս նահատակութեց քաջացն”։

Իսկ և կէսք ասեն՝ եթէ ոչ գաղտագողի ինչ էր Եղպինիկեայ ամուսնել առ Կիմոնիւ, այլ յայտնի իբրև ամուսին, բնակակից լինել նմա. զի չեգիտ Եղպինիկէ առ աղքատութեանն փեսայ 'ի ճահ ազնուականութեանն. և թէ՝ յետ այնորիկ սիրեալ զնա Կալլիաս ընչաւէտ այր Աթենացի, և առ փեսայանալ նմա՝ մատուցեր յանձն առնել հատուցանել քաղաքին զտուգանսն տուգանաց հօրն նորա, համոզեաց Եղպինիկէ և Կիմոնի առնել այր զնա Կալլիասայ: Ասակայն և այնպէս՝ թուի թէ իգասէր յոյժ եկաց Կիմոն. քանզի և Մելանթիոս քերթող խաղ արարեալ վասն այսորիկ յոդուած իւր, յիշատակ առնէ Աստերեայ ուրումն Սաղամինուհւոյ, դարձեալ և Մնեստրեայ ուրումն, իբրու տարփացելոց առ 'ի Կիմոնէ: Բայց և քաջայայտ կայ, զի վասն Իսոդիկեայ դստերն Եւրիպտողեմոսի Մեգակղեան՝ իւրումն օրինաւոր լծակցին, 'ի կերպ անհնարինս ըմբռնեցաւ Կիմոն և կարի 'ի խոր խոցեցաւ 'ի մահուան նորա. որպէս քաջ ամանեայ է մեզ խելամուտ լինել յողբոց անտի՝ որ քերթեցան 'ի մխիթարութիւն նորա. որոց ողբոցն Պանետիոս իմաստասէր՝ քերթող ասէ զԱրքեղայոս բնախօս, 'ի դէպ իսկ գուշակելով զնա 'ի ժամակէ անտի կենաց նորա:

Այլ սակայն և յամենայն իսկ 'ի բարուն իւր սքանչելի եկաց Կիմոն և մեծ. իբրև ոչ ինչ խոնարհագոյն երևեցաւ նա 'ի քաջութեան քան զՄիլտիադէս, և 'ի հան-

Ծառին՝ քան զԹեմիստոկլէս. և անշուշտ ա-
ռանց ամենայն հակառակութեան՝ մեծա-
գոյն քան զերկոսեան զասա յաղթաւորու-
թեան։ Դարձեալ՝ և ոչ խուն մի խոնար-
հագոյն քան զնոսա յառաքինութեան զա-
լով զինուորականին, սքանչելապէս բարձ-
րագոյն քան զնոսա եկաց 'ի քաղաքակա-
նին՝ Թէպէտ և յանտարական տիան և ան-
փորձ պատերազմաց։ Որ աղագաւ և 'ի
հրապարակին Մարաց՝ իբրև անդ Թեմիստոկ-
լէս Թելադիր լինէր ժողովրդեան Թողուլ
լքանել զքաղաքն և զերկիր իւրեանց, և 'ի
նաւաց վերայ զէն առնուլ 'ի Սաղամինա և
մարտ ծովամարտ գնել կռուել, այն ինչ
առհասարակ յապուշ հարեալ կային ընդ
այնչափ ձեռներէց խորհուրդն, անդանօր
Կիմոնն առաջին անցեալ զուարթամիտ ընդ
Կերամիկոն, և 'ի վեր ընդ դղեակն նահա-
տակեալ հանդերձ ընկերօքն, 'ի բուռն կա-
լեալ սանձ մի զերիվարի՝ զայն 'ի բարձունս
կախէր 'ի ձօն դիցուհւոյն. իբրու եթէ քա-
ղաքին այնուհետև այրուձիոյ պէտք ինչ ոչ
իցեն, այլ նաւամարտ զօրականին։ Անդ
զամենն կախեալ, և յասպարաց անտի որ
զմեհենիւն՝ ասպար մի առեալ և աղօթս
դիցուհւոյն արկեալ՝ այնպէս իջանէր 'ի
ծովն. ապա և ոչ սակաւք ոմանք յայն-
ժամ նահատակեցան զկնի նորա։

Եւ էր Կիմոնն՝ որպէս Յոնն ասէ քեր-
թողն՝ դիմօք ոչինչ անգեղեցեայ, այլ յաղթ
անձամբ, և 'ի վարսս գլխոյն զանգուրահեր
և թաւ։ Այլ և քաջութեամբ մեծապէս

ցուցեալ 'ի մարտին յայնմիկ, սէր և համ_
բաւ ժառանգեաց 'ի քաղաքին, և շատք ե_
կեալ զնովաւ՝ խրախոյս տային խորհել և
գործել նահատակութիւնս զՄարաթո_
նայն: Ուստի և միջամուխ եղեալ նա յիրս
քաղաքին՝ մտադիւրադոյնս ընկալեալ զնա
ժողովուրդք՝ որ յափրացեալք իսկ էին 'ի
Թեմիստոկղեայ, առեալ բարձրացուցին
զԿիմոնն յաւագութիւնս բարձից. զի և ինքն
քաղցրավայելուչ և սիրելի էր ամբոխին առ
քաղցրութեանն իւրոյ և առ պարզութենն:
Բայց և Արիստիդէս Լիւսիմաքեան ոչ սա_
կաւ ինչ գործակից լինէր բարգաւաճելոյն
նորա. զի բոյս գեղեցիկ ակնարկեալ 'ի
բարս նորա՝ լաւ համարեցաւ 'ի վէգ զնա
հանել ընդդէմ խորագիտութեանն և ձեռ_
ներէցութեանն Թեմիստոկղեայ:

Իսկ իբրև 'ի փախուստ դարձան Մարք
'ի սահմանացն Եղլադայ, արձակէին զԿի_
մոնն զօրավար բանակին ծովու. զի չև էին
Աթենացիք տիրացեալ 'ի վերայ այլոց Յու_
նաց, այլ դեռ ևս ընդ հնազանդութեամբ
կային Պաւսանեայ և Լակեդեմոնացւոց:
Յորում և միշտ սքանչելիս ընծայեցոյց նա
զիւրն քաղաքացիս յամենայն զինուորու_
թիւնս՝ 'ի գեղեցիկ համադերձանս և 'ի
վայելուչ կարգն, և 'ի մեծագէս մտադիւ_
րութիւն ոգւոյ, զի և երևելիք յոյժ գտան
նոքա քան զամենեսեան:

Իսկ յորժամ Պաւսանիաս բանագնաց
լինէր ընդ բարբարոսան մատն լինել Եղլա_
դայ, և առեալ գրէր վասն այնորիկ գիր

առ Թագաւորն, և յայսպիսագոյնս գնայր ընդ Նիզակակիցսն, և յիշխանութեան իւրում և 'ի ծանծաղամիտ ամբարտաւանութեանն հարստահարութիւնս գործէր բազումս, անդուստ Կիմոնի հեզաբար առ ինքն ժողովեալ զվշտացեալսն և մարդասիրեալ առ նոսա, տակաւ և մեղմով տիրանայր 'ի վերայ Եղլադայ․ ոչ զինուք՝ այլ բանիւք բերանոյն և քաղցրալաւութեամբ բարոյիցն։ Քանզի բազումք այն էին 'ի Նիզակակցացն՝ որ չհանդուրժեալ խստութեանն և գոռոզութեանն Պաւսանեայ, գային յարելուին առ Կիմոն և առ Արիստիդէս․ որք և 'ի յանկուցանել յինքեանս ամբոխ՝ առաքէին միանգամայն և առ Պարէտսն, բողոք զՊաւսանիայ բառնալ և յետս կոչել, իբրու որ անարգու գլխովին Սպարտիոյ լցէ և Եղլադայ խռովիչ։

Եւ ասեն՝ եթէ Պաւսանիաս յամօթալի առփանաց դրդեալ՝ առաքէր առնուլ կոյս մի 'ի Բիւզանդիոյ՝ անուն Կղէոնիկէ դուստր հայրական ծնողաց․ Նոքա թոյլ ետուն աղջկանն՝ առիպեալք 'ի հարկէն և յերկիւղէն․ և աղաչէր աղջիկն՝ մինչև մտեալ 'ի սենեակ անդր՝ անցուցանել զճրագն․ ապա 'ի մթանն մերձեցեալ մեղմիկ 'ի մահիճն՝ ուր 'ի քուն կայր Պաւսանիաս, ըստ դիպաց հարեալ ընդ չիջեալ լապտերն՝ թաւալեաց զնա․ յորմէ 'ի ձայնէն շփոթեցեալ Պաւսանիաս, և մերկեալ զդաշոյնն որ մերձ էր, շարժէր տայր հարուած իբրու եթէ 'ի թշնամեաց ոք ընդդէմ կայցէ նմա, և հա

բեալ խոցէր զկոյսն. իսկ 'ի խոցուածոյն անկեալ մեռեալ աղջկանն, ոչինչ ապա յետ այնորիկ դուլ և հանգիստ տայր Պաւսանիայ. այլ ստէպ 'ի գիշերի 'ի քուն երևութացեալ նմա խօլական ուրուատիպ, և 'ի սրտմտութիւն բրդեալ՝ ասէր առ նա տող մի դիւցազնական տաղաչափի,

Գնալով գնասցես դու առ ատեանն
արդարութեան ։
Զոր մեծապէս է թշնամանք
որդւոց մարդկան ։

Յայտնանէ ապա ոչ ևս հանդուրժեալ նիզակակցացն խաղային գնային ընդ Կիմոնի գալ պաշարել զնա ։ Այլ Պաւսանիաս փութացաւ զերծաւ 'ի Բիւզանդիոյ՝ և խռովեալ յուզեալ՝ որպէս պատմեն՝ 'ի խօլականէ անտի, գնացեալ ապաւինեցաւ յՀերակլէա 'ի մեհեան մեռելահմայիցն. և անդ զոգին կարդացեալ զԿլէոնիկեայ, պաղատէր ողոքէր 'ի բաց զոխութիւն բարկութեանն զնել ։ Նա երևեալ նմա ասէր, մերձ ընդ մերձ ազատանալ նմա յամենայն աղէտիցն 'ի հասանելն 'ի Սպարտիա. և ակնարկէր անշուշտ՝ որպէս հաւանեալն եմ՝ զանդանօր զմահն նորա ։ Զայսոսիկ պատմեն մեզ բազումք ։

Բայց Կիմոնի ընդ իւրով ձեռամբ կարգեալ զնիզակակիցսն զօրավարեալ նաւէր 'ի Թրակիա, լուր առեալ եթէ արք աւագք Պարսիկք մերձաւորք արքայինն կալեալ զԷոն քաղաք առ Ստրիմոն գետոյն, վիշտ շուրջանակի հասուցանէին Հելլենացւոցն ։

Ձի և ոչ զինի յեկելոցն
Ցեսեալ զայս, 'ի նախանձ վառեցի
Վասն հասարակաց իրացն զոռ յարդարել:
Իսկ յերրորդումն.
Է՛ր երբեմն 'ի քաղաքէ աստ
Ընդ Ատրէոսեանց 'ի Նաւիրականն
'Ի դաշտ Տրոյեան խաղալ Մենեսթեայ:
Եւ նա՝ որպէս անդ Հոմերոս ասաց՝
Առաւել քան զԴանայեցիս պատենազէնս՝
Զոքաւ զօրավար գերապանծ
'Ի կարգել գեղեցիկ զմարտն:
Ա՛յսպէս ուրեմն ոչինչ դժպատեհս
Կոչեսցին Աթենացիք
Զօրավարք մարտից և քաջարութեանց:

Թէպէտ և ո՛չ 'ի միում յարձանագրութեանց անուն անուան ո՛չ գոյ Կիմոնին, մարդիկ ժամանակին շուք ծայրալիր համարեցան զայն նմա. զի ո՛չ Թեմիստոկլէս, և ո՛չ դարձեալ Միլտիադէս երբէք կալան յայնպիսեաց անուն: Դա՛ և վերջինդ խնդրեալ երբեմն պսակ 'ի ձիթենւոյ, անդ Սոփոքարէս Դեկեղէոս յարուցեալ 'ի մէջ ատենին՝ ընդդէմ գառնայր նմա բանիւք՝ ոչ առ 'ի ճահ, սակայն և հեշտալուր յայնժամ ամբոխին. քանզի ասէր այսպէս. "Յորժամ դու ինքնին առանձին ո՛վ Միլտիադէս՝ մարտ եդեալ վանեսցես զբարբարոս, յայնժամ խնդրեսցես առանձին ըզպատիւ": Եւ առ՛ինչ ասա զԿիմոնին մրցանակն այնչափ սիրեցին Աթենացիք. Թերևս զի առ այլովք զօրավարօքն մարտ

եղեալ կառուցանէ միայն 'ի պաշտպանել անձանց. Իսկ առ Կիմոնիւ՝ մնացեալն եւս թշնամւոյն, հորդան տուեալ եւ կառուցեալ յերկրին նոցա, եւ մասն եւս հատեալ կալան՝ գաղթականս արձակելով յԷոն եւ յԱմփիպօլիս:

Առ այսոքիւք՝ գաղթականս եառուն նաքա եւ 'ի Սկիւրոս, զոր կալեալ էր Կիմոնի՝ օրինակ զայս. 'Ի Կղզի յայս բնակեալ էին Դողոպացիք, արք անփորձք մշակութեան գետնոյ, եւ ըստ վաղնջուց իւրեանց սովորութեանն՝ ասպատակք ծովու. եւ ապա յայնչափ եղեն անկշտացեալք՝ զի եւ ոչ 'ի հիւրոն անգամ խնայէին նոքա՝ որ անդր նաւարկեալք շահավաճառ լինէին ընդ նոսա: Նաեւ 'ի վաճառականաց անտի Թեսաղացւոց՝ որ հասեալ էին 'ի Կտեսիան, կողոպտեալ զնոսա եւ 'ի կապանս եւս արկեալ, իբրեւ զերծան նոքա 'ի կապանացն, դարձան եկին եւ 'ի ձեռն Ամփիկտիոնեայցն դատաստանք ածէին 'ի վերայ քաղաքին փոխարինել զտուգանսն: Այլ քաղաքացեացն ոչ կամեցեալ այնպէս առհասարակ տուգանել, պնդէին պարտ յափշտակողացն միայն լինել հատուցանել զկշիռն. ապա զահի հարեալ մնասակարացն՝ առեալ վաղվաղակի գրէին առ Կիմոն՝ գալ իւրովք նաւուք ունել զքաղաքն անձնատուր 'ի նա: Օրինակ զայս ապա տիրացեալ Կիմոնի 'ի վերայ կղզւոյն, հալածէր անտի զԴողոպացիս, եւ յանդորր հանէր զԷգէանն:

Այսպէս լոյս առեալ Կիմոնին, զի նախ-
նեաւն այն Թեսեւսոս որդի Եգէոսի, 'ի Սկիւ-
րոս փախուցեալ յԱթենայ՝ անդանօր
նենգաւոր սպանեալ 'ի Լիւկոմիդեայ արքայէ
աւ ասէին, գուն գործէր ազգաւ չափ զը-
տանելոյ զգերեզմանն նորա. քանզի էր իսկ
Աթենացւոց պատգամ հրամանատու՝ առ-
նուլ զԹէսեւսեանն նշխարսն փոխադրել 'ի
հայրենիսն, և շուք գերեզմանի առնել նմա իբ-
րև դիւցազնի: Սակայն զանխոյս մնացեալ
վայրք Թաղմանն, զի և Սկիւռոսացիք ոչ կա-
մէին 'ի վեր հանել, և ոչ հետախոյզ եւ լինել
Թաղման տեղւոյն: Իսկ յայնժամ 'ի բազումն ջա-
նիցն Կիմոնինի հուսկ ուրեմն գտեալ զգերեզ-
մանին, առեալ նա զոսկերսն դնէր յեռա-
Թիւն իւր, և մեծապէս զարդու փոխադրէր
'ի հայրենիսն յետ ամաց իբրև չորեքհա-
րիւրոց Զ: Ուր առաւել և յոյժ ընծայականաւ Թ-
եղէն առ նա ժողովուրդք, և 'ի յիշատակ
նորա յայնժամ և այն պայքար Ողբերգակ
քերթողացն յոյժ զհամբաւի հարաւ: Քան-
զի յայնժամ 'ի հանդէս հանեալ Սոփոկ-
ղէս պատանին զառաջինն զիւր Ողբերգու-
Թիւնն, և մեծք և պայքարք պատահեալ
'ի հանդիսականսն, Ափսեփիոնես իշխա-
նաւորեալ ոչ եհան վիճակաւ դատաւորս մրցա-
նացն այնոցիկ, այլ 'ի մտանել անդ Կիմով-
նի ընդ նիզակակիցս զօրապետացն 'ի Թատրոն,
և ձօնելոյ ընդ զնուէրսն ըստ օրինացն, չԹո-
ղոյր նոցա մեկնել 'ի բաց իշխանապետն,
այլ երդմնեցուցեալ զնոսա հարկաւորէր
ինքնին նոցա բազմել դատաւոր մնալ ե-

րացն. և էին նորա թուով տասն՝ այր մի 'ի ցեղից իւրաքանչիւր: Աղագս այն մրցանաց և յաղթութենէ անտի դատաւորացն հանդերձեցաւ մեծապէս, և այր զարմանք եղանէին: Յորում և զյաղթութիւնն տարեալ Սոփոկղէս, ասեն՝ եթէ Եսքիւղոս ոչ ընդունելով 'ի խոյր խռովեցաւ. և չհանդուրժեալ կալ մնալ հարուստ ժամանակ յԱթէնս՝ ըն ցասմամբ անցեալ գնայր 'ի Սիկիլիա, ուր և մեռեալ թաղեցաւ մօտ 'ի Գեղայ:

Իւ պատմէ մեզ Յոնէս, եթէ պատահեալ ասպնջականին իւրքն չոգաւ 'ի Քիոս յԱթէնս, և ընթրեաց անդ ընդ Կիմոնիւ առ Լաոմեդոնեայ. և յետ ճաշակից նուիրացն աղաչեցին զԿիմոնէ նուագ ասնել: Իսկ նորա նուագեալ քաղցր, սկսան որ մերձն կային գովել զնա իբրև յաճողակ առաւել քան զԹեմիստոկղէս, այն որ ասէր զինքն ոչ յերգ նուագաց վարժեալ և ոչ 'ի կիթառ, սակայն քաղաք մի՝ գիտէ զօրածել մեծ և ընչաւէտ: Իսկ յետ այնորիկ՝ որպէս և 'ի գինւոյ իսկ՝ 'ի ճաշակին բանն 'ի բանէ դարձ լինէր և վասն նախատակութեանցն Կիմոնի, և 'ի յիշատակ բերելով զմեծամեծս նորա, ինքն հնարիմացութիւն ինչ զեւր՝ զոր գործեաց երբեմն՝ ճառ արկեալ պատմէր բազմականացն, զոր և յաւենայն 'ի գործս իւր համարէր առաւել գեղեցիկ, և էր բանն այսպիսի: Քանզի 'ի մարտի երբեմն բազում բարբարոսս գերի վարեալ նիզակակիցացն 'ի Սեստեայ և 'ի

Բիւզանդիոյ, և 'ի նա ապաստան զբաշխն արարեալ զգերւոյն, իբրև ինքն 'ի մի կողմն առեալ դնէր մերկ զգերիսն, և 'ի միւսումն՝ ողջոյն զզարդս պաճուճանաց մարմնոց նոցա, մեղ դնէին նոքա անհաւասար բաշխումն. այլ նա ասէր նոցա առնուլ զմի 'ի բաժնէն զոր կամեսցին, իբրու անշուշտ Աթենացիք շատասցին միւսումն:

Ընդ անոր խորհուրդ տայր նիզակակցացն Երոփիլոս Սամոսացի առնուլ մանաւանդ զինչս Պարսկացն, քան զՊարսիկսն. և առնուին նոքա զզարդս գերւոյն, և Աթենացւոցն թողուին մերկ զգերիսն։ Ապա Կիմոնի մեկնէր 'ի վայրացն՝ կարծեալ ինքն իբրև բաժանարար ծանծաղամիտ, այն ինչ նիզակակիցքն բարձեալ տանէին աւարս զապարանջանաց ոսկւոյ և զմանեկաց և զօղամանեկաց և զպարսիկ պատմուճանաց և զծիրանեաց. իսկ Աթենացւոյն վիճակեցան միայն մարմինք մերկք և 'ի գործ անպիտանիք: Բայց ապա յետ սակաւուց բարեկամք և մերձաւորք գերւոյն գային հանէին 'ի Փռիւգիոյ և 'ի Լիւդիոյ, և անդառհասարակ զամենեսեան փրկանաւորեցին այնչափ մթերից արծաթոյ՝ զի և ընդ ամիսս չորս զպաշար նաւացն հանդերձեաց Կիմոնի յարծաթոյ անտի, և շատ ևս յոսկւոյն յաւելաւ քաղաքին:

Իսկ բազմահարուստ յոյժ եղեալ Կիմոնին, ողջոյն զհասան՝ զոր կուտեաց փառօք 'ի յաղթութենէ Թշնամեացն, առեալ մեծ ևս փառօք ծախէր 'ի շահ օգտի քա-

ղաքացեացն. քանզի քակեաց եղաւրծ ընդ-ցանկս զագարակաց իւրոց, զի կարօտեալ մարդիկն եւ եկք եւ օտարք զմնացեալ առցեն ազատ 'ի պտղոցն. եւ հանապազօր յիւրում տան կազմէր սեղան՝ թեթեւս եւ անպա-ճոյճ, այլ շատոց բաւական. անդ գնայր եւ ամենայն աղքատ եւ գտանէր կերակուր անաշխատ. եւ պարապէր ինքն միայն յիրս քաղաքայինս: Բայց որպէս Արիստոտել ինք-նին ասէ՝ այս սեղան ոչ միշտ եւ հանապա-զօր հանդերձէր առհասարակ Աթենա-ցւոցն, այլ որոց միայն յիւրմէ ժողովրդենէն 'ի Լակիադեանց անուն կոչեցելոց վայելել 'ի նոյն:

Բայց խուռն պատանեաց յիւրոց ընտա-նեացն շրջէր զնովին նորա հանապազ հան-դերձաւորեալք զեղեցիկ. եւ թէ ըստ դէ-պաց պատահէր Կիմոնի ծեր 'ի քաղաքէն 'ի հանդերձ աղքատին, տայր նա միում ումեք 'ի նոցանէն փոխանակել ծերոյն ըզ-հանդերձսն. եւ էր գործն կարի լաւ եւ գե-ղեցիկ: Առ այս եւ բարձեալ տանէին ընդ իւրեանս այն պատանիքն մթերս դրամոց, եւ 'ի հրապարակին մատուցեալք առ լաւսն եւ առ պարկեշտսն յաղքատաց՝ զանխլաւ եւ մեղմիկ լռութեն զձեռս նոցա: Զայսոցիկ թուի իմն եւ Կրատինոսի կատակերգակի յիշա-տակ առնել յԱրքիլոքեանս իւր՝ 'ի տաղս յայսոսիկ. "Այլ եւ ես ինքնին Մետրո-բիոս նոտար, ընդ առնն աստուածայնոյն եւ մեծի վանատրի եւ առաջի բարեգործութեանն քան զամենայն Հելլենացիս՝ ընդ Կիմոնի

թէ բարեկամ, կրկնեաց Կիմոնն և ասէ. « Տարցես դու ապա ընդ քեզ զքոյին դը-րամսդ և կալցես առ քեզ. և ես քո բարե-կամ՝ յորժամ պիտոյն եղիցի՝ վայելեցից 'ի դոսա »:

Զայնու ժամանակաւ նիզակակից ժո-ղովուրդք՝ թէպէտ և տալ տային Աթե-նացւոց զդրամս ըստ պայմանեալ հարկին, այլ ոչ ևս կամէին տալ որեար և ոչ նաւս հանդերձեալս՝ ըստ պայմանին. և յանձն չառնել այնուհետև զկատարեալ զինուորու-թեանն, ցանկային յանդորրու միջակու-թեան պարապել անդոց, երկրու որոց մշա-կաց ակէտք չէին այնուհետև՝ 'ի մերձոտ-նել պատերազմացն և 'ի խաղաղել երկրացն. Իսկ յայնժամ այլք 'ի զօրավարացն Աթե-նացւոց ստիպէին զնոսա և վասն այնոցիկ, և պատուհաս ևս 'ի վերայ կարգէին անսաս-տեցն՝ զժողովրդականսն ընդ խստութիւնն գոր-ծեալ: Բայց Կիմոնն ընդ հակառակս ոչ ինչ բռնացեալ յիշխանութեանն 'ի վերայ նոցա, և այնպէս առեալ 'ի նոցանէն ըզ-դրամսն և զնաւս թափուրս՝ զի զէն առ-նուլ չառնուին յանձն, թոյլ տայր նոցա կալ առ անձին այնպէս պարապորդք, և 'ի քաղցրոց մարդկաց՝ միջակս լինել հողագործս և սորս վաճառականս, որքինչ յաջողեալք այնուհետև 'ի պատերազմ առ զօրականաց փափկութեանն: Իսկ անդուստ նա զբիւր Աթենացիսն առեալ ամբարձեալ 'ի նաւս հետ զհետէ և մարզեալ 'ի զինուորութեան, արագ արագ թօշակօքն և դրամովքն զնո-

պատերազմին, և անկանէին 'ի կողմանէ անտի Աթենացւոց առք աւագք և հոյակաւք. և կորովիք։ Բայց և այնպէս յերկարագոյնս 'ի գիմի հարեալք՝ 'ի վերջէ ուրեմն 'ի պարտութիւն մատնեցան. հարան խորտակեցան, և մնացեալքն 'ի գերութիւն վարեցան, և առան խորանքն նոցա ամենայն հարստութեամբ լի։

Իսկ յայնժամ Կիմոնի իբրև ըմբէշ քաջ և անպարտելի՝ կրկին մարտից յաղթական 'ի միում աւուր, 'ի վեր վազեաց քան ըզփառս Սաղամինայն 'ի ցամաքականութեան և քան զՊղատեայն 'ի նաւամարտին, և զայլ ևս 'ի նոսա յաւելոյր յաղթութիւն. քանզի լուր առեալ՝ զի նաւք ութսուն Փիւնիկեցւոց որ ոչ գտան 'ի մարտին անդ, եկեալ հասեալ կան յԻդրոս, 'ի շտապ առագնաալի խաղաղոյր անդր։ Իսկ զօրավարքն նաւացն ոչինչ գիտէին հաստատութեամբ յաղագս հարուածոյ մեծի բանակին, սակայն և 'ի վարանս կային։ Ուստի և մեծապէս զահի հարեալք յերևել Կիմոնի, արագ արագ զամենայն զնաւսն 'ի ձեռաց իւրեանց հանեալք՝ բազումք ևս 'ի նոցանէն տապաստ անկանէին։ Եւ այս նահատակութիւն այնպէս իմն 'ի խոնարհութիւն կրթեաց զհպարտացեալ խորհուրդ արքային, մինչև զգերահամբաւեալն զայն կնքել նմա դաշն խաղաղութեան, կալ միշտ բացագոյնս 'ի ծովէն Ելլադայ միջոցաւ չափ՝ զոր վազեսցէ երիվար. առ այս՝ և երբէք չնաւել նմա յայս կոյս Կիանեանց և Քելիդոնեայց՝

սանձահարծէր զխուժանն 'ի ճոխանալ նորա երբեք 'ի վերայ աւագանւոյն և յինքն զիշխանութիւնն յանգուցանել. իսկ երբև անդրէն միւսանգամ եւ նաւեաց նա 'ի կոխս մարտի, յայնժամ ազատացեալ ռամկին և վեր 'ի վայր զկարգ զառաջնորդութեանն արարեալ, և զհայրենատուր սահմանան՝ որովք վարէին յառաջագոյն, 'ի բաց հանեալ յարիսպագէն առ Եփիալտեաւ միաբանամայն զամենայն իշխանութիւն դատաստանի՝ բայց 'ի սակաւուց ինչ, և իշխան հրամանատար՝ ինքն եղեալ ամենայն առենից, 'ի ռամկապետութիւն համբուն առեալ շրջէր զքաղաքն, մեծապէս 'ի ժամուն զօրացեալ Պերիկղեայ և շահու օգտի խուժանին միայն պատկառ կացեալ: Որ աղագաւ և Կիմոնի 'ի դառնալ իւրում յոյժ ցաւեալ ընդ այնչափ ոտնհարութիւն կարգի աւագանւոյն, երբեւ դուն գործէր յառաջինն զնա դարձուցանել կարգ և նորոգել զաւագպետութիւնն՝ որ առ Կլիսթենեաւ, անդանօր բաղձանք յարուցեալ ընդդէմ նորա բողոք բարձեալ գոչէին զխուժանն. անդրէն միւսանգամ յիշատակ առնէին նոցա որ ինչ նորա գործք ընդ քեռն՝ բուռ համբաւոյն պատմելոյ. և յերեսս ևս հարկանէին զնորա առ Լակեդեմոնացիսն հակամիտութիւն. և առ այս՝ հաչակաւ զհամբաւ հարկանէին յայնժամ Եւպողիդեայ տողքն վասն Կիմոնի, այսպիսի ինչ. "Ո՛չ չար ոք էր, այլ գինեմոլ էր նա և ծոյլ. էր զի և 'ի Լակեդեմոն

մտեալ 'ի գործս նիզակակցացն, շուքն Կիմոնի և մտերմութիւնն ոչինչ դժպհի էր նոցա. զի և բազում ինչ յիրաց Հելլենացւոցն առաջնորդէր 'ի ձեռն նորա. և ինքն հեզաբար և հեշտ գնայր ընդ նիզակակիցսն, և գեղեցիկ մարդասիրութեամբ ընդ Լակեդեմոնացիսն: Բայց ապա իբրև յաղթ և հարուստ լինէին Աթենացիք, նոքին դարձեալ ոչինչ հանդարտէին ընդ այնչափ հակամիտութիւն Կիմոնի 'ի Լակեդեմոնացիս անդր: Քանզի և ինքն ցանդ զԼակեդեմոնիս 'ի վեր առեալ առաջի Աթենացւոցն, մանաւանդ 'ի կշտամբել իւրում զնոսա կամ 'ի յորդորել, որպէս պատմէ Ստեսիմբրոտոս, ասէր ասել. «Այլ ոչ այսպիսիք ասենք են Լակեդեմոնացիք„. այդ ազգաւ 'ի նախանձ և 'ի թշնամութիւն դրդէր զնոսին:

Իսկ որ առաւել քան զամենայն ամբաստանութիւնս յաղթահարեաց զնա, այսպիսի ինչ էր. Յամին չորրորդի թագաւորութեանն Արքիդամոսի որդւոյն Զեւքսիդամոսի 'ի Սպարտա, գետնաշարժ ահագին՝ որպիսի ոչ երբէք յառաջն՝ այնպէս սաստկեալ դղրդեցոյց զաշխարհն նոցա, զի և զաւառն Լակեդեմոնացւոց խորխորեալ պատառեցաւ 'ի վիհս անդնդախորս, և զերծեալք հոսեցին պարեխք 'ի Տայգետոնի լերանցն. իսկ քաղաքն հիմն 'ի վեր տապալեցաւ առ հասարակ և յատակեցան ամենայն տունք 'ի գետնաշարժէն բայց 'ի հնգից: Եւ պատմեն՝ եթէ և

պատանիք և մանկունք յայնժամ 'ի գաւթի անդ սրահին պարապեալք յըմբշամարտս, վայրկեան մի յառաջ քան զդետնաշարժն անցեալ վազեաց ընդ այն նապաստակ մի, զորոյ զհետ մանկունքն օծեալք վազեցին արտաքս հրճուանօք. իսկ անդանօր պատանիք՝ որ մնացին՝ ջախեալք առհասարակ դիտապաստ անկանէին 'ի ներքոյ ըմբշամարտանին: Եւ գերեզման նոցա մինչև ցայսօր ժամանակի անուանեալ կոչի Սէիսմատիաս 4:

Իսկ յայնժամ Արքիդամոս արքայ նախազգած վտանգին՝ որ յառաջոյ, և տեսեալ ևս զքաղաքացիսն հետամուտս ապրեցուցանել զպատուականսն 'ի տանց, հրաման տայր փող հարկանել ազդարար հրոսակի թշնամեաց, զի արագ արագ առ նա վառեալք խմբեսցին ժողովուրդք: Եւ ապա այս հնարիմացութիւն ապրեցոյց յայնժամ զՍպարտիա: Քանզի Իլոտք դեգերեալք 'ի գաւառն՝ 'ի կողմանց կողմանց յայնժամ հորդան տային հասանել սատակել և զմնացեալսն 'ի Սպարտացւոց. այլ 'ի զէն 'ի զարդ վառեալ և 'ի կարգի յանկն արկեալք զնոսա, վերջոտնեալ զնոսային 'ի մերձաւոր քաղաքսն. և ապա յայտնի մարտ ընդդէմ նոցա յարդարեալք՝ յանկուցանէին ոչինչ նուազունս և 'ի շրջակայ ժողովրդոց. առ այս՝ և Մեսսենացիք յայնժամ ինքնին մարտ եդեալ կռուէին ընդ Սպարտացւոց:

Իբրև այս եղև, առաքեցին Լակեդեմոնացիք զՊերիկլիդաս յԱթէնս խնդրել

օգնութիւն. ուր աղաղաւ և Արիստոփա-
նէս հեգնեալ զայրն ասէ. Նստեալ Պերիկ-
ղիդաս մերձ առ բագինսն՝ ճխուրեալ դեղ-
նեալ, և որդան կարմիր զուրեալ արկեալ,
խնդրէր զօրականս: Այլ ընդդէմ դարձեալ
խնդրոյն Եփիալտէս պնդէր չտալ ձեռն
օգնականութեան և 'ի վեր չամբառնալ
զքաղաքն նախանձաւոր Աթենայ. նա՝ թո-
ղուլ լքանել զնա 'ի նուաճութեան իւ-
րում և 'ի խոնարհութիւն կրթել զամ-
բարտաւանութիւն նորա: Իսկ անդուստ
Կիմոնին՝ որպէս Կրիտիաս ասէ՝ զԼակեդե-
մոնացւոցն շահ նախամեծար քան զզար-
գաւաճել զիւրոցն կարգեալ և զխուժանն
ամբոխեալ ներհակաբար Եփիալտեայ, հա-
նէր 'ի ճակատ բազմութիւն հետևակաց 'ի
թիկունս օգնականութեան Սպարտացւոց:
Բայց Յոնն և զբանսն գլխովին պատմէ
մեզ՝ որովք մեծապէս դրդեաց Կիմոնն զԱ-
թենացիսն, մի թոյլ տալ նուաճութեանն
Սպարտոյ, զի մի թերևս կաղացի Ելլա-
դա, և իւրեանց քաղաքն անկած 'ի հաւա-
սարակշռութենէն կացցէ:

Այս յետ օգնութեանն Լակեդեմո-
նացւոց, խաղացուցեալ Կիմոնի զզօրն
ընդ Կորնթոս 'ի դարձին իւրում, բողոք
չատ բառնայր զնմանէ Լակքարտոս, զի
մինչև բանադնաց եղեալ ընդ Կորնթացիս՝
այնպէս խաղացոյց 'ի ներքս զզօրն. զի և
ոչ ոք արդեօք առ դուրս ուրուք բաղխեալ՝
ոչ մտանէ մինչև թոյլ տանուտեառն
տուեալ: Զայն լուեալ Կիմոնի, եւ պա-

ցաւ նա յիւր ցեղն Ինէական, մատուցեալ յօժարութեամբ մարթ գտնել կռուել ընդ իւրոց քաղաքացեացն ընդդէմ Լակեդեմոնացւոց: Յայնժամ առաջանին հինգ հարիւրեանն իրազգած եղեալ և խիթացեալ ևս՝ որչափ ինչ ընդդէմ Կիմոնի բողոք բարձեալ առէին թշնամիք նորա, իբրու որ եկեալ հասեալ իցէ անդր աղմուկ շփոթից յուզել 'ի փաղանգին, և առնուլ ածել զԼակեդեմոնացիսն 'ի քաղաքն, արգ առնէին զօրավարացն մի ժողովել զայրն: Ապա մեկնեալ անտի Կիմոնի՝ աղերս արկանէր նախ Եւթիպպոսի Անափլիւստեայ, երկրորդ՝ և ամենայն նիզակակցաց իւրոց՝ որ կարծեալ կուսակիցք էին Լակեդեմոնացւոցն, մարթ քաջութեամբ գտնել ընդդէմ թշնամեաց, և այնպէս զայն խէթ մտաց զքաղաքացեացն քերել յանձանց:

Յայնժամ զօրականք թուով հարիւր՝ որոց աղերս զայս արկանէր Կիմոն, առեալ 'ի նմանէ ողջ զսպառազինութիւն նորա՝ և արձանացուցեալ զայն 'ի մէջ խմբին իւրեանց, և առ հասարակ յոյժ քաջապէս նահատակեալք 'ի մարտին՝ զիտապաստ անկան միանգամայն 'ի դաշտին, ըղձակաթս իւրեանց թողեալ զԱթենացիսն, և խիղճ ևս սաստիկ հարեալ 'ի նոսա վասն անիրաւ խէթին: Ուստի և նոքա ոչ ինչ յերկարաձգեցան 'ի սրտմտութեան իւրեանց ընդդէմ Կիմոնի. կէս մի յուշ զառաջին երախտիսն բերեալք՝ որպէս հա-

ւաննեալս եմ, և կէս մի դարձեալ՝ 'ի հարկէ ժամանակին դրդեալք։ Քանզի 'ի պարտութիւն մատնեցան նոքա 'ի մեծի պատերազմին Տանագրայ. և սպանեալք են 'ի դաշտ դարնայնոյն բանակի զօրաց Պեղոպոնիսացւոց, յետ 'ի վտարանդութեանն կոչելին զԿիմոնն. և դառնայր նա յայնժամ, և զսահման վճռոյն դրեր ինքնին Պերիկղէս։ Այնպէս իմն քաղաքականք հանդիպէին՝ որ այնր ժամանակին վէճք և պայքարք, և սրտմտութիւն բարկութեանն չափաւոր և դիւրամոքելի 'ի շահ օգտի հասարակաց. և փառասիրութիւնն ինքնին՝ բուռն և սաստիկ քան զամենայն զիրս՝ տեղի տայր 'ի դիւր հայրենեացն։ Ապա անդէն 'ի դառնալ իւրում ելոյծ Կիմոն զպատերազմն, և հաշտ ընդ միմեանս առնէր զքաղաքսն։

Իսկ յետ այնորիկ 'ի խաղաղութեան անդ տեսեալ նա զիւրսն՝ զի ցանդ խլըրտեալք՝ խնդրէին յօրանալ 'ի զէնս. և զի մի Թերևս այլոց Հելլենացւոց նոքա դժոխ ըմբերբելիք լինիցին և յածեալք ընդ կղզիսն կամ ընդ Պեղոպոննիսոս բազմութեամբ նաւաց՝ մարտ գրգռեսցեն ընտանեաց և անդուստ նիզակակիցք բողոք զԱթենայ կալցեն, առեալ նա կազմեր հանդերձեր եռամթիս երկերիւր՝ չու առնել խաղալ մարտ պատերազմի տալ յԵգիպտոս և 'ի Կիպրոս. խնդրէր յօժարեցուցանել զԱթենացիս 'ի կռիւ ընդ բարբարոս ազգաց, շահավաճառ լինել արդարութեամբ, բե-

րել կռուել յԵլլադա զընչաւէտութիւն զանկակից զիւրեանց թշնամեացն։

Ապա կազմ տուեալ ամենայնին, և զօրականին առհասարակ խմբեալ առ նաւուքն, երազ տեսանէր Կիմոն. թուէր նմա քածի ուրումն զայրացեալ հաչել ընդդէմ նորա. և 'ի հաչմն՝ ձայն ևս յօդաւոր զմարդոյ արձակել, եթէ « Ե՛կ էկ, սիրելի և ինձ լիցիս և իմոց կորեանց »։ Թէպէտ և դժուարիմաց յոյժ էր թարգմանութիւն տեսլեանն, անդանօր Աստիւփիղոս Պոսիդոնիատես իղձ քաջափորձ և Կիմոնի մտերիմ՝ մահու ազդարար զերազն թարգմանէր այսպէս. քանզի թշնամի է՝ ասէ՝ շունն՝ որ ընդդէմ հաչէ, և սիրելի թշնամւոյն լինել չէք՝ բայց մահուամբ. իսկ խառնաձայնութիւնդ յայտնապէս զՄարն նշանակէ թշնամի. քանզի Մարաց բանակ խառն է 'ի Հելլենաց և 'ի բարբարոսաց։ Զայս տեսեալ Կիմոնի երազ, և զոհ զոհեալ Դիոնիսեայ, և ըղձին զպատանդն յօշեալ, մրջմանց շարք զեռեալ զգնայլին առնուլին յարենէ անտի թանձրացելոյ, և տակաւ բերեալ առ Կիմոն՝ ընուլին առ բոյթն ոտիցն 5, և ժամ մի հարուստ իմանայր և ոչ ոք զբանն։

Ապա 'ի վերջէ Կիմոնի ուշ եդեալ բանին, 'ի նոյն և նուիրագործն մատուցեալ ցուցանէր նմա զլեարդն անգլուխ։ Սակայն և այնպէս ոչ ժամանեալ նորա տեղի տալ 'ի զինուորութենէ անտի, անկանէր յուղի. և առեալ արձակէր վաթսուն 'ի նաւ-

մոնի ։ Զայն լուեալ նոցա, իջեալ վաղվաղակի 'ի ծովն և հասեալ 'ի բանակ նաւացն Հելլենացւոց՝ որ քերէր յայնժամ առ Եւրիմեդոնիւ, լուր առին զմահուն Կիմոնի. և զաւուրսն հաշուեալ 'ի բանից անտի պատգամախօսին առ նոսա, ծանեան՝ զի առաւելու ակնարկեաց զմահն նորա՝ իբրու ընդ աստուածոց հանգչել նմա ։

Եւ մեռաւ Կիմոն՝ որպէս բազմագոյնք ասեն 'ի մատենագրացն՝ խօթացեալ հիւանդութեամբ 'ի պաշարմանն անդ Կիտեայ. և որպէս կէսք ասեն՝ վէրս առեալ 'ի մարտին ընդդէմ բարբարոսաց ։ Եւ պատուիրեաց նա 'ի մահուան իւրում, չու վաղվաղակի առնել յԱթէնս՝ 'ի ծածուկ ըզմահն ունելով. և ճշգրտիւ պահեցին ըզպատուէրն՝ զի և մինչև 'ի Թշնամեաց ոք կամ 'ի նիզակակցացն իրազեկ բանին եղեալ, յանդորր հասեալ իսկ էր նաւահանգստին. առաջնորդեալ՝ որպէս ասէ Փանոդեմոս՝ իբրու 'ի նմին իսկ 'ի Կիմոնէ վախճանելոյ՝ զաւուրս երեսուն յետ մահուան իւրոյ ։

Իսկ յետ մահուանն Կիմոնի՝ ոչ ոք 'ի զօրավարացն Հելլենացւոց նահատակութե երևելի ոչ գործեաց ընդդէմ բարբարոսացն. այլ ձգեալք բերեալք 'ի հռետորաց ռամկին, և գժտեալք ընդ միմեանս, և խաղաղարար և ոչ մի ոք գտեալ նոցա, 'ի մարտ եւս գրգռեցան ընդ միմեանս. ոյժ ետուն կողման Թագաւորին, և մեծապէս յոյժ խանգարեցին զզօրութիւն Ելլադայ ։

Եւ թէպէտ և յետ հարուստ ժամանակի 6, խաղաց զինեաց Աղեսիղայոս յԱսիա, և անդ մարտ ծովականաւ դուզնաքեայ յարդարէր ընդ զօրավարաց արքային, այլ մինչչև երևելի ինչ գործեալ և մեծ, կոչեցաւ յԵլլադա 'ի պատճառս ինչ ամբոխից և հերձուածոց, թողեալ անդ 'ի քաղաքս նիզակակցացն և բարեկամաց հարկահանս զՊարսիցն: Յորոց և ոչ սուրհանդակ ոք թղթաբեր 'ի նոցանէ առ Կիմոնիւ զօրավարութեամբն՝ ոչ ժամեաց իջանել. և ոչ հեծեալ ոք 'ի Պարսից երևեցաւ, այլ բացական կայր 'ի ծովէն ասպարիսօք չորեքհարիւր:

Բայց նշխարք Կիմոնի ածեալ բերան յԱտտիկէ, և մնայեն շիրիմքն՝ որ մինչև ցայսօր ժամանակի կոչին՝ ԿԻՄՈՆԵԱՆՔ: Այլ սակայն և Կիտացիք ինքնին 'ի պատուի ունին գերեզման մի զԿիմոնի. քանզի որպէս Նաւսիկրատէս ասէ հռետորն, 'ի սովել և յերաշտանալ երկրին նոցա՝ հրաման լինէր նոցա առ 'ի դիցն՝ մի զանց զԿիմոնիւ առնել, այլ շուք և պատիւ ձօնել նմա՝ իբրև առաւելագունի ումեք: Այսպիսի ոք եկաց զօրավար այս Հելլենացի:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Պլուտարքոս Քերոնէացի զկնի բազմահոլով ժամանակաց գեղեցիկ դարձ շնորհապարտ սրտի՝ ընծայէ Լուկուղղեայ գեղեցիկ եւ արձանագրութեամբ վարուց առնն, իբրու որ փրկիչ եղեւ իւրոց հայրենեաց։

2. Արիպակ սպրդեալ է յօրինակագրաց 'ի բնագրին․ քանզի և Պլուտարքոս ինքնին քաջիկ գիտէր զժամանակ զայն՝ իբրև ամաց ութ հարիւրոց։

3. Ճաշատուն հասարակաց յԱթէնս՝ վասն բարեգործաց քաղաքին։

4. Քանզի Σεισμός. 'ի Յն. նշանակէ գետնաշարժ, սասանութիւն։

5. Քանզի ըստ Աթենացւոցն սովորութեան, բոկ ոտիւք կայր Կիմոնն 'ի զոհին։

6. Այս է՝ յետ ամաց յիսուն և հնգից։



# ԼՈՒԿՈՒՂՂՈՍ

ԼՈՒԿՈՒՂՂՈՍԻ հաւն էր 'ի հիւպատոսական կարգէ, և մայրենի պապն նորա՝ էր Մետեղղոս մականուանեալն Նումադիկոս. իսկ հայր նորա ամբաստանեցաւ 'ի գողութեան. և Կեկիլիա մայր նորա վատահամբաւեցաւ իբրու ոչինչ պարկեշտակրօն: Իսկ ինքն Լուկուղղոս՝ մինչ տակաւին պատանեակ էր, մինչչև զաւագութեան ինչ թեկն ածեալ և յիրս քաղաքին միջամուխ եղեալ, առաջին 'ի գործ նահատակեցաւ դատախազ լինել զՍերվիլիոսէ հաւահմայէ իբրու որ վնասակար եցէ քաղաքին, այն՝ որ դատախազ կացեալ իսկ էր հօրն իւրոյ: Եւ ապա զայս գործ նորա՝ հոյակապ համարեցան Հռոմայեցիք. և զայն դատ նորա իբրև քաջութիւն նահատակութեան զհչամբաւի հարկանեին նոքա: Քանզի և թուէր իսկ նոցա ոչինչ

անփառունակ գործ՝ դատապարտող անպատ-
տուակ կեալ. և օրէնքն ևս ոտնահարել զհե-
րեանց պատահմանն հետամտեալ 'ի հալա-
ծել զմնաստակարս, իբրու բարբաջեն ոմանք.
քաղքք՝ զգաղանս։ Բայց 'ի դատէն երկո-
քին ևս կողմանք 'ի պայքարս եկեալ գժտըն-
դակս յոյժ, զի և կէսոց վէրս առնուլ
յայնժամ, և կէսոց ևս 'ի մահ տարածել,
'ի վերջէ ուրեմն արձակեալ լինէր Սեր-
վիլեոս։

Խակ էր Ղուկուղղոս և երկպառակչիւր ևս
լեզուաց քաղաքավարժ. մինչև և Սիւղղայի
յիշեցին զՅիշատակագիրս զիւրոց նախատա-
կութեանցն նուիրել Ղուկուղղոսի, իբրու
որ յաղթողաձեռն էր լաւագունի ընծայել
կարգի և ոճոյ զպատմութիւնն զայն։ Քանզի
և չէր իսկ նորա բանն ճշգրիտ և ճար-
տար առ 'ի պէտս հարկին միայն՝ իբրու
զայլոց ոմանց, որ զատեանսն "Իբրու զոն
ահագին՝ բախեալ յուզեալ զծով մեծ",
բայց ապա արտաքոյ ատենին՝ "Յին և չոր
առ անուսումնութեան անշնչացեալ կայ".
այլ անդստին 'ի պատանի տիոցն վարժե-
ցաւ նա իբրև 'ի վայելուչ զարդ անձին՝ 'ի
դեղեցիկ դպրութիւնս, զոր Ազատականս
կոչեն։ Իսկ 'ի ծերութեանն առեալ ըղ-
միտսն հանդարտեալ 'ի բազում մարտից՝
պարապեցոյց յիմաստասիրականին վարժս,
վառեալ յառաքինութիւն ետեսականին,
և սանձեալ 'ի ժամուն զեղծ փառաց և
զպատուոյն՝ յետ գժտութեանն ընդ Պոմ-
պէի։ Առ այսոքիւք՝ և յաղագս բանասի-

րութեան նորա պատմեն և զայս, եթէ պատանեակ տակաւին գոլով դիմնագրաւէր իբրև 'ի խաղս՝ յանդիման Որտեսիոսի իրաւաբանի և Սիսեննայ պատմաբանի, իբրև բաւական յարձանագրել զմարտ պատերազմին Մարսիկեան 'ի քերթեալ կամ թէ 'ի ճառ, 'ի լեզու հելլենացի կամ 'ի հռոմայեցի, զխորդ և վիճակ հանեալ՝ պատահեացին իրքն : Եւ թուի ելանել վիճակին՝ 'ի ճառ հելլենացի. քանզի և կայ իսկ այսօր հելլենացի պատմութիւն Մարսիկեան մարտին :

Իսկ յաղագս անծուկ սիրոյն նորա առ Մարկոս եղբայր իւր՝ բազում հաւաստիս 'ի դէմս բերեալ նա, յաւէտ իմն առաջնոյն այնմիկ յիշատակ առնեն Հռոմայեցիք. զի երէց քան զեղբայրն գոլով ոչինչ կամեցաւ միայնակ աւագութիւն յանձն առնուլ, այլ եկաց միաց մինչև յաճել հասակին նորա. որով և 'ի սէր իւր այնչափ յանկուցանէր զժողովուրդն, զի և ամբարապետ՝ թէպէտ և բացական՝ կարգել ընտրեցին զնա 'ի միասին ընդ եղբօրն :

Բայց մինչդեռ տակաւին պատանի էր, քաջութիւն մեծապէս և հանճար եցոյց նա 'ի Մարսիկեան մարտին, և Սիւղղաս 'ի վեր քան զամենայն յանդրդուելի հաւատարմութենէ անտի նորա և 'ի հեզութենէն ածեալ ձգեցաւ զկնովին յինքն գրաւականել զնա. և ցանկ գործի 'ի ձեռն առզնա 'ի մեծամեծս, ըստ որում և 'ի հատանելն զդրամ. քանզի և 'ի Մեհրդա-

զովքրդեանն, եւ պատասխանի. Դժնդակ յոյժ է օրինադիր լինել վասն կիւրենացւոց, որ այնչափ իմն բարդաւաճեալ էին առ 'ի բախտէն: Քանզի և չէք ինչ յէից առաւել տկարուոմ քան զմարդ բարեբաստիկ, և չիք դարձեալ առաւել ձեռնընդել քան զայր վատախտար: Որ առագաս և կիւրենացիք յայնժամ մեծապէս հեզութեամբ հպատակ կացին օրինացն Լուկուղղեայ:

Ապա անտի նաւեալ յԵգիպտոս, կորուսանէր բազումս 'ի նաւաց իւրոց յառպատակութենէ անտի հինից. այլ ինքն ողջանդամ զերծեալ, հիւրընկալութիւն մեծապէս գտանէր յԱղեքսանդրիա, ընդառաջ նմա եկեալ ողջոյն հանդիսի նաւացն 'ի կարգ գեղեցիկ և հոյակապ զարդարեալ զարդու, իբրու արդարև ընդառաջ արքայի որ յարշաւանաց ուստեք դարձեալ իցէ: Եւ յայնժամ Պտղոմէոս կրտսեր բաց յայլոց գեղեցիկ հիւրամեծարութեանցն, 'ի ներքս մատուցանէր նմա և տուն բնակութեան և սեղան յիւր սեպհական արքունիս. որում և ո՛չ ոք երբէք վիճակեցաւ յառաջագոյն յեկաց անտի զօրավարացն. առ այսոքիւք՝ և ռոճիկ և թոշակ կարգէր նմա, ո՛չ որպէս այլոց, այլ քառապատիկ առաւելութեամբ: Իսկ Լուկուղղոս առեալ միայն 'ի կարևորացն, ընծայիցն երբեք ինչ չառնէր. Թէպէտ և պարգևք 'ի ներքս մատուցան նմա գնոց ութսուն քանքարաց: Եւ պատմեն՝ եթէ

ղայն տուրան ոչ 'ի Մեմփիս եւ Լուկուղ-
ղոս, և ոչ 'ի տեսանել չողքաւ նա ինչ մի
'ի գերահռչակ անտի սքանչելեացն Եգիպ-
տոսի. և ասէր՝ եթէ գրգասէր և պարտա-
պորդ. մարդոյ է գործդ, և ոչ իւր. որ զզօ-
րավար իւր զմեծ թողեալ իցէ 'ի բացեայ
բանակեալ մօտ 'ի պատանեշս թշնամեաց:
Բայց Պտղոմէոս յայնժամ յանձն չառեալ
նիզակակից Սիւղղայի լինել՝ զանգիտեալ 'ի
մարտից պատերազմաց, տայր Լուկուղ-
ղեայ նաւս առաջնորդականս մինչև 'ի Կի-
պրոս. և յուղի անկանել նորա՝ գիրկս
նմա ածեալ մատրիմս և շքով, զմրուխտ
պատուական ոսկեկապիճ պարգևէր նմա.
զառաջինն յանձն չառնոյր Լուկուղղոս.
իսկ իբրև թագաւորն զքանդակ 'ի նմա
զիւրոյ պատկերին ցուցանէր նմա, ոչ ժամե-
ցաւ Լուկուղղոս տեղի տալ, զի մի 'ի կար-
ծիս ինչ թշնամութեան մեկնեալ 'ի նմա-
նէ՝ դարանք ինչ նմա գործեսցէն 'ի ծովուն:

Բայց 'ի դարձի անդ իւրում ժողովեալ
Լուկուղղեայ նաւս բազումս յամենայն ծո-
վեզերեայ քաղաքացն, ընդ որս անցանէր՝
աճ արկեալ նիզակակցաց հռենիցն, իբրև
եկն եհաս 'ի Կիպրոս, անդանօր լուր առ-
նոյր զի թշնամիք դարանամուտ նաւուք 'ի
հրուանդանսն սպասեն նմա. նա անդէն 'ի
ծովեզր միանգամայն զամենայն զնաւսն
քարշեալ, գրէր տայր առ քաղաքս քա-
ղաքս վասն պաշարոց ձմերոցին, իբրու որ
անդանօր ձմերել նմա՝ մինչև 'ի գալ գար-
նայնոյն: Այլ ապա իբրև հողմն շնչեաց

նմա յաջողակ, յանկարծակի 'ի ծով խաղացուցեալ զզօրամարտակ նաւացն՝ անկանէր յուղի. զցերեկ նաւէր խոնարհագոյնս և հանգրիձեալ առագաստիւք, և զցայգ ամբառնայր և պարզէր. և այնպէս ողջանդամ եկեալ հասանէր 'ի Հռոդոս: Անդանօր և նաւս այլ տուեալ նմա 'ի բնակչաց կղզւոյն, ածէր հաւանեցուցանէր զԿովացիս և զԿնիդացիս ոչ ևս կալ 'ի միաբանութեան ընդ արքային, և 'ի մարտ խմբել ընդ Հռոմայեցւոց ընդդէմ Սամոսացւոց: Եւ ապա 'ի Քիոյ վանէր հալածէր միայնակ՝ որ անդ զպահապան գունդ զարքային, և յանդորր հանէր զԿողոփոնիացիս, ձերբակալ արարեալ զԵպիգոնոս նոցուն բռնաւոր:

Զայնու ժամանակաւ Միհրդատ 'ի բաց լքեալ զՊերգամոն, տեղի ետ 'ի Պիտանէ. ուր և 'ի նեղ արկեալ և պաշարեալ 'ի Փիմբրիասայ ընդ ցամաքակողմն, դէտակն կալեալ նա 'ի ծովակողմն՝ առաքէր կոչէր առ ինքն 'ի կողմանց կողմանց և կուտէր խմբէր 'ի մի առհասարակ զնաւսն. ոչինչ իշխէր 'ի վէճ գալ մարտիւ ընդ Փիմբրիասայ քաջի առն և յաղթականի: Իբրազեկ այնմ եղեալ Փիմբրիաս՝ որ նաւաց զօրութեամբ խոնարհագոյն էր քան զնա, հրեշտակս ձեպով տայր առ Լուկուղղոս, աղաչէր գալ հասանել իւրովք նաւուքն, և գործակից մարտակից՝ ձերբակալ զարքայն առնել զահաբեկն և զոխերիմն. և մի զմրցանակ զայն զմեծաց մարտից և զքաղ-

մաց քրտանց 'ի ձեռաց հանել, յորժամ դէպ ժամանակն ինքնին տայ հեշտին որսալ զնա՝ 'ի հաղբս շաղեալ նորա. զոր և 'ի գլուխ տարեալ՝ ոչ ըք այնպէս գերագունին հանդիպեսցի փառաց՝ իբրու որ զփախուստ որսոյն արգելեալ՝ ըմբռնեսցէ զնա 'ի ճողոպրել նորա. ուստի և յերկոցունց կողմանց մին վանեալ զնա 'ի ցամաքէն, և միւսն նեղեալ զնա 'ի ծովէն, երկոցուն նոցա ընծայեսցին փառք նահատակութեանն. առ որով և ոչինչ գրեսցեն այնուհետև Հռոմայեցիք զՍիւղղայի նահատակութիւնն, որ զհամբաւ հարան յՈրքոմենոն և 'ի Քերոնէիա։

Այդ պատրաստութիւն այս Փիմբրիասայ առ Լուկուղղոս ոչ գժպատեհ ինչ էր և ոչ դժուարին. քանզի և յայտնի եթէ Լուկուղղոս ինքնին՝ որ չէր ինչ բացական՝ հասանեալ բանին և շուրջանակի անդր զնաւսն ածեալ՝ փակեալ էր զնաւահանգիստն, անշուշտ մարտին վճարեալ՝ և Հռոմայեցւոցն զերծեալ խնկ էր յամբաւ տղէտից։ Այլ կամ զի քան զամենայն շահ առանձին և զհասարակաց՝ նախամեծար ընտրեաց նա զհրամանակատար լինել Սիւղղայի՝ յորմէ պատուիրակ առաքեալն էր. կամ զի յատելութիւնն բերու նա ընդ Փիմբրիասայ ժանտոյն, որ վայրիկ մի յառաջ յինքն տարեալ զիշխանութիւնն՝ 'ի մահ վարեաց զայրն մեծ զզօրավար և զբարեկամ նորա. և կամ զի կամաց աստուածայնոյ ինչ Բախտի ներեալ յայն

ժամ Միհրդատայ և յայլ ժամանակ պա-
հեալ զոխերիմն զայն, յանձն չեառ 'ի
ժամուն Լուկուղղոս հասանել բանիցն
Փիմբրիասայ. և այնպէս պարապ գտեալ
նաւագնաց ծովայրէր Միհրդատ՝ ծաղր
առնելով զատուար բանակական Փիմբրիա-
սայ:

Յետ այսորիկ Լուկուղղոս եհար խոր-
տակեաց զնաւս արքային նախ 'ի Լեքտոս՝
վայր Տրովադայ՝ ուր պատահեցին նոքա
միմեանց. ապա և 'ի Տէնեդոս. ուրանօր
լուր առեալ՝ զի Նէոպտողմէոս զտեղի ա-
ռեալ կայ մեծապէս կազմութեամբ, նա-
հատակեցաւ ինքն ընդդէմ նորա՝ ամբար-
ձեալ 'ի հնգամթի մի հռոդացի, 'ոյր ղեկա-
վար Դեմագորաս՝ այր բարեկամ Հռո-
մայեցւոց և քաջահմուտ նաւամարտի:
Անդուստ և Նէոպտողմէոս դիմեալ ընդ-
դէմ Լուկուղղեայ ամենայն զօրութեամբ,
հրաման տայր ղեկավարին յառաջ վարել
ոգորել բախել զնաւ Լուկուղղեայ. ան-
դանօր զանգիտեալ Դեմագորաս 'ի թա-
փոյ յաղթահարուստ նաւուն արքունի և
'ի պղնձապատ քաջամուր ցռկէն, ոչ իշ-
խեաց բախել հարկանել ընդ առաջակող-
մանսն, և շրջան արագապէս տուեալ նա-
ւուն իւրոյ՝ խնդրէր 'ի խելն առնուլ ըզ-
թափն: Ապա ընդհարեալ նաւուն, 'ի
փոքրոգի բախմանէն վնասեցաւ և ոչինչ,
քանզի հարան նորա կողմանք ջրասոյզք:
Յայնժամ և այլք 'ի նաւացն նորա յա-
ռաջ վարեալ, հրաման տայր Լուկուղղոս

գործուցանել զաստուածջախողումն ընդդէմ թըշ-
նամեաց. և նահատակութիւնս յայնժամ
տարեալ մեծամեծս՝ 'ի փախուստ դար-
ձուցանէր զնոսա, և հարուստ միջոցաւ
զհետ մտեալ վանէր զնէտապարտմէտս ։

Անտի խաղաց գնաց, և խմբեալ ընդ
Միւղղայի յանցանել նորա 'ի Քեռրոնէ-
սոն, յանդորր հանէր զանցս նորա և նը-
պաստ լինէր 'ի չու զօրականին ։ Այպա դա-
չինք կռեալ խաղաղութեան, անցեալ նա-
ւէր Միհրդատ 'ի ծով Եւքսինեան, և
Միւղղաս տուգանաց դատակնիք 'ի վերայ
ածէր Ասիոյ քանքարաց երկուց բիւրուց։
Եւ քանզի Լուկուղղեայ ինքնին յանձն
եղև հանել զհարկն զայն և զրամ եա հա-
տանել, թուէր իմն քաղաքացն այնոցիկ՝
ոգի առնուլ յանհամբոյր խստութենէն
Միւղղայի. զի յանձն եղև գործն այնպի-
սում առն՝ որ ոչ անզօշաքաղ և արդա-
րակորով միայն էր, այլ և հեշտ և բաղձա-
լի՝ որչափ ինչ մարթէր՝ 'ի գժոխոմբերելի
պաշտամանն ։

Բայց յայնժամ վտարանջեալ 'ի նմա-
նէ Միտիւլինացւոց, ընդձայր նա բարւոյն
նոցա՝ դոյզն պատուհաս յանձն առնուլ
զյանցաւորութեան իւրեանց 'ի կուսակ-
ցութեանն ընդ Մարիոսի. այլ նոցա ալըն-
դեալ 'ի չարութեանն, նա խաղաց ընդ-
դէմ. և մարտիւ պարտեալ զնոսա, առ
փակեաց զնոսա 'ի ներքս 'ի պատուարսն.
և շուրջ պաշարումն զնոքօք ածեալ, 'ի լոյս
տունջեան ակն յայտնի ելեալ չու առնէր

'ի վայրացն՝ դէպ ուղիղ նաւեալ յՆեղէա. բայց ապա 'ի մութ գիշերոյն զանխուլ յետս դարձեալ և դարանամուտ առ քաղաքաւն եղեալ, անդ անշշունջ դարանեալ նստէր։ Իսկ Միտիւլինացիք անկարգ ամբոխիւ յանդգնաբար 'ի դուրս ելեալ, կարծեալք զառ և զաւար ժողովել զբանակին Թշնամեաց՝ զոր լքին, նա յեղակարծումն 'ի վերայ անկեալ նոցա, սաստիկ որեար ձերբակալ առնէր, և հարկանէր սատակէր ոգիս հինգ հարիւր՝ որ զդէմ դարձան. և գերի վարէր 'ի նոցանէ ոգիս վեց հազար և աւար բազում։

Բայց Լուկուղղոս 'ի կիրս անդ անբաւ աղէտից Իտալիոյ առ 'ի Սիւղղայէ և 'ի Մարիոսէ՝ հաղորդեցաւ և ոչինչ. քանզի պատաղեալ գոյր նա յայնժամ՝ յաստուածայնոյ իմն գործեաւ բախտէ՝ 'ի գործս նահատակութեանն Ասիոյ։ Սակայն և ոչ խոնարհագոյն քան զայլսն 'ի բարեկամաց իւրոց յարգեաց զնա Սիւղղաս. նա և առ մտերմութեանն՝ նմա առեալ նուիրեաց՝ որպէս ասացաք՝ զիւր Յիշատակագիրսն. առ այս՝ և 'ի մեռանել իւրում՝ զնա ցուցանէր դայեակ խնամակալ իւրում զաւակին՝ յետս տարեալ զՊոմպէոս. և թուի թէ այս եղեն առաջին պատճառք նախանձաւոր զժտութեան նոցա ընդ միմեանս. քանզի և երկոքին իսկ պատանիք առոյգք էին վառեալք 'ի սէր փառաց։

Իսկ վայր մի յետ մահուն Սիւղղայի եկաց նա հիւպատոս 'ի միասին ընդ Մար-

կոսի Կոտտասայ 'ի հարիւրորդի եօթա-
նասներորդի վեցերորդի Ողոմպիադին: Եւ
յայնժամ 'ի բազմաց ամանց դրդուեալ
միաբանեալ մարտ Միհրդատեան, անէր
Տարկոս զայն մարտ պատերազմին ոչ վճա-
րեալ ինչ, քան եթէ ընդմիջեալ: Որ
աղաղաւ և միճակ հանեալ զաւառացն,
իբրև Գաղատիա որ յայսկոյս Ալպեանց՝
վիճակէր Լուկուղղեայ, 'ի խոր խոցեցաւ
այրն՝ իբրու ոչինչ պատճառս ունել նմա
'ի զաւառին յայնմիկ զմեծաց մրցանաց.
բայց և մեծապէս խէթ արար նորա էր մեծ
համբաւ քաջութեանն Պոմպէի յԻբերիա.
ուստի և 'ի վճարել անդամոր մարտին,
նմին իսկ Պոմպէի քան այլոց ամանց՝ ըստ
հասարակաց ակնկալութեանն համանէր
կարգել 'ի զօրավարութիւն ընդդէմ Միհրդա-
տայ: Ուստի և յառաջել Պոմպէի 'ի խնդ-
իր դրամոյ 'ի Հռոմ, և 'ի գրել՝ եթէ 'ի
յաղթողելն, լքեալ զԻբերիա և զՍերտո-
րիոս՝ ածցէ զզօրն յԻտալիա, մատագիւրա-
գոյնս ձեռնտու լինէր Լուկուղղոս առա-
քել նմա զդրամն, զի մի՛ նա պատճառեալ
դարձ 'ի Հռոմ արասցէ 'ի հեւպատոսու-
թեան իւրում. գիտելով քաջ զի այնչափ
զօրու նա զամենայնն այնուհետև ըստ կա-
մացն տարցի և բերցէ 'ի քաղաքին. ուր զի
և ինքնին Կեթեգոս, այն որ բանիւք և առ-
ղեամբք յամենայնի ըստ քմաց վարեալ
խուժանին, տիրացեալ իմն էր յայնժամ
'ի վերայ քաղաքին, և թշնամութեամբ էր
ընդ Լուկուղղոսի. քանզի անառակս զվատ

թարութեան կրծնս նորա, զլցեալն պագ-շոտութեամբ և խեռութեամբ և յամենայն ազգ չարութեան. ուստի և մարտ յայտնի յարդարեալ էր ընդդէմ նորա: Բայց ընդ միւսոյ հռետորի խուժանին՝ այն էր Լեւկիոս Կուինտոս, որ ընդդէմ զառնացայր սահմանաց կարգացն Սիւղղայի և զուն գործէր վեր 'ի վայր առնել զամենայնն, բաղում խորհուրդ 'ի ներքս բերեալ գեղեցիկ խրատուք առանձինն, և շատ ևս յորդորեալ 'ի հրապարակի, շրջէր զայրն 'ի խորհրդոցն և խոնարհ առնէր զամբարտաւանութիւն նորա. Ջան 'ի վերայ եղեալ իբրև ճշգրիտ քաղաքագէտ և փրկաւէտ հնարիմացութեամբ զուն գործէր աւագել զսկիզբն զդժուարին զախտին զայնորիկ:

Զայնու ժամանակաւ լուր հասեալ մահուն Հոկտաւիոսի՝ որ կուսակալն էր Կիլիկիոյ, բաղումք ցանկացեալք 'ի ձեռս բերել զայն գաւառ, սպաս հարեալ պաշտէին զԿեթեգոս, իբրու որ առ մեծի տէրութեանն ձեռնհաս էր կամագիւտ զխնդրելիսն կացուցանել: Իսկ Լուկուղղոս ոչ զի առ մեծ ինչ դրեալ զԿիլիկիա առանձինն, այլ զմտաւ ածեալ՝ զի եթէ զկուսակալութիւնն առցէ ինքն զԿիլիկիոյ՝ որում մօտ է Կապադովկիա, ոչ զայլ քան թէ զինքն՝ կարգեսցեն 'ի մարտն Միհրդատեան, զուն գործեաց և ինքն ոգւով չափ վասն անձինն. որպէս զի և ընդդէմ բուսոյ բարուցն գործ մի գործել ոչինչ զո-

վանելի և վայելուչ, սակայն և աշխատանօք 'ի հասանել խնդրոյն :

Էր 'ի ժամանակին կին ումն անուամբ Պրեկիա՝ 'ի դէմս գեղեցկայն և 'ի խօսս շնորհաց համբաւեալ 'ի քաղաքին, իսկ այլով մասամբ ոչինչ լաւագոյն քան զբոզ անպատկառ. սակայն գործի 'ի ձեռս առեալ նա զայրս կենակիցս իւր 'ի շահ օգտի սիրելեացն, նպաստակակից նոցայն լինել զանկից քաղաքականութեանն, բայց յայլոց շնորհացն համբաւեցաւ և իբրև կին ըղձակաթ սիրողացն, և յաջողաձեռն, և այսպէս ուրեմն զօրացաւ մեծապէս: Եւ սակս այս կին յինքն յանկուցեալ զԿեթեգոս, մինչև և ոչ համարձակել ումեք 'ի բացեայ 'ի կնոջէն կալ. և որ ինքն 'ի ծայրն արդէն հասեալ էր փառաց և քաղաքն ողջոյն կախեալ իսկ էր զնմանէ, յայնժամ 'ի կին անդր միայն զօրացեալ ողջոյն և տէրութիւն քաղաքին. զի և գործէր և ոչինչ 'ի քաղաքին առանց Կեթեգոսի, և գործէր ոչինչ Կեթեգոս առանց հրամանին Պրեկիայ:

Արդ շնորհս առաջի կնոջն հնարիմացութեամբ գտեալ Լուկուղղոս ընծայաբերութեամբք և շողոմութեամբք, և յայնժամ էր և զկինն տեսանել խնամով 'ի զօրավիգն Լուկուղղեայ ապաստանելով, (վասն մեծապէս կնոջն փքացելոյ և պերճացելոյ)․ ուստի և Կեթեգոս արագ արագ բարեբան և նպաստ Լուկուղղեայ հանդիսանայր 'ի բանն Կիլիկիոյ: Զոր և 'ի ձեռս բերեալ Լուկուղղոս, այնուհետև ոչ օգ-

նականութեան ինչ Պրեկլեայ ակեալք եղեն նմա և ոչ կեթեգոսին. այլ յայնժամ առհասարակ միաբան հաւանութեամբ 'ի ձեռս եառուն նմա զզօրավարութիւն մարտին Միհրդատայ, իբրու ոչ ումեք այլ քաջանալ յայնմ բայց 'ի նմանէ. զի յայնժամ Պոմպէոս տակաւին պարապէր ընդդէմ Սերտովրիոսի. և Մետեղլոս ինքնին առ ծերութեանն ոչ եւս յանձն առնոյր յայնպիսեաց անտի. և սոցա երկոցուն միայն էր 'ի ժամանակին՝ նախանձաւոր ընդ Լուկուղղեայ յառնել 'ի բանին յայնմիկ: Բայց և Կոտտաս իշխանակից նորա խնդրուածովք 'ի ծերակուտէն 'ի ձեռս բերէր արշաւել նաւահանգիսին 'ի պահպանութիւն Պրոպոնտեայ և 'ի պաշտպանութիւն Բիւթինիոյ:

Այրդ Լուկուղղոս առեալ ընդ իւր լէգէոն մի, չու արար անց յԱսիա. անդ ժողովէր առ ինքն և զայլ եւս 'ի զօրականէն՝ որ 'ի բազմաց հետէ անդ վատթարեալ յագահութեանն կրից և 'ի գրգանաց, և 'ի նոսա զօրականք որ անուանեալ կոչէին Փիմբրեանք, ոչինչ սովորեալք 'ի հնազանդութիւն զօրավարի՝ վայրենիք ոմանք էին և սանձակոտորք: Քանզի սոքա էին որ 'ի միասին ընդ Փիմբրիասայ սպանին զՓղակկոս հիւպատոս և զզօրավար իւրեանց. և սոքա զՓիմբրիաս ինքնին մատնեցին 'ի ձեռս Սիւղղայի. և էին նոքա ժողովք արանց ստահակաց և անօրինաց. սակայն և էին մարտիկք և համբերատարք և քաջափորձք

'ի պատերազմի ։ Ցայսր ամենայնի վերայ
գլխոյ իսկ քաջ Լուկուղղոս արագ կո-
ծել զվայրագութիւն նոցա, և կրթել
հրահանգել և զայլսն. և ապա յայնժամ
առաջին՝ որպէս ինձ թուի՝ զփորձ առին
նոքա զճշգրիտ իշխանի և զօրավարի՝ որք
յառաջին առվորեալք էին 'ի շնթել և ըստ
քմացն զինուորել ։

Իսկ յայնժամ թշնամեացն իրք օրինակ
զայս էին ։ Միհրդատ՝ ըստ որում բնաւո-
րեցան լինել շատք 'ի սոփեստից, յանձնա-
պաստան գլխովքն էր և փքուռոյց, յոր-
ժամ զառաջինն ամբարձաւ նա ընդդէմ
Հռովմայեցւոց կազմեալ 'ի գլուխ զօրու, որ
'ի վերին երեսս շքեղ և ճոխապանծ, այլ
'ի ներքոյ վատթեալ ։ Այլ ապա հարեալ ա-
նարգաբար և հրահանգեալ եւս, իբրև եր-
կրորդ անգամ 'ի մարտն մտէր, խմբեաց
զօրականս յայլ իմն հանդերձանս յաղթ
և հարուստ ։ Քանզի ոչ այլ խռնեաց յու-
րում բանակին խուժան խառնաղանջ, և
ոչ դարձեալ աղաղակ ձայնից սպառնա-
լեաց այլալեզու խժդժից, և ոչ կահս կա-
րասեաց և զէնս ոսկեկուռս և ականա-
կապս՝ աւար բազմահարուստ իւրեանց
յաղթականացն, և զօրութիւն և ոչ մի՝ ու-
նողացն զնոսա ։ Այլ սուսերս կազմեաց
նա հանգունատիպ Հռովմայեցւոցն, և վա-
հանս ամուրս. և խմբեաց այրուձի՝ քա-
ջահրահանգ քան եթէ պճնազարդեալս.
առ այսոքիւք՝ և հետևակազօր երկոտասան
բիւրուց կարգելոց ճակատելոց ըստ վա-

զանգլին Հռոմայեցւոց. և այրուձի զօրձեալ՝ բիւր մի և վեց հազար, Թող զքառաձիս զերանդազէնս՝ Թուով հարիւր: Հանդերձեաց և նաւս, և 'ի նոսա ոչ վրանք ոսկեզարդք, և ո՛չ բազմոցք վասն հարճից, և ոչ կանանոցք գրգալիցք. այլ առ հասարակ լցեալք 'ի զէնս և 'ի կոյտս նետից և մքենայց և դահեկանաց:

Հա՛պա չու արար խաղաց այնպէս 'ի Բիւթինիա, ուր և անդրէն ժողովէին զնա մտադիւրագոյնս ժողովուրդք՝ ո՛չ նոքա միայն, այլ և ողջոյն Ասիա. քանզի և տագնապեալ իսկ էին նոքա յառաջին աղէտսն՝ կիրս զժոխըմբերելիս կրելով 'ի վաշխառուաց և 'ի մաքսաւորաց Հռոմայեցւոց. զորս և ապա ինքնին Լուկուղղոս վանեալ հալածեաց իբրու արդարև Արպիւեայս ոմանս հրէշից՝ որ յափշտակեալ կորզէին զկերակուրս նոցա. այլ 'ի ժամուն հնարէր նա 'ի չափու պահել զնոսա գեղեցիկ խրատու, և հանդարտէր ամբոխէր զժողովուրդսն մի լինել մտաբերել յապստամբութիւնս, զի և չէր և ո՛չ մի ոք յայնժամ՝ զի այսպէս ասասցուք՝ կացեալ յանդորրու:

Իսկ յորժամ այսպէս դեգերէր Լուկուղղոս, անդուստ Կոտտաս զայն ժամ բարեպատեհ վասն իւր համարեալ՝ պատրաստէր 'ի մարտ պատերազմի ընդդէմ Միհրդատայ. և լուր առեալ 'ի բազմաց՝ եթէ Լուկուղղոս ինքնին առ դուրս կայ՝ հասեալ զօրու 'ի Փռիւգիա, նա այնպէս կարծեալ՝ ունել զյաղթանակն 'ի բուռն,

զի մի՛ թերևս Լուկուղղոս բաժանորդ կաց-ցէ, անձապարեաց ՚ի կռիւն. այլ հարեալ վանեալ միանգամայն ՚ի ծովու և ՚ի ցամաքի, կորոյս նաւս վաթսուն հանդերձ նաւաստեօքն, և չորս ևս հազարս հետևակաց. և ապա վերջոտնեալ ՚ի Քաղկեդոն և պաշարուածս առեալ՝ գէթ ակն կալեալ մնայր Լուկուղղոսի և առ ՚ի նմանէ օգնականութեանն:

Արդ էին էին՝ որ գրգռէին յայնժամ զԼուկուղղոս՝ անփոյթ զԿոտտաաա անցանել յառաջ, և զարքայութիւնն Միհրդատայ ամայի հեշտաւ զըռաւնք ունել. և առաւել ևս՝ զօրականն՝ լի՛ ցասմամբ ընդդէմ Կոտտայ, ո՛չ միայն զի ձախողակի զօրավարութեանն պատճառաւք եկաց նա աղէտից անձինն և զօրականին, այլ զի և խոչ ընդ ոտն անսանէին զնոս. զի և էր խակ նոցա արդեօք անպատերազմ ունել զյաղթութիւնն: Բայց Լուկուղղոս հրապարակախօս եղեալ ասէր, եթէ զմի ոք միայն Հռոմայեցի այր՝ առաւել կամի ապրեցուցանել ՚ի ձեռաց թշնամեացն, քան եթէ առնուլ ամենայն գոյից նոցա: Եւ լուեալ՝ զի Արքեղայոս այն որ յառաջին զօրավար Միհրդատայ ՚ի Բիովտիա, և ապա վտարանջեալ և զինուորեալ առ Հռոմայեցիս, հաստատութեամբ պնդէր եթէ յերևել Լուկուղղոսի ՚ի Պոնտոս՝ անշուշտ տիրասցի ամենայնին, եւ նմա պատասխանի Լուկուղղոս և ասէ. Չէ ինչ ինքն անարի վատասիրտ քան զորսորդս, զի յառաջ ըղ-

գազանօքն անցեալ՝ դիմեսցէ 'ի Նկուղս Նոցա Թափուրս։ Զայս ասաց՝ և յառաջագէմ խաղաց ընդդէմ Միհրդատայ երեսուն հազար հետևակօք, և երկու հազար և հինգ հարիւր այրուձիով։

Անդ զտեղի առեալ 'ի հանդիպոյ Թըշնամեոյն, յապուշ հարեալ ընդ ամբաւութիւն խուժանին, խնդրէր ժամավաճառ 'ի վէգ գալ. այլ իբրև անդուստ Մարիոս առաքեալն 'ի Սերտորիոսէ յիշխերէոյ 'ի Թիկունս Միհրդատայ, ընդ առաջ խաղացեալ ասպարէզ կարգայր, կարգեցաւ կազմեցաւ և ինքն իբրև 'ի կռիւ մարտի։ Ա՛յն ինչ երկոքին կողմանքն դիմեալ խաղային ընդդէմ միմեանց, անդանօր ոչ մեծ ինչ փոփոխեալ օդոյն՝ յանկարծակի պատառեալ ցելքը 'ի վերուստ, և զանգուած ահագին բոցատիպ հոսէր ընդ մէջ երկուց բանակացն. և էր նա հանգունատիպ 'ի ձև տակառի, և 'ի գոյն հրաշէկ արծաթոյ։ 'Ի հրէշից անտի զահի հարեալ երկոքին կողմանքն՝ վերջոտեալք տեղի տային։ Եւ ասէին՝ հրեշիցն այն երևել 'ի Փռիւգիա մօտ 'ի վայրն անուանեալ Ոտրիւս։

Բայց յայնժամ Լուկուղղոս զմտաւ ածեալ՝ զի 'ի մարդկային հնարից ոչ ամբար պաշարոյ և ոչ դարձեալ հարստութիւն ամբաւ, բաւական ոչ է 'ի դարման այնչափ բիւրաւորաց խուժանին Միհրդատայ՝ եթէ հարուստ ժամանակ բանակ հարեալ նստցին նոքա, հրաման տայր անդէն զառաջեաւ ածել զմի ոք 'ի գերեայն, և հար

ցանէր՝ քանիօն իցեն վաճառականքն հասցա-
կիցք Նոցա, և պաշար մշտանի ինչ Թողեալ
իցէ Նոցա 'ի վաճառին. Լուեալ զպատասա-
խանին, և զնա անդէն կացուցեալ, առաջի
ածել և զերկրորդ այլ, և զերրորդ ևս, և
առհասարակ զնոսա օրինակ զայն հարցա-
նէր. ապա 'ի հաշիւ զկերակուրն քննեալ
ընդ կերողացն, խելամուտ լինէր զի վասն
երից և չորից աւուրց ևեթ բաւականն էին
պաշարքն. ուստի և առաւել հաստատե-
ցաւ Նա 'ի խորհուրդ ժամանակաձգման լինե-
լոյն, և առեալ կուտեաց յիւրում բանա-
կին առատ բազում կերակուրս, զի ինքն 'ի
լիութեան անդ իւրում զէտակն ճշգրտու-
կալցէ 'ի Թշնամիս անդր՝ որպէս զէտ ժա-
մանակ զատելոյ բանակին Նոցա։

Իսկ անդուստ Միհրդատ հաստատեաց
'ի միտս դիմել անկանել 'ի վերայ Կիզիկե-
ցւոց՝ որ հարեալ վատԹարեցան 'ի մարտին
Քաղկեդոնեան, կորուսեալ անդ ոգիս ե-
րեք հազար և Նաւս տասն։ Այլ կամե-
ցեալ զանխուլ 'ի Լուկուղղեայ գործել,
առխպաւ յետ ընԹրեացն ելեալ խաղայր
յաղջամղջեան գիշերի և յանձրևաբերս. և
այնչափ իմն շտապեաց՝ զի 'ի ծագել ա-
ռաւօտուն հասեալ հանդէպ քաղաքին,
եհար զբանակ զօրուն 'ի լերինն Ադրաս-
տիա։ Իրազգած այնմ եղեալ Լուկուղղոս,
յարուցեալ զհետ պնդէր. և խնդացեալ
զի ոչ պատահեցաւ Թշնամւոյն, զի և ոչ 'ի
կարգի ինչ էին զօրականքն, անդ զկայ
առնոյր հանդերձ իւրովքն մօտ յաւանն՝

որ անուանեալ կոչի Թրակիա 'ի դիպան վայրի 'ի վերայ Ճանապարհացն՝ ուստի կերակուրք անցանէին 'ի բանակն Միհրդատայ։ Ուստի և խելամուտ ինքն եղեալ հանգերձելոցն, ոչ 'ի ծածուկ ինչ կալաւ 'ի զօրականէն. այլ բանակ հարեալ նոցա՝ խմբեաց 'ի մի վայր և ճոխաբար տայր նոցա՝ յետ սակաւ աւուրց 'ի ձեռս առաւ նոցա անարիւն զյաղթութիւնն։

Իսկ Միհրդատ պաշարեալ զԿիւզիկեցիս ընդ կողմն ցամաքին տասն գնդաւ, և ընդ ծովակողմն դարձեալ փակեալ նաւուք զնեղուցն՝ անջրպետ քաղաքին առ 'ի ցամաքէն, և այնպէս յերկոցունց կողմանց պատէր պաշարէր զնա։ Բայց քաղաքացիքն թէպէտ և քաջալերութեամբ լի էին 'ի մեծի վտանգին, և հաստատեալ ևս էին յանձն առնուլ 'ի վերայ Հռոմայեցւոց զամենայն արկածն, այլ ոչինչ գիտելով ուրանօր Լուկուղղոսն իցէ, և ոչ լուր դարձեալ զնմանէ բաւական էին առնուլ, 'ի մեծ վարանս պաշարեալ կային։ Բայց բանակ նորա քաջ իսկ յանդիման կայր տեսութեան նոցա. այլ պատրեցան 'ի զօրականէն Միհրդատայ՝ որ մատնանիշ նոցա զՀռոմայեցւոց արարեալ՝ որ 'ի վերոյ կային նոցա, ասէին այսպէս. “Տեսանէ՞ք զդոսա. են դոքա աւագին զօրք Հայոց և Մարաց առաքեալք 'ի Տիգրանայ 'ի թիկունս Միհրդատայ“։ Զարհուրեալ իմն էին Կիւզիկեցիք՝ զայն ահագին մարտ պատերազմին յակն արկեալ շուրջանակի. և զի և

խիթային եւս՝ եթէ և ոչ Լուկուղղոս ինքնին 'ի վայր անդր հասեալ՝ զօրեացէ ինչ թիկունս առ նոցա.

Այլ որ նոցա առաջին զուշակ եղև զալստեանն Լուկուղղեայ, էր Դեմոնակս առաքեալ յԱրքեղայոսէ 'ի ներքս 'ի քաղաքն: Մինչդեռ տակաւին ոչ հաւատային նոքա և մխիթարութեան կեղծիս համարէին, հասեալ ժամանէր անդր և պատահեալ մի զերի վարեալ 'ի մարտին և ապա զերծեալ. հարցանէին զնա՝ ուրանօր իցէ Լուկուղղոս. 'ի ծաղր հաստատ պատասխանեալն՝ կարծեալ եթէ խաղ առնեն. իբրև ճշգրիտ և ստիպաւ խնդրէին ուսանել, ձգեալ զձեռն՝ ցուցանէր նոցա զպատանեկն քանակին Հռոմայեցւոց: Եւ այնպէս ստուգեալ վասն իրացն, առհասարակ 'ի քաջալերութիւն դարձան:

Իսկ անդանօր 'ի լճին Դասկիւլիտիդեայ նաւարկէին ակատք բաւականք մեծութբ. զմեծն առաւել 'ի նոցանէն քարշեալ Լուկուղղոս 'ի ցամաք և 'ի սայլից վերայ բարձեալ զայն մինչև 'ի ծով անդր, և ամբարձեալ 'ի նմա զօրական ըստ բաւականին, նոքա անցեալք յառաջ 'ի գիշերային պահու զանխուլ 'ի թշնամեաց եկին մտին 'ի քաղաք անդր. և թուի թէ և դիք ինքնին գլխովին խնդացեալք ընդ արիութիւն Կիւզիկեցւոցն, առաւել ևս քաջալեր մատուցանէին նոցա յայտնի զարմանազան նշանօք, ըստ որում և 'ի ձեռն սքանչելեացն՝ որ երևեցան 'ի պատարագատութեան անդ

Փերեփատեանցն սոնին։ Քանզի վարանեալք չգտեալք երինջ սեաւ 'ի զոհ դիցուհւոյն, առեալ հայս և 'ի նմանէ կերպարանեալ երինջ՝ մատուցին առաջի բագնին։ Իսկ նուիրականն այն երինջ պարարակն առ 'ի զոհ՝ էր յարօտս ճարակաց ընդ անդէոցն Կիւզիկեցւոց յայնկոյս ջրոյն. և 'ի նմին իսկ աւուր զատուցեալ 'ի ջոկոյն, ինքնին միայնակ 'ի լուղ անցանէր գայր 'ի քաղաք անդր, և զինքն մատուցանէր 'ի զոհ։ Առ այս դարձեալ՝ և ինքնին դիցուհին երևեալ յանուրջս Արիստագորասայ ատենադպրի ժողովրդեան, ասէր այսպէս. "Ինքնին ես աստանօր հասեալ կամ, ածեալ զԼիբեացի զայն սրնգահար ընդդէմ Պոնտացի փողարին. արդ՝ ասա դու քաղաքացւոցդ՝ լինել առս զօրութեան,,։

Հիացեալ զքանչացան Կիւզիկեցիք ընդ բանսն. այլ 'ի ծագել աւուրն ծփեալ յուզեցաւ ծովն՝ 'ի շնչել մրրկայոյզ հողմոյն։ Եւ անդանօր մեքենայք արքային՝ գործ հրաշակերտ Թեսսաղոսի Նիկոնիդեայ՝ մերձեալք 'ի պատուարս պարսպաց, զառաջինն 'ի շարժել խլրեանց և 'ի շառաչիւն բախման նախապատուամ լինէին հանդերձելոյ աղէտիցն. իսկ ապա յանկարծ հարաւ շնչեալ ուժգնակի և բուռն, յական թօթափել առհասարակ հարեալ ջախջախեալ խորտակէր զամենայն մեքենայսն, և դղորդեալ 'ի վայր հոսէր և զաշտարակն փայտեայ բարձր հարիւր կանգուն։

Եւ պատմեն՝ եթէ բազմաց յԻլիոն ե-

ընեցաւ յայնժամ յանուրջս Աթենաս ողջ քրոնակայլակ. և զեռանն առաւելն ցուցանէր պատառեալ, և ասէր՝ այն էինչ դարձեալ յօգնականութենէ անտի Կիւզիկեցւոցն. և Եղիանացիք ենքնին ցուցանէին տիւն մի, յորում և արձանագրութիւն 'ի յիշատակ նորայ այսոցիկ։ Այլ յայնժամ Միհրդատ՝ ցոր վայր խաղեալ յիւրոց անտի զօրավարացն՝ անտեղեակ էր սովու բանակին իւրոյ, շտապեալ նեղէր յանձն իւր՝ զի տակաւին ոչինչ վճարեաց 'ի վերայ քաղաքին. այլ ապա նոյնհետայն 'ի վերայ հասեալ վերջին վտանգի զօրականին՝ զի և տոխակեցան նոքա առ քաղցու ուտել զմիս մարդոյ, անկաւ թեկաւ տատամսակութիւն նորա և ամենայն ամբարտաւանութիւն. ուր անդուստ Լուկուղղոս մարտ եդեալ կռուէր ոչ կերպարանաւորս ինչ և ոչ մնապարծս, այլ շեշտ կշիռ վարեալ էր՝ ըստ առաւելին՝ 'ի վերայ որովայնին, և զամենայն ձիգն թափէր բառնալ կարծել 'ի նմանէ զամենայն կերակուր։ Ուստի և 'ի խաղալ յայնժամ Լուկուղղեայ երթալ պաշարել զդղեակ մի, զայն ժամ բարեպատեհ դըտեալ Միհրդատ մեծաւ շտապաւ առեալ արձակէր 'ի Բիւթինիա զօրս ողջոյն զայրուձին հանդերձ գրաստուք, և 'ի հետեւակաց դարձեալ զանապիտանն։

Իբրագգաց Լուկուղղոս եդեալ՝ անդէն արագ դառնայր յետս գիշերայն 'ի բանակ իւր. և վաղքաջ ընդ առաւօտն, թէպէտ և մրրիկ օդոցն 'ի վերայ կայր, առեալ ընդ-

իւր գունդս տասն և զայրուձին, զհետ պնդէր Թշնամւոյն, դիմադրաւ 'ի տեղատարափ ձիւնաբերին և 'ի վիշտս մեծամեծս. զի և բազումք յիւրոց անտի ոչինչ հանդուրժեալք ցրտոյն՝ վերջոտնեցան: Իսկ նա յառաջ վարեալ հանդերձ ընկերօքն, հասանէր ունէր զԹշնամին 'ի գետ անդր Հուինդակոս, անդ հարկանէր և 'ի փախուստ դարձուցանէր զնոսա. մինչև անգուստ յԱպողոնիոյ 'ի դուրս ելեալ և կանայք անգամ, ժողովէին զարս և զապուր և մերկէին կապտէին զդիակունս բազմակոյտ անկելոցն: Հասեալ կալան և երիվարս վեցհազար, և երամակ անԹիւ գրաստուց և մարդիկ հնգետասան հազար. և զայն ամենայն աւար զհետ իւր վարեալ Լուկուղղոս, անցանէր գայր առ երի բանակի Թշնամեացն: Այլ իմ զարմացեալ է ընդ Սալլուստիոս, զի ասէ՝ զայն առաջին նուագ տեսեալ անդանօր Հռոմայեցւոց ուղտս. արդեօք կարծէ Սալլուստիոս՝ եԹէ յառաջին չիցէ նոցա տեսեալ զայնոսիկ՝ որ 'ի միասին ընդ Սկիպիոնի 'ի պարտուԹիւն մատնեցին զԱնտիոքոս. և ոչ դարձեալ՝ վայր մի յառաջ նոքա՝ որք յՈրքոմենոն և 'ի Քերոնիա մարտ եդեալ կռուեցան ընդդէմ Արքեղայոսի:

Ապա հաստատեցաւ 'ի միտս իւր Միհրըդատ արագ արագ այնուհետև 'ի փախուստ դառնալ. և 'ի դեգերեցուցանել և 'ի ժամավաճառ առնել զԼուկուղղոս 'ի Թիկանց՝ առեալ արձակէր զԱրիստոնիկոս ծովա-

պէտս 'ի ծով Եգէացայ. այլ 'ի չուն անձ-մատնութեանց զբաւանաց անկանէր նա Լու-կուղղեայ՝ հանդերձ բիւր դահեկանօքն ոս-կի՝ զոր բարձեալ տանէր Արիստոնիկոս 'ի կաշառել զունդս 'ի Հռովմայեցւոց: Ցետ այնորիկ փախստեայ ընդ ծով եղեալ Մի-հրդատ, զօրավարք նորա տուեալ ածէին զբանակն ընդ ցամաք. յորոց վերայ ան-կեալ Լուկուղղոս մօտ 'ի գետան Գրանի-կոս, բազումս յոյժ 'ի նոցանէ գերի վա-րէր, և ոգիս քսան հազար տապաստ ար-կանէր: Եւ պատմեն՝ եթէ առհասարակ որ տապաստ անկան 'ի կռուին յայնմիկ, միանգամայն ընդ այր մարդովք և ընդ ապեար բանակին և այլ ևս խուժանին, զոգցես գտան ոգիք երեսուն բիւր:

Ապա Լուկուղղոս անցեալ 'ի Կիւզիկոն, անդ նախ զտեղի առնոյր 'ի խրախճանալ քաղաքին և 'ի հիւրամեծար շուք նոցա առ-նէ. յետ այնորիկ երթեալ 'ի Հելլեսպոն-տոս, հանդերձէր կազմէր նաւահանդէս. և իջեալ 'ի Տրովադա՝ չոգաւ 'ի տաճար Աստղկանն, և անդ 'ի քուն մտեալ գիշերի ընդ վրանաւ, թուէր տեսանել ինքեան զդիցուհին կալ 'ի վերայ և ասել զայս ինչ. “ Զի՞ քեզ 'ի քուն մտանել Առիւծ մեծ-անձն. Եղնորթք մատաղիկ առ դուրս հասեալ կան “: 'Ի վեր վազեալ 'ի քնոյն՝ կոչէր վաղվաղակի գիշերայն զբարեկամսն, և պատմէր զտեսիլն: Ցայն պահ եկեալ հասանէին պատգամաւորք յԻղիոնէ, ե-թէ հնգաթիք երեքտասան 'ի նաւաց ար-

քայլին երեւցան 'ի նաւահանգստին Ա-քայեցւոց, նաւեալք դէպուղիղ 'ի Լե-մնոս ։ Անդէն Լուկուղղոս յուղի անկեալ խաղայր ընդդէմ նոցա . հասեալ ունէր և հարկանէր սատակէր զզօրավար նոցա, ա՛յն էր Իսիդորոս ։ Զհետ մտեալ վանէր և զայլսն, որ յառաջադէմ նաւեալքն էին ։ Նոքա հասեալ կալեալ զցամաքն և քար-շեալ անդ զամենայն զնաւս իւրեանց՝ մարտ եդեալ կռուէին 'ի վերայ տախտա-կամածից և վէրս 'ի վերայ դնէին զօրուն Լուկուղղեայ . անդանօր նա 'ի վայրացն ո՛չ պատել պաշարել նաւուք զթշնամին բաւէր, և ո՛չ դարձեալ իւրովք ալէկոծ նաւուքն բռնանալ ինչ 'ի վերայ նաւաց նոցա՝ որ անդրդուելի հաստատեալ կային 'ի ցամաքին ։

'Ի վերջէ ուրեմն 'ի հուն մի անցից կղզւոյն թէպէտ և դժուարին յոյժ՝ իջեալ Լուկուղ-ղոս 'ի ցամաք, և թափեալ զկորովիս զօրակա-նին, պատէր փակէր զթշնամիսն 'ի թիկանց կռուէին, և անդ՝ էր զոր սպանանէր, և էր զոր շտապեալ նեղէր կտրել զպարանս նաւացն և փախչել ընդ ցամաք . և զայն գործեալ՝ երթեալ նաւացն խառնէին բախէին ընդ միմեանս, և վարեալք հարկանէին ընդ ցռուկս նաւացն Լուկուղղեայ ։ Եւ բա-զումք յայնժամ տապաստ անկեալ, գտա-նէին անդ 'ի մէջ գերւոյն և զՄարիոս զօ-րագլուխ զարձակեալն 'ի Սերտորիոսէ ։ Էր սա միականի, և Լուկուղղոս պատուէր տուեալ էր զօրականին 'ի կռուին մի զոք

սպանանել 'ի միականեացն. քանզի կենդանեոյն խնդրէր ձերբակալ առնել զՄարիոս՝ տալ նմա անարգաբար մահ ։

Ապա յետ այնորիկ փութայր ձեռնէր Լուկուղղոս զհետ պնդել Միհրդատայ. ակն ունէր հասանել ունել զնա մօտ 'ի Բիւթինիա, որում և զդաւաճանայր Բոկոննեոս, զոր ինքնին արձակեալ էր 'ի Նիկոմիդիա հանդերձ նաւուք քարշնդանն լինել փախստեան նորա ։ Այլ Բոկոնիոս զեղայ առեալ 'ի Սամոթրակէ խաղացելեալ 'ի նուիրականութիւնս և տօնախմբել, ուշ ժամանեաց. և Միհրդատ անցեալ զնաւքն հանդերձ նաւահանգիւն. և մինչ 'ի շտապ տագնապի ձեռնէր նա հասանել ունել զՊոնտոս՝ մինչև դարձեալ յետս Լուկուղղեայ, պաշարեցաւ յահագին մրրկէ. և յայնժամ 'ի նաւաց նորա՝ էր որ յայսկոյս յայնկոյս օժանեալք ցանեցան, և էր որ անդնդասոյզ կորեան. մինչև առհասարակ ծովափունք զաւուրս բազումս լցեալ ծածկեցան 'ի նշխարաց նաւաբեկութեանն՝ վարեալք 'ի ծփանաց անտի ։ Ցայնժամ մեծի տագնապի անկեալ Միհրդատ, զի յաղթ բեռնաբարձ նաւուն իւրոյ ոչինչ հեշտնեաւ առ մեծութեանն էր ունել զգամաքն, արագաւարձք 'ի զեկավարացն եղեալ յահագին ծփանսն և 'ի մէջ ամեհի ալեացն, և զի՝ և ջուր ևս առեալ երթալով երթայր և ծանրանայր, վազեաց եմուտ 'ի նաւակ մի հինիցն, և անձնատուր նոցա եղեալ՝ յանհնարին վտանգին և աղօտաքոյ

ամենակալութեանն անկեալ ապրեցաւ յԵրակլիա Պոնտոսի :

Եւ սակս 'ի գեղեցիկ ելից նորա՝ անբաւական մնաց Լուկուղղոս 'ի Ձմեռաբար պանծանան առ Սինկղիտոսին. յորժամ վճիռ առեալ ծերակուտին հանդերձել կազմել 'ի մարտն բանակ նաւականն 'ի ծախս քանքարաց երից հազարաց, անդրուստ Լուկուղղոս յանձն չառեալ գրեր պանծանօք, եթէ առանց այնչափ ինչ ծախուց և մեծաց հանդերձանաց՝ միայն նիզակակցացն նաւուք յաղթեսցէ նա վանել 'ի ծովէ զՄիհրդատ. գործ՝ որ յաղթեցաւ նմա առդեօք 'ի մեծապատկութենէ աստուածայնոյն. քանզի ասեն՝ ահագին մրրկին այնմիկ որ հարեալ վատթարեաց զՊոնտացիսն՝ յուղել առ 'ի ցասմանէն Արտեմեայ Պրիապինեայ. զի մեհենակապուտք նորա եղեն Պոնտացիք և 'ի վայր քարշեցին զդրօշեալն նորա :

Բայց Լուկուղղոս յայնժամ յորդորեալ առ 'ի բազմաց դուլ տալ պատերազմին, ո՛չ ինչ անսաց. անցեալ ընդ Բիւթինիա և Գաղատիա՝ հորդան սայր յարքայութիւնն Միհրդատայ : Անդ թէպէտ և զառաջինն մեծապէս տուժեցաւ, զի և զհետ իւր վարեալ խաղացուցանէր երեսուն հազար 'ի Գաղատացւոցն, մէն մի 'ի նոցանէն բարձեալ յուս գրիւ մի ցորեան, այլ սակայն յառաջադէմ տիրացեալ ամենայնին, լիացաւ յղփացաւ՝ զի և 'ի բանակին նորա աւելի քան զդրամակշիռ չարժէր եզն մի, և

ոչ մի ոք 'ի գերւոյն՝ աւելի քան զչորս ։ Իսկ վասն այլոց աւարաց փոյթ ինչ չառնէին. ուստի և կէսք անդէն լքեալ թողուին, և կէսք դարձեալ՝ վատնէին, զի և ագահք ինչ չէին նոցա. այնչափ իմն առհասարակ յորացեալք յղփացեալք էին ։

Յետ այնորիկ ասպատակ արձակեալ մինչև 'ի Թեմիսկիւր, և ընդ դաշտավայրսն ուր անցանէ Թերմոդոն, յաղագս վարելոյ զերկիրն և քանդելոյ աւերելոյ, անդադար բամբասանս լսէր 'ի զօրականեն, իբրու դանդաղելոյ դեգերելոյ նմա՝ յինքն զքաղաքսն յանձնուցանելոյ. և զի՝ և ոչ դաւոյթս տայ նա 'ի մերայ քաղաքի ունելոյ բռնութեամբ, և այնպէս 'ի հարուստ անկանէ լինել զնոսա. և յաւելեալ 'ի բանս՝ ասէին նոքա. «Եւ զարդ իս հեշտալեն իցէ հասանել ունել զԱմիսոն քաղաք բարեբաստ և բազմահարուստ, և գործ մեծ չէ պաշարամամբ նեղել զնա. այլ թողեալ և ածեալ խաղաղութեան զմեզ յանչէն անդայիս Տիբարենացւոց և Քաղդէացւոց 1, մարտ դնել կռուել ընդ Միհրդատայ»։ Բայց Լուկուղղոս ոչինչ կարծեալ յայն չափ խեռութեան համահակել զօրականին՝ յոր յանդգնեցան յետ այնորիկ, ուստի և երես չարարեալ քրթմնջանացն՝ դուռն դործէր մանաւանդ 'ի չքմեղս լինել վասն ժամավաճառ դեգերանացն յաւանանն յայն և 'ի դուզնաքեայ քաղաքսն, և թողուլ այնպէս բարգաւաճել զՄիհրդատա, և ասէր Լուկուղղոս։

«Դու՛ այդ է աւազին՝ զոր եմ խնդրեմ, և հնարեմաց խորհրդով դարմանեալ նատոիմ, զի անդրէն միւսանգամ մեծապէս բարգաւաճեսցի այրն, և առեալ կուտեսցէ զօր բաւական ՚ի մարտ. զի կարասցէ մնացէ դա, և մի փախստեայ անկցի ՚ի դրոհ տալ մեր։ Կամ թէ ո՞չ իսկ յակն արկանէք դուք զանդորրն զայն անապատ և զահագին՝ որ կայ ՚ի թիկանց նորա. անդ մեծ կայ Կաւկաս, և գօտիք լերանց շարք և բարձրակատարք, և բնութեան ամրայից՝ որ ՚ի մարտէն խուսեսցեն՝ ապաւինջական է վայրդ առնուլ և յանդորր հանել։ Այս՝ և սակաւուց աւուրց ճանապարհ է ՚ի Հայս ՚ի Կաբիւրացւոց անտի. և անդ ՚ի Հայաստան աշխարհ բազմեալ հանդերձ Տիգրան արքայից արքայ։ Մեծ է զօրութ̃ք, զի և Պարթևաց ինքնին գլխովին ՚ի ձեռաց հանէ զԱսիա, և զՀելլենացւոց քաղաքսն առեալ փոխադրէ ՚ի Մարս, և յԱսորւոց վերայ տիրացեալ կայ և Պաղեստինոյ, և զՍելևկեան թագաւորսն ՚ի մահ վարէ, և զդստերս նոցա և զկանայս տարադէմ խաղացուցանէ։ Սա այս է ընտանի Միհրդատայ և փեսայ. և արդեօք զանց նա ոչինչ արասցէ, եթէ երբէք ողոքաւոր առ նա անկցի Միհրդատ. այլ մարտ եդեալ կըռուեսցի ընդ մեզ։ Եւ արդ՝ մեր ճեպեալ վանել ընկրկել զՄիհրդատ, վասնզի մեծապէս է ՚ի մեր վերայ շարժել զՏիգրան, որ ՚ի վաղնջուց արդեօք պատճառս խնդրէ կռուել ընդ մեզ. իսկ զարդիս ոչինչ այլ

Պոմպոնիոս այր ականաւոր՝ ձերբակալ լինէր. և այնպէս վիրաւոր ածեալ առ Միհրդատ՝ հարցանէր զնա արքայն, եթէ ապրեցուսցէ զնա՝ լինիցի՞ նորա բարեկամ. Ետ պատասխանի Պոմպոնիոս. « Այո, եթէ խաղաղութիւն արասցես ընդ Հռոմայեցիսն, ապա թէ ոչ՝ թշնամի »: Զարմացեալ Միհրդատ ընդ անդրդուելի հաստատութիւն առն 'ի պատասխանւոյն, ոչ ինչ չար գործեաց նմա:

Ապա 'ի գլուխ զանգիտեալ Լուկուղղեայ, զի այրուձիով հզօր էին թշնամիք, առ այն՝ և ոչ համարձակեալ յուղի անկանել ընդ լեռնակողմն, զի երկար էր և դժուարին և մացառախիտ, յայնժամ ըստ դիպաց ձերբակալ առնէին զոմանս 'ի Հելլենացւոց՝ որ անկեալ ապաւինեալ էին 'ի քարանձաւ մի: Մի ոմն 'ի նոցանէ հինաւուրց Արտեմիդորոս անուն, խոստումն կռէր Լուկուղղեայ առնուլ ածել զնա 'ի վայր մի անդորր բանակի զօրուն, ուրանօր և դղեակ մի բարձրացեալ կայ 'ի վերոյ Կաբիրացւոց: Հաւատս առն ընծայեալ Լուկուղղեայ, 'ի գալ գիշերոյն բորբոքեալ անդէն խարոյկս խիտ առ խիտ, խաղայր գնայր և անցեալ զանձուկս անվտանգ. գայր հասանէր 'ի վայրն՝ զոր Արտեմիդորոսն խոստացաւ. և այնպէս 'ի ծագել աւուրն երևեցաւ նա անդ 'ի վերոյ թշնամեացն բանակ հարեալ 'ի վայր դիպան 'ի մարտ պատերազմի, և ապաստանարան անդորր բանակին:

Բայց անդանօր ոչ Միհրդատ և ոչ զաւրաձեալ Լուկուղղոս խնդրէին 'ի կռիւ կաքաշել. այլ ասեն՝ եթէ զօրականք արքային 'ի պատահումն զհետս մատեալ վանեալ զերջերումս, անդուստ հալածեցին վազեցին արգելուլ զնոսա, և այնպէս առաջ խառնեցաւ կռիւն յերկաքանչիւր կոյս կողմանց՝ 'ի խառնել ամբոխին: Այլ 'ի վերջէ յաղթական եղանէր կողմն արքային. իսկ Հռովմայեցիք յիւրեանց զանկշէն յակն արկեալ զփախուստ ընկերացն, 'ի պատահմութիւն վառնելոյ՝ ընթացեալք առ Լուկուղղոս աղաչէին ձանկանցուցանել զնոսա և նշան խնդրէին զկռուոյ մարտին: Բայց նա 'ի ժամանն ցուցեալ նոցա եթէ քանիօն մեծապէս իցէ 'ի վտանգս գժուարինս դիմադրել նախհաւատութիւն հանճարեղ զօրավարի, հրամայն առաջ նոցա անշշունջ կալ, և ինքն յառուցեալ իջանէր 'ի դիւր անդր. և ընդ առաջ արձանացեալ փախստէիցն՝ հրամայն առաջ նոցա դառնալ յետս: Նոցա հնազանդեալք և դարձեալք առհասարակ և խմբեալք ընդ նմա, 'ի փախուստ յայնժամ դարձուցանէին զթշնամիսն, և վանեալ ընկրկէին մինչև 'ի բանակ անդր նոցա: Իսկ 'ի դարձին Լուկուղղոս պատուհաս անփառունակ 'ի վերայ ածեալ փախստէիցն ըստ օրինացն, հրամայէր նոցա անզօտի պարեգօտիւ խրամ հատանել երկոտասան ոտնաչափից 'ի զնէին այլոց զօրականին:

Բայց 'ի բանակին Միհրդատայ էր այր

ամն վիթխարի հասակաւ Ոլթակոս անուն. էր սա 'ի գաւառէն Դարդարացւոց (և են Դարդարացիք ցեղ 'ի բարբարոսաց անտի բնակաւորացն Մէովտեայ). և էր Ոլթակոս յաղթաբազուկ յոյժ և արի 'ի մարտս և քաջուշիմ 'ի գործս մեծամեծս, և 'ի կենակից քաղաքավարութեան շնորհաշուք և բաղձալի: Սա այս այր ցանկ. եւ և եւս առնելով ընդ այլում պայազատի համացեղի, և 'ի նախանձ բերեալ լինել նախաթոռ, խոստումն կուէր առաջի Միհրդատայ գործ գործել մեծ, և ինքնին սպանանել զԼուկուղղոս: Մեծապէս գովեալ զնա արքային, և համախորհուրդ հնարիմացութեամբ ընդ առն՝ Թշնամանօք իմն հարստահարեալ զնա, որ աղագաւ կեղծաւորեալ Ոլթակոս 'ի սպառնութիւն բարկութեան ընդդէմ արքային, յարուցեալ մեկնէր 'ի նմանէ, և ձիընթացիկ գայր անկանէր առ Լուկուղղոս. Նա մատադիւրագոյնս ժողովեալ զայրն, քանզի և համբաւ մեծ հնչեալ էր զնմանէ 'ի զօրուն, և անդէն փորձ փորձեալ զնորա, սիրեաց ըզհանճար զուշիմութեան առն, զի այնուհետև սեղանակից իւր արար զնա և կենակից կենցաղակից:

Արդ դէպ ժամանակ երևեալ բարբարոսին, հրաման տայր իւրոց ծառայիցն ածել նմա զերիվարն արտաքոյ պատնշին, և ինքն 'ի միջօրէի 'ի հանգչել զօրականին, չոքաւ 'ի վրան զօրավարին, իբրու անխափան ունել զմուտն իբրև կենակից զօրա-

վախուստ դարձուցանէր։ Իսկ և այլ անգամ արձակեալ Ադրիանոս բազում զօրականօք ածել միւսանգամ կերակուր. որով կխացուցանել զբանակն խնդրէր Լուկուղղոս, ոչինչ անհոգացեալ Միհրդատ՝ առեալ արձակէր ընդդէմ նորա զերկուս յիւրոց անտի զՄենեմաքոս և զՄիրոնն հանդերձ բազում այրուձիով և բազում հետևակօք, որք և առհասարակ՝ որպէս ասեն՝ բայց յերկուց անտի՝ 'ի սուր մաշեցան Հռոմայեցւոց։ Այլ Միհրդատ 'ի ծածուկ պահեալ զհարուածն՝ իբրու որ դուզնաքեայ եղեն տուգանքն յանհմտութենէ զօրավարացն, անդուստ Ադրիանոս շքով անցեալ առ երի բանակին ածեալ բազմութիւն մեծ զսայլից՝ բեռնաբարձս ցորենոյ և աւարին, բերկանէր զզօրութիւն Միհրդատայ, և արհաւիրս արկանէր մեծամեծս 'ի վերայ զօրականին նորա. որպէս զի և ոչ ևս համարձակեցին մնալ անդէն։ Իսկ մերձաւորք արքային յառաջ արձակեալ դանդաղ զայլսն իւրեանց և ուղի հորդեալ բռնութեամբ ընդ մէջ զօրականին, տապալեալ զօրուն յելսն 'ի պատանչէն յարձակեալ 'ի վերայ աղխին՝ աւարէին, և ըզտեարսն 'ի մահ վարէին. անդ անկանէր և զօրավարն Դորիղայոս՝ քանզի հանդերձ ծիրանի արկեալ էր միայն զանձամբ. անդ առաւօտուր առ դուրս հարկանէին և զՀերմէոն քուրմ։

Իսկ Միհրդատ յայնժամ ոչ ընկէր զոք ունելով և ոչ սպասաւոր, եւ արտաքս 'ի

պուռ կողոպուտս թողուլ զբանակն թըշ-նամւոյն ։

Այսպ հասեալ կալեալ զԿաբիրս և շատ ևս յանխառն վայրաց, անդանօր գտանէր գանձս մեծամեծս, և բանտարգելեալս ևս բազումս 'ի Հելլենացւոց, և զբազումս 'ի մերձաւորաց արքային, որք անդ ակնկալեալ [illegible] մահու 'ի վաղ ժամանակաց և փրկեալ ապրեցան յայնժամ 'ի ձեռն Լուկուղղեայ, և իբրու նորոգապէս ծնեալ նոքա յերկրորդ 'ի կեանս ։ Անդ ձերբակալ լինէր և քոյր մի Միհրդատայ Նիսսա անուն 'ի փրկութիւն անձին իւրոյ. քանզի այլք 'ի քերց անտի նորա և 'ի կանանց՝ որ յանդորրու գոլցեն բնակեցուցեալ էին յանկասկածելի վայրի մօտ 'ի Փառնակիա, մահ անողորմ մեռան նոքա. քանզի 'ի փախչել իւրում Միհրդատ առաքեաց առ նոսա զԲաւքիդէս ներքինի սպանանել զնոսա ։ Եւ էին 'ի նոսա և կրկին քորք արքային Ռոժքս և Ստատիրէ, և թէպէտ և զքառասնամենիւք ուրեմն, տակաւին չէին հարսնացեալք. առ այսոքիւք՝ և երկու լծակիցք արքային՝ Ցոնիացիք ազգաւ, Բերինիկէ Քիացի, և Մոնիմէ Միլեսացի ։ Եւ էր առհասարակ առ Հելլենացիս ըղհամբաւի հարեալ այս Մոնիմէ. քանզի զառաջինն փորձ փորձեալ Միհրդատայ և յղեալ առ նա 'ի պարգև հնգետասան հազար դահեկան ոսկի, նա ընդդէմ դարձաւ քաջութեամբ՝ մինչև 'ի կնել զդաշինս զամուսնութեանն և 'ի յղել առ նա ըղ-

ըմպէր և ձեա զգեղն. Նոյնպէս և Ստատիրէ. սակայն ոչինչ Թշնամանեալ սա՝ դժպատեհ ազնուականութեանն, նա և գովեալ եւս զեղբայրն՝ որ 'ի վտանգել կենացն՝ հոգ զնոցայն կալաւ ազատաբար մահու, զի մի ինչ կրեսցեն 'ի դժնդակացն:

Յոյժ 'ի խոր խոցեալ Լուկուղղոս ընդ-իրան, քանզի և 'ի բոյս բարուցն հեզ էր նա և մարդասէր, այլ հետամուտ Միհրդատայ եղեալ՝ չոգաւ մինչև 'ի քաղաքն Տաղաւրացւոց: Անդանօր լուր առեալ, զի 'ի չորից աւուրց հետէ անկեալ խոյս էր Միհրդատ 'ի Հայաստան աշխարհ առ Տիգրան, դարձաւ յետս. և պարտեալ զՔաղդէացիսն և զՏիբարինացիս, և գրաւեալ զփոքրն Հայս, և նուաճեալ զամրոցս և զքաղաքս, արձակէր զԱպպիոս առ Տիգրան՝ խնդրէր զՄիհրդատ. և ինքն խաղաց գնաց յԱմիսոն, որ դեռ ևս մարտ եղեալ զդէմ ունէր. քանզի անդանօր Կալլիմաքոս զօրավար քաղաքին՝ քաջափորձ 'ի կազմութիւն մեքենայից և կիրթ 'ի հնարիմացութիւնս պաշարման՝ մեծապէս վիշտ հասուցանէր Հռոմայեցւոց, ուստի և ըզվրէժն ելոյծ ապա: Բայց յայնժամ նկուն լինէր նա 'ի Լուկուղղեայ, որ 'ի պահու սովորական հանգստեան զօրականի քաղաքին, յանկարծակի յեղակարծումն զըռոյթս տուեալ տիրանայր 'ի վերայ փոքու մասին պարսպացն. զայն տեսեալ Կալլիմաքոս 'ի փախուստ մտաբերէր՝ հուր հարեալ զքաղաքէն. կամ զի խանդաղացա

նա նորոգել զքաղաքն, յորմէհետէ համա-
դադարեալ չէջանէր հուրն 'ի տեղատարափ
անձրևոյն՝ յաստուածեան իմն զոգցես
տեսչութենէ 'ի ժամու առմանն ։ Եւ մինչ-
չև մեկնեալ նա 'ի քաղաքէն, կանգնեաց
զբազումս յապարանից անտի հրդեհելոց,
և առեալ ժողովեաց 'ի ներքս զքաղաքա-
ցիսն փախստեայս. առ այս՝ և փոխադրեալ
բնակեցոյց անդէն և 'ի Հելլենացւոց՝ որ
խնդրէին, տուեալ նոցա գետին հարիւր
և քսան ասպարիզաց ։ Եւ էր այն քաղաք
գաղթական Աթենացւոց՝ շինեալ առ ժա-
մանակօք բարգաւաճելոյն նոցա և ծովա-
կալութեանն, ուստի և բազումք 'ի նոցա-
նէն փախուցեալք 'ի բռնաւորութենէն
Արիստիոնի, անդանօր նաւագնաց լինէին.
և իբրև քաղաքացիք՝ միջամուխք յիւրս ե-
ղեալք, այնպէս զսեպհականն թողեալք՝
զօտարինն ժառանգէին ։

Արդ՝ Լուկուղղոս յազատութիւն յան-
դորր հանեալ զմնացեալսն, առ այս՝ և
վայելուչ զգեցուցանէր զնոսա, և առն
առն 'ի նոցանէ տայր դրամակշիռս երկե-
րիւր ։ Անդ ձերբակալ առնէին և զՏիրան-
նիոնն Գրամատիկոս, զոր ապա խնդրեալ
Մուրենաս և առեալ յինքն, յազատու-
թիւն դրէր զնա. յորում և ոչ ազատա-
կանս ինչ գործեաց նա 'ի պարգևն Լու-
կուղղեայ. քանզի և յառաջն Լուկուղղոս
ինքնին ոչ եթէ իբրև ծառայ ունէր զայրն
բազմահմուտ և ազատ յազատութիւն հա-
նեալ. քանզի ազատութիւն այդպիսի 'ի

յուսոյ, գնալով գնաց և ազգս ատեալ֊
նուաճեաց քաղաքս. և նկուն առնէր զպար֊
տէր՝ որպէս և ոչ ոք երբէք՝ զՊարթևաց
զօրութիւնն. և լցեալ զերկիր զՄիջագետս
'ի բնակաւորաց Հելլենացւոց. քաղաքս
ածեալ 'ի Կիլիկիոյ, և քաղաքս ևս այլ
խաղացուցեալ 'ի Կապադովկիոյ, և բնակե֊
ցուցանէր անդր. առ այսոքիւք՝ և շար֊
ժեաց գդրուեցոյց զԱրաբացիս զվրանա֊
բնակսն 'ի վաղնջուց սովորութենէն, և 'ի
վրանացն հանեալ գնոսա՝ մօտ իւր բնակե֊
ցուցանէր, վարել նոքօք 'ի շահավաճա֊
ռութիւնս: Առ այս և քաղաքքն էին նմա
թագաւորք սպասաւորիւք. բայց զչորս 'ի
նոցանէ ցանգ առ իւր ունէր իբրև անձնա֊
պահապանս ոմանս կամ թիկնապահս.
որք և յերիվար ուշտանակեալ նորա՝ նոքա
առ երի առանց կազմածոյ հետի ընթա֊
նային, պատմուճան լոկ արկեալ զան֊
ձամբք. և 'ի բազմել 'ի գահու և 'ի պատա֊
գամատու լինել՝ նոքա յանդիման կային՝
ձեռս զձեռամբք ածեալ՝ առաւելագոյնն
նշանակ ծառայութեան, իբրու որք վաճառք
իցեն յազատութենէն՝ զիւրեանց մար֊
մինն ողջոյն 'ի ձեռս տուեալ են տեարց,
կազմք և պատրաստք 'ի կրել քան 'ի գոր֊
ծել: Եւ այսպէս յայս ողբերգակ տեսարանս
ոչ զահի ինչ հարաւ Ապպիոս և ոչ խոր֊
շեցաւ, այլ իբրև անգէն յանդիման ըն֊
ծայեցաւ, համարձակաձայն բարբառեցաւ
առ Տիգրան, եթէ՝ հասեալ գայ ինքն ա֊
ծել տանել 'ի բաց զՄիհրդատ՝ արժանիս

յաղթանակացն Լուկուղղեայ, կամ թէ՝ կռուոյ մարտի ձայն կարդալ Տիգրանայ:

Անդանօր թէպէտ և թևակոխեալ ճգնեցաւ Տիգրան ճոխաբար երեսօքն և 'ի ժպիտ դիմաց լսել յայսպիսեաց բանից, ո՛չինչ կարաց ծածկել յառեննին զկիրս ոգւոյն առ 'ի համարձակախօս բարբառոյ պատանւոյն. և արդեօք զայն առաջին նուագ լուաւ նա յայնպիսի ազատաբար ձայնից՝ զկնի գոգցես ամաց քսան և հնգից, քանզի և նոյնչափ նա արքայացաւ՝ մանաւանդ թէ՝ ամբարտաւանեցաւ: Այպա պատասխանի առնէր Ապպիոսի, երբէք զՄիհրդատ չտալ 'ի ձեռս. և եթէ Հռոմայեցիք ինքնին առաջին նմա ձայն տան մարտի, քա՛ջ ինքն զդէմ կալցի նոցա: Եւ արտմեալ ևս ընդ Լուկուղղոս, զի 'ի նամականին առ նա՝ միայն անուն արձանագրեաց Արքայի, և ոչ արքայից Արքայի, նա յառ նա պատասխանին և ո՛չ անուն տայր նմա սպարապետի: Համայն և այնպէս առեալ ընծայս պայծառս առաքէր Ապպիոսի. նա չառեալ յանձն, իբրև յաւել միւսանգամ յղել առ նա մեծամեծս ևս քան զառաջինսն, ապա զի մի ինչ առխէթ թշնամութեանն կարծեսցի արհամարհել, առնուլ էառ Ապպիոս բաժակ մի, և զմնացեալսն յետս դարձուցանէր. և ապա ելեալ շտապաւ դառնայր առ Լուկուղղոս:

Բայց Տիգրան՝ որ յառաջին և ո՛չ առաւանել անգամ յանձն առնոյր զՄիհրդատ

և ոչ խօսել անգամ, Թէպէտ և այնչափ
մերձաւոր և յարքայութենէն ևս անկեալ
հիգացեալ, և արհամարհութեամբ և գո-
ռոզութեամբ գնայր ընդ Նմա, պահ ար-
կեալ Նմա 'ի վայրս բացականս, մօրուսս, և
ախտականս. իսկ յայնժամ տուաքեալ կա-
չէր զնա, և շքով և մարգարտապատես հեւրոյ
մեծարութեամբ ժողովէր զնա. և երկոքին
Նոքա 'ի ծածուկ զբանիւք անկեալ յար-
քունեան՝ այր զընկերին ամոքեալ հանդար-
տէր զխէթ մտացն, զբարեկամօքն արկեալ
զամենայն իսկ զմխաւն: Ցորս էր և ինքնին
Մետրոդորոս Սկեպսիոս այր քաղցրաբան
և բազմահմուտ և մտերիմ այնչափ, մինչև
և հայր զխովին կոչել արքայի: Բայց
Մետրոդորոս յառաջին դեսպան 'ի Մի-
հրդատայ արձակեալ առ Տիգրան խըն-
դրել օգնութիւն ընդդէմ Հռոմայեցւոց,
կատարեալ զդեսպանութիւնն՝ ապա հար-
ցանէր զնա Տիգրան. "Այլ դու ինքնին
ո՞վ Մետրոդորէ, զի՞նչ խորհուրդ տաս
ինձ վասն բանիդ այդորիկ,,: Իսկ Մետրո-
դորոս կամ զի զօգուտն խնդրեալ Տիգրա-
Նայ, կամ զի զփրկութիւն չկամէր Միհրը-
դատայ, Ետ պատասխանի. իբրև դեսպան՝
յորդորէ, և իբրև խորհրդական՝ 'ի բաց
քեցէ: Զայս բանս ապա պատմէր Տիգրան
Միհրդատայ. ոչինչ կարծէր՝ եթէ չար
ինչ հասցէ Մետրոդորեայ. բայց Միհրը-
դատ մեկնեալ անտի՝ անդէն սպանանէր
զայրն: Սարջացաւ Տիգրան ընդ պատմու-
Թիւնն. Թէպէտ և ինքն չեկաց բովանդակ

պատճառք աղէտից առն, սակայն և Թենդս եռ նախկին առելութեանն Միհրդատայ առ նա ։ Քանզի և 'ի վաղնջուց իսկ էր նա խեթացեալ առ նա, ըստ որում և 'ի ծածուկ գրենոյն Միհրդատայ 'ի վեր ել՝ զորս 'ի ձեռս բերին, յորս կնքեալ իսկ էր մահն Մետրոդորոսի ։ Այլ Տիգրան դիւահանս չքեղ հանդերձեաց նմա, ոչինչ խնայեալ 'ի ծախսն՝ տալ նմա պատիւ 'ի մահուանն, որում մատն եղև 'ի կենդանութեանն ։

Անդանօր առ Տիգրանայ մեռանէր և Ամփիկրատէս հռետոր, (եթէ և արժան իցէ 'ի մեծարանս քաղաքին Աթենայ՝ յիշատակ առնել զորա) ։ Ասեն՝ եթէ սա այս Ամփիկրատէս վտարանդի լեալ չոքաւ 'ի Սելևկիա 'ի սահմանս Տիգրիսի. ուրանօր և աղաչեալ բանալ վարժարան, նա յաւակնագոյնս ունչս առնէր և ասէր. ոչինչ արդեօք մարթի դլքին ամփոփել 'ի կոնքի ։ Ապա անտի գնացեալ առ Կղէոպատրա դուստր Միհրդատայ՝ կին Տիգրանայ, խիթացեալ զնմանէ՝ արգելին նմա բան ոչինչ ունել ընդ Հելլենացւոց. և անդանօր ապա յանսուաղութենէն մեռանէր նա ։ Սմա դարձեալ չքով թաղումն տայր Կղէոպատրա մօտ 'ի Սափա չէն փոքրիկ՝ որում զայն անուն կարդային նմա ։ Այլ Լուկուղլոս յայնժամ խաղաղութիւն հաստեալ յԱսիա, և օրէնս 'ի նմա սահմանեալ գեղեցիկս, յետ այնորիկ և բերկրականաց և սփոփութեանց զհետ կրթեցաւ, և 'ի տեսարանաց հանդէսս և

յաշխարհատօնս յաղթականս և 'ի մրցանս ըմբշաց և մենամարտից. և կացեալ յԵփեսոս՝ ափոփէր և յինքն յանկուցանէր զքաղաքսն. իսկ և նոքա 'ի շուք առնն փոխարինէին զհանդէս տօնիցն՝ որ անուանեալ կոչին Լուկուղղեանք. և սէր աննենգ 'ի ներքս բերէին նմա՝ որ քան զշուք պատուոյն բերկրալի էր։

Այլ իբրև դարձաւ եկն Ապպիոս, մարտ պատերազմի կարգեալ ընդդէմ Տիգրանայ, շու արար Լուկուղղոս՝ անցանէր միւսանգամ 'ի Պոնտոս, և պաշարումն ածէր Սինովպայ. մանաւանդ եթէ՝ Կիլիկեցւոց արքունի որերոյն որ 'ի հնազանդութեան ունէին զքաղաքն, որք և ապա զքաղուամս 'ի Սինոպացւոց անտի հարեալ 'ի բերան սրոյ, և հրձիգ 'ի քաղաքն եղեալ գիշերագնաց փախստեայք լինէին։ Իրազեկ եղեալ Լուկուղղոս՝ անդէն մտանէր 'ի ներքս, և 'ի սուր սուսերի մաշէր զմնացեալս նոցա ութ հազար. և առեալ դարձուցանէր առ Սինոպացիս զաստուածս նոցա, փոյթ գեղեցիկ կալեալ քաղաքին՝ յաւէտ իմն յանուրջոց անտի զոր ետես։ Քանզի 'ի քուն թուէր նմա մօտել առ նա ուրումն և ասել այսպէս. "Վայր մի յառաջ խաղացես, ո՛վ Լուկուղղէ. աւադիկ գայ Աւտոլիւկոս խօսել ընդ քեզ"։ Զարթուցեալ 'ի քնոյն՝ ոչինչ իմանայր զեր երազոյն. ապա 'ի նմին աւուր առեալ զքաղաքն և հետամուտ Կիլիկեցւոցն եղեալ ծովագնաց փախստէիցն, տեսանէ անկեալ

Թողեալ զայրն՝ առաջ երագայոյս անձկալութեամբն սկիզբն առնէր կառուցին խարդաւանել և զիւր անձն 'ի վեհ ընդ անյարիր անկելոցն : Իսկ եղև Մաքարէս որդի Միհրդատայ իշխան Բոսփորոսին առաքէր առ Լուկուղղոս պսակ հազար դահեկանաց ոսկւոյ, աղաչէր դաշնաւոր և բարեկամ Հռոմայեցւոց լինել, եզ 'ի մտի Լուկուղղոս եղև 'ի գլուխ զառաջինն զայն աւարտեալ մարտ, և Թողոյր անդէն զՍոռնատիոս առնել ոստիկան քաղաքին հանդերձ վեց հազար զօրականօք. և ինքն երկոտասան հազար հետևակօք և այրուձիով եղև երեքհազար՝ չու արար խաղայր 'ի մարտն երկրորդ, ոչինչ արդեօք ողջախոհ մտածութեամբ այնպէս դիմագրաւ 'ի մէջ մարտիկ ամբոխից և 'ի մէջ բիւրաւորաց այրուձիոյն, 'ի գաւառն ամբառ՝ յանդընդախոր գետոց ամրափակ և 'ի միջոց ձիւնախաղաղ լերանց. որ զի և զօրականն ինքնին՝ ոչինչ այնչափ հզօրք յայլ արշաւանս՝ դժգմնեալ էին և խլրտէին: Բայց և 'ի Հռոմ բողոք ընդդէմ նորա բարձեալ ճարտասանք խուժանին, ասէին՝ մարտից 'ի մարտս անցանել նմա ոչ 'ի պէտս ինչ քաղաքին, այլ զի ցանկ զզօրավարութիւն խնդրէ զա զբանակի, և 'ի բաց զզէնսն դնել չկամի; և միշտ օգտաձարաւ է առ 'ի հասարակացն վտանգից: Այլ ոչքս յետ ժամանակաց զամբաստանութեան զատան ընդդէմ նորա:

Այդ ուրեք առանձեա կարծեալ Լուկուղղոս՝ վաղվաղակի. հասանէր զայր . յափն

Եփրատայ, և անդ գետն լցեալ գտանէ և գտանէ գնայր պղտոր 'ի պատճառս ձմերայնոյն. վարանեցաւ Լուկուղղոս եթէ ժամավաճառութիւն և քերան մեծապէս հասցէ նմա առնուլ կապել նաւակս և լաստս և կամուրջ գործել: Բայց յերեկոյէն անձկացեալ հատանացն, և գիշերի նուազեալ յոյժ, որ և յառաւօտուն ծագել պարագրեալ 'ի գոգին երևէր գետն. և գնատառականքն կղզեակս իմն ակնարկեալ 'ի ծոց նորա՝ առ որովք երթեալ լճանայր ջուրն, շուք շատ հարկանէին Լուկուղղեայ, որ և զոյն ուրեք երբէք պատահեալ գիտէին յայնմտեղեաց անտի յառաջագոյն. և զի՝ և գետն ինքնին գլխովքն կամակար խոնարհեալ հեզացաւ և անցս անաշխատ և արագ դիւրեաց նմա: Եւ այնպէս ապա յաջողեալ անցանէր Լուկուղղոս հանդերձ բանակաւն, և նշան ևս յայն ժամ՝ տեսանէր բարեգուշակ:

Անդանօր 'ի շրջակայսն էին արօտական երինջք նուիրականք Արտեմեայ պարսկականի. զայն դիցուհի պաշտեն բարբարոսք բնակաւորք յայնկոյս Եփրատայ: Եւ զայն երինջսն առնուն նոքա առ 'ի զոհ միայն, թողեալ այնպէս 'ի դաշտին արձակս թափառականս, խարանեալ 'ի նոսա խարան դիցուհւոյն՝ ջահ մի. իսկ ունել 'ի նոցանէ առ 'ի զոհ ոչ հեշտին իմն է: Այլ՝ մի յերինջոց անտի յետ անցանելոյ զօրուն գնացեալ ելեալ 'ի վեր 'ի վէմ մի նուիրական դիցուհւոյն, անդ դիպայ առեալ և

զգլուխն խոնարհեցուցեալ՝ եբրու եԹէ 'ի փոկոյ իմեքէ Թեքեալ պարանոցին, ինք-նանուէր այնպէս կայր 'ի զօրս Լուկուղ-ղեայ ։ Նա առեալ յաղէր յայնժամ և ցուլ մի եւս 'ի զօրս Եփրատայ 'ի շնորհս գե-ղեցիկ անցիցն ։ Ուր և խորան հարեալ յա-ւուր յայնմիկ, յերկրորդումն ապա չու-առնէր խաղաղր ընդ Սոփինէ՝ յանդորրու-պահեալ զժողովուրդն անձնատուր և հիւր-ընկալու բանակին ։ Բայց զօրականին խըն-դրէր անդանօր հասանել ունել զդղեակ մի, ուր կարծէին գանձ բազում. իսկ Լու-կուղղոս մատնանիշ նոցա զլեառն արա-րեալ զՏաւրոս որ 'ի բացէ, ասէր. “ Մա-նաւանդ որ անդանօր զդղեակն պարտ է մեզ հասանել ունել. զի որ աստանօր մԹերեալքն՝ վասն յաղԹականացն են „ ։ Այսպէս, և շտապ ուղղոյն առեալ և ան-ցեալ ընդ Տիգրիս, եկն մխեցաւ 'ի Հայաս-տան աշխարհ ։

Յայնժամ որ առաջին գոյժ առ Տի-գրան տայր վասն յառաջադէմ չուոյն Լուկուղղեայ, պատուհաս ընդունէր գըլ-խատմամբ 'ի հրամանէն Տիգրանայ. ուստի և ոչ ամենեւին ոչինչ այնուհետև իրազէկ առնէր զնա, այլ այնպէս անգէտ բազմեալ նստէր նա՝ շուրջ զհրդեհն ունելով զմար-տին, չնԹեալ 'ի բանից շողոմաշուրԹն մարդկանն, որ ձայն արկեալ ասէին. Ար-դեօք զօրավար քաջ իցէ Լուկուղղոս, ե-Թէ երբէք ժուժեսցի մնալ Տիգրանայ անդէն յԵփեսոս, և ո՛չ մանաւանդ արագ 'ի փա-

խուռն խուճապեցաւ դա յԱսիոյ ’ի զինէն այնչափ բիւրաւորաց Թշնամեացն ։ Վասն որոյ և գեղեցիկ է ասել, եթէ զոր օրինակ ոչ ամենայն մարմնոյ է անապական շատ քամել և բերել, սոյնպէս և ոչ ամենայն մտաց՝ ողջախոհ ունել զհպարտութիւնն ’ի յաջողութիւնս մեծամեծս ։

Այսպէս յայնժամ Միթրոբարզանին առաջին ’ի քաղաքականս նորա իշխեաց ասել նմա զճշմարիտն ․ այլ ոչ և մրցանակ գեղեցիկ ինչ տուրս նա դհամարձակութեանն ․ քանզի անդէն զնա ինքն առաւել արձակէր Տիգրան ընդդէմ Լուկուղղեայ երեքհազար այրուձիով և անթիւ հետևակօք, պատուէր տուեալ կենդանւոյն ունել զզօրավարն, և զմնացեալսն ’ի տուր տուեալ մաշել ։ Ա՛յն ինչ զօրք Լուկուղղեայ կէս մի բանակ հարկեալ էին, և կէս մի ժողովեալք խմբէին, լուր ’ի լրտեսացն հասանէր հրոսակի բարբարոսին ․ զահի հարեալ Լուկուղղոս՝ եթէ շտապաւ ’ի մերձոյ անկեալ մեր ’ի մայր գործեացէ, մինչչև զզօրականսն իւրոյ առհասարակ խմբեալ ճակատեալ իցէ ։ Այսպէս ինքն զանգի առաւել ամբութիւն ածել բանակին, առաւել զաւնդ հատանէր ընդ Սեքստիլեայ տեղապահին՝ հազար և մեցհարիւր այրուձիոյ, և ոչ բազմադոյն այլ ևս հետևակ և թեթևազէն զօրականին ․ հրաման տայր մօտ առ թշնամին զանելի առնուլ՝ մինչ ինքն առհասարակ զիւրսն խմբեալ ամրացուցէ ’ի բանակին ։ Թէպէտ և հրամանին Լուկուղղեայ ան-

տացեալ Սեքստիլիոս, ամենայն ամփոփեցաւ 'ի վէգ ընդ Միթրոբարզանայ գալ՝ որ յանդգնաբար հորդան ետ. տուրանօր և խառնեալ մարտին, անդ նահատակեալ տապաստ անկանէր Միթրոբարզան, և զօրքն Թիկնապարձոյցք առհասարակ կոտորէին բայց 'ի սակաւուց ումանց:

Հարուած զայս առեալ՝ Թողըլ Տիգրան զՏիգրանակերտ քաղաք մեծ զդաստակերտ իւր, և մերժոնեալ գնայր 'ի Տաւրոս. և անդր 'ի կողմանց կողմանց գային ժողովէին առ նա ամենայն զօրք նորա: Բայց Լուկուղղոս ոչ ժամ տուեալ նմա պարապոյ, խորհուրդ առեալ արձակէր ստիպաւ զՄուրենաս խոյս ընդ առն լինել հարկանել՝ որք 'ի չու անկեալ գնային առ Տիգրան. առ այս՝ և զնոյն Սեքստիլիոս միւսանգամ արձակէր գնալ վանել զատուար գունդ զԱրաբացւոցն, որոց դէմ եդեալ էր առ արքայն: Այլ աստի Սեքստիլիոս անկեալ 'ի վերայ Արաբացւոցն՝ մինչդեռ զխորանսն հարկանէին՝ 'ի սուր սուսերի մաշէր զբազումս 'ի նոցանէ. և անդուստ Մուրենաս զհետ մտեալ Տիգրանայ՝ անկանէր և նա 'ի վերայ 'ի դէպ ժամուն, մինչդեռ նա անկարգ ամբոխիւ անցանէր ընդ ձոր մի դժուարին և անձուկ: Անդանօր 'ի փախուստ խուճապեցաւ Տիգրան, և Թողըլ լքանէր զամենայն աղխն. և բազումք 'ի Հայոց տապաստ անկեալք, և բազումք ևս 'ի գերութիւն վարեցան:

Իբրև այս կատարեցաւ՝ ժողովեալ Լու-

կուղղեալ զբանակն, դէմ եդեալ խաղայր 'ի Տիգրանակերտ. անդ պաշարումն ածեալ շուրջանակի առկայացուցանէր զամբոխ զօրուն։ Էին անդ 'ի քաղաքին բազումք 'ի Հելլենացւոց բնակաւորք գաղթականք 'ի Կիլիկիոյ, և բազումք ևս 'ի բարբարոսաց՝ ըստ Հելլենացւոցն օրինակի Ադիաբենացիք և Ասորեստանեայք և Կորդուացիք և Կապադովկացիք, զորոց և զհայրենիսն քանդեալ՝ անդանօր զնոսա ածեալ եա զաղթել Տիգրան։ Եւ էր քաղաքն լի չաւէտ յոյժ և զեղուն 'ի զարդս զարդածոնից. քանզի և այր այր ստակական և որ միանգամ 'ի նախարարաց՝ սատար էին 'ի շուք մրցանաւոր ընդ արքային՝ բարգաւաճ և հոյակապ յարդարել զքաղաքն զայն. ուր աղագաւ և Լուկուղղոս պաշարումն սաստիկ ածեալ 'ի նեղն արկանէր, զմտաւ ածէր՝ եթէ ոչինչ արդեօք հանդարտեսցէ Տիգրան, այլ և յակամայս 'ի սրտմտութիւն բրդեալ՝ իջցէ 'ի կռիւ մարտին. և քաջին զայս զմտաւ ած Լուկուղղոս։

Բայց յայնժամ Միհրդատ 'ի ձեռն հրեշտակաց՝ դարձեալ և նամականեաւ ստէպ 'ի բաց 'ի մարտէն քեցէր զՏիգրան. և ասէր՝ այրուձիով միայն կալ և կարացուցանել զանցս ճանապարհաց կերակրոյն. և ինքնին ևս Տաքսիղէս յայնժամ գնացեալ առ Տիգրան և զինուորեալ՝ աղաչէր անձնապահ 'ի զինուց անտի Հառոմայեցւոց լինել իբրև յանվանելեաց։ Զառաջինն հեզաբար լսէր խրատուն Տիգրան.

իսկ իբրև խմբեցան առ նա առհասարակ զինուորութիւնք Հայոց և Կորդուացւոց, գարշեալ և զիւրեանցն զինուորութիւն առհասարակ ածին կացուցին Թագաւորք Մարաց և Ադիաբենացւոց, առ այսոքիւք՝ և յԱրաբացւոց անտի գունդք եկին հասին առ նա 'ի ծովեզերեայց Բաբելոնի, բազումք և 'ի Կասպից և 'ի Վրաց՝ սահմանակիցք Աղուանից, ոչ սակաւք և 'ի բնակաւորացն Երասխայ անթագաւորք՝ 'եկին հասին կամ զի 'ի շնորհս ինչ երևաց Տիգրանայ, կամ զի անդր դրդեցան 'ի պարգևաց ընծայից, անդ էր ապա տեսանել զի առհասարակ կոչումք և բաղձականք արքային և ժողովք և առեանք խորհրդոց լի էին 'ի յոյս ակնկալութեանց և 'ի յանդգնութիւնս գոռութեանց և 'ի բոհմունս սպառնալեաց բարբարոսացն:

Եւ անդ Տաքսիղէս ինքնին զդէմ դարձեալ խորհրդոյ պատերազմին, 'ի վտանգ պաշարեցաւ մահու. և կարծեցաւ իմն անդ այնպէս՝ 'ի բաց զՏիգրան քեցել Միհրդատայ 'ի մեծէ նահատակութենէ առ խանդ նախանձուն: Ուստի և Տիգրան ոչ ինչ եկաց մնաց նմա, զի մի հասարակորդ 'ի փառսն լիցի. հորդան ես խաղաց գնաց ամենայն բանակաւն, մեծապէս գժուարեալ յանձն՝ որպէս պատմեն՝ առաջի բարեկամացն, իբրև ընդ Լուկուղղեայ միայնոյ 'ի վէգ ելեալ մարտնչի, և չէին անդ նմա միահամուռ ամենայն զօրավարք Հռովմայեցւոց: Եւ արդեօք ոչ գոռութեան

Արդ մինչև 'ի մարտն ձեռնամուխ՝ 'ի խորհուրդ մտեալ Լուկուղղոս, կէսք թողուլ աստէն ուղջոյն զպաշարումն և խաղալ ընդդէմ Տիգրանայ. և կէսք դարձեալ մի ամենևին տեղի տալ և մի 'ի թիկանց զգունդ պաշարելոցն ունել: Իսկ Լուկուղղոս ասէր, եթէ և ոչ մի կողմն ուրոյն առանձինն գեղեցիկս խորհեցաւ. այլ միանգամայն նոքա խորհուրդ քաջ 'ի ներքս բերեն. ապա բաժանէր զբանակն, թողոյր զՄուրենաս անդէն 'ի պաշարմանն վեց հազար հետևակօք. և ինքն առեալ գունդս քսան և չորս՝ ոչինչ առաւել քան զբիւր մի հետևակաց և ուղջոյն զայրուձիոյ, և արանց ևս հազարաց ընդ պարսաւոր և ընդ աղեղնաւոր, դիմեաց խաղաց ընդդէմ Տիգրանայ: Ապա բանակ հարեալ առ գետովն յընդարձակ դաշտի, յոյժ սակաւաձեռն երևէր Տիգրանայ գունդ Հռոմայեցւոցն. յորմէ և պատճառս առեալ ծաղու՝ մարդելոյզք նորա կէսք ունչս առնէին Լուկուղղեայ, և կէսք դարձեալ՝ ընդ խաղ վիճակ հանէին զաւարացն: Եւ անդ այր այր 'ի զօրավարացն և մեն մի յարքայից մատուցեալ առ Տիգրան՝ խնդրէր 'ի նա ապաստան զմարտն առնել, ինքն 'ի զնին կացեալ հանդիսին: Նա և Տիգրան ինքնին յայնժամ հենգնախօս զկծեալ, զհամբաւեալն ասաց բան. "Եթէ իբրև դեսպանք՝ ասէ՝ գան դոքա, բազումք են. ապա եթէ իբրև զօրականք՝ նուազունք են ,,: Այսպէս ուրեմն 'ի ժամանակին յայնմիկ 'ի բա-

մեծնէ սթափեալ, ձայն բարձեալ կոչնէր և երգէին. «Արդ ընդդէմ մեր ուրեմն տըքդ այդ դքիկ»: Եւ յայնժամ 'ի շտապ մեծի տագնապի կարգ առեալ անբաւ խուժանին իւրոյ, ինքն 'ի միջոցին արձանացեալ, առեալ տայր զձախոյ Թևն աջային Արգաթիացւոց, և զաջոյն՝ աջային Մարաց, յորսամ և յոգնաթիւ ճակատեալ պատերազմեն այրուձիոյն:

Իսկ յանցանել Լուկուրգեայ ընդ գետն, որդ լինէր նմա 'ի փորձաւետացն զգուշանալ աւուրն. զի էր իսկ 'ի վստահաբար աւուրց անտի՝ զոր անուանեալ կարդային Սեւս, զի և 'ի նմին աւուր հարեալ խորտակեցաւ բանակ Սկիպիոնի 'ի մարտին Կիմբրացւոց. նա եւ պատասխանի զհռչակեալն բան, «Ես և զդոյն զայդ օր՝ առնէ՝ բարեբաստիկ յաղթութեցեց Հռոմայեցւոց»: Եւ էր օրն առաջին քան զմի Նոննայեցն Հոկտեմբերի: Աստ և խրախոյս բարձեալ՝ անցանէր ընդ գետն. ինքն նահատակեալ խաղայր առաջին ընդդէմ թշնամեացն, որկեալ զանձամբ զրահս երկաթի փայլուն վերոս, և քղամիդ փողփողեալ 'ի վերջաւորս, և մերկապատեան զսուրն ձգէր շողացուցանէր, իբրու արագ արագ ընդ հեռամարտ մարդկանն խառնել 'ի կռիւ, արշաւասոյր առ ձեռս հասեալ զանվերջապես զփայլուն զնետողնկէց և զարդնընկէց:

Այլ նա դէտակն 'ի վեր առեալ զայրուձին պատերազմէն ահեղ և երևելի՝ ձա-

հարեալ բախեալ յաղթահարութեամբ նոցա և երկիւղալք նոցա 'ի զէնս 'ի զարդս հեռակա-կազմութեան՝ մինչև նոցա 'ի կռիւ կաքաւեալ, զի և բիւրաւորք նոցա յայնժամ անմէրք և անարիւնք նկուն եղեալք պարտեցան. զի հարուած ահագին կոտորածին պատա-հեցաւ 'ի փախչել նոցա, մանաւանդ եթէ և 'ի խուճապել. քանզի արգելեալ կա-ռեալ մնացին յամբաւից անտի հեռակա-կացն, որ կուռ միագունդք ստուարա-գունդք քաջամուր արձանացեալ կային: Ցայնժամ մեծի տագնապին և Տիգրան ինք-նին 'ի փախուստ անձնապարեաց ընդ սակա-ւուց ոմանց. անդ 'ի նոյն տագնապ տե-սեալ և զորդին, կորզեալ զպսակն 'ի գլ-խոյն տայր 'ի նորա ձեռս արտասուօք, պա-տուէր տուեալ անձնապուր լինել ընդ այլ ճանապարհ: Ոչ իշխեաց պատանին 'ի գլուխ դնել, յանձն առնէր զայն հաւա-տարիմ իւրում պաշտօնէին յաւանդ. իսկ ինքն 'ի խուճապ խուժանին ձերբակալ ա-ծաւ առ Լուկուղղոս, և տայ ընդ ան-կածս մարտին զթագ և պսակն Տիգրանայ: Եւ պատմեն՝ տասն բիւրուց հետևակաց և աւելի՝ անդանօր տապաստ անկանել, և սակաւուց այրուձիոյն ճողոպրել փախըս-տեայք. իսկ 'ի Հռոմայեցւոց խոց վիրա-ւոր լինել արանց հարիւրոց, և դիատապաստ անկանել՝ հնգից: Որպէս և Անտիոքոս ի-մաստասէր յիշատակ արարեալ մարտին այնմիկ 'ի գեղջաւոն յիւրում մատենին ա-սէ. Հանդուգնաստիպ այսմ երբեք չետես

և վիրաւորաց, և լուր առեալ զմեծի հարուածոյն, պնդեցաւ խնդրել զՏիգրան: Ապա գտեալ զնա ամայի յամենեցուն միջաբեկ յուսակտուր, ոչինչ ոտնհար և ինքն լինէր հեքացելոյն, այլ իջեալ յերիվարէն, տխրակից արտասուակից լինէր հասարակաց աղէտիցն. զանձնապահապետն իւր զարքունի թագն նմա, և քաջալէր և խրախոյս 'ի ներքս բերէր նմա 'ի յոյս հանդերձելոցն. և ապա երկոքեան նոքա միաբանգամ զօրաժողով լինէին:

Իսկ յայնժամ 'ի Տիգրանակերտ քաղաքի խռով հարեալ ընդ Հելլենացիս և ընդ բարբարոսս, և խնդրեալք մասն լինել քաղաքին, 'ի դէպ ժամուն դառյթ տուեալ քաղաքին Լուկուղղոս, տիրանայր նմա: Առնոյր զգանձան արքունի, և թողոյր զքաղաքն յառ և յաւուր զօրականին. անդանօր՝ Թո՞ղ զայլ ընչաւէտութիւնն, գտանէին և ութ հազար քանքար դրամոց հատելոց. առ այս դարձեալ՝ առն առն 'ի զօրականէն բաշխէր տայր ութ հարիւր դրամանկչիռ յանկածէ թշնամւոյն: Իրազեկ ապա եղեալ՝ զի ձերբակալ եղեն անդ բազումք 'ի դերասանից խաղուցն Դիոնիսեայ, զորս 'ի կողմանց կողմանց անդր խաղացոյց Տիգրան 'ի տօն նուիրաց Թատրոնին՝ զոր ինքնին Տիգրան կանգնեաց, զնոսա առեալ Լուկուղղոս վարէր 'ի հանդէս խաղուց և տեսարանաց իւրոյ յաղթութեանն: Ապա 'ի սեպհական հայրենիսն առեալ արձակէր զՀելլենացիսն՝ տուեալ պաշար զճա-

նապարհին. զնոյն՝ և զքաղաքարոսան զըրա-
նոգասս գաղթականսն։ Եւ այնպէս յաւե-
լածոյ միոյ քաղաքի շատք 'ի քաղաքաց
յոռին կանգնեցան բնակեալք 'ի բնակա-
մասանց բնակչացն, որք և մեծապէս սիրով
կապեցան ընդ Լուկուղղեայ, իբրու որ
բարերարն նոցա և հիմնադիր։ Եւ այլս
ազգն ամենայն յաջողէր Լուկուղղեայ ըստ
արժանի անձին նորա. բայց նա ըղձակաթ
էր գովութեանց արդեանցն՝ որ յարդա-
րութենէ անտի և 'ի մարդասիրութենէ,
քան որ 'ի մարտից նահատակութեանցն.
քանզի 'ի վերջինսն ոչ գուզնաքեաց ինչ
համարակարգ է և զօրականն ինքնին, և մե-
ծապէս ես՝ բախտն գլխովին. իսկ առա-
ջինքն՝ հեզ և հրահանգ հոգւոյն համա-
ռեք են։

Այսպիսեօք բարեգգեաց հանգիստիւք
անգէն նուաճէր յայնժամ Լուկուղղոս
զխուժադուժս, եկեալ հասեալ առ նա նա
ինքնին և արքայից Արաբացւոց տալ նմա
'ի ձեռս զամենայն իւր զգոյս իւրեանց.
առ այս՝ և ժողովուրդ Սովփինացւոց անձ-
նատուր նմա լինէր։ Բայց և Կորդուացիք
այնպէս իմն սիրեցին զնա, զի և մատողե-
րագոյնս Թողուլ կամէին զքաղաքսն և ըղ-
ձեա երթալ նորա հանդերձ որդւովք և
կանամբք։ Քանզի Զարբիենոս արքայ Կոր-
դուացւոց՝ ըստ որում և ասացաքն՝ զաղտ
նիզակակցութիւն կռեալ էր ընդ Լու-
կուղղեայ 'ի ձեռն Ապպիոսի, ոչ ևս հան-
դուրժեալ բերել զծառայութիւն զՏի-

դրանայ. որում խրախուսած Տիգրան եղեալ՝ տայր սպանանել զՋարբիէնոս և զորդիս նորա և զկին նորա՝ մինչև հռոմայեցւոցն հորդան տուեալ էր 'ի Հայս։

Այլ Լուկուղղեայ ոչինչ մռայօնք եղեալ, անդէն հասեալ առ Կորդուացիսն՝ հանդէս կատարէր յուղարկաւորութեան Զարբիէնեայ. և պաճուճեալ զխարոյկ նորա 'ի հանդերձս պատուականս և յոսկի նորուն իսկ արքայինն և յանկածս աւարացն Տիգրանայ, ինքնին առեալ հուր մատուցանէր և ձօն ձօնէր նուիրաց 'ի միասին ընդ բարեկամաց և մերձաւորաց սպանելոյն. և կարդայր զնա իւր ընկեր և նիզակակից Հռոմայեցւոց. առ այս՝ և հրաման տայր կանգնել նմա շիրիմ հոյակապ անխնայ 'ի ծախսն. քանզի և եգիտ իսկ մթերս առատ ոսկւոյ և արծաթոյ յարքունիսն Զարբիէնոսի. և ամբարս ևս ցորենոյ երից հարիւրոց բիւրուց գրուայ, յորմէ և լիացան յօրայան զօրականք։ Եւ սքանչացաւ մեծապէս Լուկուղղոս, զի և ոչ դրամակշռով չափ 'ի հասարակաց գանձարանէն՝ 'ի նմին իսկ 'ի մարտէն 'ի գլուխ տարաւ ըզմարտն։

Յայնմ ժամանակի և Արքայն Պարթևաց հրեշտակութիւն առաքեալ առ Լուկուղղոս՝ հրաւիրէր կռել դաշն և բարեկամութիւն. մեծապէս հաճեալ Լուկուղղոս՝ արձակէր և ինքն հրեշտակս առ արքայն. որոց գնացեալ՝ 'ի վարանս տարակուսի գտանէին զնա. քանզի գաղտաբար

դաշինք էին նորա և ընդ Տիգրանայ. խընդ_
րէր 'ի նմանէ զՄիջագետս 'ի փոխարէն
օգնականութեան ձեռնին՝ զոր խոստա_
նայր նմա: Այդ Լուկուղղեայ եղեալ բա_
նին, եդ 'ի մտի թողուլ զՄիհրդատ և ըզ_
Տիգրան՝ խըռու վատթարս ամենս, և փորձ
զզօրութեանն փորձել Պարթևաց 'ի մարտ
պատերազմի. զմտաւ ածէր՝ մեծաց համ_
բաւել փառաց, կամ ըզհետ միմեանց եր_
րու ընկճել քաջ 'ի մի թափ մարտի զզօրա_
նեալ աշխարհս երիս՝ յաղթական որ ընդ
արեգակամբք երից մեհապետացն արանց:
Այսպ հրաման առնէր 'ի Պոնտոս առ
Սորնատիոս և առ այլս 'ի զօրավարացն՝ ա_
ծել խաղացուցանել առ նա զզօրականն.
քանզի կամէր 'ի Կորդուաց անտի խաղալ
'ի վերնագաւառն անդր: Բայց նոքա և յա_
ռաջնմէ գիտակք սաստկութեան զօրա_
կանին, իսկ յայնժամ և համօրէն 'ի վերայ
կացին ապերասան լրութեան նոցա. ոչ
ինչ ձեռնհաս եղեն հնազանդել ոչ հաւա_
նողական բանիւք և ոչ սպառնալեաց և ոչ
բռնութեամբ. նա և բողոք բառնային նո_
քա՝ և ոչ անդէն կալ մնալ, այլ յառնել
չու առնել լքեալ ամայի զՊոնտոս: Զհամ_
բաւի հարեալ բանին առ Լուկուղղոս՝
սաերիւրեցան և նորա զօրականք. քանզի
և յանչափութեանն և 'ի փափկութեանն
գրգռեցեալ իսկ էին և 'ի կռիւն յուղա_
ցեալք. խնդրէին կեանս վարել պարա_
պորդս. ապա և զհամարձակաձայն բար_
բառն լուեալք զօրականին Պոնտոսի՝ եր_

րու արս քաջս առեալ գումէին զնոսա և զանձինս ևս 'ի նոյն խառնէին. իբրև չառնել 'ի ներքս բերդին նոքա նահատակութիւնս, զի և այնուհետև ըստ արժանի յանդորրու կացցեն :

Յայսպիսեաց բանից և որ չար ևս՝ լուեալ Լուկուղղեայ, յետս կացեալ 'ի խորհրդոյն ընդդէմ Պարթևաց, անդրէն միւսանգամ չու առնէր խաղայր գնայր ընդդէմ Տիգրանայ 'ի խոր ամարայնի : Անցեալ ընդ Տաւրոս, տարակուսէր յանձն՝ զի գետ ևս դալարի զարտորայն տեսանէր. այնպէս իմն 'ի սահմանսն յայնոսիկ անագանեալ տեսանէին եղանակք 'ի ցուրտ օդոց վայրացն :

Ապա իջեալ 'ի վայր երկիցս և երիցս 'ի փախուստ դարձուցանէր զՀայս՝ որ 'ի դիմի հարան նմա. և արձակ արձակ աւարէր զաւանս նոցա, և այնպէս 'ի բաց 'ի նոցանէն զամբարսն հանեալ զՏիգրանայ, 'ի նոյն՝ յորմէ ինքն խիթայր՝ 'ի կարօտութե զթշնամին արկանէր : Այլ քանզի ստէպ ստէպ ասպարէզ կարդալով մարտի, և փոս և խրամ հատեալ զնոցա բանակաւն, առ այս՝ և ակն յանդիման նոցա յաղարտ ըզգաւառն վարելով, իբրև ոչինչ կարաց զնոսա 'ի ճակատ հանել, զի բազում անգամ հարան 'ի նմանէ. ժողովեալ զամենայն զբանակ իւր դէմ եդեալ խաղայր յԱրտաշատ յարքունիսն Տիգրանայ, ուր և էին նորա տղայ մանկունք իւր և տիկնայք. զմտաւ ածէր եթէ ոչինչ հանդար-

տեալ ժուժեսցէ Տիգրան անդիմամարտաբար թողուլ զնոսա :

Իբրև պատմեն՝ Աննիբաղայ Կարքեդոնացւոյ յետ հարուածոյն Անտիոքոսի 'ի Հռոմայեցւոց՝ յառնել գնալ առ Արտաշէս Հայ, և անդ շատ ինչ 'ի պիտանեաց թելադիր ուսուցանել նմա . յորս և զայն ինչ՝ զի վայր մի յաշխարհին ընտրեալ անդաստին 'ի բնութենէն քաջավայր և բերկրալատար՝ լքեալ ամայի, 'ի նոյն վայր մտախորհ լինէր Աննիբաղ հովանագրել զձև քաղաքին, և անդր զԱրտաշէս ածեալ ցուցանէր և խելամուտ առնէր զնա հիմն արկանել : Հաւանեալ արքային՝ աղաչէր ըզնոյն ինքն զԱննիբաղ՝ տափկան վերակացու կալ 'ի վերայ գործոյն, և այնպէս շինէր քաղաք մեծ և գեղեցիկ յոյժ . և անուն կարդացին նմա զարքային, և լինէր Քաղաքամայր Հայոց 3 :

Այս 'ի նոյն քաղաք դէմ եղեալ Լուկուղղոս, ոչ ևս հանդարտեաց Տիգրան . խաղաց չու արար ամենայն զօրութեամբ և հասեալ բանակ հարկանէր յաւուրն չորրորդի մօտ Հռոմայեցւոց, առեալ 'ի միջոցին զԱրսանիաս գետ 4, ընդ որ հարկ իսկ էր անցանել Հռոմայեցւոց խաղալ յԱրտաշատ : Անդ զոհ դիցն զոհեալ Լուկուղղոս՝ իբրու 'ի բաւէն զյաղթութիւնն ունելով առեալ անցուցանէր զզօրն՝ հորդան տուեալ կարգ առ կարգ երկոտասան գնդաց, զայլսն վերջապահ կալեալ՝ զի մի 'ի ներքս փակեսցի 'ի թշնամեաց : Իսկ 'ի

Ճակատումն Տիգրանայ կարգեալ արձա-
նացեալ կային յոքնաթիւ ընտիր ընտիր
այրուձիոյն, և յառաջոյ Մարք կիրթք
դիպաղեղունք յերիվարէ, և Վիրք նիզա-
կաւորք. յորս և քան զամենայն ևս բա-
նակին յոյժ վստահ էր Տիգրան՝ իբրև 'ի
կորովիս քաջամարտկաց: Բայց յայնժամ
գործ ինչ նահատակութեան ոչ ցուցին
նոքա. և վայր մի ընդդէմ կացեալ այրու-
ձիոյն Հռոմայեցւոց, 'ի խուժել հետևա-
կացն՝ ոչ կացեալք յականատանի՝ քակ-
տեալ բաժանեցան և ցիր և ցան 'ի փա-
խուստ դարձեալք՝ 'ի նոյն և զայրուձին
զհետ առեալ ձգէին 'ի վանել զնոսա:

Այսորիկ այսպէս եղելոյ՝ այրուձի այլ
յառաջ խաղացուցեալ Տիգրանայ, 'ի
փայլիւն 'ի շողիւն բազմութեանն զահի
հարեալ Լուկուղղեայ՝ ձայն տայր դարձի
հետամուտ այրուձիոյն, և ինքն առ ետեղ
նահատակ 'ի դիմի հարեալ Նախարարացն՝
որ այրընտիր 'ի քաջաց առեալ խաղացին
ընդդէմ նորա, անդէն ահ մեծապէս ար-
կեալ՝ մինչև 'ի մարտ մատուցեալ 'ի փա-
խուստ դարձուցանէր զնոսա: Բայց յե-
րից անտի արքայից Ճակատելոցն, յաւէտ
ինն նշաւակ 'ի փախուստ խուճապէր Պոն-
տացին Միհրդատ, որ և հանդարտեաց իսկ
ոչ՝ ձայնի աղաղակի Հռոմայեցւոցն: Այս
հետամուտ հարուստ միջոցաւ փախստէիցն
եղեալ, ողջոյն զգիշերն տապաստ 'ի նոցա-
նէն արկեալ՝ և կենդանւոյն ևս ձերբակալ
արարեալ, ածէին կապուտ և կուտէին

ղառ և ղապուր, մինչև յոգնեցաւք աեզի տայլին: Արդ՝ Լիվիոս պատմէ յառաջ-նում անդ մարտին բազմագոյն լինել ան-կելոց և զերւոյն Թշնամեաց. իսկ 'ի վերջ-նումն՝ աւագ որերոյն նոցա:

Յետ այսորիկ մեծապէս քաջալերեալ Լուկուղղեայ, խորհէր 'ի վերինագաւառ անդր յառաջ խաղալ, և 'ի սպառ զբար-բարոսն վանել. սակայն՝ անկարծելի 'ի հասարակածէ անդ աշնայնոյն 'ի գառնա-ցունց եղանակին ձիւնաբերք սաստիկ ե-ղեն, և ապա 'ի պարզել օդոցն՝ եղեամունք անհնարին և սառամանիք. զի և դժուար-ըմպուք լինէին եփվարք 'ի գետոց առ սաստիկ ցրտութեանն, առ այս՝ և դժուա-րագնացք. քանզի 'ի հերձուլ սառիցն՝ ջիղք սմբակացն կարէին 'ի դժնդակաց ան-տի. բայց և աշխարհն ինքնին բազում ու-րեք խաւարարգել, և անձկուղի և անտա-ռամոլ. և տամկացեալ ձիւնախառնաղաղ էր 'ի չուն զօրականն, և մեծա տառապանօք օթէին նոքա 'ի ծմակս: Ուստի և ոչ բա-զում ինչ աւուրս զհետ չուեալք Լուկուղ-ղեայ, սկսան նոքա խոտորնակս գնալ. զա-ռաջինն յորդորք խոնարհեալք՝ առեալ ար-ձակէին առ Լուկուղղոս զհազարապետս իւրեանց. ապա 'ի մի վայր խռնեալ՝ ձայն աղաղակէր ամբոխին նոցա բազմանայր գի-շերի 'ի բանակեանս նոցա. և էր այն նշ-տակ ապստամբութեանն նշանակ:

Յայնժամ Լուկուղղոս աղերս բազում արկեալ և քաջալերեալ ևս 'ի համբերու-

թիւն, մինչև զկարգերոննն Հայոց հիմն 'ի վեր քանդեսցեն զձեռնակերտ զոխերիմ Թշնամւոյն իւրեանց, (և ասէր զՍննիբազայ). իբրև ոչինչ կարաց համոզել զնոսա 'ի համբերութիւն, խաղացոյց յետս և անցեալ զքարձունս Տաւրոսի՝ ընդ այլ ուղի իջանէր 'ի գաւառ անդր որ անուանեալ կոչի Միգդոնեան, գաւառ ամենաբեր և արևահայեաց, յորում և քաղաք ընդարձակատարր և բազմամարդոց. բարբարոսք անուն կարգային նմա Մծբին, և Հելլենք՝ Անտիոք Միգդոնեան: Իշխէր քաղաքին ըստ աւագութեան բարձին Գուրաս եղբայր Տիգրանայ, այլ ըստ քաջափորձ հմտութեանն 'ի Մեքենականն՝ տիրացեալ էր 'ի նմա Կալլիմաքոս. այն՝ որ և յԱմիսոն աշխատութիւն բազում հատոյց Լուկուղղեայ: Անդանօր բանակ հարեալ Լուկուղղոս, պաշարմամբ հնարիմաց արուեստիւ առնէր քաղաքին, զի և 'ի սակաւ ժամանակի տիրացաւ նմա: Այլա մարդասիրութիւն բազում ցուցեալ առ Գուրաս՝ որ անձնատուր լինէր նմա, ոչինչ հայեցաւ 'ի Կալլիմաքոս, թէպէտ և խոստանայր նա նմա 'ի վեր հանել գանձս ծածուկս մեծամեծս. եւ հրամայեաց 'ի կոճեղս ունել զնա, 'ի վրէժ հրայրեաց աւերածոյն՝ զոր ած նա 'ի վերայ Ամիսոնացւոց քաղաքին. և 'ի դերև եհան զնա 'ի ժամուն 'ի փառաց հանդիսի մարդասիրութեան իւրոյ առ Յոյնս:

Յայս վայր առաջին բախտն գլխովին

իբրու ցանգ զուգամահեա Լուկուղղեայ՝ մարտակից նմա լինէր յամենայն նահատակութիւնս նորա. բայց առաքի և անդր՝ իբրու որ փրկել 'ի յաղթողակ հողմոյ՝ շտատապեցաւ նա յամենայն 'ի բանս և յամենայնի գտանէր քար ընդ տան. Թէպէտ և քաջութիւն համբերատար յանձին էրեր արժանի քաջի զօրավարի, ոչ փառաւորեցաւ ինչ այնուհետև 'ի գործս իւր. նա և վայրիկ մի եւ՝ յաղէտից կրիցն և 'ի հերձուածոց ամբոխիցն կապտէր նա յառաջնոց անտի իւրոց փառացն: Եւ արդ աղէտիցն այնոցիկ ոչ զուգինաբեայ ինչ պատճառք էր և ինքն գլխովին. ոչ գիտաց յինքն զսէր յանկուցանել զօրականին. կարծեաց այնպէս՝ 'ի հաճել զհնազանդեալսն՝ անփառունակ զանձն յարգարել և զաւագութիւն զանձինն տապալել: Եւ որ մեծն, բոյս էր նորա բարուց՝ և ոչ ընդ առաջ արան և ընդ համբերապատիւսն զիջանել, այլ ամենեցուն առ իւրև ունչս իմն առնէր. այս ինչ էին՝ որպէս ասեն՝ Լուկուղղեայ խակութիւնք խման 'ի բազում գեղեցիկ համբաւոց նորա: Քանզի առաջամանձն էր և գեղանի, պերճ և զօրաւոր բանիւք և համեմարեղ և զգօն յատենի և 'ի բանակի: Արդ Սաղլուստիոս ասէ, եթէ և անդստին 'ի սկզբն մարտին՝ ուծացեալ էր զօրականն 'ի սիրոյ նորա. իբրև սոխալեցան նոքա ձմերել երկիցս 'ի բանակին, 'ի Կիզիկոն, և միւս եւս՝ յԱմիսոն, և ապա 'ի ձմերոցնան որ զկնի՝ տաղտկացան յոյժ նո-

քս · քանզի ձմերեցին կամ 'ի Թշնամեաց գաւառին, կամ առ Նիզակակից ժողովուրդսն 'ի բացէ 'ի դաշտի ընդ վրանօք · զի և ոչ միանգամ եմուտ զօրն Լուկուղղոս 'ի քաղաք Հելլենացւոց և բարեկամաց:

Արդ 'ի չար ժամուն՝ Թինդոս մեծապէս տայլին զօրականին անգուստ 'ի Հռովմայ Ճարտասանք սուտակապաք խռովանին, որք առ Նախանձու դատախազ զԼուկուղղեայ կային՝ յերկարաձգել նմա զմարտ պատերազմին առ խիղճ զօրավարութեան և ընչասէրութեան, 'ի բանին դողցես կալեալ ինքնին միայնակ զԿիլիկիա, և զԱսիա, և զԲիւթանիա, և զՊափղագոնիա և զԳաղատիա, և զՊոնտոս և զՀայաստան, և որ անդր մինչև 'ի Փասիս · և 'ի վերջէ՝ զի յաւարի առեալ կողոպտեաց նա և զՏիգրանայ զարքունիսն · իբրու որ արձակեցաւ անդր կապուտել մերկել զԹագաւորս, և ոչ նուաճել զնոսա: Եւ պատմեն՝ Լիւկիոսի Կուինտոսի ժողովրդապետի ասել յայսպիսեաց բանից · յորմէ և մեծապէս դրդեալ խռովանին վճիռ տալ փոխանակ առաքել Լուկուղղեայ, առ այս՝ և զբազումս 'ի զօրականէն նորա արձակել 'ի բաց:

Անդ յաղէտսն 'ի մեծ յաւելաւ և այլ՝ որ հիմն 'ի վեր զերան տապալեաց զԼուկուղղեայ: Սա այս էր Պուպղիոս Կղոդիոս այր խեռ և անառակ և ժպիրհ · էր սա տագր Լուկուղղեայ, և բամբասեցաւ անկանել ամա և ընդ անժուժկալ կնոջն: Իսկ յայնժամ զինուորեալ նա առ Լուկուղ-

վանեալք վարեցին յանապատս անշէնս, և ոչ զարքունիսն քանդեցին նոքա զԱսիոյ. այլ մարտ միայն եդեալ կռուեցան յիշերխս ընդ տարագիր որերոյն, դարձեալ և ընդ փախստէից յիսաւրիա: Եւ զի՞նչ ասպա. եթէ արդեօք անդադար լինել պարտ իցէ 'ի մարտից պատերազմաց, զի՞ մեք չպահեմք զնշխարեալ մեր մարմին և զոգի վասն այնպիսում զօրավարի, որ զարդ մեծապէս անձին վարկանի զընչաւէտութիւն զօրականին իւրոյ“:

Յայտակսեաց բանից հրապուրեալ զօրականին, ոչ ևս կամէին զհետ խաղալ Լուկուղղեայ՝ ոչ ընդդէմ Տիգրանայ և ոչ Միհրդատայ, այն՝ որ արդէն միջամուխ 'ի Պոնտոս 'ի Հայաստանէ դրաւեալ ունէր զիւր արքայութիւնն: Ապա զժամանակ պատճառեալ նոքա զձմերայնոյն, դեգերեալ կային 'ի Կորդիս. ժամ 'ի ժամէ ակնկալեալ մնային գալստեանն Պոմպէի կամ թէ այլում ումեք զօրավարի փոխանակ Լուկուղղեայ: Բայց լուր առեալ զի Միհրդատ 'ի պարտութիւն զՓաբիոս մատնեալ, խաղայ գնայ ընդդէմ Սորնատեայ և Տրիարեայ, ապա զամօթի հարեալք յարեան զհետ Լուկուղղեայ: Իսկ յայնժամ Տրիարիոս իբրու անկասկած զյաղթութեանն՝ պատուասիրեալ մարտ յարդարել մինչչև հասեալ Լուկուղղեայ՝ որ առ դուրս կայր, հարուածս ահագին ընդունէր. քանզի ասեն՝ անդ տապաստ անկանել հռոմայեցւոց աւելի քան եօթն հա-

զօրաց. յորս և հարիւրապետաց հարիւր և յիսուն, և հազարապետաց քսան և չորք, և ավրանման Միհրդատայ բանակին նոցա։ Ցետ սակաւուց հասեալ Լուկուղղեայ՝ առեալ 'ի ծածուկ ունէր զՏրիփարխոս անձրժելի 'ի սրտմտութենէ զօրականին՝ որ խնդրէին զնա։ Բայց Միհրդատ յայնժամ անկանիւ ակնկալեալ Տիգրանայ՝ որ զօրուծանօթս զայր իջանէր, եզ 'ի մէջ Լուկուղղոս մինչև նոցա երկոցուն 'ի մի խմբեալ՝ խաղալ ընդդէմ Տիգրանայ և կռուել։

Այլ խռովլ ապստամբութեան առեալ յուղւոջ 'ի Փիմբրիանեանն՝ դասալիք լինէին, իբրու որք արձակեալք վճռաւ 'ի զինուորութենէն, և յայլս ումանս ապաստանս զօրավարութեանն եղեալ, ոչ ևս հրամանատար կացցէ Լուկուղղոս։ Եւ ապա յայնժամ զամենայն հանդէս անարժան իւրում բարձին և շքոյն՝ խոնարհեալ 'ի ներքս բերէր Լուկուղղոս. միում միում 'ի նոցանէն յողոք անկեալ պաղատէր, շուրջ եկեալ յածէր գնայր 'ի խորանս նոցա՝ վայլրանկեալ ակնկոր և 'ի գէմսն արտասուագին, էր՝ զի և զուրաւք 'ի նոցանէն զանձոյն կալեալ. այլ նոքա ողոքանացն երեսս շառնէին, առեալ զգետնէին Թափուր գատարկ զքսակս իւրեանց. ասէին ինքնին միայնակ գնալ կռուել ընդ Թշնամիսն, յորոց միայնակ գիտէ ինքն ընչահաւաքն լինել։ Համայն և այնպէս 'ի խնդրուածս այլոց զօրականին խոնարհեալ Փիմբրիանեանց, միաբանեցան կալ մնալ

անդէն զամառն ողջոյն. դաշն եդեալ՝ զի թէ երբէք զժամանակն զայն մարտ ուստեք ոչ յուզեսցի, ազատասցեալք այնուհետև գնասցեն 'ի բաց: Հա՛րկ էր Լուկուղղեայ հաճել ընդ բանն. կամ թէ ամայի ինքն լքեալ, թողուլ ողջոյն զաշխարհն 'ի բարբարոսացն ձեռս:

Ապա առեալ պահէր զնոսա անբռնադատս, և 'ի կուխ չհանէր. շատ համարեցաւ առ ի՛ւր զնոսա ունել. թոյլ ետ այնուհետև Տիգրանայ աւարել, քանդել զԿապադովկիա. և զիջանէր տեղի տալ միանգամ պերճութեանն և խեռութեանն Միհրդատայ. և այն զի՛ գրեալ իսկ էր Լուկուղղոս առ Սենկղիտոսն վասն իսպառ նուաճութեան առն. որ աղագաւ և պատուիրակք եկեալ հասեալ էին առ նա 'ի Հռոմայ կարգ և յօրինուած տալ իրացն Պոնտոսի, քանզի կարծեալ իմն այնպէս էին՝ աւարտեալ Լուկուղղեայ յանդորրու աշխարհէն այնմիկ. սակայն հասեալք առ նա, տեսանէին և ո՛չ անձին անգամ տիրացեալ զնա՝ խոտեալ և ստնհար յիւրոց անտի զօրացն: Որոց և լրբենի դիմօք 'ի վախճանել ամարայնոյն արկեալ միանգամայն զանձամբ զէնս և մերկեալ զսուսերս, մարտի ասպարէզ թշնամեացն կարդային, յորժամ նոքա չէին ուրեք 'ի միջի և վերջտանեալ իսկ էին. ապա ձայն աղաղակի բարձեալ և սուսերամարտք եղեալ, հորդան արտաքս առհասարակ տային 'ի պատնշէն, բողոք բարձեալ՝ եթէ անցեալ է ժամա-

նաւակայեան սահմանին մնալոյ իւրեանց առ Լուկուղղեայ ։

Իսկ անդրուստ Պոմպէոս նաւամականի առեալ կոչէր առ ինքն 'ի զօրականէն. քանզի և ինքն իսկ կարգեցաւ յայնժամ զօրավար մարտին ընդդէմ Միհրդատայ և Տիգրանայ 'ի ձեռն խուժանին և 'ի չնթեղոյ հռետորաց ռամկին ։ Բայց յայնժամ Սենկղիտոսն և լաւ որեարն զնոյն մեծապէս նախատէինս վարկանէին Լուկուղղեայ, իբրու որ ոչ փոխանակս մարտին կայցի, այլ յաղթանակին իւրում. և բռնութիւն լինիցի առն՝ տեղի տալ այլում ոչ 'ի զօրավարութենէն, այլ 'ի վարձուց փոխարինացն ։ Զնոյն և քամենելի էր նոցա՝ որ անդէն 'ի զօրուն կային, յորժամ 'ի բանակին կարգեալ յիշխանութենէն տեսին զԼուկուղղոս. ոչ պարգևել կարէր, և ոչ պատուհաս 'ի վերայ ածել. դարձեալ և անդրուստ Պոմպէոս ումեք չտայր թոյլ մօտ երթալ առ նա, կամ ունկն դնել սահմանի հրամանաց նորա և տասանց պատուիրակացն որ ընդ նմա, այլ և աշխարհաւ հրովարտակ հանեալ արգել և կնքեաց. առ այս՝ և զի անդ մօտ կացեալ ահաւորեկ էր առ մեծի ուժոյն ։ Սակայն և այնպէս հաճոյ թուեցաւ բարեկամացն, գալ նոցա խօսել ընդ միմեանս ։

Արդ 'ի մի վայր եկեալ նոքա յաւանի ուրեք Գաղատիոյ, մեծապէս մարդասիրութեամբ խօսէին ընդ իրեարս՝ այր ընկերին խնդակից լինէր վասն գեղեցիկ նահա-

տակութեանցն ։ Էր իսկ Լուկուղղոս տիօք աւագ, այլ Պոմպէոս քան զնա աւագութեան վիճակեալ բարձի, յաճախ եւ կացեալ զօրավար բանակի, և կրկնակի տարեալ յաղթանակի հանդէս. բայց և երկաքանչիւր նոցա գնային յառաջոյ գաւազանքն՝ 'ի նշանակ ոցուն մրցանացն՝ սարդենաբարձք. այլ Լուկուղղեայ գաւազանակիրք տեսեալ զսարդենիս թարշամեալ ընդ գաւազանացն Պոմպէի, զի յերկար անջրդի և ծարաւուտ երկայն հատեալ էր ուղի, տուեալ զդալարագեղս և առոյգս տային գաւազանակրացն նորա յիւրեանց անտի. և զայն բարեգուշակ առէին բարեկամքն Պոմպէի ։ Եւ արդեւոք գեղեցիկ նահատակութիւնք նորա՝ շուք և զարդ 'ի ներքս բերին զօրավարութեան սորա ։ Բայց յայնժամ 'ի կենակից խօսելոյն նոցա պայման և ոչ մի հաստատեցաւ ընդ նոսա. այլ ելին մեկնեցան այր յընկերէ ոխերիմք առաւել քան զառաջինն ։

Առեալ ապա Պոմպէոս անվաւերական գործէր զամենայն սահմանս կարգաց զԼուկուղղեայ, և յինքն ժողովեալ զամենայն զօրականսն, թողոյր առ նա 'ի հանդէս յաղթանակին ոգիս միայն հազար և վեց հարիւր. այլ և ոչ սոքա յօժարամիտք յոյժ էին զհետ երթալ նորա. այնպէս ուրեմն կամ ձախողակի հանդիպեալ 'ի բնութէն, կամ թէ վատաբախտեալ գլխովին էր Լուկուղղոս յառաջինն յայն և 'ի մեծ հանդէս առն զօրավարի. որպէս զի եթէ յան-

կարծ և զնոյն ընդ ապահականին իւրում պատուաստեալ էր պերճ և բազմադէմ առաքինութեան անձին, (ընդ քաջութեան սեամ արութեանն, ընդ աննիրհ ջանութեանն, ընդ հանճարոյն զգօնութեանն, և ընդ արդարութեանն), արդեօք ոչ զԵփրատէս սահման յԱսիա ունէր հռոմայեցւոց տէրութիւնն, այլ և անդր մինչև 'ի սահմանս վերջինս ձգէր տարածէր և մինչև 'ի ծովն Վրկանայ. քանզի և այլ ժողովուրդք նուաճեալ խակ էին ընդ ձեռամբ Տիգրանայ. և Պարթևաց զօրութիւնն ինքնին առ Լուկուղղեաւ՝ չէր որպէս առ Կրասոսիւ, և ոչ դարձեալ միաբան և միախորհ. այլ յընտանի կռուոց անտի և 'ի սահմանակից՝ և ոչ զՀայոցն անգամ արշաւան ուժէին նոքա վանել:

Արդ ինձ թուի՝ քան շահ օգտի յիւր ձեռն՝ զեան մեծապէս յայլոց ձեռս հասուցանել Լուկուղղեայ իւրոց հայրենեացն: Քանզի այն ախոյեանք կանգնեալք 'ի Հայաստան աշխարհ մօտ Պարթևաց 'ի Տիգրանակերտ և 'ի Մծբին, և հարստութիւնք ամբարք ածեալք 'ի Հռոմ յերկուց անտի քաղաքաց, առ այս և պսակն ինքնին Տիգրանայ կալեալ 'ի մարտին և տարեալ 'ի յաղթանակին, այդ ամենայն յուզեալ դրդէյին զԿրասոս ընդդէմ Ասիոյ. իբրու եթէ որսք պատրաստք՝ անդանօր մնան նմա այն բարբարոսք և աւարք դիւրըմբռնելիք: Բայց ապա արագ արագ պատահեալ նորա նետիցն Պարթևաց, յայտոյանդ իմանու-

թեամբ ցուցանէր՝ զի ոչ յանհմտութենէ թշնամեաց և յանարի վատութենէն յաղթեաց նոցա Լուկուղղոս, այլ քաջութե֊ արութեամբն և 'ի գեղեցիկ հրահանգացն մարտից: Այլ յաղագս այդոցիկ զկնի:

Արդ 'ի Հռոմ դարձ արարեալ Լուկուղղեայ, գտանէ զեղբայր իւր զՄարկոս դատախազեալ 'ի Գայոսէ Մեմմիոսէ վասն գործոց ինչ նորա 'ի հրամանէն Սիւղղայի 'ի գանձաւորութեան իւրում. բայց ապա արձակեալ Մարկոս՝ ընդդէմ Լուկուղղեայ դառնայր Մեմմիոս, խռովհարեալ 'ի խուժանին ասդրէր հրապուրէր՝ մի յաղթանակին թոյլ տալ Լուկուղղեայ. իբրև աւար ստաստիկ յինքն տարաւ նա զաղտագողի, և այնչափ յերկարաձգեաց զմարտ պատերազմին: Անդ բուռն դիմամարտութեան եղելոյ ընդդէմ Լուկուղղեայ, արք աւագք և ձոխք քաղաքին 'ի մէջ անցեալ՝ երթեալք միջամուխ 'ի ցեղս ցեղս խուժանին, հազիւ ուրեմն ողոքանօք թախանձեալ ամբոխին զամբոխն՝ թոյլ յաղթանակին առնել. որ և ոչ իբրու զայլոցն այնպէս ձոխապանծ գտաւ յաղթանակն, և տաղտուկ 'ի յերկարաձգել հանդիսին և 'ի խռնել աւարացն: Քանզի յայնժամ փլամինեան ձիլընթացք զարդարուն յօրինեցան յաւարս զինուց ամբաւից թշնամեաց և 'ի մանդղինոս արքունիս, և եդաւ անդանօր ամենայն գեղեցիկ կարգաւ 'ի բերկրութիւն տեսանելեացն հանդերձանաց: Եւ ապա 'ի բուռն հանդիսի յաղթանակին

եղբարցն · իսկ էր նա իբրև զնա ցուփ և խառնակրօն · զի և հարուստ ժամանակ ժուժեալ ընդ նմա 'ի մեծարանս երևացն Կատոնին՝ 'ի վերջէ ուրեմն արձակեր և զնա։

Բայց յայնժամ ատագանին ակնկալոյց 'ի Լուկուղղոսէ իբրև մեծապէս յուսայր՝ եթէ այն այր համբաւաւորենց և աւագամեծար ախոյեան ատագայեսութեն ընդդէմ դարձցի բռնաւորութեանն Պոմպէի, նա խաղաղ լքեալ զքաղաքին իրս՝ չլինէր ինչ միջամուխ, կամ զի ախտակրեալ յոյժ եւտես նա զքաղաքն դժուարընկալ գեղեցիկ կարգին · կամ զի (որպէս կէսք ասեն) յորացեալ 'ի փառս յետ այնչափ մրցանացն և քրտանց՝ որ ոչ խաղաղ գեղեցիկ միձակեցան ելից, անդորրաւէտ ցանկացաւ կենաց։ Եւ որք զայս ասեն՝ զմեծապէս փոփոխութիւն զառն 'ի գովութիւն առնուն · զի ոչ զհետ օրինակին չոգաւ Մարիոսի, այն՝ որ յետ մրցանացն ընդդէմ Կիմբրացւոց և յետ մեծաց նահատակութեանցն՝ ոչ յօժարեաց 'ի փառացն, այլ անյագ յառաջութեանն և նարաց ըղձակաթ փառաց, 'ի մէջ ալևորն ընդ երիտասարդաց ելեալ յառաջնորդութիւն քաղաքին, արհաւիրս գործեաց, և նա առհաւրաքս լի կրեաց կիրս։ Առ այս և ասեն՝ եթէ և Կիկերոն ինքնին զկլոմբին գեղեցիկ եա 'ի ծերութիւն պարապաուութեան յեցեալ էր, եթէ յետ Կատիլինեայն նուաճութեանն համբարատեալ անդի ատյր · ընդ նոյն և Սկիպիոն՝ եթէ անդորրայեալ հանդ-

զի և այսօր առ մեզ՝ յորում ծայրալիր յորդեցին գրգանք, ընդ գրախտս արքունիս հոյակապս՝ ընդ մի համար են և Լուկուղղեան գրախտք։ Իսկ յաղագս արարոց և դաստակերտաց նորա 'ի ծովափնեայ վայրս և առ Նէապօլսեաւ, ուր կախեաց նա լերինս ծակել 'ի մեծամեծ կապարանս, և զջուր ծովուն ած գնացոյց առ բնակութեամբք 'ի խաղս ձկնանոցս և ձկնաւէտս, և կանգնեաց ապարանս 'ի ծովահայեացս․ և որ ընդ այս ամենայն հրաշակերտութիւնս հիացեալ զարմացաւ՝ Տուբերոնէ Ստոյիկեան, անուն կարդայ նմա՝ Քսերքսէս Պատմուճանաւոր 5։ Առ այսոքիւք՝ էին նորա և ապարանք 'ի Տուսկլոն, դիտանոցք գեղեցիկք ամենահայեացք, և հովանոցս արեգունենս այրանոցաց և ձեմարանաց․ ուր և է զի եկեալ Պոմպէոս հեգնէր զԼուկուղղոս, զի գեղեցիկ շինեաց իւր ամարաստուն ապարանս, անկայուն և անբնակս ձմերանի․ ծիծաղեցաւ Լուկուղղոս, ասէր․ “ Եւ զի՞նչ, նուաղեալ թերևս 'ի հանճարոյ թռուցելոց ես քեզ քան զխորդս և քան զարագիլս, որպէս զի և ըստ եղանակացն ոչ փոփոխանակել ինձ և ապարանս,,։ Իսկ և երբեմն 'ի զօրավարաց ոմն պատուասիրեալ առ խուժանին թատրան երևելի, խնդրէր քղամիդս ծիրանիս 'ի Լուկուղղեայ՝ 'ի զարդ դասուն․ նա պատասխանի Լուկուղղոս հայել, զի եթէ ունիցի, տացէ․ այլ յաւուրն երկրորդի հարցեալ զզօրավարն, ո՞րչափ ինչ պէտք

ժուժկալութեան, յորում կանգնեալ Կատոնն՝ ասէր․ "Երբեք դու վախճան չառնիցես ճառելոյ․ բազմահարուստ գոլով քո իբրև զԿրասոս, և կեանս վարելով քո իբրև զԼուկուղղոս, և խօսիս դու առաքինի իբրև զԿատոնն„։ Իսկ կէսք ասեն խօսել զայս այսպէս, այլ ոչ 'ի Կատոնէն։

Բայց թէ և Լուկուղղոս ինքնին ոչ վայելէր միայն, այլ և խնդայր ևս ընդ այնպիսի քաղաքավարութիւն կենացն և պարծէր, յայտնի է 'ի բանից անտի նորա՝ զոր ասացեն։ Քանզի պատմեն՝ զալ երբեմն 'ի Հռոմ արանց Հելլենացւոց, և Լուկուղղեայ զաւուրս բազումս հրաւիրել զնոսա յընթրիս․ իսկ նոցա իբրև արդարև Հելլենացւոց՝ հրաժարել աստ 'ի կոչնոց նորա, պատկառեալք ընդ մեծապէս ծախսն որ ընդ օրէ վասն անձանց․ զայն լուեալ Լուկուղղեայ, ծիծաղեալ ասէ․ "'Ի ծախուց այտի մասն՝ ո՛վ արք Հելլենացիք, վասն ձեր է անշուշտ․ սակայն առաւելագոյնն՝ վասն Լուկուղղեայ„։ Է՛ր և երբեմն՝ զի միայնակ ընթրեալ և սեղան մի պատրաստեալ նմա, և ընթրիք չափաւոր, կոչեալ զսեղանակարարն զայրագնեալ կշտամբէր․ իսկ յասել պաշտօնէին՝ եթէ զի 'ի հրաւիրելոց ոք չեկաց զայն օր, ոչ կարծեաց մեծահաց սեղանոյ ունել պէտս․ ետ պատասխանի Լուկուղղոս և ասէ․ "Զինչ ասես․ ոչ գիտես՝ զի ընդ Լուկուղղոսի ընթրէ այսօր Լուկուղղոս"։ Արդ յայնժամ՝ որպէս և բնաւորեցաւ իսկ՝ զրուցացեալ բազ-

մաց եղելոց 'ի քաղաքին վասն նորա, էր երբեմն զի պարապորդ կացեալ նորա 'ի հրապարակին՝ մատեաւ առ նա Կիկերոնն և Պոմպէոս՝ ընդ որս և բարեկամութեամբ սերտեալ էր. և Թէպէտ և դժուարութեան եղեալ ընդ նա և ընդ Պոմպէոս վասն զօրավարութեանն, սակայն և ստէպ կենակից բնաւորեցան նոքա ընդ միմեանս քաղցրութեամբ։ Անդ ողջոյն տուեալ նմա Կիկերոնի, հարցանէր՝ զիա՞րդ պարապեսցին նոքա ընդ միմեանս. եւ պատասխանի Լուկուղղոս՝ մտադիւրագոյնս յոյժ. և բռնադատեալ ևս զնոսա գալ 'ի տուն, ասէ Կիկերոն. "Եւ կարի՛ իսկ քաջ, լիցուք մեք այսօր ընթրել ընդ քեզ, որչափ ինչ միանգամ վասն քո պատրաստեալ իցէ"։

Դժուարեալ Լուկուղղոս ընդ բանն, աղաչէր յայլ օր սահմանել զընթրիսն. յանձն չառին նոքա, նա և Թոյլ չետուն նմա խօսել ընդ ծառայից, մի՛ արդեօք ինչ մի առաւել քան զսովորականն հրամայեսցէ. բայց Թոյլ միայն ետուն՝ որ խնդրէր իւրեանց իսկ լու 'ի լու ասել միում 'ի ծառայիցն՝ եթէ զայն օր յԱպողոնին ընթրել հասանէ նմա, (և Ապողոնն անուն ունէր մի 'ի հրաշակերտ սենեկաց նորա), և այնպէս ապա հնարիմացութեամբ դաւեաց նա զարսն։ Քանզի առ մէն մի 'ի սենեկացն՝ ուր միանգամ ընթրէր՝ սահմանեալ էին ծախք ընթրեացն. և միոյ միոյ 'ի նոցանէն էին կարասիք առանձինն, և կահք կազմածոցն՝ առանձինն, զի և 'ի լսել անդ ծա-

որք խիթացեալք էին 'ի զօրութենէն Պոմպէի, առեալ զերկուսին զատս՝ ախոյեանս ճակատեցուցանէին զօրավիգն Սինկղիտոսին. քանզի 'ի բարձերէց աթոռոյն հրաժեշտ տայր Լուկուղղոս։ Սակայն և իշխաներ նա 'ի հրապարակին ձեռն տալ բարեկամացն, և մտանէր նա 'ի Սինկղիտոսն առ 'ի այլոս նուաճութեան ջանիցն Պոմպէի կամ պատուաստութեան ինչ խորհրդոց նորա։ Ուստի և անվաւերականն տայր գործել զամահմանս հրամանին նորա՝ յետ զարքային նուաճելոյ նորա. առ այս՝ և բաշխեց ինչ զօրականին առ 'ի հրամանէն Պոմպէի՝ խաչ ընդդէմ եղև նա ձեռնտուութեան Կատոնիւ։ Այր աղաղաւ և Պոմպէոս երթեալ ապաւինէր 'ի բարեկամութիւն կամ թէ մանաւանդ 'ի դաշնաւորութիւն անդր Կրասոսի և Կեսարու. և յորդեալ 'ի նոցա ձեռն զբաղաքն զինուք և զօրականօք՝ վաւերականն գործէր զամահմանս հրամանին, 'ի բաց 'ի հրապարակէն հանեալ զԿատոնէ և զԼուկուղղոս։

Բայց զգործ զայս խոտեալ պատմութեանն արանց լաւաց և առաքինեաց, անդուստ Պոմպէոսեանք զոմն Բետտարիոս անուն յանդգնեալ կացուցեալ՝ ասէին ընդդէմնեալ զարեկայն զայն 'ի գործ անդր սպանութեանն Պոմպէի։ Քննութիւն 'ի Սինկղիտոսին եղեալ, մասն և դաշնակ լինէր այլոյն և այլոց եւս ոմանց, և 'ի ժողովրդեանն անդ յանկանէ յանուանէ և Լուկուղղեայ ինքնին, իբրու 'ի նորայն դրդութենէ

Բայց և 'ի սուգ մեծ համակեցան ժողովուրդք ընդ մահն նորա, իբրու որ անգէն 'ի բարգաւաճ յիւրում զօրավարութեանն և 'ի քաղաքականութեանն պակասեալ 'ի կենաց իցէ այրն. և խուռնէին ընթանային 'ի դիակն նորա՝ զոր բարձեալ տանէին 'ի հրապարակ անդր պատանիք աւագ տոհմիկք քաղաքին, և բուռն առնէին տալ նմա թաղումն 'ի դաշտին Արեան, ուր և թաղեցին իսկ զՍիւղղաս: Սակայն յանկարծակի եղեալ բանին, և ոչ հեշտին ըստ արժանի վայրացն կարգեալ զհանդերձանսն, եղբայր նորա յաղերս անկեալ ամբոխին՝ համանեցուցանէր 'ի Տուսկղոն յագարակին տալ մեռելոյն դիահանս պատրաստեալ նմա: Այլ և ինքնին եղբայրն ոչ հարուստ մի ժամանակ կեցեալ այնուհետև, այլ որպէս առոյց և փառաց նորա, նոյնպէս և փոքր միւս ևս՝ զուգահեալ փառս և ժամանակի մահուն, նորա, յոյժ եղբայրանէր եղեալ:

## ԶՈՒԳԱԿՇՌՈՒԹԻՒՆ

## ԿԻՄՈՎՆԻ
## ԵՒ
## ԼՈՒԿՈՒՂՂԵԱՑ

Այլ արդեօք երջանիկ կարծեսցի Լու-կուղղոս վասն ժամանակի մահուն, զի կանխեաց մեռանել՝ մինչչև ամբոխից չփոթելոյն յընտանի մարտից յուզեալ 'ի քաղաքին 'ի վերջին տնտեսութենէն. և զրաւեցաւ 'ի կենաց՝ մինչդեռ ազատ հայրենիքն էին՝ թէպէտ և ախտակրեալ. և այս ապա հա-սարակ է նմա ընդ Կիմոնի։ Քանզի և նա մեռաւ՝ յորժամ չև էին ամբոխեալ իրք Հելլենացւոցն, նա բարգաւաճ իսկ էին. սակայն և 'ի բանակին մեռանէր Կիմոն և 'ի զօրավարութեանն, ոչինչ տաղտկացեալ 'ի գործոյն և վերջոտնեալ. և ոչ դարձեալ իբրև մրցանակ իւրում աշխատանացն և մար-տից պատերազմաց և ախոյեանեցն՝ 'ի ներքս բերեալ զխնճոյից կոչունսն և զգիներ-

և գեղեցիկ՝ 'ի հլութեան զզօրականն պա-հել մարդասէր բարոյիւք, ուսանեմք զԼու-կուղղոս յիւրոց անտի արհամարհեալ և խոտեալ. իսկ զԿիմոն և 'ի Նիզակակցաց անտի յար սքանչացեալ: Քանզի 'ի Լու-կուղղեայ 'ի բաց օձանեալ սարատեան իւրքն. և առ Կիմոնիւ եկեալ գային և երէք և օ-տարք. Լուկուղղոս ել մեկնեցաւ բազում ամբոխիւ ընդ իւրով ձեռամբ, և այսրէն դարձաւ ամայի. Կիմոն արձակեցաւ ամ-բոխիւ ընդ այլոց ձեռամբ, և դարձ առաջ եկն նոքին ամբոխիւ՝ հնազանդեալ միայն ընդ իւրով ձեռամբ. երկու իմն յոյժ դը-ժուարինս պատրաստեալ իւրում քաղա-քին, խաղաղութիւն ընդ թշնամեաց, ա-ռաջնութիւն 'ի վերայ Նիզակակցաց, և միա-բանութիւն ընդ Լակեդեմոնացւոցն:

Բայց երկոքեան դարձեալ՝ գոտեպինդք քանդել տապալել տէրութիւնս մեծա-մեծս, և նկուն ողջոյն առնել զԱսիա, եր-կոքեան ևս՝ անվճարք վրիպեցան 'ի գործոյն. մին գլխովին առ 'ի բախտէն, քանզի մե-ռաւ 'ի զօրավարութեան անդ և 'ի բարօ-րութեանն. այլ ոչ և միւսն անպարտ դը-րովին կացեալ. կամ զի ոչ գիտաց, կամ զի ոչ զօրեաց հանդարտել զաղմուկ և զգրթմնջիւն զօրականացն, որով և այնչափ ատելի գտաւ: Այլ արդեօք զնոյն կրեաց և Կիմոն, քարշեալ 'ի դատաստան յիւրոց անտի քաղաքացեացն, և 'ի վերջէ վտա-րանդեալ խեցեկոյս վճռով. որպէս զի՝ ըստ Պղատոնին առասացութեանն՝ ընդ

Պարսիկք ոչինչ արդեօք տուգանեալք 'ի Կիմոնէ՝ արագ արագ դարձան և 'ի գլխի Հելլենացւոց հարան, և բանակ եւս առաւար հարկին զնոցա յԵգիպտոս: Իսկ յետ մեկնելոյն Լուկուղղեայ՝ Տիգրան և Միհրդատ նահատակութիւն և ոչ մի այնուհետև 'ի ներքս բերին. այլ Միհրդատ վարեալ յառաջնոց անտի մարտից պատերազմաց, և ոչ մի նուազ ժտեցաւ արտաքոյ ղակշէն երևեցուցանել Պոմպէի զզօրն. նա՛ 'ի փախուստ եւս դարձեալ՝ տեղի տուեալ 'ի Բոսփորոն՝ անդ արա մեռանէր: Իսկ Տիգրան մերկ և զինաթափ, ինքնին խոնարհեալ անկանէր առաջի Պոմպէի, և 'ի գլխոյն զպսակն առեալ եդեալ առ նորա պատուանդանին, ոչ եթէ իւրովքն ինչ չնթէր Պոմպէի, այլ անկանծիւքն յաղթանակին Լուկուղղեայ. և շատ իսկ սիրեացն առնուլ զայս 'ի ձեռաց Պոմպէի զնշանակս արքունի՝ իբրու որ յառաջագոյն կապտեալ 'ի նոցանէն: Եւ արդեօք զօրավար մեծ՝ ըստ որում և ըմբիշ, համարել արժան է զայլն, որ նկուն զախոյեանն թողուցու այնմ՝ որում զհետ նորա կռուել հանդերձեալ իցէ:

Առ այս և Կիմոնի՝ յորժամ արքային զօրութիւն վատթարեալ իսկ էր, և Պարսիկք ինքնին վատասարտեալք առ 'ի մեծամեծ հարուածոցն և 'ի բազում անգամ փախստենէն, զոր անդուլ և կռուռ 'ի վերայ ածին նոցա Թեմիստոկղէս և Պաւսանիաս և Լէոնիւքիդէս, յայնժամ յար-

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Քաղդէացիք կոչէին բնակիչք վայրացն. և կոչին ևս ոչքա Քաղիրացիք, որ կային առ սահմանօքն հնոյն Տրապիզոնի և Փառնակիոյ :

2. Օրինակ նմանութեան, քան զոր ոչ ինչ գեղեցիկ, ոչինչ ճշգրիտ, և ոչինչ իմաստասիրագոյն : Եւ ակնարկէ Պլուտարքոս նմանութեամբն 'ի հանճարեղ Առածն Հիպոկրատեայ 'ի բժշկականին, յորս ասէ առաջին. Ἡ δὲ τέχνη μακρή, ὁ δὲ καιρὸς ὀξύς. Արհեստն երկար, դէպ ժամանակին սրաւոր : Եւ զի արամատեալ փոխաչի դէպ ժամանակին, սպառ է 'ի ձեռաց չհանել զնա. այլ զքաջ հանգիպութեան ժամանակին վարել կամ 'ի կեանս կամ 'ի մահ, որպէս 'ի դեղս, նոյն և յամենայն 'ի գործս :

3. Տես զայսմանէ 'ի Պատմ. Հայոց. Հատ. Ա :

4. Արսանիա կոչեալն 'ի Պլուտարքեայ՝ է մերս Արածանի :

5. Քանզի և Քսերքսէս էր երբեմն. զի եհատ ծակեաց զլեառն Աթոս 'ի Յունաստան՝ անցուցանել ընդ այն զնաւս իւր : Իսկ Պօփ մուծանող, փոխանակ ասելոյ՝

# ՊՂՈՒՏԱՐՔԵԱՑ

## ԶՈՒԳԱԿՇԻՌՔ

## ՍԵՐՏՈՎՐԻՈՍԻ

## ԵՒ

## ԵՒՄԵՆԵԱՑ

նորա զժողովրդապետութեանն, չհաւա-
նէր խմբարոյն առաջնորդեալ 'ի հերձուածոյ
անտի Սիւղղայի, ուստի և Թուլի յամա-
ռութիւն ընթել նորա ընդ նմա: Իսկ երբե
Մարիոս նկուն եղեալ 'ի Սիւղղայէ փա-
խեաւ, և Սիւղղաս չու արար խաղաց ընդ-
դէմ Միհրդատայ, յայնժամ Հոկտաւիոս
հիւպատոս կայր ունէր զկողմն Սիւղղայի.
Իսկ Կիննաս միւս այլ հիւպատոս նորու-
թեանց զհետ երթեալ` Թեանկոնէր 'ի մէր
առնուլ զկողմն Մարիոսի զանձկեալն: Յայն-
ժամ Սերտորիոս չոքաւ միաբանեցաւ ընդ
նմա ; երբեմն անդ և Հոկտաւիոս ինքնին թշու-
լանկի գործէր և զանգիտանէր նա 'ի բարեկա-
մացն Մարիոսի: Նոյն հիւպատոսք երկո-
քեին մարտ մեծ յարդարեալ 'ի Հռոմայե-
ցիքն, յաղթական եղանէր Հոկտաւիոս.
և Կիննաս և Սերտորիոս կորուսեալ ոգւոյ
երբեմն ընդ մի, 'ի փախուստ գնային: Այլ
սակայն յինքեանս զգաստացեալ յանկուցեալ 'ի
զօրականսն` որ մնացեալ ցանեցան ընդ-
խառնեցին, զօրաժողով անդուրէն ձանկեաց ընդ-
դէմ յարդարեցին Հոկտաւիոսի:

Իսկ երբեմն դարձ 'ի Լիբիոյ արար Մա-
րիոս` գալ խաբել ընդ Կիննասայ երբեմն սու-
կաւորն ընդ հիւպատոսի, առհասարակ լաւ-
համարեցան ժողովել զայլն. միայն Սեր-
տորիոս ընդդէմ դառնայր, կամ զի հա-
մարեցաւ` ոչինչ օգտակար այնուհետև փոյթ
զինամեծս առնել Կիննասայ, առ իւր զօ-
րավար ունելով քաջ ևս քան զնա. կամ
զի զանգիտանէր նա` գուցէ Մարիոս առ վայ-

նեալ և աղաչեալ, 'ի չափու ածէր բե-
րէր զնա ։ Իսկ 'ի վերջէ՝ քանզի Ջոլերք ծա-
ռայից նիզակակցացն Մարիոսի 'ի մարտ՝
սատարք բռնաւորութեան նորա և զօրա-
ցեալք առ 'ի նմանէ և յոքնաթիւք ևս,
կէս մի 'ի թոյլ տալոյն նորա և 'ի հրամա-
նէն, և կէս դարձեալ՝ ուժգինս անիրաւ-
էին ընդդէմ տերանց, փողոտեալ զտեարս,
և բռնաբարեալ զկանայս և պղծեալ զման-
կունս, ապա Սերտովրիոս ոչինչ հանդուր-
ժեալ, այլ առհասարակ նետահար 'ի
մահ վարեալ զնոսա՝ մինչեւ նոքա բանա-
կեալ կային համախումբ 'ի միում վայրի.
և էին նոքա բազմութիւն ոչինչ պակաս
քան զչորս հազար ։

Իսկ յետ մահուն Մարիոսի և սպա-
նութեանն Կիննայի, կարգէր 'ի հիւպա-
տոս կրտսերն Մարիոս յակամայս Սերտով-
րիոսի և ընդդէմ օրինաց. և անդ յորժամ
Կարբոնք և Նորբանք և Սկիպիոնք ձախո-
ղակի մարտ եդեալ կռուէին ընդ Սիւղ-
ղայի 'ի դարձին նորա, և վատթարեալ
կային իրք կէս մի յանարութենէ և 'ի վա-
տութենէ զօրավարացն և կէս մի 'ի մատն-
չաց անտի, ոչինչ բաւական եղև Սերտով-
րիոս առ ժամն ձեռն տալ իրացն՝ որ գնա-
լով գնային և յոռանային. քանզի անդ
հրամանատարքն ինքնին վատախորհուրդք
էին. և ապա ուրեմն իբրև բանակ մօտ Սկի-
պիոնի հարեալ Սիւղղաս և բարեկամու-
թեամբ գնացեալ ընդ նմա՝ իբրու 'ի հաշ-
տութիւն խաղաղութեան գալ ընդ մի-

նոցա զերծ կացուցեալ զնոսա յօթևանաց զօրականին, պատուէր տուեալ ձմերոց առնել յարուարձանեայս և ինքն առաջին անդ հարկանէր խուց խորան: Սակայն և ոչ խաղաղ ընդ քէն զնայր բարբարոսացն. քանզի 'ի զէն 'ի զարդ վառեալ զհռովմայեցիսն որ չոքան ընդ նմա բնակել անդր՝ որք կռուարելահասակք, և ձեռն եա 'ի գործ տարեալ կազմել մեքենայս ազգի ազգի և նաւակերտս եռամթից, 'ի բուռն ունէր զքաղաքսն. զի թէպէտ և հեզ և հանդարտ էր 'ի խաղաղութեան, սակայն և ահաւորեկ զանձն ընծայէր թշնամեացն 'ի մեծամուր պատրաստութեանն:

Յետ այսորիկ լուր առեալ տիրանալոյն Սիւղղայի 'ի Հռոմ, և զի՝ և Մարիոսի և Կարբոնի հերձուածն քակտեցաւ, խիթայր այնուհետև՝ եթէ առաջ առաջ հասացէ անդր զօրու ոք 'ի զօրավարաց 'ի մարտ ընդ նմա. վասն որոյ և տայր Յուլիոսի Սալինատորայի առնուլ փակել զկիրճս Պիւրենեանն լերանցն հանդերձ վեցհազարի զօրականօք: Յետ ոչ բազմաց ինչ եկեալ հասանէր անդր Գայիոս Աննիոս արձակեալ 'ի Սիւղղայէ. բայց տեսեալ զանհնարին ամրութիւն Յուլեայ, անգաւոր առ տարակուսելն նստէր վարանեալ: Այլ ապա նենգաւորեալ եղեալ Յուլիոս 'ի Կալպուռնիոսէ ումեմնէ՝ մականուանն Լանարիոս, և լքեալ զօրականին զբարձունսն Պիւրենեանն, հասեալ ունէր զայնոսիկ Աննիոս. և յառաջ եա խաղացեալ բազմաձեռն զնդաւն

վանէր հալածէր զհակառակամարտսն ։ Իսկ Սերտովրիոս անձնանձնհաս ճակատ ընդդէմ յարդարել, չքաւ տապալեցաւ ՚ի Նորին Կարքեդոն երեքհազար արամբք ․ անդուստ ամբարձեալ ՚ի նաւ և հասեալ զծովն՝ ու-նէր զԼիբիա ՚ի Մաւրուսիա ։ Անդանօր բարբարոսացն ՚ի վերայ անկեալ զօրակա-նին՝ որ յանզգոյշս գնային ՚ի խնդիր ջրոյ, զբազումս յիւրոց անտի կորուսեալ Սեր-տովրիոս՝ միւսանգամ նաւէր յԻբերիա կոյս ․ անտի վանեալ, խառնեալ ընդ իւր զնաւս հինիցն Կիլիկեցւոց՝ խաղաց ՚ի կղզին Պիտուսա, և անդ ունէր զցամաքն՝ վանեալ զգունդ զօրականին զԱննիոսի ։

Յետ սակաւուց հասանէր անդր ինքնին Աննիոս բազում նաւուք հանդերձ հինգ հազար վառելովք ։ Ընդդէմ նորա կազմե-ցաւ պատրաստեցաւ Սերտովրիոս ՚ի նա-ւամարտ, և էին նորա միայն մակոյկք թե-թևք արագընթացք, բայց ոչինչ պնդա-կազմք ։ Անդանօր յուզեալ ամբոխեալ ծովուն ՚ի սաստկաշունչ Զեփիւռէ, յամ բառնալ ալեացն բազումք ՚ի նաւակաց ան-տի Սերտովրեայ առ թեթևութեանն զնա-ցեալ հարկանէին ընդ ժայռսն ․ և ինքն սակաւ նաւակօք վանեալ ՚ի ծովէն բռնու-թեամբ հողմոյն, և ՚ի ցամաքէն դարձեալ՝ ՚ի թշնամեաց անտի, այնպէս ծփեալ ՚ի խորս աւուրս տասն հազիւ ուրեմն բերէր ընդդէմ ամեհի ալեացն և ահագին մրրկին ։ Մինչև հանդարտեալ հողմոյն, երթեալ հասանէր նա ՚ի կղզիս ուրեք ցիր և ցան և

անջրդի, յորս և դեգերեալ նաւէր․ անդ- դուստ ելեալ և անցեալ ընդ նեղուցն Գադիրեայ՝ քերեալ առ աջակողմամբն արտաքս 'ի խորս յԻբերիա կոյս, վայր մի 'ի վերայ բերանոյն Բետեայ՝ որ 'ի ծովն իջեալ Ատլանտեան, յանուն նորա կարդան զշրջակայ մասն Իբերիոյ։ Անդանօր նմա պատահեցին նաւաստիք այն ինչ եկեալ յԱտլանտեան կղզեացն՝ 1 որ են կրկին. բաժանեալք ընդ կիրճ մի անձուկ, 'ի բացէ կան 'ի Լիբիոյ ասպարէզս բիւր մի, և անուն կարդան նոցա Երանելեաց։

Իսկ յայն կղզիսն տեղայ անձրև դուն ուրեք և չափաւոր, և շնչեն անդ առէպ հողմունք քաղցրասիւք և ցօղատարափք, և արգասաւոր գործեն և լաւ՝ ոչ 'ի վար միայն և 'ի տունկ, այլ և պտղաբերութիւն պարգևեն անդանօր ինքնաբոյս մրգաց առատ և քաղցր՝ բաւական 'ի բուծանել անվաստակ և անքրտան զժողովուրդն հանդարտեալ։ Եւ է յայն կղզիս օդ մեղմազուարճ 'ի քաղցրախառնութենէ եղանակացն և 'ի բարեխառն փոփոխութեանցն։ Քանզի հիւսիսին հողմունք և արևելեան 'ի ցամաքէս մերժէ շնչեալ յայն կողմն, առբացաձիգ տարածութեանն 'ի միջոցին ամբաւութեան ցանեալ վարատին մինչև հասանել անդր։ Իսկ ծովայինքն հիւսիսարևմտեան և զեփիւռք շնչեալք անդ շուրջանակի, բերեալ 'ի ծովէն շաղս անձրևոյ ցիր ու ցան և զովարար 'ի պարզ ցօղագին՝ քաղցր և անոյշ սնուցանեն։ Որ սովորաւ

ըէք 'ի հակառակն չյօժարեալ կերպ բառ բախտին. սակայն և անհնարին չէ, եթէ և առք քաջախորհուրդք և քաջամտինք 'ի բարս՝ 'ի դժպհի կերպ ըմբռնեալ մեծաց աղէտից, միանգամայն ընդ բախտին շրջեա֊ ցին և յիւրեանց բարոյից։ Զոր և յայն֊ ժամ պատահեալ գիտեմ Սերտորիոսի. այն՝ որ ամայի լքեալ 'ի բախտէն և դառ֊ նացեալ 'ի ձախողակ ելիցն՝ ժանտացաւ ընդդէմ որանցն՝ որ հարստահարեցին զնա։

Արդ յայնժամ հրաւիրեալ Սերտոր֊ իոս 'ի Լուսիտանացւոց անտի, յուղի ան֊ կեալ 'ի Լիբիոյ, և զօրավար միահեծան կարգեալ առ 'ի նոցանէ և անդէն 'ի կարգ ածեալ զնոսա, առնոյր գրաւէր զմերձա֊ ւորն Իբերիա. քանզի և շատք անդանօր կա֊ մակար յանձն լինէին 'ի նա, յաղէտ իմն՝ առ հեզութեան և ժրութեան քաջու֊ թեան առնն, նա և ինքն զվերոյ խորա֊ գիտութեամբ նիւթէր իւր համեղակեր հանգիստս. որոց և առաջին դէպքն այն Եղին, պատահեալ օրինակ զայս. Սպա֊ նոս ումն այր սակաւակեան և գիւղաբնակ՝ էր ելեալ զի պատահեալ նորածին եղին 'ի դաշտի՝ որ փախուցեալ զնայր 'ի ձեռաց որսորդացն, եղին ոչ կարացեալ ժամա֊ նել՝ հետամուտ կալաւ զեղնորթն, յա֊ պուշ հարեալ ընդ նորաչքանչ գոյնն, (քան֊ զի էր համակ սպիտակ)։ Անդանօր մօտ ըստ գիւղաց-բանակ հարեալ Սերտորիոսի, և խնդամտաբար ընդունեալ առնուլ ընդ֊ ունել զհիւրոյթս զամենայն զօրաց հերեց

ուից հանդարտեալ կեանս վարէր գերգս, և անդուստ ախոյեան 'ի ժամանն ունէր զՍերտովրիոս զաւառոյգ անձն և աշխոյժ, քաջակորով սքանչելի և արագ և ժուժկալ։ Որ և ոչ 'ի պատրաստութեանն անդամ երբէք նա ոչ հատանէ 'ի գինեբրբուս, և սովորեալ ևս էր ժուժալ քրտնաջան վաստակոց և երկայն ճանապարհաց և անդուլ անքնութեանց, շնոր համեմատեալ զկեկակրիկն և զանպաճոյճն. և ցանոք տարրաշրջիկ և յորս երանելով 'ի պատրաստութեանն՝ գիտէր խոյս քաջ և ձողոպրել փախստեամբ և հետամտեալ փակել պաշարել, զի և տեղեակ և հմուտ էր ամենայն ապառն և անտառական վայրացն։

Ուստի և Մետեղղոս ոչ կարելով մարտ ընդ նմա յարդարել պատերազմի, ինքն զպատրաստեցելոց մարդկանն կրէր կիրս, և Սերտովրիոս փախստեայ հնարիմացութեանն՝ զհետամուտ յաղթականացն։ Քանզի և ոչ պատրաստ թողոյր նմա պաշար ժողովել զջրոյ և զկերակրոյն, քարընդոտն եղեալ նմա 'ի ջրու ճանապարհին նորա, և չարչարէր 'ի բանակել նորա. և ուրեք 'ի նստել և 'ի պաշարել նորա, արագ և ինքն 'ի վերայ հասեալ նեղէր զնա կարօտութեամբ, մինչև զօրականին նորա ոչ ևս հանդուրժել վշտին։ Եւ քանզի և 'ի մարտ մենամարտիկ ձայն տայր Սերտովրիոս Մետեղղեայ, անդուստ զօրականին աղաղակ բարձեալ ասէպէին զնա 'ի կռիւ զօրավարի ընդ զօրավարի, և հռոմայեցի առն ընդ հռոմայեցւոյ.

բերեին մինչև 'ի պարիսպ անդր ; և այնպէս յանդորր զեշխանն հանեալ՝ ապա այր այր 'ի փախուստ խուճապէր ։

Բայց ոչ Իբերացւոց միայն ըղձակերս զանձն ընծայեաց Սերտովրիոս, այլ և Իտալիոյ զօրականին գլխովքն. ուստի և անդր յԻբերիա եկեալ հասեալ յայնժամ բազմահարուստ ընչիւք և բազմաձեռն գնդաւ Պերպեննաս Վենտովնէս 'ի կուսակցաց անտի Սերտովրիոսի, և խորհուրդ կալեալ մարտ ինքնին առանձին զնել կռուել ընդ Մետեղղեայ, զչարեալ ցասմունին զօրականք նորա. և բազում ինչ զրոյց 'ի բանակին նորա լսելի լինէր վասն Սերտովրիոսի, որք աղաղակ 'ի խոր խոցէր ինքնին Պերպեննաս՝ այր ճոխացեալ ազնուականութեամբ և ընչաւէտութեամբ ։ Անդանօր լուր առեալ և զչուոյ անցիցն Պոմպէի ընդ Պիւրենեանն՝ յայնժամ զօրականք Պերպեննեայ զէն 'ի ձեռս առեալ և զգնդաց դրօշակսն կորզեալ՝ բուռն բարձեալ ընդդէմ նորա՝ ստիպէին առնուլ տանել զնոսա առ Սերտովրիոս. և սպառնային եւս կապէին թողուլ լքանել զնա և երթալ խմբիլ ընդ քաջի առնն՝ որ զանձն և զընկերսն ապրեցուցանել կարօղն իցէ ։ Ապա բռնադատեալ Պերպեննաս, առեալ ածէր զնոսա և խմբէր առ Սերտովրիոսի գունդ զօրաց յիսուն և երեք ։ Իսկ և Սերտովրիոս յաւելեալ առհասարակ և զօրս յայսկոյս Իբերոս գետոյն (քանզի և 'ի կողմանց կողմանց խուռն ընթանային առ նա ժողո-

կայր և մի մի տուեալ խլէր ։ Արդ իբրև ա-ռաջինն ոչ սակաւ ինչ ժամանակ յոգ-նեալ, և քրտինս ևս շատ գործեալ ՚ի տե-սանելեացն՝ ՚ի բաց եկաց ՚ի գործոյն, իսկ անդ ալեւորն ՚ի սուղ ժամանակի և ան-քրտան մազամերծ զագին արարեր, յայն-ժամ յառն կանգնեալ Սերտորիոս ասէր այսպէս. « Տեսէք աւասիկ որք նիզակա-կիցք, զի քան զբռնութիւն զօրաւոր ևս է երկայնմտութիւն. և շատ ևս իրք՝ զոր ձեռս ընդ ձեռս հնար չէ գործել՝ սակաւ սակաւ գան ՚ի կատարումն ։ Որպէս զի և համբերատար երկայնմտութեան անկոտրուե-լի է զօրութիւն. և նովաւ զամենայն որժ հարկեալ վատթարէ ժամանակն ինքնին, մերձաւորակից բարեկամ որոց միանգամ դէպ-ական կայցեն խոհականութեանն քաջա-գիտութեան նորա. իսկ և ոսոխից յորժ՝ որք միանգամ յանդէպ ժամուն ձեռնեալ փութացին » ։ Ցայսպիսեաց աստի նիւ-թեալ օր ըստ օրէ Սերտորիոս ՚ի քաջալերս մխիթար բարբառոյն, ակնկալեալ միայն դէպ ժամանակին ։

Բայց և հնարիմացութիւն նորա առ Քարակիտացւովքն՝ սքանչացաւ ոչինչ պա-կաս քան զամենայն նահատակութիւնս նորա. Քարակիտացիք այս՝ ժողովուրդ են ՚ի վերոյ գետոյն Տագոսի. ոչ բնակեն նո-քա ոչ ՚ի քաղաքի և ոչ ՚ի շէնս, այլ կայան բնակութեան նոցա է լեառն մեծ և բարձր, ուր են անձաւք և քարանձաւք դիմեալք ընդ հիւսիս. իսկ գաւառն՝ որ ՚ի ներքոյ

նաւկի փոքու տարաւ նա՝ մինչև առէք ծո_ րուացն արձակեալ էր. սաստիկ և չարաչար 'ի քաղաքացն անտի Սերտորիոսի անկեալ ուրոյք 'ի Պոմպէոսէ՝ յօժարէին անձնատուր նմա լինել. բայց ապա յանակնունելի գործոյն որ 'ի Լաւրոնէ՝ հանդարտեալ լռեցին:

Քանզի 'ի պաշարել զայն Սերտորիոսի, խաղացեալ գնայր Պոմպէոս 'ի թիկունս նորա ամենայն բանակաւն: Յայնժամ Սերտով_ րիոսի դիմեալ հասանել առնել բլուր մի՝ անդուստ հարկանել մանել զքաղաքն, ա_ ճապարեաց Պոմպէոս խաղ ընդ առն լինել նմա. բայց Սերտորիոսի կանխեաց կալաւ, և Պոմպէոս անդ առկայացուցեալ զզօրն՝ խնդայր ընդ իրացն պատահումն՝ իբրու որ ընդ քաղաքն և ընդ իւր զօրն 'ի միջոցին փակեցաւ Սերտորիոս. և առաքեաց առ առ Լաւրոնացիսն քաջալերել խրախուսել կար_ դայր նոցա, կալ առ պարսպօքն և հայել տեսանել զպաշարումն Սերտորիոսի. իսկ Սերտորիոս լուեալ ծիծաղէր, ասէր՝ քաջ իսկ ուսուցանել աշակերտին այնմիկ Սիւղղայի (քանզի այսպէս կոչէր 'ի խաղս զՊոմպէոս՝) եթէ պարտ և արժան է զօ_ րավարի քան զհանդիպորդն՝ առաւել զառ 'ի յետոյսն զգուշանալ հայել. զայս ասաց՝ և ձեռն ձգեալ ցուցանէր պաշարելոցն զվեց հազարսն հետևակաց՝ զորս թողեալ իսկ էր նորա 'ի բուն զանկնի անդ իւրում՝ ուս_ տի դիմեալ կալաւ զբլուրն. զի 'ի խաղալ երթալ Պոմպէի 'ի նա, նոքա 'ի թիկանց կուսէն փակեալ անկցին 'ի վերայ նորա:

Զայն լուեալ Սերտովրիոս՝ արծաթ յոյժ խոստանայր արանցն եթէ ումեք 'ի վեր չհանիցեն զբանն։ Եւ այնպէս 'ի ծածուկ կալեալ զեզերօքն, յետ աւուրց սակաւուց զուարթագին ելեալ զձայր ինքն յատեանն, և պատմէր զօրականացն բարբարոսաց՝ եթէ աւետիս մեծ նմա 'ի քուն ազդ պարգեւեալ է դից։ Այսպէս ելեալ 'ի բեմն 'ի դատել ըստ սովորութեանն, անդանօր 'ի վայրն արձակեալ եղնորթին 'ի պահապանացն, և տեսեալ զՍերտովրիոս մօտ ընթանայր խայտալով 'ի բեմ անդր, և դիկայ առեալ՝ եդեալ զգլուխ իւր 'ի վերայ ծնգաց նորա զգրգայր և բերանովն փայփայէր զաջն նորա՝ սովորեալ առ 'ի նոյն յառաջագոյն։ Ընդ անոր և Սերտովրիոս զդուանս ըղձակալթս ցուցեալ եղնորթին իբրև յանկեղծաւոր սիրոյ և արտասուս ես հեղեալ, յապուշ հարեալ կային հանդիսատեսքն. ապա և ծափս հարեալ 'ի ձայն ցնծութեան ընթացակիցք Սերտովրիոսի իբրու առն աստուածայնոյ և աստուածոց սիրելւոյ՝ լինէին 'ի խորանսն նորա խրախճանօք և քաջալերեալք։

Յետ այսորիկ 'ի դաշտավայրսն Սեղուանինացւոց փակեալ և սաստիկ քաղցու նեղեալ զԹշնամիսն, զդրդուեցաւ ընդ նոսա 'ի կռիւ մարտի՝ 'ի գնալ նոցա ժողովել հաւանեալ։ Եւ անդ սաստիկ և բուռն մարտի մղելոյ յերկոցունց կողմանց, Մետելլոս քաջամարտիկ քան զամենայն զօրագլխուսն Պոմպէի 'ի զօրուքն անկանէր վիրաւորեալ։

մնացն՝ դայր խմբէր ընդ զօրաժողովին և հաստատհարուստ այնպէս գիմէր անդրէն 'ի Թշնամիսն. արագընթաց խափանէր զպաշար կերակրոյն նոցա 'ի ցամաք կուսէն, դարան գործէր, 'ի ներքս փակէր, և յայսկոյս յայնկոյս սապատաւ կապեալ՝ արագ արագ 'ի վերայ անկանէր. իսկ 'ի ծովէ՝ հասանէր ունէր զափունսն 'ի մակոյկս հինից. մինչև և Հռոմայեցւոց զօրավարք քակեալ բաժանեցան. Մետեղղոս տեղի տուեալ գնայր 'ի Գաղատիա, և Պոմպէոս ձմերէր առ Բակկացիս և նեղեալ տագնապէր 'ի պակսել դրամոյն. տուեալ գրէր առ Սինկղիտոսն՝ դարձուցանել ածել զզօրն յԻտալիա՝ եթէ արծաթ չառաքեն նմա, իբրև սպառեցան նորա ամենայն ինչք 'ի կռուին վասն Իտալիոյ:

Իսկ յայնժամ 'ի Հռոմ համբաւ հարեալ էր, եթէ քան զՊոմպէոս կանուխ Սերտորիոս հասցէ յԻտալիա: Եւ արդ յայս սահման ած ձգեալ Սերտորեայ քաջութիւնն զմեծազօրսն և զառաջ զօրավարս ժամանակին: Նաև ինքնին Մետեղղոս յայտայանդիմանութեամբ քաջ 'ի դէմս բերէր զահ երկիւղին 'ի քաջէն և զմեծապէս համբաւ զառնն. որպէս զի և 'ի ձայն քարոզի հրատարակէր տալ առն Հռոմայեցւոյ սպանողի նորա հարիւր քանքար արծաթոյ և երկու բիւր լծավար գետնոյ. ապա եթէ 'ի վտարանդեաց ոք իցէ՝ դարձուցանել զնա 'ի Հռոմ. և այնպէս յուսահատ եղեալ յայտնապէս պարտել

զզէնս Իբերացւոց և զարծաթ նոցա և զգա-
ւազս նոցա, և ոչ բանիւք չափ երբեք յանձն
էառ ինքնակալ առաջնութիւն 'ի ձեռս տալ
նոցա. այլ տայր բաշխէր նոցա զօրավարս
և ոստիկանս Հռովմայեցիս. իբրու որ զա-
զատութիւն անդրէն 'ի բուռն տալ Հռո-
մայեցւոց, և ոչ եթէ Հռովմայեցւոց ընդ-
դէմ ախոյեան զԻբերացիսն կանգնել: Քանզի
զի այր հայրենասէր էր նա, և զարմին իւ-
րում յոյժ ըղձական 'ի քաղաքն անդր: Ա-
պա՝ և 'ի ձախողակ ելսն ցանգ առաքինա-
ցաւ, և երբէք վատութիւն ոչ խառնեաց
առ թշնամիս իւր. նա և 'ի յաղթութիւնս
իւր առաջէր բանագնաց լինէր առ Մե-
տեղղոս և առ Պոմպէոս, յօժարէր զէնըն-
կէց կեանս վարել սովականի, եթէ եր-
բէք յաջողեսցի նմա դառնալ 'ի հայրե-
նիսն. իբրու որ քան վատարանդի ինքնակա-
լել ամենեցուն՝ առաւել ևս կամէր ան-
փառունակ քաղաքացի կալ 'ի Հռովմ: Եւ-
ասեն՝ ըղձական զարմին լինել մանաւանդ
'ի պատճառս մօրն, որ մանուկ մնոյց զնա
որբացեալ 'ի հօրէն, որում և խանդակաթ
յոյժ էր նա. որպէս զի և 'ի լուր մահուան
մօրն՝ յորժամ բարեկամք նորա անդանօր
յԻբերիա հրաւէր կարդային նմա յառաջ-
նորդութիւն բանակին, վայրիկ մի ևս առ
ցաւոյն վճարէր նա 'ի կենացն. և այնպէս
զետնատարած զառացեալ զաւուրս եօթն՝
ոչ նշանս բաշխէր զօրականին և ոչ ումեք
երևէր 'ի բարեկամացն. մինչև հազիւ ու-
րեմն զօրավարքն նիզակակիցք նորա և համ-

տէրութեանն . քանզի առն քաջի և մե-ծանձին պատրաստ է խնդրել յաղթութիւն գեղեցիկ փառաց . իսկ անփորձառուացն՝ և ոչ փորձութիւն խնդրել անձին : Եւ արդ այս բանք պատմեալ առաջին Միհրդատայ՝ յառաջուց կրթեցին զոգին . և պատմեն եւ՝ ասել նմա առ բարեկամսն այսպէս . " Եւ զի՞նչ ինչ արդեօք մեզ պատուիրան յղեսցէ Սեր-տովրիոս 'ի Պաղատինիոնէ . եթէ զարդիս յԱտլանտեանն հալածեալ ծով, այդպէս սահմանս կարգէ տէրութեանս մերում, և մեզ եւս սպառնայ 'ի թեւակոխել մեր 'ի տէրութիւն Ասիոյ " :

Յայսմ ամենայնի վերայ պայմանք կռե-ցան երդմնակցութեամբ, առնուլ Միհրդատայ 'ի բաց զԿապադովկիա և զԲիւթանիա, և առաքել առ նա Սերտովրիոսի զօրավար և զօրականս, և Սերտովրիոսի առնուլ 'ի Միհրդատայ քանքարս երեքհազար և նաւս քառասուն : Եւ էր զօրավարն առա-քեալ 'ի Սերտովրիոսէ յԱսիա Մարկոս Մարիոս 'ի ծերակուտէն՝ որք ապաւինեա-ցան առ նա : Ընդ որ 'ի միասին ընդ նմին հա-նեալ կալեալ Միհրդատ 'ի քաղաքաց ան-տի Ասիացւոց, 'ի մտանել անդ Հռոմայե-ցւոյն 'ի քաղաքսն՝ վարոցս յառաջոյ ունե-լով և տապարս, խնձնէին Միհրդատ զհետ ընթանայր նորա՝ մտադիւրագոյն զերկ-րորդն կալեալ տեղի և զհետևողաց սպա-սաւորի : Եւ յայնժամ կէսք 'ի քաղա-քացն յանդորր ազատութեան եկին, և կէսք դարձեալ ապահարկ լինէին . և գրով

արդ առնէր քաղաքացն զշնորհ զայն զմարդասիրութեանն Սերտովրիոսի . և այնպէս Ասիա չարչարեալ 'ի մաքսաւորաց անտի և հարստահարեալ յընչաքաղց և 'ի խեռ զօրականէ անտի պահակերացն , ոգի առեալ խնդայր ընդ ակնկալեալ պատահումն :

Բայց յԻտալիա Սինկղիտիկոսք որ ընդ Սերտովրիոսի և որք առաջք բարձակիցք , իբրև զօրացեալք ակն ունէին այնուհետև քաջապէս զդէմ ունել թշնամեացն , զահ երկիւղին 'ի բաց եդեալ անհամաձար նախանձաւորութեամբ խանդացին զանէրութիւն նորա : Եւ էր նոցա պարագլուխ Պերպեննաս , որ մեծազարմ ևս փքացեալ ընդ քաջազարմութիւնն՝ թեկն ածէր զզօրավարութեան . և ափուէր տարածէր զաղտաքաւոր բանսարկութիւն 'ի մէջ ընկերացն , և ասէր . “ Եւ ո՞ր այն աղա ոգի չար հարեալ 'ի մեզ , ածեալ ձգէ զմեզ 'ի չարեաց 'ի չարիս : Մեր ինքնին պատմեալ էր ընդ հնազանդութեամբ կալ Սիւղղայի 'ի տան անդ մերում , այն որ գոգցես ցամաքի ողջոյն և ծովու տիրացեալ իսկ էր . և այսր մեր 'ի չար ժամու համեալ՝ իբրու կեալ յազատութեան , ծառայութիւն կամակար առաջիկ հարկանեմք՝ Թիկնապահք պաշտպան վտարանդութեանն կացեալ Սերտովրիոսի . և զանուն տարեալ մեր Սինկղիտոսի՝ անուն այպանելի առ 'ի լսելեաց , բերեմք թշնամանաց և հրամանաց և քրտանց՝ ոչինչ պակաս քան զԻբերացիսդ և քան զԼուսիտանացիսդ ” :

նալ: Բայց պատանեակն՝ որ առաւել հա-
րեալ էր յայլ ոք՝ Անփիդիոս անուն, չո-
քաւ 'ի վեր հան նմա զբանն. Զայն լուեալ
Անփիդիոս՝ զարհուրեցաւ յանձն, քանզի
և ինքն 'ի թուոյ անտի էր դաւաճանողացն,
այլ գիտէր ոչ՝ եթէ 'ի նոցանէն իցէ և
Մարկոս. այսպէս լուեալ 'ի պատանւոյն և
զանուանս Պերպեննայի և զԳրակիննեայ
և զայլոց ոմանց՝ զորս քաջ իսկ գիտէր 'ի
դաւաճանողաց անտի, խռովեալ 'ի յոգին՝
հնարէր զմիտս զաղանեալ պատանեկին և
այպանելի զբանսն ասէր. և խրատէր ևս
զնա՝ առ ոչինչ զՄարկոս համարել, իբրև
ռամիկէր այր և յախուռն. և ինքն գնացեալ
առ Պերպեննա՝ կայր և ցուցանէր քա-
նիօն արտաքսափախուստ իցէ քաջագիտու-
թեան ժամանակին, և քանի՛ մեծապէս վը-
տանգն, և ստիպէր արագ արագ ձեռն 'ի
գործ առնել: 'Ի նոյն միաբանեցան և դաւա-
ճանողք, և առեալ այր մի կաշառեցին. յղէին
առ Սերտորիոս տալ նմա նամակ աւետա-
րեր յաղթութեան զմիոյ ուրուք 'ի զօրա-
վարաց նորա և զմեծի հարուածոյ զթշնա-
մեացն: Մեծապէս յանձն խաղ զուարճա-
ցեալ Սերտորիոս և զոհ ևս յաղեալ վասն
աւետեացն, յայնժամ Պերպեննա հա-
տանէր ընթրիս տալ նմա և բարեկամացն
որ ընդ, (և էին նոքա 'ի դաւաճանողաց ան-
տի). և շատ աղերսէր զՍերտորիոս ինքն-
նին գալ 'ի կոչունսն:

Այլ յընթրիսն Սերտորեանն ցանկ սո-
վորեալ էին մեծապէս պատկառ կալ պար-

հրեշտակութիւն առաքեալ առ Մետեղղոս և առ Պոմպէոս՝ անձնատուր լինելին 'ի նոսա: Իսկ Պերպեննաս առեալ զորս ընդ իւրն էին՝ գուն գործէր ինչ մի նահատակութիւն 'ի ներքս բերել: Ապա զանձամբ զկազմած և զհանդերձանսն Սերտովրիոսի առեալ՝ միայն 'ի նախատինս անձինն և յայտնի առնել զանձն, իբրու որ անզգամին 'ի բնութենէն ոչինչ քաջացեալ իցէ ոչ իշխել և ոչ իշխիլ, խաղայր գնայր 'ի դիմի հարկանել Պոմպէի. յորմէ և արագ արագ հարեալ վատթարեալ և ձերբակալ եղեալ, և ոչ վերջին այս աղէտից գիտաց ըմբերել նա իբրև այր զօրավար, այլ տիրացեալ ինքն գոլով դիւանին Սերտովրիոսի, խոստանայր Պոմպէի ցուցանել զինքնագիր նամականի զհիւպատեան արանցն և զաւագացն Հռոմայեցւոց, որ հրաւէր յիտալիա Սերտովրիոսի կարդային, իբրև բաղձանց ոմանց խնդրել աղարտել զառաջիկայն և փոխել շրջել զկարգ քաղաքին:

Բայց Պոմպէոս բան 'ի ժամուն ցուցեալ արդարև ոչ զերիտասարդական մտաց, այլ զհաստատուն առն և զհանճարեղի, փրկէր զՀռոմ 'ի մեծաց արհաւրաց և յամբոխից շփոթից. քանզի 'ի մի վայր կուտեալ միանգամայն զնամականին և ըզգրուածսն Սերտովրիոսի, 'ի հուր այրէր առհասարակ. ոչ ինքն վերծանեաց և ոչ այլում թոյլ ետ վերծանել. և ապա անդէն արագամահ և զՊերպեննաս կորուսանէր.

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Են սոքա Քանարեան կղզիքն, որ և Երանելեաց։ Զորոց և զերանաւէտ զմիոյն վայրացն՝ յառաջ խաղացեալ պատմէ Պլուտարքոս։

2. Պլուտարքոս պարզաբար առաջի առնէ՝ զոր միանգամ պատմեն։ Եւ մեր գիր՝ երբեք 'ի հրեշտակին զանց չառնէ՝ որպէս աստ, նոյնպէս և այլուր, կարգել զյաւելուածդ՝ Որղէս ամէն. Որղէս ողոփմէն, Հանանա-Ջանգնեան են։ Եւ զարմանալի է մի և նոյն չափ վաթսուն Թուոյ վասն հասակի Տիտանեանցն 'ի վէպս ազգաց. ըստ որում և 'ի Գիրս՝ բարձրութիւն պատկերին, զոր կանգնեաց Նաբուգոդոնոսոր. զորմէ հնախօսելով Յովհ. Իմաստ. գրեաց, եթէ " Քաղդէացւոցն տեսեալ զՏիտանեանն զայն վիթխարի ... վաթսնականգնեանն ... ըստ իւրաքանչիւր լեզուաց այլաձևելով զնորա զանունն, Քուշացիք՝ Ներբովթ կոչելով. Բաբելացիք՝ Բէլ. Փղշտացիք՝ Բահաղ. Եգիպտացիք՝ Դիոս. Պարսիկք՝ Որմիզդ. Հայք՝ Արամազդ "։ Եւ ինձ Թուի անշուշտ՝ եթէ և Լիբէացիք՝ Ամոնէս; ըստ առաջիկայ հնախօս պատմութեանն Պլուտարքեայ։

---

# ԵՒՄԵՆԷՍ

ԵՒՄԵՆԵԱՑ Կարդիացւոյ հայրն՝ որպէս պատմէ Դուրիս՝ առ աղքատութեանն սայլորդ էր 'ի Քերրոնիսոն. այլ սնաւ նա իբրեւ զազատորդիս 'ի դպրութիւնս եւ 'ի մարզս ըմբշաց: Եւ մինչդեռ տակաւին մանուկ էր Եւմենէս, հասեալ անդր Փիլիպպոս եւ պարապեալ 'ի զննին կայր ասպարիսական խաղուց Կարդիացի պատանեացն, եւ գօտեկռուութեան մանկտւոյն. յորս տեսեալ իմն առաքինացեալ Եւմենէս, եւ հնարիմացութիւն եւ քաջութիւն 'ի դէմս բերեալ, հաճեալ Փիլիպպոս առնոյր զԵւմենէս առ ինքն: Այլ թուի իմն առաւել հաւատարմագոյն՝ զոր այլք պատմեն՝ յառաջագէմ լինել Եւմենեայ 'ի ձեռն Փիլիպպոսի 'ի բարեկամութեանն պատճառս ընդ հօրն Եւմենեայ, եւ 'ի հիւրընկալութեանն 'ի տուն նորա:

տօսկական, եւ գօլով և օտար՝ իբրու ոչ ինչ 'ի ձեռն նմա միջամտելս 'ի պայքարս լինել Մակեդոնացւոց։ Այլա 'ի չու առնել խաղալ այլոց նիզակակցացն 'ի Բաբելոնի՝ ինքն կացեալ 'ի քաղաքին ամոքէր զհետևակս զօրուն և 'ի հաշտութիւն կրթէր զնոսա։ Իսկ 'ի խմբել այնուհետև զօրավարացն խաղաղութեամբ և 'ի բաժանել յիւրեանս զնախարարութիւնս և ըղկուսակալութիւնս, յինքն առնոյր Եւմենէս զԿապադովկիա և զՊափղագոնիա, որ առ Պոնտոսին ծովու մինչև 'ի Տրապեզոն, որում և չև էին անրացեալ Մակեդոնացիք (զի անդ Թագ. կայէր Արիարաթէս)։ սակայն պարտ էր Լէոննատեայ և Անտիգոնոսի բազմաձեռն գնդաւ ածել անդր զԵւմենէս և կարգել իշխան սահմանացն այնոցիկ։ Արդ Անտիգոնոս ոչինչ անսաց թղթոյն Պերդիկկայ վասն բանին այնորիկ, քանզի և այր էր ամբարտաւան և արհամարհօտ։ Իսկ Լէոննատոս իջեալ 'ի Փռիւգիա 'ի վերին սահմանաց անտի յանձն առնոյր զարշաւանսն վասն Եւմենեայ. այլ առ նա եկեալ Եկատէոս բռնաւոր Կարդիացւոց բերան 'ի բերան խօսել և աղաչել՝ խաղալ մանաւանդ 'ի թիկունս Անտիպատրոսի և Մակեդոնացւոց՝ որ պաշարեալ կային 'ի Լամիա, դիմեաց նա անդր և զԵւմենէս ինքնին 'ի նոյն տախայէր և գոռես փորձէր հաշտեցուցանել զնա ընդ Եկատեայ. քանզի և ընդ ակամբ հայէին նոքա ընդ միմեանս 'ի հայրենի գժտու-

այլ կարգեաց ճակատեցոյց զիւր զօրն ընդ-
դէմ նորա։

Այսպէս առաջին այն անգամ կթեաց Եւ-մենէս զպտուղ զիւրոյ նախատեսութեանն և զզգաստութեանցն. քանզի 'ի պար-տութիւն մատնեալ 'ի հետեւակազօրն իւր, զայրուձին յառաջ վարեալ՝ եհար վանեաց զՆէոպտողեմոս և կալաւ զաղխն նորա. և զհետ մտեալ այրուձիովն վարատելոյ փա-ղանգին, 'ի նեղ արկանէր զնոսա զէնընկեց զինաթափ լինել, և առեալ զերդումն՝ զի նուաճել ընդ ձեռամբ նորա։ Բայց Նէո-պտողեմոս ժողովեալ նուազունս 'ի փա-խստէից անտի՝ գնացեալ անկանէր առ Կրատերոս և Անտիպատրոս։ Այլ սոքա հրեշտակութիւն առաքեալ առ Եւմենէս՝ յորդոր տային կուսակից իւրեանց լինել. և հաւատարմացուցանէին ևս զնա կալ հաստատուն 'ի բարձի կուսակալութեանն իւրոյ. առ այս՝ և զօր այլ տալ նմա և գա-ւառ այլ, եթէ 'ի թշնամութենէն Անտի-պատրեայ 'ի բարեկամութիւն դարձցի. դարձեալ և 'ի բարեկամութենէն ընդ Կրատերեայ՝ մի՛ շրջեսցի 'ի թշնամութիւն։ Լուեալ Եւմենեայ զբանսն՝ ասէր, եթէ 'ի վաղնջուց թշնամութիւն եդեալ ընդ Անտիպատրեայ՝ յանձն չառնու յայնժամ 'ի բարեկամութիւն գալ, զի ընդ բարե-կամս զնորայ դա տեսանիցէ իբրև ընդ թշնա-միս. իսկ զԿրատերոս մտադիւր լինէր հաշ-տեցուցանել ընդ Պերդիկկեայ, և դաշինս ևս առնել նոցա կռել ընդ միմեանս՝ իրաւս.

ծուփն ժամու, զի այն ինչ զյաղթութիւն տարեալ զօրականին նորա՝ թերևս երանակարծակ նոքա 'ի գինեբրբուս մնեալ իցեն: Այդ՝ զի նախազգած զալստեանն Կրատերեայ եղև Եւմենէս և կանխեաց կազմեցաւ պատրաստեցաւ, զայս ինչ՝ զուարթուն զօրավարի համարեսցի ոք արգեօք, այլ ոչ և ծայր ուշիմութեան. բայց զի գիտաց իսկ քաջ ծածկել նա 'ի թշնամեաց՝ զոր ինչ օգուտ չէր նմա յիմանալ նոցա. և զի՝ և զօրականին իւրում ետ մարտ գնել կռուել ընդ Կրատերեայ՝ մինչ չև գիտացեալ նոցա՝ ընդ ում կռուել, ղաղեալ 'ի նոցանէ զզօրավարին անուանն, այս ապա անշուշտ գործ համարեսցի գեղեցիկ յոյժ մեծի զօրավարի: Ոյր աղագաւ և ինքն հռչակ հարեալ 'ի զօրն քաջող կարգայր, եթէ Նէոպտողոմէոս ինքնին միւսանգամ 'ի վերայ հասեալ գայ ընդ Փիգրեայ հանդերձ այրուձիով Կապադովկացւոց և Պափղագոնացւոց. բայց 'ի գիշերին՝ յորում կամէր հորդան տալ բանակին, տեսանէր նա 'ի քուն տեսիլ օտար: Քանզի թուէր իմն տեսանել Աղեքսանդրոս երկեին վառեալ 'ի կռիւ ընդ միմեանս, և երկոքեին դարձեալ 'ի գլուխ կացեալ փաղանգի. և միումն 'ի թիկունս խաղալ Աթենասայ, և միւսումն՝ Դեմետրի. և հզօր մարտի եղելոյ՝ 'ի պարտութիւն մատնիլ՝ որ ընդ Աթենասայն էր. իսկ Դեմետրի հասկս մանգաղել և պսակ 'ի գլուխ բոլորել յաղթականին:

'ի գոռն, ոչ ժամ տացեն պարապոյ վերջոանել անդի առ, և ոչ դարձեալ ունեն երբէք դիցեն թանազնաց պատուիրակաց. քանզի և մեծապէս խիթայր Եւմենէս՝ թէ յանկարծ ծանուցեալ Մակեդոնացւոց ըզԿրատերոս՝ անցեալք ժողովեսցին առ նա։

Ապա և ինքն 'ի կարգի ճակատեցուցեալ երեքհարիւր ընտիր ընտիր նահատակաց զայրուձիոյն՝ յառաջ խաղայր յաջմէ կողմանէն կռուել ընդ Նէոպտողոմեայ։ Իբրև հասին անցին զբլուրն՝ որ 'ի միջոցին, և յակն զնոսա արկին Թշնամիք յարձակեալ արագ արագ մեծաւ զօրութեամբ, զահի հարաւ Կրատերոս. և անդ կայր և Թշնամանս շատ յարձակէր Նէոպտողոմեայ, իբրու որ նենգաւ գնացեալ ընդ նմա 'ի բանն յաղագս փոփոխութեան Մակեդոնացւոցն. հապա խրախոյս կարդայր իւրոց զօրագլխացն և խաղայր ընդդէմ։ Սաստիկ և բուռն էր առաջին մարտն, և անդէն հարեալ խորտակեցան տէգք և գեղարդունք, և խառնեցան 'ի մարտ սուսերաց։ Անգանօր Կրատերոս ստուերածս ոչ ինչ 'ի վերայ ածեալ փառացն Աղեքսանդրի և տապաստ զբազումս արկեալ և բազում անգամ ընդ կրունկն յետս զախոյեանսն դարձուցեալ, ապա և ինքն հարեալ վէրս առնոյր 'ի Թրակացւոյ ումեմն՝ որ 'ի կողմանէ յարձակեցաւ 'ի նա, և այնպէս Թաւալգլոր անկանէր յերիվարէն։ Իբրև այնպէս անկեալ կայր՝ գային առհասարակ անցանէին առ նովաւ և ճանա_

Այսպէս զօրացեալ Եւմենեայ այրուձիով, խնդրէր մերձ 'ի Սարդէ մարտ պատերազմի յաղթահարել 'ի դաշտավայրսն Լիւդեայ. պատրաստաւորէր ցուցանել Կղէոպատրեայ զզօրութիւն իւր. բայց աղաչեալ առ 'ի Նմանէ (քանզի զանգիտէր Կղէոպատրէ ամբաստանութիւն կրել առ Անտիպատրոսի), ապա ելեալ գնայր Եւմենէս 'ի Փռիւգիա վերին և ձմերէր 'ի Կելենէ. ուրանօր Աղկետաս և Պողեմոնն և Դոկիմոս 'ի պայքար ընդ նմա վասն զօրավարութեան ելեալ, ասէր Եւմենէս. "Այս խօսք է բանին՝ որ ասէ եթէ 'Ի կորուփէանն՝ փեղչէ չիք բանին: Ապա խոստացեալ զօրականին տուեալ Եւմենէս՝ տալ նոցա ռոճիկ զերից աւուրց, առեալ վաճառէր նոցա զաւանս և զամրոցս գաւառին ընդ մարդկամբք և անասնովք. և անդ գնողապետ վաճառականաց զօրացն՝ մանգղիոնս և մեքենայս առեալ յԵւմենեայ՝ մարտ, եդեալ կռուէր ընդ վայրսն. և զօրականք դարձեալ բաժանէին յիւրեանս զամենայն զաւարն, մինչև լնուլ զչափ ռոճկին: Ապա զայս օրինակ անզգրէն միւսանգամ սիրելի ընծայեցաւ Եւմենէս. զի և տեսեալ Մակեդոնացւոց երբեմն 'ի բանակին գիրս իմն արկեալ անդ 'ի թշնամեաց զօրապետացն, քանքարս հարիւր 'ի նուէրս մատուցանել և պատիւս մեծամեծս առն՝ որ զԵւմենէս սպանցէ, մեծապէս 'ի բարկութիւն բրդեալ հասարակեցին կարգել նմա թիկնապահս հանապազօրեայ հազար մի 'ի քաջաց զօրակա-

վայրն՝ հիացեալ զարմանայր ընդ արիու-
թիւն առնն և ընդ քաջութիւն ոգւոյն։

Յետ այսորիկ Եւմենէս յուղւոջ ընդ-
առաջ ելեալ աղխին Անտիգոնեայ, և անդ
ձեռնհաս էր հեշտին հասանել ունել բա-
զում՝ որևար աղաս և շատ ևս ծառայս և
մթերս հարուստ զբազում՝ մարտից և պշատ
աւարաց. բայց զանգիտէր՝ եթէ ծանրա-
բեռնինք իւրն զօրականք յաւարաց անտի և
յանկածէն՝ յամրաքայլք ընդցին 'ի փա-
խուստն, և զգրգացեալք մերձացին յա-
ծել զինս և սպառել դէպ ժամանակին՝
յոր պլտյս առաւել հաստատեալ էր Եւ-
մենէս զմարտին զայնորիկ, իբրև 'ի մինի ու-
նէր այլ ուրեք առնուլ փախել զԱնտիգո-
նոս։ Բայց քանզի և զժնդակ էր յայտնի
'ի բաց քեցել զՄակեդոնացիս 'ի կապս և
'ի պատրաստ աւարէն, հրամանաւ տայր նոցա
հաց առնուլ և կերակուր ևս տալ երիվա-
րացն, և այսպէս խաղալ յաւարն։ Իսկ ինքն
'ի նոյն գաղտաբար առաքէր առ Մե-
նանդրոս ոստիկան աղխին Անտիգոնեայ,
եթէ հոգ ինքն զնորա կալեալ իբրու բա-
րեկամի և ընտանւոյ՝ ազդ առնէ նմա անձ-
նապահ 'ի շտապ ապաստանալ տեղի առ
մերձենալ 'ի զիջագոյն վայրաց անտի այրու-
ձիոյն, և զնալ մնա 'ի լեռնակողմն անկոխ
յայրուձիոյն և յանկոյթ վայր։ Խելամուտ
վտանգին եղեալ Մենանդրոս և ժողովեալ
անտի զաղխն, այսպէս Եւմենէս առեալ արձա-
կէր յայտնի լրտես յառաջոյ. և պատուէր
տայր զօրականին վառել կազմել և երիվա-

րացն ամենայն արկանել՝ իբրու անձայնեն 'ի վե-
րայ աղխին յարձակել: Բայց լուր 'ի լրտե-
սացն առեալ՝ թէ զՄենանդրոս չէր հնար
ունել, թէ անկեալ ապաւինեալ կայ 'ի
դժուարս վայրաց, յայնժամ Եւմենէս
'ի վերին երեսս մեծապէս դառնացեալ՝ 'ի
բաց առեալ տանէր զզօրականսն: Եւ պատ-
ճառն՝ եթէ առաջ 'ի վկայել ինքնին Մենան-
դրեայ առաջի Անտիգոնեայ վասն բանին
այնորիկ, իբրև 'ի գովութիւն առեալ զԵւ-
մենէս Մակեդոնացիք մարդասիրէին առ-
նա, թէ այնպէս ձեռնհաս այլն զերծի վա-
րել զմանկունս նոցա և խայտառակել ըղ-
կանայս նոցա՝ ոչ եւ 'ի քաջազգեաց ժա-
մուն, ասէր Անտիգոնոս. "Այլ ոչ եւ
Եւմենէս՝ ո՜ երանելիք, ոչ եթէ հոգ զձեր
ինչ կալեալ, այլ զանդխասեալ՝ զուցէ քաջ
ընդ առն չարա գիցէ 'ի փախչել իւրում":
Իսկ յետ այնորիկ Եւմենէս ցանգ 'ի
Թափառել և 'ի խոյս տալ, ածէր հաւա-
նեցուցանէր զբազումս 'ի զօրականէն գնալ
ազատ 'ի բաց. կամ զի հոգ զնոցանէն կա-
լեալ, կամ զի չկամէր զհետ իւր խաղա-
ցուցանել ամբոխ՝ առ 'ի մարտ սակաւա-
ձեռն, և առ 'ի Թաքուստ՝ բազմաձեռն:
Արդ գնացեալ ապաւինէր 'ի Նորայ ամուր
ընդ սահմանագլուխս Լիկայոնեայ և Կա-
պադովկիոյ հինգ հարիւր այրուձիով և եր-
կերիւր հետևակօք. անդ 'ի բաց արձակէր
և զամենայն բարեկամսն համբուրելով սիրոյ՝
որ խնդրեցին, զի ոչ կարացին բերել զդառ-
նութեան վայրացն և կարօտութեան կե-

րակերոյն ։ Բայց 'ի գալ հասանել անդր Անտիգոնեայ, առաքէր և կոչէր զԵւմենէս խօսել ընդ նմա 'ի բերան 'ի բերան՝ մինչչև նեղեալ զնա պաշարմամբ. եւ պատասխանի Եւմենէսս՝ եթէ բազում են այդպիսիք բարեկամք Անտիգոնեայ, բազում և զօրավարք ընդ նմա. սակայն 'ի նոցանէ՝ որոց ինքն պաշտպան կայ, կայցէ և ոչ ոք 'ի մահուան նորա, բայց խնդրէ 'ի նմանէ պատանդս՝ եթէ կամք իցեն խօսել ընդ նմա։ Իբրև կրկին առաքեաց Անտիգոնոս՝ գալ խօսել ընդ նմա իբրև ընդ քաջագունի քան զինքն, ասէ Եւմենէս. "Քաջ առաւել քան զիս համարիմ և ոչ զոք, ցորչափ սուսերին իմոյ իշխան եմ"։

Ապա Անտիգոնոս յղեալ առ նա յաւանն զիւր Թոռնն զՊտողոմէոս 'ի պատանդի՝ զոր խնդրեաց Եւմենէս, իջանէր և ինքն. և անդ երկոքեան նոքա ողջոյն տուեալ միմեանց և գրկեալ ընդ խառն ընկերին՝ իբրու որ բարեկամք և մտերիմք, և բազում անգամ յառաջագոյն կենակիցք կենցաղակիցք լեալ էին։ Եւ բազում անգամ զբանիւք անկեալ նոցա, երբէք Եւմենէս բան չասէր յաղագս աներկիւղութեան անձինն կամ պայմանաց ինչ դաշին, այլ խնդրեալ պընդագոյնս հաստատել զինքն յաւագութե նախարարութեան իւրոյ և դարձուցանել յինքն զպարգևս ընծայից իւրոց, յապուշ զարմանելեան հարկանէր ընդ արութիւն ոգւոյն և քաջութեանն իւրոյ։ Բայց անդր յայնժամ խուռնընթաց դիմէին Մակեդո-

ծաւալէս ճշգրտութեամբ։ Չէր նա կորովի 'ի բանսն, այլ լի էր շնորհօք և յաջողեալ յամոքել հաւանեցուցանել, ըստ որում և քաջ տեսանեմք 'ի նամականիսն նորա։

Բայց քանզի յայնժամ առաւել քան զամենայն՝ առ անձկութեան վայրացն առագնաւ էր պաշարելոցն, յածեալք ընթացեալք 'ի յարկս անձուկս և 'ի միջոց շրջապատի երկուց տապարխաց, և առնուլին կերակուր մինչև կրթանս 'ի գործ առնել, և կեր ամայլին երիվարացն պարապորդ անդէն դադարելոց, առա ոչ առանթարշամ միայն պահել զաժխոյժս նոցա, այլ և 'ի փախուստ կրթել՝ թէ երբէք պէտք լիցին, յարկ մի մեծ ևս քան զամենայն յարկս տեղւոյն՝ երկայն չորեքտասան կանգնոց տայր մարդկանն 'ի ձեռս ոտից, և պատուիրէր նոցա գնալ ընթանալ և տակաւ արագ ևս և սաստիկ գործել զընթացսն։ Նաև երիվարացն հող տարեալ. զառաջակողմանս նոցա պատեալ առ պարանոցաւն տուաւր փոկովք պնդեալ ընդ ձեռաւն յարկին, ամբառնայր 'ի վեր ձախարակօք՝ զի յետի սրունքն հաստատեալք ողջ 'ի գետնի՝ առաջինքն ծայրիւ շափ ամբակացն քերէին. մինչդեռ այնպէս ամբարձեալ կային երիվարքն, ձիադարմանք մեօ նոցա գոռութեան ձայնիւ և 'ի հարուած խարազանի դրդուէին զնոսա. ապա նոքա անհնարին թափ տուեալք՝ և պար անդր յետի ամբակօքն կայթս սաստիկ հարկանէին, և գուն ևս գործեալ առաջա-

մատնեալ Մակեդոնացւոց և երդմնեցուցել այնպէս զԵւմենէս՝ լուծանէին զպաշարումն. առաքէին և առ Անտիգոնոս երդնուլ զերդումն Եւմենեայ: Եւ յայնժամ դարձուցանէր Եւմենէս զամենայն զպատանդսն Կապադովկիոյ՝ զոր ունէր 'ի նոլրա. և առնոյր 'ի տանուտեացն երիվարս և գրաստս և վրանս, և ժողովէր խմբէր զվարատեալ զօրականն 'ի գաւառէն, և գումարեալ այրուձի իբրև հազար՝ դէմ եդեալ ձեպով փախչէր յերեսաց Անտիգոնեայ: Քանզի ոչ միայն հրաման տուեալ էր նա Մակեդոնացւոց՝ միաբանեալ առնուլ փակել 'ի ներքս զԵւմենէս, այլ և պատասխանի խօսս գրէր առ նոսա՝ զի յանձին կալան զուղղապահել երդմանն:

Բայց 'ի փախստեայ գնալ Եւմենեայ թերէին առ նա նամականի գրեալ յարանց՝ որ 'ի Մակեդոնիա զանգիտեալ իմն էին ընդ բարգաւաճելն Անտիգոնեայ. աղաչէր և խնդրէին Ողիմպիաս զԵւմենէս՝ գնալ խնամ ունել վասն որդեկին Աղեքսանդրի՝ զի դաւաճանէին զկեանան, և առնուլ մեծացանել զնա: Բայց և Պողիւպերքոնոս և արքայն Փիլիպպոս թախանձէին զնա մարտ դնել կռուել ընդ Անտիգոնեայ՝ առեալ զզօրն Կապադովկիոյ. առ այս և 'ի գանձուց անտի որ 'ի Կուինդի՝ առնուլ վասն իւր հինգ հարիւր քանքար. իսկ վասն մարտին՝ որչափ ինչ միաբանեալ կամք իցեն ծախել. և վասն այսորիկ ետուն նամականի և առ Անտիգենէս և առ Տեւտամոս զօրա-

'ի Պարսս կոչեցեալս մեծահացս տուեալ նոցա
Պեւկեստաս, և առ այր այր ոչխար մի բաշ-
խեալ առ 'ի զոհ, եդ 'ի մէջ մեծապէս ա-
ռատութեամբ ախորժեալ նոցա. այլ յետ
սակաւուց չու արարեալ զօրականներն ընդ-
դէմ թշնամեաց, գէտ եղև Եւմենեայ 'ի
պատահմամբ դժուարին խօթութեանն բար-
ձեալ շալակաւ տանել արտաքս 'ի բանա-
կէն՝ ոչ լսել զչաչիւն շառաչիւնն, զի և
ննջել կարէր. և իբրև զօրականքն վայր մի
յառաջ խաղաց, անդուստ յեղակարծումն
յերևեան եղեն թշնամիք, հասեալ ան-
ցեալ զկատարս բարձանցն՝ 'ի վայր հորդա-
նայքն 'ի դէպ անդր: Իսկ 'ի ճառագայ-
թից արեգականն 'ի բարձանս կատարացն
նշոյլք հատանէին նոցա 'ի զինուց զարդուց
ոսկւոյ գունդագունդ զօրականներն՝ որ կար-
գեալ այնպէս համախմբութեամբ յառաջ խա-
ղային. անդ և զբարձրաշէնս յակն արկեալ
զաշտարակաց 'ի վերայ փղացն, և զծիրա-
նիսն (զի զայն զարդ ասանէին նոքա 'ի կռ-
ռուին), անդէն որ յառաջամարտիկ նա-
հատակքն էին Մակեդոնացւոց՝ զանդրէ ա-
ռեալ, ձայն բարձեալ կարգային զԵւմե-
նէս. զի և ոտնփոխ երբէք չլինիցին՝ թէ
ոչ նա իշխէին 'ի վերայն հասեալ 'ի գլուխ
կացցէ բանակին. և առեալ զգէնսն վար-
սէին 'ի գետնին, և այր ընկերին ազդ առ-
նէր զանդրէ ունել՝ զնոյն և զօրավարացն
թելադիր լինել, համբերել մնալ և ընդ
թշնամիսն չխառնել առանց Եւմենեայ:
Զորս լուեալ Եւմենէս՝ 'ի շալակ առաջ-

ըմպարարացն՝ ցանկեալ ցրուեցան 'ի ձմերոցս գնդեցեա ողջոյն ընդ պատուոյ Գարեննացւոց. զի և վերջինքն յօթեանեաց 'ի բացեայ կայլին յառաջնոցն ապաքինեալ հանդէպ ։ Լուր զայսորիկ առեալ Անտոնդոնեոս, ածապարեաց ընդդէմ նոցա ընդ ծանօպարհ դժուարին և անչրդի, դժուարակոխ՝ բայց 'ի կարծոյ. այն ունէր 'ի վերայ անկեալ նոցա 'ի վարատել նոցա 'ի ձմերոցացն՝ ոչինչ այնպէս հեշտաւ խորհել զօրավարաց զզօրն ։ Իբրև եհաս մերձեցաւ նա յանտառապատ անդր գաւառին, անդ մօրճիւք զառանձշունչք և ահագին առաւանմունք քարընկալոմն լինէին ուղւոյն, և շատայ առանալի 'ի վերայ հասանէր զօրուն ։ Այլա հարկաւորեալք 'ի զօրավարքն ունել զխիտ առ խիտ վարել խաղուկաց, յորմէ և ոչ զանխուել եկաց նա 'ի Թշնամեացն. քանզի անդ խուժդուժք բնակաւանուանք լեռանց՝ որ 'ի վերոյ անապատին՝ հիացեալք 'ի տեսել խիտ առ խիտ խաղուկացն, հրեշտակս ձիաւորեալ յուղարկեցին առ Գեւկեաստոս. լուեալ նա և պատրաստեալ և 'ի նոյն արհաւիրս և զայլսն աեսեալ՝ 'ի փախուստ խուճապէր. զնոյն առայր առնել և առհասարակ զօրականքն՝ որոց միաբանեալ պատահէր յուղւոյն ։ Բայց Եւմենէս 'ի բաց ձիւնիճեւքն վարատեալ՝ դադարեցուցանէր զօրականսն. և խաստանէր եւս առ զերդերանս խուճապին Թշնամեաց, և երբեք առաւելք քան զանկնկալութիւնն, անազանել զդառնութեան նոցա. իբրև նոքա հանդար-

զօրականէն խմբեալ առ Եւմենէս՝ զար-
մացեալք ընդ հնարաւոր իմաստութիւն
առն՝ խնդրէին նմա միայնոյ զօրավարել.
որք աղաղակաւ 'ի խոր խոցեալ Անտիգենէս
և Տեւտամոս զօրավարք Արգիւրասպասացոց
խաննտայքն, և խորհեցան դաւաճանել զնա.
և զբաղդաւսն 'ի նախարարաց անտի սադրեալ
և 'ի զօրավարաց, 'ի խորհուրդ մտանէին՝
երբ և զի՞արդ դատապարտեալ լիցին Եւմե-
նեայ: Եւ անդ առհասարակ միաբանե-
ցան՝ 'ի գործ զնա վարել նախ յառաջա-
կայ կռուէին, և ապա արագ արագ սպա-
նանել զնա: Ցայնժամ Եւդամոս փղա-
պետ և Փեդիլոս գնացեալ գաղտ 'ի մեր
զխորհուրդն հանէին Եւմենեայ, ոչ առ
բարեկամութեան ինչ և 'ի հաճել զնա,
այլ զանդիմանեալք կորուսանել զդրամսն՝
զոր 'ի փոխ առեալ իսկ էին նմա:

Իսկ Եւմենէս գովեալ և շնորհս ևս կալ-
լեալ նոցա, մտեալ 'ի վրան իւր՝ ասէր առ
բարեկամսն 'ի մէջ վոհմակաց գազանաց
շրջել. և այնուհետև նստեալ գրէր զկտակ
իւր, և առեալ խանթարէր պատառէր զնա-
մականսն զամենայն որ առ իւր. ոչ կամէր
եթէ յետ մահուան 'ի գաղտնեաց գրենոյն
զրպարտեալք ինչ մատնեսցին գրողքն: Եւ
այնուհետև զիւր իրսն յարդարեալ, 'ի խոր-
հուրդ մտանէր՝ արդեօք զյաղթութիւնն
զգիւտմին թողո՞ւլ թշնամեացն, եթէ խա-
ղալ 'ի Կապադովկիա փախստեայ ընդ
Մարս և ընդ աշխարհն Հայոց: Այլ ոչ հաս-
տատեաց մինչև եկին առ նա բարեկամք,

ապա չառ ինչ անհնարին վարանեալ 'ի խորհուրդս վասն նորուն իրի, առեալ կարգէր զզօրականն և քաջալէր խրախոյս կարդայր միանգամայն Հելլենաց և խըժադժիցն: Անդ և փաղանգն, զնոյն և Արգիւրասպացիք խրախուսէին զնա, իբրու անշուշտ ոչինչ ժուժկալել թշնամեացն ընդդէմ նոցա: Քանզի այս զօրականք էին հինաւուրց զինուորեալք առ Փիլիպպոսի և առ Աղէքսանդրի, նահատակք 'ի մարտի, անվկանդք և անպարտելիք. շատք 'ի նոցանէ զեօթանասնամենիւք ուրեմն էին և 'ի նոցանէն և ոչ ոք պակաս էր 'ի վաթսնամենից. ուստի և յառաջ նահատակեալ նոքա ընդդէմ Անտիգոնոսեանցն, ձայն բարձեալ գոչէին. ‘‘ Ընդդէմ ձերոց իսկ հարց մեղանչէք, ո՞ չարագլուխք „:

Եւ այնպէս մեծաւ ուժով յարձակեալք 'ի դիմի, հարին խորտակեցին առ հասարակ զփաղանգն. և չեկաց ոք ախոյեան ընդդէմ, և 'ի սուր մաշեցան նոքա բազմագոյն մասամբ: Անդանօր ապա իսպառ հարեալ վանթարեցաւ Անտիգոնոս. սակայն և 'ի գունդ այրուձիոյն յաղթական եղանէր. քանզի Պեւկեստաս անարի վատացեալ 'ի կռուին, հասեալ յայնժամ կալաւ Անտիգոնոս զամենայն աղխն՝ քաջապէս նահատակեալ 'ի վտանգս մեծամեծս. գործակից նմա և վայրն ինքնին լինէր, զի էր անդ դաշտավայր լայնատարր, ոչ խորագոյնս և ոչ կորդ և կարծր, այլ իբրև աւազակոյտ ափանց և համակ աղ-

մի աւել նոցա պիտանի։ Իբրև առհասարակ լռութիւն լինէր, նա կացեալ 'ի բարձրաւանդակի և ձգեալ զձեռսն կապեալս, ասէր այսպէս.

"Եւ զո՞ր ապա՝ ո՜վ եղեռնաւորք Մակեդոնացւոց, զո՞ր խնդրէր ախոյեան՝ ընդդէմ ձեր կանգնել Անտիգոնոս, մեծ ևս քան զոր դուք ինքնին կանգնէք աւադիկ ձեր ընդդէմ, գերի 'ի ձեռս նորա զձերդ տալով զօրավար։ Եւ ո՞չ արդեօք անարժան իցէ բանդ և դժպատեհ, յաղթական դուք ինքնին զոլով՝ պարտութիւն խոստովանել 'ի շնորհս աղխին և կարասւոյն, իբրու որ յաղթութիւնն գլխովքն 'ի կարասին իցէ և ո՛չ 'ի զէնս։ Արդ դուք և զձերոյինդ զօրավար 'ի փրկանս առաքէք կարասւոյն. բայց ես ինքնին անպարտելի ածեալ գնամ աւադիկ՝ պարտեալ զթշնամիսն, սակայն մատնեալ 'ի կորուստ յիմոց անտի նիզակակցաց։ Ո՛ն առեալ ես աւադիկ երդմնեցուցանեմ զձեզ յԱրամազդ խնամակալ բանակաց և 'ի դիս տատեկանս երդմանց, ա՛ղէ՝ դուք ինքնին աստէն սպանէք զիս. քանզի և անդանօր եթէ սպանանիմ, դարձեալ ձեր է ոճիրն։ Ոչինչ արդեօք բամբասեսցէ Անտիգոնոս, իբրև պէտք են նմա Եւմենեայ մեռելոյ՝ և ո՛չ կենդանւոյ։ Ապա եթէ զձեր ձեռս խնայէք շաղախել, շատ է զմի յիմոցս ձեռաց ունել արձակ՝ 'ի գլուխ զբանդ տանել։ Ապ' եթէ և սուր մի չվստահանայք յիմ ձեռս, ա՛ղէ՝ կապեալ զիս այսպէս առաջի արկէք

դաշանաց. Թէ զայդ առնիցէք՝ իմ իսկ աւադիկ արձակեալ է զձեզ 'ի պատուհասէն իմմէ, իբրու որ անշուշտ մեծապէս սրբութեամբ և արդարութեամբ գնացեալ ձեր ընդ ձեր զօրավար „:

Յայսպիսեաց աստի խօսեալ Եւմենես, անդ առհասարակ զօրականն 'ի խոր խոցեալ դառնապէս հեծէր. իսկ Արգիւրասպացիք ձայն բարձեալ աղաղակէին՝ անուլ 'ի բաց տանել զԵւմենես, և մի շաղակրատանաց բանից ունկն մատուցանել. իբրու որ դժնդակ չիցէ արդեօք՝ զի անըզգամ ոք այր Քերրոնեսացի 'ի մարտս բեւրս զՄակեդոնացին վաստակեցուցեալ՝ լուծցէ զպատուհասն, այլ դժնդակ այն է՝ զի զօրականք քաջամարտիկք Աղեքսանդրի և Փիլիպպոսի այնչափ իմն ընդ քիրտն յոգնեալք, և 'ի ծերութեան իւրեանց 'ի գերևս 'ի մրցանակէն ելեալք՝ 'ի մուրանաց ժողովեսցեն հաց. և նոցուն կանայք աւադիկ զայս երրորդ գիշեր անկեալ ննջեն ընդ Թշնամեաց: Զայս ասացին և փութապէս 'ի բաց տանէին զԵւմենես: Բայց անդուստ Անտիգոնոս երկուցեալ՝ եթէ կոխեսցի այրն 'ի խուժանէն (քանզի և ոչ ոք մնաց անդ 'ի զակշին), արձակէր 'ի դուրս տասն 'ի փղաց կորովեաց և տիգաւորս բազումս 'ի Մարաց և 'ի Պարթևաց՝ 'ի բաց զամբոխն փարատել. իսկ ինքն առ վաղնջուց մտերմութեանն ընդ առն՝ ոչինչ պնդեցաւ յոգին այնպէս տեսանել զնա. և հարցեալ 'ի պահապանացն՝ եթէ զիարդ

զու չմնաս զկնի ժամանակին նորա,,: Ապա երկու հաստատեաց Անտիգոնոս 'ի մահ մատնել զԵւմենէս, հրաման տայր ոչ ևս տալ նմա կերակուր: Եւ այնպէս զաւուրս երկուս և երիս անսուաղ կացեալ նա, 'ի գուրս մերձենայր մահու. իսկ յայնժամ յեղակարծումն զկնի եղեալ չու առնել բանակին, առաքեցին այր մի զնա սպանանել զնա: Բայց զդիակն Եւմենեայ տուեալ Անտիգոնոս 'ի ձեռս բարեկամացն նորա, թոյլ տայր այրել զնա և առնուլ տանել զնշխարս նորա 'ի սափոր արծաթի և տալ կնոջ իւրում և զաւակացն:

Զայս օրինակ աղաղ մահ առեալ Եւմենէս, յետ այնորիկ և արժանահաս պատուհաս զօրավարաց և զօրականեն՝ որ մատն եղեն նմա, հասանէր 'ի վերայ 'ի դէց անտի. ոչ յօտարաց ինչ ձեռն, այլ 'ի նորումն իսկ Անտիգոնեայ. քանզի խոտեալ նորա այնուհետև զԱրգիւրասպասգիսն զայն իբրև ամբարիշտ որեար և գազանամիտ, 'ի ձեռս տայր զնոսա Հիւբիրտոսի կուսակալին Արաքովսիոյ. պատուէր տուեալ զամենայն ազգ չարչարանաց անցուցեալ ընդ նոսա՝ 'ի միջոյ պակաս առնել, զի և մի ոք 'ի նոցանէն մի դարձցի 'ի Մակեդոնիա, և մի զհելլենականն տեսցէ ծով:

---

## ԶՈՒԳԱԿՇՌՈՒԹԻՒՆ

## ՍԵՐՏՈՎՐԻՈՍԻ
## ԵՒ
## ԵՒՄԵՆԵԱՑ

ԱՅԴՈՒՔԻԿ են աւադիկ՝ զոր յաղագս Սերտովրիոսի և Եւմենեայ 'ի յիշատակաց արժանիսն անցաք մեք ։ Իսկ 'ի զուգակշռ-ռութեանդ գտանեմք ինչ հասարակ յեր-կաքանչիւրսդ ․ զի օտարք և եկք գոլով դոքա, յօտար աշխարհի և վտարանդիք, զօրավար կացին մինչև ցվախճան այլալեզու ազգաց, և քաջամարտիկ և բազում զօրաց ։

Իսկ է և մասնաւոր Սերտովրիոսի, զի զօ-րավարեաց նա 'ի միաբան հաւանութենէ նիզակակցացն, որ յանձն առին 'ի պատ-ճառս աւագութեան առն ։ Իսկ Եւմե-նեայ, զի շատք և նախանձաւորք թեկն ածեալ զզօրավարութեան, ինքն նախա-թոռ ամբարձաւ միայն 'ի պէտս նահա-տակութեան գործոցն ․ ուստի առաջնոյն

գոյցս նմանատիպք են և զուգակշիռք, այլ էին նոքա այլարուեստք ՚ի միմեանց. Եւմենէս պատերազմասէր և կռուասէր. և Սերտորիոս՝ խաղաղասէր և հեզ և հանդարտ. մինչդեռ Եւմենեայ ՚ի ձեռս էր յանդորրու վարել կեանս և շքով ՚ի տեղի առաջ խրոսմ, յաւերժացաւ ՚ի մարտ ՚ի պայքար ընդդէմ աւագաց. և Սերտորիոս անդորրաւէտ անձն՝ սոխոդէր առ ՚ի մարտ յանհրկեանութիւն անձինն ընդդէմ աղարտողաց խաղաղութեան նորա: Քանզի Անտիգոնոս մոտակիցքազոյնս արդեօք ՚ի գործ զԵւմենէս վարէր, եթէ սա տեղի տուեալ առաջին բարձին՝ գոհ էր երկրորդին. այլ Պոմպէոս՝ և ոչ անմիջա կենացն ներէր Սերտորիեայ: Որ ազադաւ և մին կամակար մոքք մարտ եղեալ կռուէր յիշխանութեան պատճառս. և միւսն յակամայս լինէր՝ զի ընդդէմ յուզէր պատերազմ: Արդ՝ մարտասէր պա՛րտ է համարել զայն, որ զաւելատացութիւնն նախապատիւ քան զանհրկեանութիւնն գործիցէ. և քաջամարտիկ զայն՝ որ մարտիւ զանհրկեանութիւնն հանդերձեալ է:

Եւ այսպիսիք դարձեալ՝ զի ՚ի գոյանէ մին մեռանէր, և չէր նախազգած. և միւսն՝ և կանոնաւ անյն ունէր մահուն. առաջինոյն՝ հեզութեան է յայտարար, (քանզի վստահ ՚ի բարեկամն եցոյց զանձն). իսկ երկրորդդ՝ տկարութեան. քանզի կամելով փախչել՝ ձերբակալ եղև: Եւ արդեօք

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Ողորմ՝ և աշխարհելի կերպարան կեղծ բարեկամի. յակամայս ոգորելոյ ընդ առն բարեկամի, ճշգրիտ և քաջին նկարագրեալ ՚ի Պլուտարքեայ:

2. Այս Հերոնիմոս հայրենակից և բարեկամն էր Եւմենեայ: Եւ է սա ՚ի նշանաւոր պատմագրաց. և գրեաց սա զկուսակալացն՝ որ բաժանեցին զարքայութիւնն Աղեքսանդրի:

# ՑՈՒՑԱԿ

## ԵՐՐՈՐԴ ՀԱՏՈՐՈՑ

